# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ի ՊՈՄՊԷՑ ՀՆԴԿԱՑ

Ի

Ի Հ. ՅԱԿՈՎԲՈՍ Վ. ԽՍԱՎԵՐՏԵՆՑ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ




ՎԵՆԵՏԻԿ. — Ս. ՂԱԶԱՐ

1887

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

# Ի ՊՈՄՊԷՅ ՀՆԴԿԱՑ

---

### ՎԵՆԵՏԿՈՅ ԼՃԱԿԷՆ ՑՊՐԻՆՏԻԶԻ

Սուէզի անցքը բացուելէն յետոյ, անգղիական շոգենաւուց գիծ մը զԱնգղիան՝ Ադրիականին ու Կարմիր ծովուն վրայէն՝ Հնդկաստանի հետ կապեց։ Այս գծիս գլուխը հաստատուեցաւ 'ի Վենետիկ. հոս ամեն հօթնեակ Անգղիացի ճանապարհորդաց բազմութիւն մը կը ժողովի ու դէպ 'ի Սուէզ կը նաւարկէ. ուսկից դարձեալ այլ և այլ շոգենաւերով ոմանք 'ի Հնդկաստան կ'ուղևորին, այլք յԱւստրալիա, 'ի Ճավա, 'ի Չին և 'ի Ճաբոն։

Ի 1881 Նոյեմբերի սկիզբները ինձ ևս վիճակեցաւ նոյն գծով Վենետկոյ լճակէն ելլել և ուղևորել 'ի Հնդիկս։ Արդէն նոյն այս ամսուս յատուկ անձրևային օրերը կոնխեր անցեր էին, ու չորրորդ օրը զուարթ ու գեղեցիկ արևով մը կը ծագէր. երկինք ապակեայ կը նմանէր. այնպէս ջինջ ու պայծառ էր, և օդն ալ թեթև ու ջերմ։ Թող շուրջանակի տեսարանը, որու զմայլեցուցիչ հրապոյրն մարդու սիրտը կը զուարթացնէր։ Լճակին խաղաղաւէտ ջինջ մակերևոյթը՝ պայծառ արևուն շողշողացող ճառագայթներէն երփն երփն կը գունաւորէր։ Լերանց

հեռաւոր կոները՝ անուշ մանուշակագոյն ներկեալ՝ ամենաթեթև գոլորշիքի մը քօղին մէջէն կ՚արձանանային. և անոնց երկու կողմէն նոյն գոլորշին սահելով՝ զհորիզոնը հրապուրիչ թեթև երանգով մը կը պատէր: Արևելեան դին արեգը նուրբ գոլորշիքի մը մէջէն իւր ճառագայթները ցոլացնելով՝ կարծես լճակին վրայ արծըթէ փոշւոյ անձրև կը թափէր: Իսկ այն հոյակապ քաղաքը՝ որու մեծագործ շէնքերը զմարդ յապուշ կը կրթեն, կարծես իւր կերպարանքը վճիտ ջրին վրայէն անդրադարձնելով կը զուարճանար, զջուրը հազարումէկ երանգ գունաւորելով: Դեռ ես կենդանի է մտքիս մէջ այն օրուան գեղեցկութիւնը՝ որ երկայնամիտ նկարիչ մը յիմարութեան չափ կրնար ափշեցնել:



Պէնկալոր շոգենաւը.

Իսկ ես սրարշաւ նաւակիս մէջ նստած՝ դէպ 'ի Պէնկալոր շոգենաւը կը դիմէի, որ ժամը իննին անհրաժեշտ պիտոր մեկնէր: Արդէն բազմութիւնն սկսեր էր խռնիլ. բարեկամաց խումբեր ճանապարհորդաց իրենց յետին հրաժեշտը կու տային. բազմաթիւ նաւակաց երթևեկը անլմննալի էր, անանկ որ շփոթու-

թիւն մը կը տիրէր ոչ միայն շոգենաւին չորս կողմը, հապա նաև նաւուն մէջ, ուր ամեն սեռի և ամեն հասակի մարդիկ խռնած էին. մինչև չուոյ զանգակը խարսխին վեր առնուիլը ազդեց: Մեկնեցան փութով բարեկամաց խումբերը, հեռացան նաւակք, և շոգենաւը ծանրաքայլ սկսաւ լճակին ջրերը ճեղքել:

Նաւուն վրայ կեցած մտախորհ կը դիտէի այն տեսարանը որ հետ զհետէ, քանի որ դէպ 'ի Ադրիականին դուռը կը յառաջէինք, աչացս առջին կը պարզէր: Լճակին ցիրուցան կղզեկաց քովէն անցնելով՝ աչօք ու սրտիւ վերջին ողջոյն մը կ'ուղղէի բոլոր այն տեղեաց՝ որոց մէջ կենացս մեծագոյն մասն անցեր էր. ո՜հ, ո՛րչափ սիրտս կը տրոփէր երկիւղիւ՝ թէ արդեօք նոյն տեղուանք միւսանգամ տեսնելու բարեբաղդութիւնը պիտոր ունենամ:



Ձկնորսաց նաւակք.

Վերջապէս քաղքին լճակին վերջին պատուարը հասանք: Հոն ձկնորս նաւակաց բազմութիւն մը խարիսխ նետած էր, և ձկնորսք, պարզեալ գոյնզգոյն առագաստներով, ինչպէս թէ 'ի չու պատրաստ, իրենց ուռկանները լուալու կը զբաղէին: Մենք որ

կ'անցնինք՝ կը կանգնին ու մեզ կ'ողջունեն: Կը սահինք քովերնէն ու ծիծաղերես Ադրիականին մկանանց վրայ կ'արշաւենք: Շոգենաւնիս ընթացքը կ'երագէ հեռանալով հիւսզհեւտէ ցամաքէն, որ վերջապէս մըշուշին մէջ կ'անյայտի:

Շոգենաւին լանջաց վրայ յեց՝ առ վայր մը տխուր խորհրդածութեամբ միտքս կը յուզի: Անհաստատ ու մահագոյժ տարր մը ձեռքն ենք, և ընդ մեզ և ընդ մահ միայն քանի մը բթաչափ տախտակ մը անջրպետ կայ. և ջուրն որ չորս կողմերնիս կ'եռայ՝ կարծես այն տախտակը կրծելով սպառել կ'ուզէ: Բայց այս մտածութիւններէս կը սթափեցնեն զիս ուղևորաց աղաղակք: Աչքս ուր տանիմ Անգղիացւոյ երես միայն կը տեսնեմ. ականջս միայն անգղիացւոյ բարբառ կը լսէ: Արանց, կանանց, օրիորդաց ու երիտասարդաց չփոթ երթևեկ մըն է շոգենաւին մէջ: Աղմուկ, շշնջուկ, ղուարթ խօսակցութիւն, ծիծաղ չորս դիս կը տիրէ. ամենը իրենց ընկերն ունին, ամենը իրենց բարեկամը կամ ծանօթը: Իսկ ես միայն Նաւապետին ծանօթ կը համարէի զիս. սակայն բաղդս յանակնկալս վաղեմի բարեկամ մը հանեց դիմացս, նոյն շոգենաւուց ընկերութեան Նուիրակ:

— Դո՞ւ հոս, կը կանչէ զարմացմամբ. և դէպ ո՞ւր կը դիմես:

— Դէպ 'ի Հնդիկս, կը պատասխանեմ և ես, զարմանքս բռնել չկարենալով այն անակնկալ պատահման:

— Ուրեմն մէկտեղ պիտոր ճանապարհորդենք, որովհետև ես իբր Նուիրակ հոն կ'ուղևորիմ:

Այս դէպքս ինձ յոյժ օգտակար եղաւ՝ գիւրացընելով իմ հանգիստս 'ի Նաւին, գոնեայ մինչև ցՍուէզ, ուսկից բարեկամս բաժնուելով 'ի Սէյլան պիտոր Նաւարկէր:

Ժամը մէկին նախաճաշին զանգակը կը զարնէ, և ամենը հնազանդ, իբր աշակերտք որ յաշխատութենէ 'ի հանգիստ կը փութան, դէպ 'ի նաւին ընդարձակ սրահը կ'իջնեն, ուր՝ անգղիական քիմաց 'ի դէպ՝ առատ համադամք պատրաստեալ կան։ Անգղիական քօնֆօրդէպլը առաւել անցած է, և ամենայն բանի մէջ 'ի յայտ կու գայ։ Անգղիացի ճանապարհորդն ամենէն առաջ իւր ստամոքսը կը հոգայ քօնֆորդէպլ ընելու։ Երեք անգամ կերակուր կը տրուի մսեղինօք. ժամը իննին, մէկին ու եօթնին, որոնք, թէպէտ մէյմէկ ճաշ կը նմանին, բայց այլ և այլ մեղմացուցիչ անուն կ'առնուն. առաջինը նախաճաշ, երկրորդը միջաճաշ, երրորդը բուն ճաշ։ Ասկէ զատ կայ կաթնախառն չայն, նախ առաւօտեան ժամը վեցին, ցորեկուան ժամը չորսին և երեկոյեան ժամը տասնին, հանդերձ կոգւով, հացիւ և այլովք։ Եւ եթէ անկէ նաւը մէկու մը ստամոքսը կը զօրէ, ապա է ուղածը խնդրելու և ուտելու. և ասոր ապացոյցը ստէպ տեսայ։

Մինչդեռ նախաճաշէն ետքը նաւուն վրայ՝ այլոց հետևելով՝ վեր վար ժուռ կու գամ, յանկարծ այլ և այլ ծանօթ անձինք գիս կը դիմաւորեն և զարմացմամբ կ'ողջունեն։ Այսպէս ծանօթիս թիւը կը շատնայ և գիս կը յուսացնէ որ ճամբուն երկարութիւնը ըստ կարելւոյն զբօսալի պիտոր ըլլայ։

Ամենուն խօսակցութեան նիւթը օդուն աղուորութիւնը ու հանդարտութիւնն է։ Ծովը այնպէս անդորր է որ կարծես ցամաքին վրայէն սահելով կը քալենք։ Արդէն իսկ ցամաքը անհետացած՝ ընդարձակ բոլորշիի մը կեդրոնը կը գտնուինք. շօգենաւնիս այն բոլորակին տրամագծին վրայէն սահելով՝ ետևէն գիսաւորի մը նման՝ փրփրացեալ սպիտակ հետք մը կը թողու։ Բայց ժամերը կը յառաջեն և արևը դէպ 'ի

մարը կը խոնարհի. ոսկեգոյն հորիզոնը հետզհետէ կը կարմրի, կը մարի, կը մթննայ, ու թեթեւ մը կանաչագոյն ապակեայ կը փոխուի, եւ ապա աստեղազարդ երկինք մը զգիշերը վրայ կը բերէ: Այն պայծառ երկնից ամպհովանւոյն մէջէն արծաթափայլ լուսնին ճառագայթները խաղաղաւէտ ծովուն երեսը կը սփռէին կայտռելով: Օրուան այլայլիչ զգացմունքներէն խոնջ կ'իջնեմ խցիկս 'ի հանգիստ անկողնոյ: Դեռ ես յոտին կայի երբ շոգենաւին սրինգը նաւահանգստի մը մերձենալը ազդեց: Բոլորչի պատուհանիկէն դուրս գլուխս կարկառեցի Անքոնայի վառած լոյսերը տեսնելու, եւ անմիջապէս պարկեշտ անկողնիկիս վրայ ամփոփուելով երազոց աշխարհը անցայ: Երբ աչքերս բացի ժամը եօթն էր ու նաւերնիս միւսանգամ ընդարձակ ծովուն ջրերը կը ճեղքէր:

Ի՜նչպէս մխիթարուած էի խցիկիս միայնութեանը վրայ. ի՜նչպէս երախտապէտ էի նաւապետին որ ինձ փութացեր պահեր էր այն առանձնակ նաւախուցը: Ծովային ճանապարհորդութեանը մէջ ամենէն մեծ հանգիստն առանձին խցիկ մը միայնակ վայելելն է. ոչ նեղիլ եւ ոչ նեղել: Այս իղձն ու բաղդը բարեկամական կապի մը միջնորդութեամբ ընկերեց ինծի մինչեւ ցՊոմպէյ:

Նաւուն վրայ առաւօտեան զուտ օդը ծծելու քան զիս կանխեր էր նաւապետը: Երեք եօթնեակ յառաջ, ըսաւ ինծի, նոյն ճամբան յոյժ այլապէս ըրած էր. այս ծովն որ հիմա այսպէս խաղաղ էր, այն ատեն այնպէս սաստիկ խռովեալ էր՝ որ ալիքները նաւուն վրայէն կ'անցնէին. նաւն ալիքներէն տատանեալ ասդին անդին կը նետուէր, այնպէս որ չէր հնար մէկու մը վրան կանգուն կենալ: Բոլոր ճանապարհորդք կիսամեռ՝ անկողնի վրայ ինկած՝ նեղութեան ու վա-

խի տագնապով կը տանջուէին։ Ես բարեբաղդ էի այս եօթնեկիս նաւովը ճանապարհորդելու։ Լրագրոյ ծրար մը ձեռքս դնելով, — Ահա, ըսաւ, քեզի գործի ու միջոց ժամանակ անցընելու։ Եթէ ընթերցման համար գրոց պէտք ունենաս, սեննկապետէն ուզէ. հասարակաց գրատունը առատաբար հոգացուած է զբօսալի գրքերով։

## Ի ՊՐԻՆՏԻԶԻ

Երկու օր ետքը առաւօտը կանուխկեկ, հասանք 'ի Պրինտիզի, և ածխոյ ամբարանոցին առջև խարիսխ ձգեցինք։ Հոն ուրիշ շոգենաւք քան զմեզ կանխեալ՝ ածխոյ պաշար կ'առնուին. բազմութիւն մը շղթայակապ բանտարկելոց զբաղեալ էին ածուխը շոգենաւաց մէջ լեցնելու։ Կը դիտէի այն տխուր տեսարանը որու անփորձ էի. ի՜նչպէս ախտից ձեռքը մատնուած մարդը կը նուաստանայ և գրեթէ կ'անբանանայ։ Այն ածխոյ փոշիէն սեւցած կերպարանաց տակէն խռոժոռահայեաց աչքեր կը նշմարէի, որոց փայլին վրայ կատաղութիւն մը կը կարդացուէր։ Անշուշտ, կ'ըսէի մտօքս, ասոնցմէ շատը կամ գող են, կամ աւազակ ու մարդասպան։ Ասոնք մարդկութեան վիժածներն են. մարդն որ մոլութեամբ այս կէտը կը հասնի՝ եթէ չէ անկարելի՝ գոնէ ամենադժուարին է որ մէյմըն ալ վերականգնի։ Ասոնց շատը ցկեանս դատապարտեալ՝ շղթայակապ անբանի պէս աշխատելու են։ Իրենց շահածին մեծ մասը տէրութիւնը կ'առնու, քանի մը ստակ միայն իրենց թողլով՝ որ ծխախոտի կամ ուրիշ պիտոյից ծառայեցնեն։ Մինչդեռ աշխատելու հետ են, պահապան զինուորք անոնց վրայ կը հսկեն։ Երգ ու հայհոյութիւն խառն կը հնչեցնէ այն

դատապարտութեան տեղին. կարծես մեր ազատութիւնը անոնց վրայ կատաղի նախանձ մը կը գրգռէ։

Քաղքին վրայ հայեացք մը կու տամ որ անսովոր գեղեցկութիւն մը չերևցներ։ Պրինտիզի, որ հին Հռոմայեցւոց ժամանակ, ինչպէս նաև միջին դարու ատեն, կարևոր նաւահանգիստ մըն էր, ԺԵ դարուն իրեն կարևորութիւնը կորսնցուց, և մինչև վերջի ատեններս աննշան տեղ մըն էր։ Բայց հիմա որ երկաթուղին Ադրիականին եզերքներէն քերելով դէպ 'ի հոն կը յանգի, և ամեն ազգի շոգենաւք ալ հոն հանգիստ կ'առնուն, և գլխաւորապէս անգղիականք, դարձեալ կը սկսի ծաղկիլ և իր նախկին կարևորութիւնը ըստ մասին կը ճգնի միւսանգամ ձեռք բերել։ Քաղաքն 'ի հիմանց նորաշէն երևոյթ մը ունի, այնպէս բազմաթիւ են շինութիւնք։ Նաւահանգիստն ալ որ աւազներով լեցուած անպէտ եղած էր, միւսանգամ փորուելով կարգի դրուեցաւ։

Հին Հռոմայեցւոց ժամանակ այս նաւահանգիստս իբր իջևան կը ծառայէր դէպ 'ի արևելք նաւարկելու, անոր համար ալ անոնց արշաւանաց ժամավայրը եղած էր։ Ապպեան ճամբան Ապեննինեանց ձորերէն անցնելով հոս կու գար կը յանգէր. անոր համար ալ այս տեղիս հռոմէական նաւատորմին մեծ կայաններէ մէկն էր։ Սոյն այս քաղաքս եղաւ Կեսարու ու Պոմպէոսի կռուի տեղին, և ասկէց Կեսար նաւարկեց դէպ 'ի Յունաստան։

Ապա Գոթացիք աւրեցին Պրինտիզիի, ուսկից հալածեցին զիրենք Բեղիսար և Ներսէս զօրավարները, և ապա աւրեց անոր Նէապօլսոյ Ռոճեր թագաւորը։ Վենետկեցիք, որ նախանձորդք էին այս քաղքիս վաճառաշահութեան, գրեթէ բոլորովին աւերեցին անոր նաւահանգիստը։ Եւ ապա քանի մը ան-



Պրինտիզի:

գամ բարբարոսաց ձեռքն իյնալով աւրուեցաւ ու նորէն շինուեցաւ։ Հոս մեռաւ Վիրգիլիոս քերթողը, Քրիստոսէ տասնուինն տարի յառաջ։

Բերդոյ կողմանէ անուանի էին ոստրէները որ Հռոմայ խնջոյից կը ծառայէին։ Անուանի են դարձեալ մինչև ցայսօր անոր գինիներն ու ձէթը, որոց մեծ վաճառականութիւն կ'ըլլուի։



Տուն Վիրգիլիոսի 'ի Պրինտիզի.

Այս քաղքիս նախնի մեծութեան մնացորդք դեռ ևս կը տեսնուին, ինչպէս կամարք, ջրմղից աւերակք, գեղեցիկ սիւնք, և այլն։ Գեղեցիկ է մայր եկեղեցին և ուրիշ մէկ քանի եկեղեցիներ։ Քաղաքս է եպիսկոպոսանիստ։ Կան քանի մը վանքեր կրօնաւորաց ու կուսանաց, ուսումնարան կղերիկոսաց, վարժարանք և հիւանդանոցք։ Բնակչաց թիւն է գրեթէ 15,000. բայց քաղքին ծաղկելովը բնակչաց թիւն ալ բազմանալու հետ է։

Ցամաք ելլելով քայլս դէպ 'ի մայր եկեղեցին առի 'ի պատիւ կիւրակէի։ Ողջոյն ժողովուրդը շարժման

մէջ կ'երևար. Ննջեցելոց զանգակը հուշակուռ երգչի մը յանկարծական մահը ազդած էր, և հետաքըրքրաց բազմութիւնն դէպ 'ի եկեղեցին կը դիմէր։ Այն մարդն որ մէջերնին ծներ, սներ, մեծցեր ու տարիներով ապրեր էր, կենդանութեան ժամանակը այնչափ հետաքրքրութիւն չէր ազդած որչափ հիմա իր մահուամբը։ Շէնկոց մը կը քալէր բերնէ բերան ողջոյն եկեղեցւոյն մէջ. գիրար մղելով, իրարմէ յառաջելով ամենը դագաղին մերձենալ կը ջանային, որու մէջ հանգչեցուցած էր ննջեցեալը, դէմքը բաց 'ի տես ամենուն։ Այն անկենդան դիակին քով բազմութիւնը խռնած նոր եկողաց տեղի տալ չէր ուզեր և հարկ էր հրելով և ասդին անդին զարնուելով ճամբայ բանալ ու եկեղեցիէն դուրս ելլալ։

Օրն էր գեղեցիկ, երկինքն պայծառ, օդը ջերմիկ. ինչպէս անոյշ կու գայ երկու օրուան նաւարկութենէն ետքը ցամաքը կոխել և ազատաբար շրջիլ։ Քաղաքին էական տեղերը պտըտելէն յետոյ, միւսանգամ նաւը կը դառնամ միջօրէին։

Բայց ցորեկը, միջնաճաշէն յետոյ, կուղևորները նաւէն դուրս կը ձգէ 'ի շրջագայութիւն. բայց անոնցմէ որոց կրօնական դաստիարակութիւնը կը պատուիրէ սուրբ պահել կիւրակէն, արգիլելով նաև թեթև և անմեղ զբօսանաց զբաղանքը, ինչպէս շըրջագայութիւնը, կամ ինչ և իցէ տեղեաց այցելութիւնը։

Նաւահանգստին դիմացը ծովուն մէջ կանգնած միջին դարու դղեակ մը կայ, քաղքէն իբր կէս ժամ հեռու։ Քանի մը հոգւոյ ընկերութեամբ հոն այցելութեան կ'երթանք նաւակաւ, և անոր բարձր աշտարակին վրայ ելլելով վարը առջևնիս ողջոյն դղեկին ներքին տեսարանը կը տեսնենք, որ մեզի միջին դա-

րու ամրութեանց ճշդիւ գաղափարը կու տայ, ինչպէս նկարներու մէջ կը տեսնուի։ Շրջակայ ծովու ու ցամաքի գեղեցիկ տեսարանը տեսնելէն յետոյ, միւսանգամ՝ աշտարակին մթին սանդղէն վար կ'իջնենք, և մէկ քանի ճգնող բնակչաց սենեակները այցելելով՝ կ'ելլենք կը հեռանանք, մարդավար ու պարզսիրտ մարդոց հիւրասէր ընդունելութեանը ախորժելի գաղափար մը հետերնիս տանելով։



Դղեակ 'ի Պրինտիզի.

Կ'երեկոյանար երբ 'ի շոգենաւ հասանք։ Գիշերուան լուսինն որ սկսեր էր բարձրանալ՝ անանկ պայծառ փայլով մը կը լուսաւորէր տեսարանը՝ որ կարծես ամենուն աչքէն քունը ջնջել կ'ուզէր։ Նաւը մինչև երկրորդ աւուր դադարելու էր 'ի Պրինտիզի, Անգղիայէն գալի ճանապարհորդաց ու թղթաբերին սպասելով։ Առջևնիս չորս օրուան ծովային անընդհատ ճանապարհորդութիւն մը կար մինչև յԱղեքսանդրիա, և ով որ ծովային երկայն ճանապարհորդութիւն չէ ըրած՝ ցամաքին յարգը աղէկ չի գիտեր։ Քնոյ հանգիստն իսկ զոհելով, Անգղիացի բարեկամիս հրաւէրքին կը հետևիմ։ Նաւը կը թողունք ու քաղքին լուիկ փողոցաց մէջէն դէպ 'ի պարիսպ-

ները կը յառաջենք, ուսկից համբաւը կ'ըսէ թէ տեսարանն ամենագեղեցիկ է։ Քանի որ փողոցէ փողոց կ'անցնինք՝ ոչ շարժմունք կը նշմարենք, ոչ ձայն և ոչ իսկ լոյս. կարծես մեռելոց քաղաք մըն է. Հազիւ երբեք մէկի մը կը հանդիպինք որ արտորնօք տունը կը դառնայ ու փողոցին լռութիւնը կը կտրէ։ Տեղ անդ գինետանց ցած դռները միայն բաց կան, ուսկից երգեցող արբեցողի մը խզզուկ ձայնը կը լսուի։ Մենք քաղքին ծայրերը հասնելով աղտեղի ու գար-



Դադար շոգենաւու նաւրդէպ Պրինտիզի.

չահոտ փողոցաց մէջէն՝ վերջապէս ընդարձակը կ'ելլենք, ետևնուս թողլով քաղքին բնակութեանց մթին ստուերները։ Զուարթ և անզբաղ սրտիւ պարիսպներուն ճամբան կը բռնենք. ոչ մարդոյ ներկայութիւն կը տեսնենք, ոչ շան մը հաչիւնը կը լսենք. կարծես փոթորիկ մը անցեր և բոլոր կենդանութիւնը քշեր տարեր է այն տեղերէն։ Միայն մեր զուարթ խօսակցութիւնն այն լռութեան միակերպութիւնը կը

կոտրէ. բայց յանկարծ մարդու մը սուր ձայնը, ինչպէս թէ գերեզմանի մը մէջէն ելլէր, կը լսուի։ Մըտքերնիս մեր խօսակցութեան բոլորովին կեդրոնացած՝ չենք անդրադառնար իսկզբան, ու ծիծաղելով մեր քայլը յառաջ կը տանինք։ Յանկարծ նոյն ձայնը միւսանգամ կը լսուի, և աւելի սպառնալից կը հնչէ,

— Քի վա լա՛ ?



Քի վա լա՛ ?

Քի վա լա՛, կ՚ըսեմ զարմացմամբ. և այն ձայնին միտքս ինչպէս երազէ մը կ՚արթննայ. աչքերս դէպ ՚ի ձայնին եկած տեղը կ՚ուղղեմ. իբր հարիւր քայլ մեզմէ անդին խոշոր չէնք մը կար։ Իսկոյն ընկերոջս թևէն բռնելով,

— Ետ դառնանք, կ՚ըսեմ. ձայնը զինուորի մը ձայն է. և եթէ երկու քայլ աւելի առնունք՝ տարակոյս չկայ որ կամ ես և կամ դու նաւ դառնալ պիտոր չկարենանք։

— Հա՛պա, կը պատասխանէ ընկերս, Իտալացիներէն ի՞նչ կը վախնաս. առաջ երթանք։

— Ոչ միայն Իտալացիներէն կը վախնամ, կ՚ըսեմ, ազգը լսելէս յետոյ, հապա ինչևիցէ մարդէ։ Նշան է

թէ պաշտօնեայ պահապան մըն է, և օրինաց ուժը ձեռքին մէջն է. վայ անոր որ չհնազանդի. երրորդ ազդը հրացանի մը գնտակն է, որ անհնազանդը կամ անզգոյշը գետին կրնայ տառկեցնել:

— Է՛հ, մի վախնար, կը դառնար ըսել ընկերս, գիս յառաջ մղելով. հետս եկուր, առաջ երթանք:

Բայց ես ստէպ պատահած դէպքերէն խրատեալ՝ կը հակառակէի՛ ու կը բռնադատէի՛ ընկերս ետ դառնալու: Կը պատմէի՛ իրեն վերջի օրերը պատահած դէպք մը: Մութ ու փոթորկալից գիշեր մըն էր. հայր և որդի, գիւղաբնակք, երկայն ճամբորդութենէ մը տուն դառնալու կ'ըլլային, և դեռ ևս չէին հեռու իրենց տունէն, երբ չար բաղդը ուզեց որ պահապան զինուորի մը միջոցին մէջէն անցնին: Պահապանը կենալու հրամանը ձայնեց. բայց գիշերուան մթութիւնը ու հողմին սաստկութիւնը անոր ձայնին ազդը խեղդեցին, և գիւղացիք անկասկած ճամբանին յառաջ վարեցին: Ցանկարծ հրացանի մը թնդիւնը լսուեցաւ: Իսկոյն իբր շանթահար մէկը գետին կործանեցաւ, միւսը զարհուրած՝ դաշտերուն մէջէն անհետացաւ: Հրացանին ազդը լսելով զինուորները դուրս վազեցին եղածը հասկնալու. տեսնեն ծերունի գեղացի մը արիւնաթաթախ՝ իր մախաղին վրայ ինկած դիակնացած էր:

Մինչդեռ ես այս դէպքս պատմելու հետ էի, անդիէն մէկ մը հազալով ու խուլ արձըկելով դէպ 'ի մեզի կու գար: Մեզի մերձենալով հետաքրքրաբար՝ բարի իրիկուն մաղթեց: Զինուորական մըն էր որ այն ինչ գինետունը թողած՝ զինուորանոցը կը փութար: Կարծես յանկարծական դողէ բռնուած էր, այնպէս գինւոյ զօրութենէն երկու ոտից վրայ կ'երերար. խղդուկ ձայնն անստոյգ շեշտիւ կ'ելլէր այն ոգիքներէ

խոնջ կոկորդին մէջէն։ Ես անոր հետաքրքրութիւնը գոհացնել ուզելով՝ նպատակնիս ու եղածը պատմեցի. որու վրայ,

— Հետս եկէք, ըսաւ, ու ես զձեզ անցունեմ։ Ես ալ զինուորանոց կ՚երթամ, որովհետեւ ժամը տասնին մօտ է, եւ եթէ ժամանակին ներս չգտնուինք՝ պատժոյ տակ կ՚իյնանք։

Կը հաւանինք ըսածին ու խօսակցելով հետ կը դառնանք. բայց ունայն տեղ. պահապան զինուորին ձայնը միւսանգամ զամենս կ՚արձանացնէ. եւ մեր տասնապետն առ վայր մը զմեզ թողլով՝ պահապան զինուորին կ՚երթայ։ Քիչ մը ետքը մեզի գալով,

— Կը ցաւիմ, կ՚ըսէ, պատուէրը խստիւ արգելած է որ ոչ ոք զինուորանոցին քովէն անցնի։ Ուրիշ շրջանով կրնաք պարիսպները երթալ։

Այս ըսելով մեզի ձեռք կ՚երկնցընէ, գիշեր բարի կը մաղթէ, եւ ուրիշ ընկեր զինուորի մը հետ, որ քան զինքն երբերուն էր ոտիւք, դէպ 'ի զինուորանոց կը մեկնի։ Մենք ալ հակառակ ուղղութեամբ քաղքին ճամբան կը բռնենք։

— Է՜հ, կ՚ըսէր ընկերս, եթէ պահապանն ալ այս երկուքիս պէս ըլլայ, գնտակէն վախնալու չէր։

Դէպ 'ի նաւը կը դառնանք, սակայն քալելու ախորժը զմեզ դէպ յառաջ կը մղէ։ Դաշտավայրի մը մէջէն այգեստանայ ճամբան կը բռնենք։ Հսկայակերպ աշօեաք, որ այգեստանաց ցանկապատը կը կազմեն, ոչ միայն օդոյ բարեխառնութիւնը կը զգացընեն՝ այլ եւ երկրին բարեբերութիւնը։ Աստիս անդին գիւղական տնակք եւ ամարանոցք մութին ու խոր լռութեան մէջ թաղուած կ՚երեւան, եւ միայն պայծառ լուսինն իր փայլովը զանոնք կը լուսաւորէ։ Խոշոր աշօեաի մը մօտենալով տերեւ մը կը կտրենք, բարձր քան զմեր

հասակ, և իբր յաղթանակ ուսերնիս առած՝ շոգենաւ կը բերենք. ժամը կէս գիշերուան մօտ էր։ Աշխոյժ գործունէութիւն մը կը տիրէր շոգենաւին վրայ. կառատորմը հնդկային ճանապարհորդք բերած էր, հանդերձ հնդկային թղթատարաւ, գրեաթէ երկու հարիւր պարկ։ Անըմբռնալի շարժմունք մըն էր ամեն դին. վրան, վարը, հասարակաց սրահը, խղիկները, ամեն դին նորեկ մարդոց բազմութեամբ ու երթևեկով կ'աղմկէր։ Ժամը մէկին լաւագոյն համարեցայ առանձնանալ և ասպարէզը նոր եկողաց թողուլ։

## ԴԷՊ Ի ՍՈՒԷԶ

Լուսացաւ երկուշաբթին, նմանապէս ջինջ ու պայծառ երկինքով և անդորր օդով. և մենք ժամը ութին խարիսխը առինք դէպ 'ի Ափրիկէ նաւարկելով։ Կարօտագին աչօք կը դիտէինք Իտալիոյ ափունքը՝ որ հետզհետէ մշուշին մէջ կը թաղուէին. մինչև բոլորովին անհետանալով՝ ինքզինքնիս դարձեալ անհուն ջրի բոլորշիի մը մէջ գտանք։

Կամաց կամաց նաւուն վրան բազմութիւնը սկսաւ խռնիլ. նոր եկաւորք ուղևորաց թիւը յիսունէ հարիւր քսան հանեցին, և թուոյն հետ շարժմունքը, շնկոցը և աղաղակը բազմացուցին. մանաւանդ որ շատը մէկմէկու ծանօթ ու բարեկամ՝ իրարու գալուստը ուրախութեամբ կ'ողջունէին։ Նախաճաշն որ քիչ ատենէն զամենը հասարակաց սրահը հրաւիրեց՝ զանծանօթս ալ իրարու մերձեցնելով՝ ընկերութեան մէջ չափաւոր մտերմութեան կապ մը մտուց։

Բայց այնուհետև նաւուն վրայ ժուռ գալ անկարելի էր. միջոցը ոչ միայն մարդոց բազմութեամբ գրաւեալ էր, այլ և կերպ կերպ բազմոցներով, ամեն

ձևով և ամեն մեծութեամբ։ Բօնֆորդէպլը քան զամեն վայելչութիւն նախադաս է։ Մարդավարութիւն ու վայելչութիւն պահանջել կամ՝ ցուցընել՝ ունայն զգուշութիւն է։ Թէպէտ տեղին հասարակաց, բայց այնպէս կը վարի իւրաքանչիւր ոք ինչպէս թէ իւր յատուկ տունն ու սենեակն ըլլար։ Թիկնաթոռոց վրայ անտարբերաբար երկնցած գրքերնին ձեռքերնին մտադիւրութեամբ կը կարդան. քովերնէն թէ անցնիս, և ոչ աչքերնին կը վերցնեն։ Երկայն ընթերցմունքէն ձանձրացողք երազոց աշխարհը կը պտըտին։ Ծովային երկար ճամբորդութեան ձանձրոյթը՝ միայն փորձ եղողը գիտէ։ Կերակրոյ ժամանակն է միայն որ քիչ մը զուարթութիւն կը ձգէ ընկերութեան մէջ. ասդիս անդին փոքր փոքր ժողովակք կը ձևանան, ընկերական խօսակցութեանց զուարթութիւնն ու ծիծաղը կը լսուի, և այնպէս միակերպութիւնը քիչ մը կը կոտրի։

Այսպէս գեղեցիկ արևով և խաղաղաբար դէպ յարևելս կ՚արշաւենք. յաջող հողմիկ մը որ մեզի ընկերել ուզեր էր, մեր նաւուն երկու առագաստը պարզել կու տայ։ Նաւերնիս յիրաւի մեղմիկ մը ասդիս անդին կը ճօճայ, բայց վրանիս այլայլութիւն չիբերեր, թէպէտ և ոմանք ծովային շարժման շատ դիւրազգած են։ Ծովուն անակնկալ անդորրութիւնը զամենը ուրախ կը բռնէ. ի՞նչպէս բարեբաղդ կը համարէինք զմեզ որ անցեալ օրերու օդոց խառնակութիւնն՝ այժմեան յաջող անդորրութիւնը պատրաստեր էր ՚ի նպաստ մեզ. և այս անդորրութիւնս մեր վարթնուլն ու ննջելը միօրինակ ողջունելով, չորրորդ օրը առաւօտանց կանուխ Աղեքսանդրիոյ նաւահանգիստը մտանք։ Մտից դժուարութիւնը մեր ընթացքը կը ծանրացնէ, և մինչդեռ կը յառաջենք՝ ա-

րեւը քաղքին ետեւէն բարձրանալով զմեզ կ'ողջունէ։ Նաւահանգիստն անտառախիտ մը կը նմանի, այնպէս հոծ են շոգենաւուց և վաճառական առագաստաւորաց կայմք։ Երկնից մութ կապոյտը զջուրը աւելի մութ ներկելով աւելի ևս կը սաստկացնէ արեւուն ճառագայթից փայլը՝ որ մեր ձախակողմը եղած սպիտակորմ ընդարձակ շէնքէ մը կը ցոլանայ։ Աջակողմնիս երկայն աւազուտ լեզուի մը վրայ արմաւեննեաց ցիրուցան խմբիկները կը նշմարեմ. Հողմաշարժ ջաղցաց բազմութիւնը՝ մարդուս ներկայութիւնը աւետելով՝ այն տեղւոյն ամայութիւնը կը մեղմեն։

Դէպ 'ի շոգեկառաց կայարանը կը խոտորինք, ուր քիչ առեննէ շոգենաւը կը դադարի։ Արդէն իսկ քաղքէն բազմագոյն նաւակք դէպ 'ի մեզ կը թիավարեն, և հազիւ թէ շոգենաւուն սանդուղը վար կ'իջեցնեն՝ բազմութիւն մը պանդոկի սպասաւորաց վեր կը յարձըկին։ Բայց մտից առջին պահապան նաւաստին բռնցի ու մղմամբ զանոնք ետ կը մղէ։ Արևելեան իրաւասութեան պատճառաբանութիւն, որու ընդդիմադրել կարելի չէ։ Եթէ այս բռնի մղումը 'ի գործ չդրուի, հարիւրաւոր կասկածելի դիմօք մարդիկ նաւուն ամեն կողմը կը թափանցեն։ Սևադէմ, մերկալանջ, անկօշիկ, աղտեղի և պատառատուն հանդերձիւք, աւելի գողի երևոյթ ունին քան թէ յատուկ սպասաւորի։ Բայց և այնպէս որչափ կը խորշի կիրթ մարդն այն անյարդար զգեստներով, այրած դէմքերով, համարձակ և անկիրթ շարժմունքներով մարդիկներէն, չի կրնար չնշմարել այն դէմքերուն վրայ մտաւոր կարողութեան մը զօրաւոր ձիրքը, որ նիւթական պիտոյից աշխոյժ գործունէութեամբ մը կ'արտայայտի։ Բայց հանդերձ իրենց այս բնութեան ձիրք

և կարողութեամբ, այս ազգը կարծես ոչ երբեք քաղաքական յառաջադիմութեան մը ճամբան մտնելու բարեբաղդութիւնը պիտի ունենայ։ Ինչ էին առջի օրը գրեթէ նոյն են այսօր, և կարծես նոյն ըլլալու են վաղն ալ, թէպէտ և Եգիպտոսի տիրելէն ետքը շատ մը դար անցած է։ Շատ է իրենց՝ ծխաքարշը և սուրճը և անկիւն մը ուր քաշուին և անհոգ թմրին. քաղաքական յառաջադիմութեան փառասիրութիւնը կարծես անզօր է սրտերնին ջերմացնելու։ Առհասարակ որուն երեսն որ նայիմ՝ անգութ և խաբեբայ սրտի մը դրոշմը կը նշմարեմ։

Այս խորհրդածութիւններով նաւուն վրայ կեցած կը դիտեմ այն խառնիճաղանճին աղմկիլը, մինչև տէրութեան պաշտօնէից գալստեամբը թոյլ կ՚ըլլուի նաւորդացս ցամաք ելլել։ Բայց հոս ուրիշ տեսարան մը կը բացուի առջևնիս. բազմութիւն մը աղտեղի փերեզակաց կը պատեն զմեզ, կերպ կերպ ձեռագործ ու բարիք առաջարկելով մեզի. և մենք անգէտք գնոց՝ տասնապատիկ կը տուժենք այն խաբեբայից անոյշ խօսքերովը ու յամառ յարատևութեամբը։

Կահուց փոխադրութիւնը 'ի շոգեկառս երկու ժամ կ՚երկարէ. այնուհետև ամենքս կառատորմը նստած՝ շոգեմուղը մշակեալ դաշտօրէից մէջէն զմեզ կը վարէ. ի՜նչպէս տարբեր կը գտնենք այն երկիրը մեր բնակեալ երկիրներէն։ Տերևաթափ բնութիւն մը թողեր էինք ետևնուս՝ ձմեռնային թմրութեան մէջ ընկղմած. իսկ հոս գարնանային գեղեցկութիւնը կը գտնենք։ Ի՜նչ բարեբեր երկիր ըլլալու է, և ի՜նչ աւելի արդիւնք չի կրնար պտղաբերել քաղաքակիրթ վարչութեան մը գաւազանին տակ։ Այն զբօսալի տեսարանն ալ աւելի զմայլելի կ՚ընեն արմաւենեաց

բազմութիւնը, որոնք բարձր բնոյ մը ծայրէն հովանաձև պարզելով իրենց տերևները՝ քաղցր պտուղներու ողկոյզները երկանց արդիւնք կը ցուցնեն։ Բոլոր ճամբանիս, մինչև անապատին սահմանը, ուր բնութիւնը ամայութեան կերպարանք մը պիտոր ըղգենու, մշակութեան գոյնզգոյն հանդերձիւք զարդարեալ է։ Եգիպտացորենոյն արտորայք յղփացեալ կ՚երևին առատութեան արդեամբք. բամբակենւոյն գեղեցկութիւնը հարկ է մշակին ճոխութիւն խոստանայ. Թող ուրիշ բերքեր՝ որովք պէսպէս երանգօք զարդարեալ են այն դաշտերը։ Եւ սակայն այն բարեբեր երկրին առատ բարեօքը հանդերձ՝ բնիկը ժերկ ու բոպիկ կը քալէ ինչպէս ապարդիւն ստրուկ։ Երբ գիւղօրէից առջևէն կ՚անցնինք՝ ամայութեան զզացմունքէն սրտերնիս կը սղմուի։ Կոյտ մը են հողակոյտից՝ որ աւելի անբանից գոմք կը նմանին քան թէ մարդկային բնակարանք։ Անապատն իսկ՝ իւր յատուկ ահաւորութեամբը՝ քերթողական մասնաւոր զգացմունք մը կը տպաւորէ խորհող սրտին, որ իւր քաղցրութիւնն ունի. բայց այս բնկաց բնակարանաց երևութէն իսկ քաղաքակիրթ մարդուն սիրտը կը ճմլի։ Եթէ մարդկային պատիւը շատ վար զարնել չըլլար, տեսնելով թէ ինչպէս գրաստը բուռ մը խոտի համար կ՚աշխատի, ըսելու էր նաև այս բնկացս համար՝ թէ մասնաւոր ցեղի կենդանիք են, որ միայն պատառ մը հացի համար գրաստաբար կը տաժանին։

Աչքս անխոնջ պատուհանէն դուրս յառած՝ կը դիտեմ այն տեսարանը՝ որ շարունակ վայրկեանէ վայրկեան կը փոփոխի. ժամը կը յառաջէ և մենք կայարանէ կայարան կը սրանանք. արևը կը սկսի խոնարհիլ և մշակաց ցիրուցան բազմութիւնը կամաց կամաց դաշտերը թողլով՝ դէպ իրենց բնակարանները

կ'ուղևորին։ Մենք ալ ժամը հնգին անապատին սահմանը կը հասնինք։

Եթէ դիպի երբեք որ այս էջերս կարդացող մահկանացու մը նոյն այս ճամբով Աղեքսանդրիայէն Սուէզ երթայ, կը մաղթեմ իրեն որ ճամբուն կայարանները գտնուող ճաշատանց չկարօտի։ Գլխաւորաբար Յոյնք ըլլալով անոնք որ այս գործիս կը զբաղին, գիտեն առթէն կեղեքիչ եղանակաւ օգուտ քաղել։

Բայց որչափ անոնք վրաս գէշ տպաւորութիւն ըրին, նոյնչափ գթոյ ազդեցութեամբ լցուեցաւ սիրտըս՝ խօսակցելով անապատին մէջ բնակող ուրիշ ճաշանոցի մը տիրոջը հետ։ Մինչդեռ մենք մշակութեան յետին նշխարքը ետևնիս թողած՝ անհուն աւազուտի մը մէջէն կը սրանանք, ուր ոչ ծառ, ոչ տունկ, ոչ դալարւոյ հետք, ոչ թռչնոյ և ոչ իսկ ինչևիցէ կենսունակ էակի մը ներկայութիւնը կը նըշմարուի, յանկարծ մութին մէջէն կայարանի մը լոյսերը կը նշմարենք՝ ուր կառատորմը կը դադարի։ Թմրութիւններս սթափելու նպատակաւ վար կ'իջնենք ու ճաշատան մը մեծ դրահը կը մտնենք. և մինչդեռ ամենքը պատրաստեալ ուտելեաց պատիւ կ'ընեն, աչքս ասդիս անդին կը շրջեցնեմ. պատերը վերէն 'ի վար ծեփուած են պատկերներով. այլ և այլ սեղաններու վրայ ալ շարուած կան ժըժմակներ, տունկեր, քարացմունք, և այլ հետաքրքրական բաներ, որ գիտութեան և ուսումնական կրթութեան մը ճաշակին վկայ են։ Հետաքրքրութենէ շարժեալ կը մերձենամ տանտիրոջը, որ վաթսնամեայ մէկ մը կը թուի, ու հայրենիքը կը հարցնեմ։ — «Բիզացի եմ, կը պատասխանէ, և 'ի բազմաց հետէ այս կողմերս գաղթած եմ. հոս բոլոր ընտանիքս մէկիկ մէկիկ ես թաղեր

եմ. կը մնամ ես միայն, և գուցէ ինծի ալ նոյն ճամբան երթալու շատ ժամանակ չէ մնացեր։ Մինակ եւրոպացի այս գրեթէ վայրենի բնակաց մէջ մնացած՝ և ոչ իսկ մէկ մը կրցեր եմ գտնել որու ձեռընտուութեանը վրայ վստահիմ. աշխատութեանս օգուտն իսկ անանկ ոչինչ է, որ և ոչ հայրենիքս դառնալու կարող եմ. այսուհետև ալ ժամանակը ուշ է, և ամենայն յոյս հատեալ»։

Այն տեղւոյն պանդոկապետաց մէջէն միայն այս գտեր եմ պարկեշտ ու խղճմտանքաւոր. մանաւանդ իր դրիցը նայելով որ անապատին մեռելութեան մէջ թաղուած՝ իր արուեստին պիտոյքը հարկ էր տաժանմամբ հեռաւոր տեղերէ բերել. որ ուրիշ բան ընել չէր՝ եթէ ոչ կեանքը մաշեցընել քիչ մը դրամոյ շահուն համար։

Կը թողունք այս կայարանն ալ և դարձեալ անապատին ճամբան կը բռնենք, և հուսկ ուրեմն կը հասնինք Սուէզի ծովափունքը։ Գիշերը յառաջացեր էր ու պայծառ լուսնին ճառագայթներն երերալով կը շողշողային անդորր ջրոյն երեսէն։ Կարծես տեղին թափուր էր մարդուս ներկայութենէն. բայց հազիւ թէ կառաստորմը կայարանը կը դադարի, տղայոց ու փերեզակաց աղաղակները մեր չորս կողմը կը պատեն։ Պտուղ, ծխախոտ, ճանապարհորդութեան թիկնաթոռ, և այլ պէսպէս առարկաներ մեր հաճոյից կ'առաջարկուին։ Եւ այնպէս բռնադատ են առաջարկութիւնք՝ որ ձեռքերնէն ազատելու համար հարկ է գնել ու գոհացնել։

Եւ մինչդեռ կահուց փոխադրութիւնը կ'ըլլուի 'ի շոգենաւ, որ զմեզ 'ի Հնդիկս պիտոր տանի և անմիջապէս ծովափը խարիսխ ձգած է, կը փութամ նաւուն գործակատարին տոմսակս ներկայացնելու իբ-

դիկս պահանջելով. բայց քան զիս յառաջ այլք փութացեր գրաւեր են զայն. և ինձ տագնապի ժամ մը կը սկսի. մանաւանդ որ գործակատարը խիստ մէկ մը կ'երևնայ։ Սակայն բարեկամ անգղիացիս, ընկերութեան պաշտօնեայն, ինձ յօգնութիւն հասնելով ամեն դժուարութիւն կը հարթէ. և գործակատարն, թէպէտ դժկամակ, կը բռնադատի ինձ առանձին ընդարձակ խցիկ մը տալու, ուր ողջոյն ճամբուն երկայնութեամբը ուստեք անձկութիւն կրելու չեմ։ Ժամը երկուք էր կէս գիշերէն ետքը երբ անկողնիկս ամփոփուեցայ. անմիջապէս լսեմ շոգենաւուն խարիսխը վեր առին. պատուհանիկէս գլուխս դուրս երկընցնելով՝ տեսնեմ հեզիկ հեզիկ արծաթափայլ Սուէզի ծոցին անդորր ջուրը կը ճեղքէինք. ինձ խոստանալով երկրորդ օրը Կարմիր ծովուն երեսը ողջունելու՝ ամփոփուեցայ միւսանգամ։ Սակայն ցորեկուան այլայլութիւններէն ու տպաւորութիւններէն միտքս ամբոխեալ՝ 'ի զուր այն նեղ անկողնիկին վրայ քնոյ հանգիստը կը բնտռեմ։ Ներքին ջերմիս զով խնդրելով՝ դարձեալ գլուխս պատուհանիկէն դուրս կ'երկընցնեմ ու մտախորհ այն երկնից ջինջ կամարը կը զննեմ, ուսկից անհամար աստղերու մէջէն լուսինն իւր փայլը կը սփռէ մեղմաշարժ ջրին վրայ։ Ի՜նչ օրհնած երկիրներ ըլլալու են, կ'ըսեմ, ասոնք ուր երկինքն այսպէս զուարթ կը ժպտի և բարեխառնութիւնն այսպէս մեղմ կ'ազդէ։ Ես վեց օրուան մէջ գրեթէ սառնամանիքներէն՝ գարնանային ջերմութեան փոխադրուեր էի և յի թոքով այն անոյշ օդը կը ծծէի։ Եւ այնպէս զովացած նորէն ամփոփուեցայ՝ խորին թմրութեան մը մէջ ընկղմելով. ուստի հանեց զիս առաւօտեան սպասաւորին ձայնն, ըստ սովորութեան սուրճը հրամցնելով։ Արևն սկսեր էր հորիզոնը զարդարել. աճապարելով նաւուն վրան ելայ։

## ԱՆԴՐ ՔԱՆ ԶՍՈՒԷԶ

*Ի՜նչպէս գեղեցիկ էր արեւուն փայլը քանի որ հետզհետէ հորիզոնէն վեր կը բարձրանար։ Նաւերնիս Սուէզի ծոցէն դէպ 'ի Կարմիր ծովը դիմելով՝ Ափրիկէի և Արաբիոյ ծովափանց մէջէն կը սրանար։ Ցամաք աջ դին, ցամաք ձախ դին, որոց վրայ կարծես յերկնից ոսկեայ շամանդաղ կ'իջնար։ Բայց հետզհետէ որ արեւը կը սկսէր բարձրանալ, ջերմութիւնն ալ նոյնին համեմատութեամբ կ'աճէր ու նեղացուցիչ կ'ըլլար։*

*Մինչդեռ նաւուն վրայ ժուռ կու գամ, Հնդիկ Բարսիի մը աչքերը վրաս կը յառին. քովէն կ'անցնիմ իբր անուշադիր, բայց ինձ կ'երևի թէ ծանօթ ոմն է։ Եւ յիրաւի ամսօք յառաջ տեսնուած էինք յԵւրոպա, մինչդեռ իւր երկու ընկերօք կը ճանապարհորդէր. և հիմա առանց գիտնալու մէկտեղ ծովը կը կտրէինք դէպ 'ի Պոմպէյ իւր հայրենիքը։ Տեսութիւննիս ախորժելի եղաւ և խօսակցութիւննիս այլ և այլ նիւթոց վրայ շրջելով՝ կրօնականն ալ խառնուեցաւ։ Քրիստոնէից փառահեղ եկեղեցիք զարմացուցեր էին զիրենք. անոր համար կը տրտնջէին որ իրենք 'ի Պոմպէյ չունէին ոչ գեղեցկաշէն տաճար և ոչ կրօնից տեղեակ քուրմ. որովհետև իրենք Զրադաշտի հետևողք էին։ Ես ասոնց ծանօթութիւնը ինձ օգտեցընելով՝ Պոմպէյի վրայ պէտք ունեցած տեղեկութիւններս քաղեցի։*

*Յաջող հողմիկ անդորր ծովուն ուղեկից ըլլալով՝ նաւերնուս առագաստը կը պարզենք աւելի երագելով մեր ընթացքը. առ ժամ երկոտասան ու կէս մղոն կը քալենք։ Պայծառ արևը կապուտ երկնքին*

վրայէն իւր շրջանը կը լրացնէ, ցորեկուան նեղացուցիչ ջերմութիւնը քիչ մը նուազեցնելով։ Աստեղազարդ երկինքը նորէն վրանիս կը պարզի. և երբ հանգստեան ժամը կը մօտենայ ու խղիկս կը քաշուիմ, ջերմութիւնը անանկ անհանդուրժելի կը գըտնեմ որ հանգիստ ննջելը անկարելի է։ Ի զուր սալասաւորը պատուհանիկը այնպէս պատրաստեր է որ բաց մնալով՝ խղիկը հով մտցնէ. ջերմութիւնը նոյնպէս նեղացուցիչ է և ննջելն անհնարին։ Եւ սակայն Կարմիր ծովը, դէպ՝ ուր կը դիմենք և վաղիւ պիտոր հասնինք, աւելի ջերմութիւն կը սպառնայ մեզի։ Վասն զի Ափրիկէի և Արաբիոյ անապատք իրենց ջերմութիւնը այն ծովուն վրայ կարծես կը կեդրոնացնեն։

Սուէզի ծոցին երկայնութեամբը միշտ երկուստեք մեզի ցամաքը կ'ընկերանայ։ Բայց երբ այն կը լմննայ ու հեռաւոր հորիզոնի մը մէջ կը թաղուի, դարձեալ մենք զմեզ ընդարձակ կապտագոյն հեղանիւթ բոլորշիի մը կեդրոնը կը գտնենք։ Հեռու հեռու, ծովուն խորերը յանկարծ կղզիացեալ աշտարակ մը առջևնիս կ'ելլէ. ի՞նչ է այն կէտն ահագին ծովատարած բոլորակի մը մէջ. և կա՞յ արդեօք այնպիսի աշխարհքէս մոռացեալ մտաւոր էակ մը որ այն լըքեալ տեղը բնակի։ Կայ յիրաւի արաբացի ընտանիք մը՝ որ այն անձուկ միայնարանը կը ճգնի, երկնից ու ծովուն հետ միայն խօսակից։ Փարոս մըն է այս զոր Եգիպտոսի վարչութիւնը Սուէզի ծոցին հանդէպ կանգներ է 'ի զգուշութիւն նաւարկութեան. որովհետև Կարմիր ծովը մեծամեծ վտանգներ կը սպառնայ իր անհամար ժայռուտներովը։ Այս գոգցես մարդկութենէ մոռացեալ բնակչաց կերակուրն ու ջուրն՝ երեք ամիս մէյմը Եգիպտոսի տէրութիւնը կը ղրկէ։

Այս վերջապահ պահապանէն անդին մերթ ընդ մերթ շոգենաւ մը կը նշմարենք, որ կամ քովերնէս քերելով դէպ յԵւրոպ կը դիմէ, և կամ քան զմեզ երագաքայլ՝ ՚ի բացուստ կը քալէ ու դէպ ՚ի Հընդկային ջրերը կը սրանայ։ Կղզիացեալ ապառաժք ըստէպ ստէպ ծովուն մէջէն առանձնացեալ կը կանգնին. անոնց ամայութեան տխուր տեսքը թէպէտ սրտերնիս կը ճմլէ, բայց մի և նոյն ատեն մեզի կ՚ազդէ՝ թէ սպառիչ տարեր մը սպառնալիքէն դեռ ես մեզի ապաստանարան մը կը մնայ։ Սակայն տօթը երթալով կը սաստկանայ, և Րէօմիւրի ջերմաչափը, զոր յԵւրոպ վեց աստիճանի թողեր էի, հոս քսանուչորս և քսանուվեց կը նշանէ. ապացոյց թէ երկու կողմի անապատք իրենց կրակը անգործ չեն պահեր։ Ցորեկ ատեն ջերմութենէն ընչասպառ՝ ունայն տեղ նաւուն մէջ զովացուցիչ տեղուանք կը փնտռենք. գիշերուան կաթոգին կը սպասենք, յուսով որ մեզի զով բերէ. բայց ՚ի զուր. հնոցի մը կեդրոնը կը գըտնուինք։ Գիշերը կը հասնի ու ջերմութիւնը նովին սաստկութեամբ զմեզ կը հարուածէ. և առաւել ես մեր անձուկ խցիկին մէջ, ուր պատուհանն իսկ բաց բռնելը օգուտ չունի։ Ի վերայ այսր ամենայնի առջենիս հինգ անսպառ օրուան միջոց կայ մինչև ցԱտեն, ուր կը յուսանք զովագոյն օդոյ մը շունչը ծծելու։

## ԿԱՐՄԻՐ ԾՈՎ

Եւ այսպէս հուսկ ուրեմն այն պատմական ծովուն մէջ ենք որ շատ ՚ի հնուց հռչակաւոր եղած է, և որու յիշատակն ՚ի տղայութենէ տպաւորած են դպրոցք մեր մտաց մէջ։ Այս ընդարձակածաւալ ջրերն են՝ որ երբեմն հրաշագործ գաւազանի մը հարուածով ճեղ-

քուեր բացուեր են․ և պարիսպ ձևացնելով երկուստեք, ճամբայ տուեր են անհամար փախստէից բանակին։ Նոյն այս ծոցն է, որ նոյն գաւազանին հնազանդ, իւր ջրերը միւսանգամ դարձուցեր կարկառեր է, յանդուգն և անխոհեմ բռնաւորի մը անհուն բանակին իբր մահու անկողին ծառայելով։ Երևակայութեամբ վերանալով, կարծես այն խաղուն ջրին տակէն, հազարաւոր տարի ետքն ալ, այն Եգիպտացւոց ամբոխը կը նշմարեմ, որ խառն՝ ձիոց, կառաց ու կահուց բազմութեանը հետ՝ տագնապին ետքի օրհասը կը կրեն։

Ձախակողմն որ աչքս դարձնեմ՝ ինձ Սինա լեռը կը ցուցնեն, ուսկից պատգամախօս Մովսէսն իջեր է, անօրէն ժողովրդեան մը օրէնսդիր ըլլալու։ Քիչ մը անդին կ՚ըսեն Մէքքէի ծովափանց դիմացէն պիտոր անցնինք, ուր տեղը լրացաւ աշխարհքիս մեծ մասի մը ճակատագիրն։ Որչափ յիշատակներ չեն զարթուցաներ մտացս այս տեղեաց ծովափունքը, որ լի են ցցուեալ հրաբղխային կոնիւք, քառաժայռիւք, կղզեակներով և բուսոյ յատակներով։

Ի հիւսիսակողմն Սուէզի անցքը իբր մուտք կը ծառայէ այս ծովուս․ 'ի հարաւակողմն Պապ-էլ-Մանտէպ նեղուցն ելից դուռ է դէպ 'ի Հնդկային Ովկիանոս։ Երկայն բարակ ջրանցք մըն է 2250 հազարամեդր երկայնութեամբ․ իր լայնութիւնն է 320 հազարամեդր ամենէն լայն տեղ։ Մէջ տեղը խորք ձևացած է 700էն մինչև 1000 մեդր խորութեամբ․ անոր համար ալ ջրին գոյնը մէջ տեղը մութ կապոյտ է, մինչդեռ եզերքներն են կանաչ։

Ճանապարհորդ անփորձ՝ կը յուսայի այնպիսի նշան գտնել՝ որ ստուգաբանէր անոր կարմիր անունն․ ունայն ակնկալութիւն․ կը յառաջենք ու կը յառաջենք,

և միշտ այն ջուրը մութ կապոյտ ներկած է։ Կը խուզեմ հասկընալ թէ ուսկի՞ց առաջ եկած ըլլայ այդ անուանակոչութիւնը, սակայն ոչ ոք կրնայ ստուգիւ զուրցել. են որ կ'ըսեն թէ Ափսինիոյ ծովափունքը կարմիր մարմարիոնի լեռներ կան, և անկէց ծովս ալ իւր անուանակոչութիւնը առած է։ Են դարձեալ այլք՝ որ կ'ըսեն թէ ծովուս երեսը տեղ տեղ կարմիր մեծ արատներ կը ձևանան, պատճառեալ ծովային սէզերէ ու մանրադիտական կենդանաբոյսերէ. որոնք պատճառ առեալ՝ մարդս կարմիր անունը տուեր է ծովուս։

Ծովափանց քարաժայռից և սաստիկ հողմոց պատճառաւ առագաստաւոր նաւուց նաւարկութիւնն շատ վտանգաւոր է. իսկ տաքութիւնը շատ անգամ մահացոյժ կ'ըլլայ։ Հին ատեն, և գլխաւորապէս Պտղոմեանց ու Հռոմայեցւոց ժամանակը, վաճառականութիւնը շատ բանուկ էր այս ծովուս մէջ. բայց Բարեյուսոյ գլխուն անցքը գտնուելէն ետքը շատ ինկաւ։ Յետոյ ապա Աղեքսանդրիայէն դէպ 'ի Սուէզ երկաթուղին շինուելով նորէն սկսաւ ծաղկիլ, և ևս առաւել աճեցաւ Սուէզի պարանոցին անցքը բացուելէն ետև։

## ԾՈՎՈՒՆ ՓՈՍՓՈՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Երեկոյեան ճաշէն ետքը նաւուն որմը յեց՝ ծովուն փոսփորականութիւնը դիտելով կը զբօսնուի։ Երկայն ընդարձակ շոգենաւունիս երագաքար սրանալով բռնութեամբ ջուրը կը ճեղքէր՝ լայն ակօս մը բանալով, որու փրփրացող եզերքն նաւուն խելաց ետևէն՝ իրարու վրայ կը կործանին, կը տարածուին, ալէտանջ ու սպիտակ շաւիղ մը հորդելով, որ հետ-

զհետէ ծովուն երեսին հետ հարթելով հեռաւորութեան մէջ կ'անհետանայ։ Սակայն այն փրփուրն որ ջրերուն ճեղքուելովը կը ձեւանայ, փափուկ բրդի ծուէնք կը նմանի. ուր աւելի կ'եռան փրփուրք՝ կարծես ծծմբոյ թեթեւ բոցեր են՝ որ ալիքներուն երեսէն կը քերեն, կ'երթան և կ'անհետանան. մերթ ընդ մերթ վառ կայծեր յուզեալ ալեաց մէջէն վեր կ'ոստնուն ու կը սպառին, ինչպէս կրակէ թիթղունք որ ծովը գային մարէին։ Երբեմն ալ աւելի վառ կայտիռք ծովու մութ ալեաց մէջէն սրանալով՝ փայլակի երեւոյթ կու տան երբ ամպերը ակօսաբեկ կը կտրէ։ Եւ հուսկ ուրեմն այն ընդարձակ ծփալից արահետը որ շոգենաւը իր ետեւէն կը ձգէ, բոլորովին լուսաւոր կը փոխուի կ'ըլլայ. նմանութիւն մը բերելով երկնից ծիր կաթին, որ սպիտակ, նուրբ ու նօսր, պայծառ գիշերները՝ երկնից մութ կապուտին միակերպութիւնը կը կտրէ։ Եւ ինչպէս երկնից միգամածից մէջէն փայլփլող աստեղք կը տեսնուին, այսպէս ալ այն ծփալից արահետին մէջէն կը տեսնես որ կայծեր կը կայտռեն. ծովու ոգիք են կ'ըսես որ իրենց գիշերային զբօսանաց համար զանոնք կը վառեն։ Մեծ տեսարան մըն է ծովու փոսփորականութիւնը, ու մեզի կրնայ գաղափար մը տալ թէ ինչ կեանքով ոգեւորեալ են այն ջրոց անդունդք որ կարծես մշտնջենաւոր լռութեան ու մահու արքունիք են։ Ովկիանոսի ջրին ամեն մէկ կաթիլը փոքր աշխարհք մըն է, ուր հազարաւոր կենսունակ էակք կը շարժին ու կ'ապրին։ Քադրըֆաժ գաղղիացի հռչակաւոր բնագէտը, որ ծովու փոսփորականութեանը վրայ ճառած է, հարիւր տեսակ փոսփորական կենդանիք կը թուէ, որոց մեծագոյն մասը ծովային են։ Շատ անգամ իր փորձերուն մէջ աւելի լուսաւոր երեւցած ծովու ջրէն

առնըլով՝ մէջը բազմաթիւ մանր հազիւ տեսանելի կենդանիներ գտած էր․ անանկ նուրբ ու մանր որ հինգ հատը ետևէ ետև շարելով հազիւ կրնային մէկ հազարորդամետր ձևացնել։ Եւ այն մանր ոգևորեալ էակները կրակէ բոցեր ու կայծեր կը ցատկեցնէին․ որոնք դարձեալ, մանրադիտին տակ, ուրիշ բազմաթիւ մանր կայծերու կը լուծուէին։ Կաթիլ մը ջրի մէջ կրնայ բազմաթիւ խումբ մը բովանդակուիլ։

Գիտողութեամբ ստուգուած է որ այս փոսփորականութիւնը պատճառող բիւրաւոր էակները միայն ծովուն երեսը փոսփորական են․ անոր համար ալ ծովը հանդարտ եղած ժամանակն է որ երեսը կը ժողովին․ իսկ ալէկոծութեան ատեն անոր խորքը կ՚իջնան կը ցրուին։ Եւ ոչ թէ իրենց փոսփորականութեան գոյնը ջրին կը հաղորդեն զանիկայ լուսաւոր ընելով, ինչպէս կրնայ կարծուիլ, հապա նոյն իսկ իրենք են որ փոսփորականութեամբ կը լուսաւորին և իրենց բազմութեամբը ջուրը լուսաւոր կ՚երևցընեն։ Անոր համար ալ մինչ ջուրը գրգռուելով չշարժի՝ լուսաւոր չերևնար․ վասն զի այն ատեն այն մանր կենդանիք խռովելով կը գրգռուին, կը շարժին, կը յուզին, և այն շարժմունքներէն յառաջ կու գայ փոսփորականութիւնն։ Եւ որչափ աւելի սաստիկ ըլլայ ջրին յուզումը՝ այնչափ աւելի սաստիկ կ՚ըլլայ փոսփորականութեան երևոյթը։ Ուստի և մեր շոգենաւուն ետևէն ձևացած արահետն՝ աւելի սաստիկ լուսաւոր էր անմիջապէս անուին մօտ, ուր ջուրը աւելի բռնութեամբ զարնուելով կոյտ մը փրփուր կը ձևացընէր։ Յաջող պարագաներով ծովու փոսփորականութիւնը դիտելը մեծ զուարճութիւն մըն է և գըլխաւորապէս հասարակածին տակ։ Բուռ մը աւազ ծովը նետէ, կարծես կրակէ անձրև մըն է ծովը կը

թափի. քար մը նետէ, կարծես արծըթէ գունտ մըն է որ բազմաթիւ արծըթէ օղեր կը բաժնուի, որք ընդարձակելով կը բազմանան. գաւազանով մը ջուրը ճեղքէ, կարծես որ արծըթէ թիթեղ մը ծովուն երեսը կը ծփայ: Այն ջրէն ամանի մը մէջ առ ու յետոյ ծանր ծանր թափէ. կարծես արծըթէ գեղեցիկ հոսանք մըն է որ ծովուն երեսը ծեծելով փրփրացող արծըթէ պղպջակներ կը հանէ: Եթէ ջրին մէջ ձեռքդ մխես ու հանես, լուսաւոր դուրս կ՚ելլէ արծաթ կաթեցնելով. անանկ երեւոյթ մը կը բերեն վար ինկած կաթիլներն: Ծովեզերքը թաց աւազին վրայ քալելով կրակէ հետք կը տպաւորես. և փափորական բիւրաւոր միջատք որ քու մերձաւորութենէդ զարհուրած կը փախչին ծովուն խորը ապաւինելու՝ փախչող կայծերու երամի կը նմանին: Հնդկային ովկիանոսին մէջ խոշոր ձուկ մը կայ՝ կլոր ձեւով, վեց ոտք երկայնութեամբ, զոր ռամիկը լուսնին նմանցուցած է և փեկպեա կը կոչէ. այս կենդանւոյս սկաւառակը լայն ու լուսաւոր է, անանկ որ լուսնին նման ծովուն երեսը վսեմաբար կը քալէ: Կը յուսայի որ ճամբուս վրայ այս տեսարանիս հանդիպէի, սակայն յոյսս դերեւ ելաւ:

Ուրիշ մէկ տեսարան մըն ալ ցորեկին կու տային մեզի թռչող ձկունք: Շոգենաւին աղմկէն յուզեալ, ինչպէս թռչնոց երամք՝ վեր կը նետուէին անհամար բազմութեամբ, և ծիծառներու պէս թռչելով ծովուն երեսէն՝ ահագին միջոցներ կը կտրէին նորէն ծովը ընկղմելով: Անանկ թռչնոյ գաղափար կու տան որ անփորձ եղողը խաբուելով կրնայ համարել թէ ցամաքը մօտ է: Այս ձկանց մեծութիւնը տասնըհինգէ մինչև քսան հարիւրորդամետր է. պոչը, կուրծը ու կռնակը մութ կապոյտ է, իսկ մարմնոյն միւս

մասերն երկնագոյն և արծաթագոյն։ Ճանապարհորդք շատ խօսած են այս զարմանալի տեսարանին վրայ, ու կ'ըսեն նաև թէ երբեմն այնպէս բարձր կ'ելլեն օդու մէջ որ կու գան նաւուն վրայ կ'իյնան։ Մեզի օրերով տևեց այս տեսարանս, բայց նաւուն վրայ անանկ հիւր մը ունենալու բարեբաղդութիւնը չունեցանք։



*Թռչող ձուկը.*

### ՃԱՄԲՈՒՆ ԵՐԿԱՅՆՈՒԹԵԱՆ ՁԱՆՁՐՈՅԹԸ

Մեր ճամբորդութիւնն երթալով ձանձրալի միակերպութեան մ'ը երևոյթը կ'առնուր։ Իւրաքանչիւր ոք ինչպէս կրնար՝ այն օրերուն ձանձրալի երկայնութիւնը կը ջանար կտրել. որք առ հասարակ թիկնաթոռոց վրայ տարածուած ընթերցմամբ կը զբաղէին. տիկնայք խումբ խումբ բաժնուած՝ ձեռագործներով ու փոփոխ խօսակցութեամբ կը զբօսնուին։ Օրուան հինգ կերակրոյ միջոցները յայժ'ի դէպ

կու գային այն երկայնաձիգ օրերուն միակերպութեան ձանձրութիւնը կոտրելու. գործունէութիւն մը կը տիրէր այն ատեն. և գլխաւորապէս տեսակ տեսակ գինիները զամենը ջերմացնելով խօսակցութիւնն ու ծիծաղն աւելի կը կարմրցնէին այն արիւնային երեսները։ Բայց ճաշի սրահին մէջ ջերմութիւնը անտանելի էր. անոր սաստկութիւնը կոտրելու համար հնդկային բանգայն 'ի կիր կ'առնուին։ Բանգայն երկայն գաւազան մըն է ձեղունէն լարով առկախեալ. գաւազանին վրայէն հաստ լաթ մը անցուցած է, գոգցես յիսուն հարիւրորդամետր լայն, զոր լարի մը միջոցաւ հնդիկ տղայք անդադար կը շարժեն։ Դատապարտելոց կը նմանէին այն սևամորթք. ոչ միայն կերակրոյ ատեն հարկ է համբերութեամբ և անդադար բանգայն շարժեն, հապա նաև ինչ և իցէ ատեն որ ճանապարհորդ մը սրահը նստած նամակագրութեան, ընթերցման և կամ խաղի կը զբաղի, որ է ըսել գրեթէ ողջոյն օրը։

Շոգենաւնիս 'Նոյայ տապանը կը նմանէր. ոչ միայն այլ և այլ երկրի մարդոց կերպարանքը կը տեսնէի, հապա նաև խումբ մը չորքոտանիք ալ մեզի հետ կը ճանապարհորդէին. թող բազմաթիւ թռչնականաց ազգը։ Այծ, ոչխար, կով, հաւ, սագ, բադ և աղաւնի, առ հասարակ իրենց որոշեալ խորշերն ունէին։ Իսկ շուներն անոնցմէ աւելի բարեբաղդ՝ ազատ էին ոչ միայն նաւուն ամեն դին իրենց հանգիստը բնտռելու՝ այլ նաև անկասկած և աներկիւղ դէպ 'ի նոր երկիրներ ճանապարհորդելու։ Ընդհակառակն միւս փակեալ դժբաղդներուն ոսկորները՝ հետզհետէ որ կը յառաջէին՝ մաքուր մաքուր ծովու ալեաց վըրայ կը ցանէինք։ Խեղճերը շատ բան ալ չունէին տալու շատակեր անգղիացւոյն. ծովային օդը զա-

նոնք ալ կը վատուժցընէ և գրեթէ կաշի ոսկոր կը դարձընէ։

Բայց սեղաններու որչափ և առատութեամբ յարդարեալ է, Իտալիա վարժող մէկ քանի ճանապարհորդացս անգղիական կերակրեղինաց պատրաստութիւնն և ստէպ կրկնութիւնն անհանդուրժելի կ՚ըլլայ։ Կամ այն է որ խոհակերն անհմուտ է, և կամ այն է որ անգղիական խոհակերոցը հնարագիտութիւն չունի։ Քանի մը օրէ ետքը միակերպութիւնը կը սկսի մեր ստամոքսը ձանձրացնել, և այնուհետև գրեթէ զզուանօք կը նայինք այն կիսահում մսի կտորներու որ անփոփոխ ամեն օր առջևնիս կը դրուին։ Թող որ այն սաստիկ համեմք զոր 'ի կիր կ՚առնուն՝ մեր անփորձ քիմքը ու ստամոքսը կ՚այլայլեն։

Մերթ կերակրով, մերթ հանգստեամբ և մերթ ընթերցմամբ՝ օրերնիս անայլայլակ կ՚անցնին. ցորեկը գիշերուան կը յաջորդէ, գիշերը ցորեկուան, և մենք օր աւուր դէպ յԱտեն կը յառաջենք։ Անընակ ապառաժուտք կղզիացեալ ջրին մէջէն ցցուելով՝ բոլոր այն ծովուն երկայնութիւնը կը զարդարեն. վայրք անջրդիք, չորացեալք, ամայիք. ներքին հրաբղխային սաստիկ բռնութեան մը ծնունդք. տեղիք մոռացեալք յամենայն կենաց։ Հոն ոչ ծառ կը տեսնես, ոչ կանաչութեան շիղ մը, ոչ թռչնոյ, ոչ միջատի և ոչ ինչ և իցէ կենսունակ էակի ներկայութիւնը։ Կարծես բնութիւն գլխովին մոռացեալ է զանոնք. երկինք իսկ իրենց ջրոյ օրհնութիւնը կը զլանան անոնց. և այնպէս անբեր, անջրդի ու հրակէզ, մշտընջենաւոր արևու մը սպառիչ ճառագայթից ներքև կը տոչորին. պարզ անոնց տեսքը մարդու սիրտը կը ճմլէ։ Կարծես նաւորդաց իբր սպառնալիք միայն դըրուած են հոն. ոմանց կողից վրայ դեռ ևս կը

տեսնուին նաւաբեկեալ շոգենաւուց կմախքն՝ որ օր աւուր ալեաց ընդհարելով կտոր կտոր կը ցրուին։ Գլխաւորապէս ապառաժուտ մը, որու քովէն կ՚անցնինք, ուշադրութիւննիս կը գրգռէ. ամենուն աչքը դէպ անոր կ՚ուղղի. կարծես փոքր նաւահանգիստ մըն է, այնպէս բազմաթիւ կ՚երևան կայմք. բայց ամէնը նաւաբեկեալ շոգենաւուց կը վերաբերին. ասոնց ոմանք կողմնակի կործանած են և ահագին կողերնին ջրին երեսէն դուրս կը ցցուի. այլոց խել-



Նաւաբեկեալ նաւք.

քը կիսով չափ ջրի տակ է, մինչդեռ նաւառաջքը ցամաքին վրայ բռնութեամբ նետուած. ուրիշի մը միայն կէսը կը տեսնուի, միւս կէսը ջրին զարնելէն բացուած ջախջախած է։ Ժայռուտին ետևի կողմը դեռ ևս ուրիշ կայմք կը տեսնուին, յորս է և մէկ մեծ քառակայմ շոգենաւ մը։ Ասոնք ամէնը գիշերային մթութենէն մոլորեալ՝ այն ժայռուտին վրայ գնացեր խորտակուեր են։ Եւ ո՛րչափ տագնապ չեն արդեօք

պատճառաւ այն ճանապարհորդաց՝ որ նոյն շոգենաւներով նաւարկելու դժբաղդութիւնը ունեցեր են: Սակայն Կարմիր ծովուն շոգենաւուց երթևեկը այնչափ յաճախ է որ ժայռուտից վրայ ապաւինելոյ փրկութիւնը ապահով է: Որ չըլլար որ գոնէ գոնէ քանիւ չափ շոգենաւք չանցնին այն ժայռուտին առջևէն:

Մեր ուղևորութեան հինգերորդ օրը այս ժայռուտից ներկայութիւնը կը բաղմանայ, և մինչդեռ մենք



Անգղիական դրօշակը.

երկու հանդիպակաց ժայռից մէջէն կ'անցնինք, անգղիական դրօշակը ժայռի մը գլխէն վրայէն մեզ կ'ողջունէ: Զարմանալի՜ անտարան. մարդկային շահախրութիւնը նոյն իսկ այն ամայի և անջրդի վայրը, յորմէ գոզցես ամենայն կեանք կը խորշի, իրեն լաստափայտ ապաւինի ընտրած է: Այս ամայութեան գլխէն վրայէն անգղիական թնդանօթք ոչ միայն իրենց ազգային վաճառաշահութիւնը կ'ապահով-

ցընեն, այլ ողջոյն իսկ Կարմիր ծովուն կը տիրեն։ Այն ճամբէն ոչ ոք կարող է անցնիլ եթէ ոչ ժայռուտին տերանց թոյլտուութեամբը։ Բայց այն ամայի անբեր ժայռին վրայ բնակող պահապանաց կեանքն ի՛նչպէս արդեօք անբերելի ըլլալու է. երեք ամիս անընդհատ բանտարկուած են այն բացարձակ առանձնութեանը մէջ ճգնելու. որմէ ետեւ այլք կու գան զիրենք կը փոխանակեն։ Չեմ տարակուսիր ըսել որ այն տառապելոց համար նաւու մը անցքը հրեշտակ Աստուծոյ երեւնալու է. անանկ մխիթարութիւն է բանի առանձնութեան մէջ հեռաւոր բնակարանի մը տեսութիւնն իսկ, ուր մարդ կը դուշակէ ուրիշ մարդոյ մը ներկայութիւնը։ Մեզի իսկ նոյն տպաւորութիւնը կ'ընէր, մեր այս սակաւօրեայ ճամբորդութեան մէջ, ամեն անգամուն որ շոգենաւ մը կը տեսնէինք՝ որ 'ի հանդիպոյ անցնելով յԵւրոպա կ'ուղեւորէր. մեր ողջունից լաւելայն հառաչը 'ի սրտէ անոր կ'ուղղէինք տանել առ սիրելիս։

Սակայն նաւերնիս երթալով կը յառաջէ, եւ միայն քանի մը ժամ կը մնայ յԱտեն հասնելու։ Հոն նաւերնիս առ վայր մը պիտոր դադարի թղթակցութիւնը յանձնելու, թղթակցութիւնն առնլու, եւ նաեւ ճանապարհորդք՝ եթէ գան։ Ափսոս որ գիշերը կը մերձենայ, եւ մենք չկարենանք պիտի գաղափար առնուլ ոչ մօտից եւ ոչ իսկ տեղւոյն ընդհանուր տեսարանին։

Ծոցը դեռ չմնցած՝ գահագլուխ նաւապետը հրաժեշտ կ'առնաւ ու նաւակամուրջը կ'ելլէ մօտից հըսկելու։ Ես իսկ անոր հետոցը ետեւէն կ'երթամ, յուսով գոնէ տեղւոյն փոքր գաղափար մը առնլու. բայց յոյսս 'ի գերեւ կ'ելլէ. վասն զի թէ եւ երկինքն աստեղազարդ է, մութ ժայռուտէ մը զատ ուրիշ բան չեմ կրնար տեսնալ։ Միայն բազմաթիւ նա-

ւուց լոյսերը կը տեսնեմ, որ ջրին մէջէն անդրադառնալով՝ այն մթութեան միակերպութիւնը կը կոտրեն։ Քիչ ատենէ թիոց աղմուկը նաւակաց բազմութեան մը ներկայութիւնը կը զգացունեն. և շուտ մը ընկաց աղաղակներով նաւերնուս չորս կողմը կը լեցուի։ Հազիւ թէ շոգենաւուն սանդուղը վար կ՚երկընցընեն, բազմութիւն մը ձառագիմաց, աղտեղի և պատառատուն հանդերձներով, վեր կը յարձկին։ Հարկ է որ մոլից առջին կեցող պաշտօնեայն մղելով ու հարուածելով՝ այն յարձակումը զսպէ ու ներս մտնալը խափանէ. մինչև որ հուսկ ուրեմն դիւր ըլլալով թոյլ կը տրուի ոմանց վաճառականաց նաւը մըտնել։ Ասոնց վաճառաշահութեան նիւթը ջայլամի փետուրներն են, զորոնք գլխաւորաբար Արաբիոյ ներսերէն կը ժողովեն ու հոս կը բերեն, եւրոպացի ճանապարհորդաց մատուցանելով։ Բայց՝ այս մարդոց արտաքին երևոյթն՝ անանկ աղտեղի ու քստմնելի է, որ ճանապարհորդաց շատը բռնութեամբ քովերնէն մէկդի կը վարեն։ Կարծեմ նոյն գիշերը այն ողորմելիներուն առուտուրը շատ վատ եղած ըլլալու է, վասն զի շատ մը ատեն նաւուն մէջ ասդիս անդին նետուելէն յետոյ, վերջապէս լքեալ երևութիւ ելան մեկնեցան։ Գիշերը յառաջացած էր երբ սաստիկ աղմուկ մը զգացուց մեզի որ նաւուն խարիսխը վեր կ՚առնուին, և այնուհետև ընթացքնիս դէպ յարաբական ծովը կ՚առնուինք։

## Ի ԾՈՎՆ ԱՐԱԲԱԿԱՆ

Առաւօտն որ պատուհանիկիս մէջէն արեւուն ճառագայթները թափանցեց, գիս ալ թմրութենէս սթափեցուց նաւուն վրան փութացնելով։ Արդէն քանի մը անգղիացի ճանապարհորդք, ըստ իրենց այլանդակ սովորութեան, բոպիկ ոտք ու մերկ սրունքներով և սենեկի հագուստով վեր վար ժուռ կուգային առաւօտեան օդը ծծելու։ Մինչդեռ ես արաբական ծովուն տեսքը վայելելու նպատակաւ թիկնաթոռս շտկելու հետ եմ՝ արեւելից հակառակ, ժուռ եկողաց մէկը քովէս քերելով գլխ կը մղէ, և աթոռը ձեռքէս ձգել տալով անտարբերաբար կ՚անցնի կ՚երթայ ինչպէս թէ անպատշաճութիւն մը եղած չըլլար։ Աչքս վերցընեմ՝ տեսնեմ՝ կաղն ՚ի կաղ մէկ մը՝ վերացեալ ըղեղով՝ թեւին տակը գիրք մը դրած մէկզի կը հեռանար։ Համարեալ քերթող մըն էր, Լորտ Պայրընի հանճարոյն նախանձորդ, և այն գիրքն որ թեւին տակը կը կրէր, իւր ինքնագիր քերթութիւնքն էին։ Ամբարտաւան վարմունքը զինքն ընկերութեան այնչափ անհաճոյ ըրած էր, որ Լորտ Պայրընի քարիքաղիւր մակդիրը իրեն դրած էին։ Ես խակ առջի օրուընէն սկսած էի անիկէ զգուշանալ, և ամեն անգամուն որ կաղն ՚ի կաղ ու գոռոզաբար քովէս կ՚անցնէր առանց հայեացքի մը գիս արժանի համարելու, կը ջանայի ինքզինքս այնպէս փոքրկացնելով ունայնացընել՝ որ իւր մեծութեան վսեմութիւնը առաւել ևս դուրս ցատկէ։ Թէպէտ հոշմ՝ աջ ոտք, այլ այնպէս վարպետութեամբ կեղծէր՝ որ մասնաւոր ուշ դնելու էր կաղութիւնը հասկընալու։ Ու իւր այս

բնական պակասութիւնը քանի մը տարիէ 'ի վեր ստացած էր, ըստ վկայելոյ անգղիացի բարեկամիս։

Իւր հայրը ճոխ պանրավաճառ մըն էր որ իր բոլոր հարստութիւնը Գաղղիա հաւաքած էր և միշտ 'ի Բարիզ կը բնակէր։ Գաղղիոյ վերջի խռովութեան ժամանակ իւր անգղիական ազգութիւնը բաւական ապահովութիւն համարելով չուզեց տեղափոխել. կը կարծէր թէ անգղիացի ըլլալը բաւական էր զինքը ամեն վտանգէ ազատ պահելու։ Բայց չէր մտածեր որ անանկ անկանոն ժամանակ սրիկաներէ իրաւունք պահանջել ունայն է։

Օր մըն ալ, անանկ մէկ օր մը ինչպէս շատ եղան 'ի Բարիզ, մեծ աղմուկ մը կը լսուէր այն փողոցը ուր էր իւր բնակարանը. պատուհանէն գլուխը կարկառ՝ բազմութիւն մը կը տեսնէ որ դէպ 'ի վար կ'իջնէր կապեալ մէկ մը քշելով ու հարուածելով։ Այն մէկը դժբաղդաբար ծանօթ էր իրեն։ Թշնամութենէ գրգռեալ կամ թէ կերպարանաց երեւութէն լրտես համարելով սրիկքորը վրան ձեռք դրած էր։ Այն տեսարանին առջև պանրավաճառին սիրտը չի դիմանար, և առանց վտանգէն երկիւղ մը զգալու՝ փողոցը կը յարձըկի և ուժգնակի բազմութիւնը պատռելով իւր բարեկամին վրայ կը վազէ ու սրիկքորին ձեռքէն ազատել կը ճգնի։ Բայց ունայն տեղ կը ջանայ համոզել բազմութիւնը՝ թէ ըրածնին անիրաւ էր։ Այն կատղեալ ամբոխը հեռի էր խօսքի ունկնդիր ըլլալէ. և փոխանակ կապեալը արձըկելու՝ ազատարարին վրայ ալ ձեռք կը դնէ։ Իւր բարեկամն է, կ'ըսէին, ուրեմն ուրիշ լրտես մըն ալ այս է. տեսնենք ինչպէս կը մեռնին լրտեսք։

Այս ըսելով երկուքն ալ կապած կը քաշեն հրապարակ մը կը տանին. ու հոն ծառի մը կապած հրա-

ցանաւորք դիմացնին կը կանգնին։ Ունայն տեղ անգղիացին իւր ազգութիւնը օգնութիւն կը կոչէ. ունայն տեղ այն կատաղեալ սինլքորին սպառնալիք կը քարոզէ։ Տասը հրացանից ձայնը յանկարծ օդը կը թնդացնէ, և այն երկու չարաբաղդք, իբր չանթահար, գետին կը կործանին։

Երիտասարդս որ պատուհանէն ուշադիր հօրը բռնուիլը տեսեր էր, գորովանաց զգացմունքէ մը մղեալ ուզեր էր ետևէն օգնութեան վազել. բայց սանդղէն 'ի վար թաւալով ինկած ժամանակը՝ յանկարծ քայլը մոլորելով գետինը կործաներ էր կրունկը ջախջախելով։ Եւ որչափ միրաբուժք ջանացեր էին դարմանել՝ ճար չէր եղած կաղութեան դէմ առնըլու։ Կ'երևար որ այս իւր պակասութիւնը կսկիծ էր իրեն. և թէպէտ կը զգուշանար ընկերութեան առջին կաղ երևնալու, սակայն մինակութեան մէջ կը դիտէի որ ինքզինքը առանձին համարելով՝ թոյլ կու տար պակասաւոր ոտքին անբռնադատ կաղալու։

Այն ձախորդութենէն ետքը ինքզինքը տուած էր քերթութեան ու ճանապարհորդութեանց։ Եւ որովհետև բնութեամբ գոռոզ էր, իւր տաղանդին վրայ կը սնապարծէր։ Լորտ Պայրընի նախանձորդ՝ անոր գրուածոց վրայ գովեստի չէր խօսեր։ Իր առջին չկար հեղինակ մը որ կատարելութիւն մը ունենար. իրմէն դուրս ուրիշ կատարեալ մարդ չէր տեսներ։ Երբեմն վէճի ժամանակ անանկ յամառ պարծենկոտութեամբ իւր կարծիքը կը պնդէր, որ ամենուն տհաճելի եղած էր, որով և ընկերութիւնն ընդհանրապէս իրմէն կը խորշէր։ Ես ալ սակայն զինքը տեսնելով կը խորհրդածէի մտօքս, ըսելով թէ գիտութեան մեծագոյն շնորհքը խոնարհամտութիւնն է։

Թիկնաթոռս կը շարժեմ, ու մեղմիկ մը նստելով՝ այն անհուն ծովուն վրայ աչքս կը նետեմ։ Արաբական ծովն էինք ու նաւերնիս շեշտակի դէպ 'ի Պոմպէյ կը սրանար։ Կարմիր ծովուն նեղացուցիչ ջերմութիւնը դադրեր էր գեղեցիկ զովութեան մը տեղիք տալով։ Կարծես մայիս ամիսն էր իր պայծառ երկինքովն ու զովութեամբը։ Ծովն իսկ իւր գոյնը փոխեր էր. մութ կապուտէն, ինչպէս էր 'ի Կարմիր ծով, մութ կանաչ դարձեր եղեր էր։ Հովը մեզի հակառակ կը շնչէր փոքր ալիքներ յարուցանելով ու նաւուն երերական շարժմունք մը տպաւորելով. սակայն մենք կարծես որ ալ ծովու վարժած ենք, և այն շարժմունքը վրանիս այլայլութիւն չի բերեր. թէպէտ և ուղևորաց մէջ կան որ ծովու շարժման դիւրազգած են։ Այն վէտ վէտ ալիքները կը դիտեմ՝ զորոնք հովը մեզի դէմ հարուածելով կը փրփրացընէ։ Մեզմէ հեռու դլփիններու խումբերը ցատկոտելով կը զբօսնուն։ Անոնցմէ անդին ուրիշ խումբ մը մեծամարմին ձկանց, գոգցես շոգենաւին աղմկէն զարհուրած կը փախչին. մարսուինաց խումբ մըն է ըստ ասելոյ նաւավարաց։ Մէկ քանի ծիծառք դեռ ևս մեզի մինչև ցայսր կ'ուղեկցին, և 'ի հեռուստ մէկ քանի ծովային թռչունք մերթ օդը կը բարձրանան, և մերթ ջուրը կ'ընկղմին։

Այսպէս կ'երթանք մեր ուղևորութեան օրերը համրելով, և անհամբերաբար այն ժամուն սպասելով որ ոտքերնիս ցամաքը պիտոր դնենք։ Օրերուն միակերպութիւնը նաւուն վրայ կեանքը հետզհետէ աւելի ձանձրալի կ'ընէ, զոր կ'առաւելու ճամբուն երկայնութեան մտածութիւնը։ Տասուերեք օր էր որ Վենետիկոյ լճէն ելեր էի, սիրտս լի երկիւղիւ կարելու ծովուց խիթալի վտանգներէն. և սակայն ծովը միշտ

խաղաղութեամբ մեզի ցայսր առաջնորդներ էր։ Ո՞ւր էին այն ալէկոծութիւնք, այն նաւաբեկութիւնք, և այն բազմադիմի վտանգք ու փորձանք որոց վրայ այնչափ լսած ու կարդացած էի։

— Սա ծովն որ այսպէս անդորր կը տեսնես հիմա, ըսաւ անգղիացի բարեկամս, աթոռը ինծի մօտեցնելով, շատ անգամ կտրեր անցեր եմ, տարւոյն այլ և այլ ժամանակ։ Այս ամիսներուս միշտ այսպէս անդորր է, որով և նաւարկութեան ալ հաշտ։ Բայց երկու տարի յառաջ յուլիս ամսուն որ անկէց անցայ յոյժ այլապէս էր. իմ կենացս մէջ անանկ ծով մը չեմ յիշեր։ Սուէզ թողեր էինք Կարմիր ծովը կըտրելով՝ առանց մասնաւոր դիպուածի, եթէ ոչ փոքր դէպքի մը որ նաւուն վրայ հանդիպեցաւ։ Տխուր ու մաղձոտ կերպարանօք մէկ մը մեզի ուղեկից էր. լուելեայն կերակուրի կը նստէր ու միշտ առանձին քաշուելով՝ մերթ ընթերցմամբ կը զբաղէր, և աւելի ստէպ ծովուն վրայ աչքը յառեալ՝ մտածութեան մը մէջ ընկղմած կ'երևար։ Ոչ ոք իմացած էր իր ինչ ըլլալը, և ոչ ինչ մտածութենէ նեղուիլը։ Խցիկիս քովը ուրիշ միանկողին խցիկ մը կար զոր իրեն սեփականած էր։ Երբեմն գիշերը արթննալով ինձ կ'երևար թէ այն մարդը առանձին կը խօսակցէր. բայց չէի կրնար գուշակել թէ միտքը ձախորդ մտածութենէ մը բռնուած էր։

Ճամբայ ելլելնուս չորրորդ օրը յանկարծ կէս գիշերուընէ ետքը աղմկէ մը կ'արթըննամ. ուշ կը դնեմ, լսեմ՝ քովի խցիկէս մերթ ընդ մերթ խղդուկ ձայներ կ'ելլէին։ Համարեցայ թէ նոյն մարդը նորէն իւր առանձնախօսութիւնները ունէր. անփոյթ՝ նորէն ընկողմանեցայ։ Առաւօտը երբ սպասաւորը խցիկս մըտաւ, զուրցեցի մարդուն գիշերային առանձնախօ-

սութիւնները։ Բայց ինչպէս ապուշ մնացի երբ ապասաւորն ինձ լուր տուաւ թէ կէս ժամ յառաջ անոր խցիկը մտնելով զինքը ձեղունէն շուանով մը կախած գտած էր։ Այն ատեն հասկցայ որ անոր լռութիւնը յուսահատութիւնն էր։ Անոր դիակը լաթի մը մէջ կարելով առանց մասնաւոր արարողութեան ծովը նետեցին։

Իսկ մենք ճամբանիս շարունակեցինք. անցանք Պապ-էլ-Մանտէպ նեղուցը, մտանք այս արաբական ծովը, որ հիմա այսպէս անդորր կը տեսնես. անցաւ առաջին օրը ու ծովը սկսաւ այլայլութեան նշաններ տալ։ Երկնից վրայ սկսան ամպեր դիզուիլ, մութ ու սպառնալից ամպեր՝ որ սրտերնիս երկիւղ կը ձգէին։ Ութսունի չափ ճանապարհորդք էինք, յորս կային բազում տիկնայք։ Հետզհետէ որ ծովը կը սաստկանար ու նաւերնիս տատանմամբ կը ճօճար, ճանապարհորդք ծովէն բռնուած իրենց խցիկները կը քաշուէին, ու կամաց կամաց բոլոր նաւուն վրայ միայնութիւն տիրեց։ Արդէն իսկ հողմն ու շարժմունքն անանկ անհանդուրժելի էր՝ որ վրան կենալ չէր հնար առանց վտանգի։ Ուստի և դռները գոցուեցան, և ամենքս կամ խցիկնիս և կամ հասարակաց սրահը փակուած մնացինք։ Խեղդուկ տաք մը տիրեց տեղւոյն՝ ամենուն տանջանքը սաստկացնելով, և ողբ ու հառաչանք ու երկիւղի աղաղակներ միայն կը լսուէին. եթէ նաւապետներէն մէկը մէջտեղը տեսնուէր՝ ամենը վրան կը թափէին լուր հարցնելու։

Երեկոյացաւ օրն և օրուան հետ հողմին սաստկութիւնն ալ բռնացաւ. Նաւը խաղալիկ մը կ'երեւար. մերթ վեր վեր կը բարձրանար ու յանկարծ, ինչպէս թէ երկինքէն իջնար, ահագին բարձրութենէն վար կը կործանէր։ Կը ճռնչար ամեն դիէն, և ալեաց բռն-

նութենէն զարնուելով՝ կարծես կողերը բանալ կ'ուզէր։ Ահաւոր ալիքները փրփրադէզ կուտակ կուտակ գլորելով նաւուն վրայէն կ'անցնէին. ինչ որ վրան կը գտնուէր աւլելով հետերնին ծովը կը տանէին։ Այնուհետեւ աւելի զգուշութեան համար դրան առջեւը պահապան դրուեցաւ որ ոչ ոք դուրս ելլէ վտանգէն։ Ամենուս սիրտը երկիւղը տիրած էր. թէ արդեօք փրկուի՞նք պիտի, ամէնքս իրարու կը հարցնէինք։

Նաւապետը նաւակամրջին վրայ ինքզինքը կապած նաւուն կը զգուշանար. սակայն որչափ կրակը սաստկացնելով զնաւը յառաջելու կը բռնադատէր, նոյնչափ անիկայ՝ հակառակ հովուն բռնութենէն ծանր կը քալէր։ Այն խռովեալ անհուն ծովուն վրայ մի միայն մենք էինք, և այն լաստափայտը որ մի միայն մեր ապաւէնն էր, կրնար վայրկեանէ վայրկեան ջրասուզիլ։ Ցամաքի և ոչ հետք կ'երեւային. կատաղեալ ծովն ու մութ սպառնալից ամպերը իրարու խառնուած կարծես վայրկեանէ վայրկեան մեզ կլլել կ'ուզէին։ Այն տագնապին մէջ ժամանակը յաւիտենականութիւն կ'երեւար. ժամերը չէին անցներ, օրը ոչ երբեք կը գիշերանար. գիշերուան խոր մութն ալ արհաւիրքներով վրայ կը հասնէր. քունը հատած էր աչքերնէս։ Նաւուն պաշտօնէից որ անձկանօք կը հարցնէինք թէ յոյս կա՞ր փրկուելու, անոնք մեզի քաջալերութիւն տալ ուզելով՝ ժպիտ երես կը պատասխանէին. բայց ով որ աղէկ ուշ կը դնէր կ'իմանար անոնց սրտին տագնապը։

Այսպէս անցաւ առաջին ու երկրորդ օրը. երբ յանկարծ իրիկուան դէմ՝ ահաւոր աղմկէ մը ամէնքս վեր ցատկեցինք. համարեցանք թէ վերջի վայրկեաննիս հասեր էր ու նաւը խորտակած ծովը կ'ընկըղմէինք։ Ամենքս դէպ 'ի դուռ յարձկեցանք. սակայն

դուռը ամուր մը գոց էր ու բռնադատել չէր ըլլար։ Տիկնայց սարսափի աղաղակք տեղը թնդացուցին, ամենուն երեսը տագնապով լի էր։ Զիրար կը մղէին, կ'աղաղակէին որ դռները բացուին ու թող տրուի իրենց դուրս բաց օդը ելլել. կենաց պահպանութեան բնազդումը համարել կու տար իրենց որ այն փակա-րանէն դուրս կարելի էր փրկութիւն գտնալ։ Եւ այս-պէս մինչ ամենը յուսահատ այն տեղէն դուրս նե-տուիլ կ'ուզէին, նաւապետներէն մէկը երեւնալով զա-մենը հանդարտեցնել կ'աշխատէր. այն ահաւոր աղ-մուկը նաւուն մեծ կայմին խորտակուելէն պատճա-ռեալ էր։ Հարկ էր որ ոչ ոք դուրս ելլէր, ծովը բանի մը չէր խնայեր, ամենայն ինչ կ'առնէր կը տանէր. և այն հարուածին հետ երկու նաւաստիք ալ անհե-տացած էին ալեաց մէջ կորսուելով։

Գիշերը հասաւ ու ծովն աւելի սաստկացաւ. Նաւը փոքր փետուր մը կը նմանէր, և երբ խաղալիք ալիքէ ալիք կը նետուէր։ Ոտքի վրայ կենալն անկարելի էր։ Շատերը քաշած նեղութենէն իրենք իրենցմէ դուրս ելած՝ մահը լաւագոյն կը համարէին։ Իմ՝ սիրտս կը մարմրէր. գլուխս կը դառնար. Ներսիդիս ա՜լ նիւթ չէր մնացեր. եթէ նաւը պատռէր ընկղմէինք ալ փոյթս չէր. ոչ աշխարհք ոչ կեանք այնուհետեւ կը հոգայի. երբ անդգայ, երբ ապուշ մէկ մը եղեր էի։ Միայն մէկ ներքին մղում՝ մը զիս այն փակեալ խղճուկ տեղէն դուրս ելլել կը յորդորէր. կուրծքս նոր ու զով օդու կարօտ կը զգար։ Բայց նաւուն դուռը կղպած էր, առջեւն ալ պահապան մը կեցած։ Սանդղին ոտքը նստած երբ անդգայ՝ մի միայն մտածութիւնս միջոց գտնալ ու դուրս նետուիլն էր. այն տեղւոյն խղճուկ օդէն թոքերս ամուր մը կը ճմլէին։ Երկար գիշեր մը վերջապէս անցաւ ու լուսցաւ երրորդ օրը՝ առանց

օդուն վրայ ամենևին տարբերութիւն մը բերելու։ Երկու օրէ 'ի վեր չատերնիս կերակուր առած չէինք․ տագնապին ու չորժման այլայլութիւնն այն աստիճանի էր որ կերակուրի վրայ մտածելն իսկ զզուում կը բերէր։ Ես՝ ինքզինքս բոլորովին կորուսած՝ մէկ մըտածութենէ մը միայն կը նեղուէի․ ինչպէս ինքզինքս դուրս նետեմ։ Եւ առիթը չերկարեցաւ․ նաւապետաներէն մէկը 'ի պարտուց բռնադատեալ դուրս ելլելու, միջոցը քաղեցի, մօտեցայ, և մինչդեռ ձեռքը դուռը դրած կը բանար, աչքս գոցեցի ու զինքը մղելով դուրս նետուեցայ։ Այն վայրկեանէն ետքը ինչ հանդիպեցաւ՝ անորոշ գաղափար մը մնաց միտքս։ Գիտեմ միայն որ անմիջապէս ձեռք մը երկնցաւ որ զիս արգելու․ բայց մի և նոյն ատեն ահաւոր ալիք մը զարկաւ նաւուն կողը, անցաւ վրայէս ու զիս կլլեց տարաւ։ Սաստիկ հարուած մը զգացի կրծոցս վրայ․ բայց առանց հասկընալու թէ ինչ կ'ընեմ, միայն կենաց պահպանութեան բնազդումը ձեռքիս ուժ տուաւ․ գտայ կռուան մը ու կատաղութեամբ անոր պլլուեցայ մնացի։ Ալ ես չկայի․ մութ խաւար մը ինջաւ աչքերուս վրայ, և երբ զանոնք բացի՝ տեսնեմ խղիկիս մէջ անկողնիս վրայ պառկած էի։ Ծուարած աչք մը չորս կողմ պտըտցուցի, տեսնեմ սպասաւոր մը գլուխս սառ կը դնէր․ իսկ անոր քովը ուրիշ մը կեցած երակս կը չօչափէր․ որ և աչացս բացուիլը տեսնելով վտանգը անցաւ կանչեց։ Կամաց կամաց միտքս ըզգաստացաւ և սկսայ անխոհեմութեանս վտանգը յիշել․ կրծոցս հարուածէն առատ արիւն դուրս տուեր էի՝ տասուերկու ժամէ աւելի անզգայ մնալով․ միայն բժշկին մասնաւոր խնամոցը կեանքս պարտական եմ։ Օդը սկսեր էր մեղմանալ ու չորրորդ օրը պայծառ ծագեցաւ․ օդուն հանդարտելովը և զօրաւոր դեղի մը

շնորհիւ՝ ծանր հիւանդութեան մը դէմ առնուեցաւ և վրաս սկսաւ ուժ գալ։ Այս անխուսափելի վտանգէն գոգցես հրաշքով ազատած էի. նաւուն շրջապատին մէկ կողմը թնդանօթ մը կար, զոր ալիքը առեր տարեր էր. բայց չուանին մէկ կտորը մնացած էր գամի մը վրայ պրկած։ Այն վտանգին ժամանակը ձախ ձեռքս գամին ու չուանին գալով՝ ամուր մը անոր յեցեր էի ալիքին բռնութեանը դէմ դնելով։ Այն միջոցը բաւական եղեր էր զիս փրկելու։ Նաւաստեաց անմիջապէս ալիքէն ետքը դուռը բանալով՝ բռնութեամբ ու դժուարութեամբ ձեռքս գամէն ու չուանէն ազատեր էր՝ անզգայ վար տանելով։ Կրծոցս հարուածէն զատ ձեռքս ալ կողմէ կողմ ծակած էր, գլուխս ալ վիրաւորած։ Բայց այս ամենը ոչինչ էին այն վտանգին առջին՝ յորմէ բաղդս զիս փրկեր էր։ Երկու օր հարկ եղաւ խղիկէս դուրս չելլեմ, մինչև որ զօրացայ։ Բայց երբ կարող եղայ նաւուն վրայ ելլել՝ տեսնեմ Պոմպէյ կը հասնէինք։—

Ուշադրութեամբ միտ կը դնէի բարեկամիս ստորագրութեանը. կը խորհրդածէի որ մենք իսկ նոյն ծովուն վրայ կը գտնուէինք և ցամաքէն հեռու. ներքին երկիւղ մը ինձ ըսել կու տար. Ո՛վ գիտէ թէ մեզ ալ վտանգ մը չի սպառնար։ Արդէն իսկ փոքր քամի մը սկսեր էր շնչել, աննշան յիրաւի, այլ նաւը թեթև մը կը ճօճար, և կարծես ծովու տկարութիւնը սկսեր էր այլայլել զիս։

Մինչդեռ բարեկամս իւր այս դէպքին նկարագիրը կը լմնցընէր, ուրիշ ճանապարհորդ մը որ սկզբանէ ունկնդիր եղած էր, ըսաւ. Ծովու վտանգաց վրայ շատ լսած ու կարդացած եմ, ու եթէ ձեզ անախորժ չէ, պատմեմ ձեզի հաւուս մէկ դէպքը, որու հետեւանքը չարագոյն եղաւ քան ինչ որ հիմա լսեցի։

Բայց որովհետեւ երկայն է, եթէ կը ներէք, նախաճաշէն ետքը թողում։

Եւ այնպէս եղաւ. նախաճաշէն ետքը ունկնդրաց թիւը աւելնալով՝ նոյն տեղը աթոռ առնըլով՝ բազմեցանք. և առիթը պատեհ համարելով ժամանակ անցընելու, յօժար սրտիւ ամենքս յունկնդրութիւն պատրաստուեցանք։ Փորրամարմին ու խոշորաձայն պատմիչը այն ատեն սկսաւ այսպէս.

## Ա. — Նաւաբեկութիւն մը։

« Դէպքս որ ձեզի պատմել խոստացայ՝ Ափրիկէի միւս կողմը հիւսիսային գին պատահեցաւ, դեռ ևս շատ տարի չկայ։ Այն ատեն շոգենաւուց արդի յաճախութիւնն չկար. առագաստաւոր նաւք էին որ վաճառականութիւնն իրեն գործի կ'առնուր ծովերը կտրելու։ Ճիմըն բարձրահասակ ու զօրեղ նաւապետ մըն էր, որ շատ անգամ Եւրոպայի և Ամերիկայ վերուն ճամբորդութիւնն ըրած էր. վերջին անգամ մըն ալ Ճիպրալդարէն ճամբայ ելաւ տասը մարդով դէպ յԱմերիկա երթալու։ Երկու օր յաջողակ հողմով նաւարկելէն յետոյ, յանկարծ քամին հակառակ փոխուեցաւ ու ծովն սկսաւ խռովիլ, մինչև հուսկ ուրեմն նաւը սկսաւ վտանգիլ։ Ջուրի հոսանք մը վրայ գալով՝ առաւ քշեց նաւը անանկ ըռնութեամբ՝ որ նաւապետին բոլոր ճարտարութիւնն ունայն ելաւ։ Անոր վրայ յաւելաւ գիշերուան խոր մթութիւնը, մինչև չներել նաւորդաց ուր երթալնին գիտնալ։ Այս անստուգութեան մէջ էին երբ յանկարծ նաւը ուժով մը ցնցուելով դադարեցաւ։ Նաւապետին հրամայելովը իսկոյն նաւուն մեծ խարիսխը արձկեցին, յուսով նաւը կեցընելու։ Բայց 'ի զուր. ամեն ճիգ

պարապի ելաւ։ Կատաղեալ ալիքները ետևէ ետև արագաբար յաջորդելով ահաւոր շառաչմամբ զնաւը կը հարուածէին, և նաւուն բոլոր խարխախներուն բանութիւնը ունայնացնելով՝ վերջապէս ծովեզերքը նետեցին, նաւառաջքը դէպ յառաջ։ Անանկ սաստկութեամբ զարնուեցաւ ծովեզերքին՝ որ նաւուն վրայ եղողները գետինը կործանեցան։

Նաւապետը տեսնելով որ նաւը փրկելու ոչ միայն յոյս չկար այլ և քիչ ատենէն ջախջախէր պիտի, հրամայեց որ որչափ պաշար կրնային փութով ձեռք բերել՝ նաւուն վրայ ժողովեն. կը յուսար որ եթէ բոլորը չէ՝ գոնէ մէկ քանին ազատեն։ Ցետոյ քանի մը տակառներու մէջէն գինին դուրս թափել տալով՝ անոնց ջրով լեցնել տուաւ. և այսպէս հասարակաց փրկութիւնը հոգալով ամենը եռանդեամբ և արտորնօք աշխատեցան։ Մի և նոյն ատեն փոյթ տարին նաւուն երկու մակոյկներն ապահովցընելու որ ալիքներէն չխորտակին, որովհետև նաւն երթալով կը խրէր ու ջրով կը լեցուէր։ Այսպէս քիչ ատենուան մէջ հինգ վեց տակառ գինի մէկղի դրին, նոյնչափ ալ ջուր, երեք տակառ պաքսիմատ, և երեք կամ չորս տակառ աղած միս։ Այնչափ զբաղած էին այս պատրաստութեանց մէջ, որ մէկու միտքէն չէր անցած դիտելու թէ նաւը բուն ցամաքէն որչափ հեռու էր։ Ուրիշ փոյթ չունէին եթէ ոչ ապահովցնել իրենց արկղերը, կահը, թուղթերը ու գրքերն և աստեղաբաշխական գործիները, որոնց, կը գուշակէին, որ պէտք պիտոր ունենան։

Նաւը երթալով կը լեցուէր, որովհետև ետևէ ետև ամեն ալիք նոր ջուր կը բերէր։ Նաւապետը չուան մը առնելով՝ մէկ ծայրը պզտի մակուկին վրայ հաստատեց և միւս ծայրը նաւուն վրայ. տեսնալով

որ բուն ցամաքէն շատ հեռու չէին, նաւաստեաց մէկը հետն առած մակոյկը մտաւ ու ջուրը իջեցընելով նաւէն բաժնուեցաւ։ Նաւառաջքէն հազիւ հեռացեր էին երբ մեծ ալիք մը գալով զիրենք ծածկեց, և մակոյկը իրենց ոտից ներքև ընկղմեց։ Երկուքն ալ ալեաց մէջ իյնալով և ալիքէ ալիք գլորելով, հազիւ կրնային շունչ առնուլ։ Ոգեսպառ և գրեթէ կիսամեռ՝ շրջած մակուկին հետ մէկտեղ ցամաք նետուեցան։ Սրտերնին առատ ետ գալէն ու շունչ առնելէն յետոյ, իրենց առաջին մտածութիւնն եղաւ մակոյկը ապահովցնել, ալիքներէն հեռու ցամաքին վրայ քաշելով։ Բարեբաղդաբար չուանն՝ որ մակուկին վրայ հաստատուած էին՝ չէր կորսուած։ Նաւապետը դեռ նաւը չթողած հրամայած էր որ ինչ բան կրնար ջրին վրայ լողալ ծովը նետեն, զոր նաւաստիք փութացին ընելու։ Նաւը ցամաքէն հազիւ հարիւր գըրկաչափ հեռի էր։ Որպէս զի միւս նաւաստիները անվտանգ ազատին նաւէն, չուանին միւս ծայրը հաստ մալուխ մը կապեցին, զոր ցամաք քաշելով՝ ցիցերով գետնին վրայ հաստատեցին։ Եւ այսպէս մալուխը մէկ ծայրով ցամաքը ու միւս ծայրով նաւը հաստատած, միւս մեծ մակոյկը լի պաշարներով ծովը ինջեցուցին և երկու նաւաստի մալուխին օգնութեամբը ցամաքը հասուցին։ Դժբաղդաբար ցամաք հանելով՝ մակոյկը զարնուեցաւ ու յատակը բացուեցաւ։ Մեծ դժուարութեամբ աշխատելով վերջապէս կարող եղան երեք տակառ պաքսիմատ ազատել, ու երկու տակառ աղած միս։ Այնուհետև ցամաքը եղողներուն փոյթը եղաւ հատիկ հատիկ ժողովել ինչ որ ծովը դուրս կը նետէր, ու հեռու ցամաքին վրայ ապահովցընել։ Եւ ապա նաւապետը նաւը մնացողաց նշանացի հրամայեց որ նաւուն կայմերը կտ-

րեն. զոր անմիջապէս գործադրեցին ու կայմերը ծովը նետեցին։ Աչ այնուհետեւ նաւը եղողներուն վիճակը



Նաւապետը եւր մնացողաց նշանացի հրամայեց....

դժուարին ըլլալով ու չկարենալով ապահովապէս մնալ, Նաւապետը նշանացի ակնարկեց որ ծովը նետուին ու մալուխին ապաւինին։ Երկիւղը տիրեց նաւաստեաց սիրտը. ոչ որ կը համարձակէր վտանգին դիմագրաւ երթալու. մինչեւ հուսկ ուրեմն մէկը սիրտ ընելով զգեստը հանեց ու մալուխը բռնելով սահեցաւ ծովը ինկաւ դէպ 'ի ցամաք ուղղուելով։ Սակայն բուռն ալիք շարունակ գլխուն վրայէն անցնելով զինքը տակը կ'առնուին, մինչդեռ ինքն յետին կատաղութեամբ մալուխը սեղմելով կ'աշխատէր ձեռքէ չթողուլ. եւ այսպէս ծանր ծանր յառաջելով մերթ ալիքներուն տակը կ'աներեւութանար, եւ մերթ ալ ալեաց վրայ ելլելով կ'երեւնար ցամաքը եղողաց որ զինքը կը քաջալերէին։ Ամեն անգամուն որ ալիքներուն տակէն դուրս կ'ելլէր, ցամաքը եղողները

կը տեսնէին որ օրհասական կատաղութեամբ յուսահատաբար մակոյկը կը սուզմէր. մինչև վերջապէս սաստիկ ալիք մը լեռան պէս վրան խոյանալով զինքը բռնադատեց որ այն մի միայն ապաւէն մակոյկը ձեռքէն թողու։ Բայց մի և նոյն ատեն ալ նոյն ալիքը զինքը վերցնելով՝ ամբողջ ծանրութեամբն անզգայ դէպ 'ի ցամաք նետեց։ Հոն եղողք անմիջապէս զինքը բռնեցին ու ցամաքին վրայ գլորեցնելով խմած ջուրը ետ տալ տուին. և այնպէս շուտ մը զգաստացաւ։ Անոր փրկութիւնը տեսնելով միւս նաւաստիները սիրտ առին ու հետևեցան իրեն օրինակին։ Նաւապետը գրեթէ մինչև վիզը ջրին մէջ ընկղմած՝ առանց ուշ մատուցանելու ալիքներուն հարուածոց, հետզհետէ իրեն մօտեցող նաւաստիները կ'ըմբռնէր ու դէպ 'ի ցամաք ելլելու կ'օգնէր. և այսպէս ամենը ետևէ ետև փրկեցան։

Ասանկ ստոյգ մահուընէ ազատած՝ այն դժբաղդներն իրենք զիրենք պատսպարելու համար վրան մը կանգնեցին։ Կը յուսային նաւուն կտորներովը նաւակ մը շինել և անով մեծ ծովը ելլել 'ի խնդիր բարեկամ նաւի մը։ Բայց բաղդն իրենց ծանր փորձանքներ պահած էր. հազիւ թէ քիչ մը շունչ առեր էին, երբ Ափրիկեցւոց խումբ մը վրանին խոյանալով իրենց բոլոր ունեցածը ձեռքերնէն առին, մինչև կեանքերնուն ալ սկսան սպառնալ։ Ի վերայ այսր ամենայնի յաջողեցան նաւակը նորոգել, զոր ծովը ձգելով փախան ու նորէն նաւը դարձան։ Բայց հոն դադարիլ անկարելի էր. հարկ էր դարձեալ հեռանային. որովհետև տասնըմէկ հոգւոյ համար ուրիշ ըմպելիք ու կերակուր չկար եթէ ոչ քանի մը շիշ գինի ու մէկ քանի կտոր աղած միս։ Մինչդեռ այս վարանմանց մէջ էին, ցամաքէն վայրենիք ծովեզերքը դիզուած

բարեկամութեան նշաններ սկսան տալ. մինչև նաւապետը խաբուելով ու համարելով թէ կրնար ինքզինքը անոնց վստահիլ՝ ցամաքը դարձաւ։ Բայց վրի-



Ափրիկեցի վայրենիք.

պեցաւ, որովհետև այն բարբարոսաց միտքը ուրիշ բան չէր եթէ ոչ անոր որոգայթ լարել։ Անմիջապէս վրան յարձակեցան ու զինքը յաղթահարելով գետինը պառկեցուցին և սուրը վզին վրայ դրին։ Խեղճը համարեցաւ թէ իր վերջին ժամը հասած էր։ Ի վերայ այսր ամենայնի իբր հրաշքով ձեռքերնէն ազատեցաւ. միայն անոր փոխանակ իր մարդիկներէն մէկը, որ հետը ընկերացած էր, կեանքը կորսընցուց։ Անանկ յոգնած և ուժէ ընկած էր նաւապետը, որ նաւը հասնելով չէր կրցած տեսնել ցամաքը ինչ կը հանդիպէր։ Նաւուն մարդիկներէն միայն իմացաւ որ իր ետևէն ինկող վայրենիները իր փախուստը տեսնելով՝ անշարժ և ապուշ մնացեր էին ցամաքը. և երբ տեսան որ ողջ և առողջ մակոյկը մտեր էր, ցամաքը մնացող նաւավարին վրայ կատաղաբար յարձկեցան ու տիգաւ կուրծքը զարնելով գլխակը գետինը փռեցին։

Այնուհետև այն թշուառ նաւաբեկեալք մտքերնին որոշեցին իրենք զիրենք բոլորովին ծովու բաղդին յանձնելու։ Բայց ոչ թի ունէին, ոչ ղեկ, ոչ ուղղեցոյց և ոչ ինչ և իցէ կարևոր գործի. 'ի վերայ այսր ամենայնի հարկ էր նաւէն հեռանալ, որովհետև ալիքները երագարար զայն կը ջախջախէին։ Առին փոքր մակուկին առագաստը և նաւուն ուրիշ մէկ պզտի առագաստով մը մեծ մակուկին մէջ զետեղեցին. յետոյ բոլոր մնացած պաշարները ժողովելով մէջը դրին. տակառ մը ջուր, մէկ քանի կտոր աղած միս, ողջ խոզ մը որ գրեթէ քսան լիտր կը կշռէր, և հուսկ ուրեմն չորս լիտր չոր թուզ։

Այս ամենայն այսպէս պատրաստելով ծնկան վը-րայ եկան և իրենք զիրենք յանձնեցին Աստուծոյ և իրենց արիութեանը. և այսպէս ամենը մակոյկը



Ամենը մակոյկը նստած՝ առագաստը հովուն տուին.

նստած՝ առագաստը հովուն տուին։ Այնուհետև խորհուրդ ըրին որ սակաւ պաշարները խնայութեամբ

'ի կիր առնուն. և որոշեցին որ իբր ըմպելիք օրը մէկ շիշ մը ջուր ու կէս շիշ գինի տասը հոգւոյ մէջ բաժնեն. իսկ իբր կերակուր՝ մարդ գլուխ կտորակ մը աղած խոզենի ուտէ ու երկու թուզ ծովու ջրով թրջած։ Օգոստոսի երեսներորդ օրն էր երբ այսպէս նաւը թողուցին. որպէս զի խափանեն որ ծովու ալիքները մակուկին վրայ զարնելով մէջը չլեցուին, ձեռք զարկին անոր բոլորը արգելիչ անջրպետ մը բարձրացնելու։ Սակայն բոլոր օրը երկինքին վրայ խիտ ամպեր կը դիզուէին. խախուտ մակոյկն իսկ սկսաւ առջինէն աւելի ջուր առնուլ։ Գիշերուան վրայ գալովը օդն ալ ցրտեց ու ծովն ալ աւելի խռովեցաւ։ Օգոստոսի երեսունմէկին որ լուսցաւ՝ հովն ինջաւ, սակայն ծովը դեռ ևս ալէկոծ մնաց։ Խոզը ջրի պակասութենէն գրեթէ մեռածի պէս եղեր էր, այնպէս որ հարկ եղաւ սպաննել։ Մեծ զգուշութեամբ արիւնը ժողվեցին ու մէջերնին բաժնելով խմեցին, որպէս զի իրենց կրած անտանելի ծարաւին նեղութիւնը քիչ մը մարեն։ Նմանապէս լերդն ու աղիքները մէջերնին բաժնեցին, միս մը հում հում ուտելով. և այսպէս անցաւ այն օրը։ Կը դիտէին անհամբերութեամբ, սակայն ծովուն վրայ նաւի մը հետքն անգամ չէին տեսներ։ Դառն վիճակնին գուշակելով, որոշեցին փոքր կարիքնին պարապ շիշերու մէջ ամփոփել ըմպելիքի ծառայեցնելու նպատակաւ. և այսպէս այն անախորժ ըմպելիքով մեծ սփոփանք գտին։ Մութ գիշեր մը վրայ հասաւ. ամպերն իսկ շատ աւելի ցած իջնելով վրանին ծանրացան ու երկինքը սկսաւ մերձաւոր փոթորիկ մը սպառնալ։ Կէս գիշերուընէ յառաջ ծովն այնչափ առատութեամբ յորդեց նաւակին մէջ որ շատ անգամ գրեթէ կիսով չափ լեցուեցաւ։ Ամենուն փոյթը եղաւ ջուրը դուրս

թափելու. ոմանք գլխարկով կը թափէին, այլք ինչ և իցէ բանով որ կրնային այն տագնապին ատեն ձեռք բերել:

Մակոյկը բռնութենէն ճնշուելով կը շառաչէր ու բոլոր ճեղքերէն ջուրը առատաբար մէջը կը լեցուէր. ալ գամերը չէին բռներ: Սաստիկ փայլականց լոյսը մութ ամպերը ակօսաբեկ ճեղքելով այն շօշափելի խաւարը կը լուսաւորէր ու տեսարանը աւելի ահաւոր կ՚ընէր: Անպիտի սարսափելի ատեն եղաւ որ այն խեղճերէն ոմանք ալ փրկութենէ յուսերնին կտրեցին, և այնուհետև կարելի չէր համոզել զանոնք որ օգնելով միւսներուն վաստակից մասնակցին: Եղան ոմանք ալ որ գլուխնին ջրին մէջ ընկղմելով կ՚ուզէին ըմբռնել թէ խղդուելով ինչ նեղութիւն պիտոր քաշէին:

Օրը լուսցաւ և արևն այն ահաւոր տեսարանին վրայ իւր լոյսը ցոլացուց. սեպտեմբերի առաջին օրն էր: Աշխատութենէ ընկճած, արևուն կիզիչ ճառագայթներէն այրած, ծովուն վրայ ամենևին նաւ մը չտեսնուելով, ջրերնին և ուժերնին երագաբար նուազելով, և նոյն իսկ նաւապետին նաւու մը հանդիպելու ամեն յոյս հատնելով, սեպտեմբերի երկրորդ օրը զգացուց մարդիկներուն որ հարկ էր մակոյկը դէպ 'ի ցամաք դարձնել: Հլութեամբ մտիկ ըրին. բայց մինչև սեպտեմբերի վեց նաւարկելով դեռ ևս ցամաքին հետքը չէին կրցած տեսնալ. սակայն եօթին ուղղահայեաց բարձր քարաժայռից ծովափ մը երևցաւ հեռուանց, որոց ոտից ներքևը ծովուն ալիք զարնուելով կը խորտակէին: Իսկոյն մակոյկը դէպ 'ի հոն ուղղեցին ու մեծ վտանգներով վերջապէս կըրցան այն թշուառները ցամաքին մերձենալ»:

### Բ. — Ցամաքի պատահարք։

Պատմիչնիս հոս հասնելով՝ առ վայր մը հանգիստ առաւ։ Ունկնդիրքս որ հետաքրքրաբար ու մեծ ուշադրութեամբ ունկն կը մատուցանէինք, գոհացուցիչ կերպարանք մը առինք խեղճերուն փրկութիւնը եղած համարելով։ Սակայն պատմիչը առանց շատ ժամանակ անցընել տալու դարձեալ շարունակեց.

«Սպիտակ կոչուած գլուխն էր. սեպացեալ ու դըժուարին ժայռեր։ Ութերորդ օրը սկսան այն ժայռուտներուն քովէն նաւարկել ունայն տեղ ցամաք ելլելու տեղի մը բնտռելով։ Վերջապէս երեք օր ետքը, ուժաթափ, անօթութենէ ու ծարաւէ կիսամեռ, կարող եղան դիւրամատոյց տեղ մը գտնալով ժայռի մը գլուխը ելլել. սակայն ո՜վ կրնայ գուշակել իրենց լքումը երբ տեսան որ այն տեղին ընդարձակ անհուն երկիր մըն էր, անբնակ ամենևին ուր ոչ կանաչի շիւղ մը կը տեսնուէր և ոչ կաթիլ մը ջուր։ Յուսահատութենէ իրենք զիրենք գետինը նետելով,

«Ա՜լ բաւ է, կանչեցին. հոս է որ պէտք է վերջի շունչերնիս տանք. ա՛լ այսուհետև յոյս չունինք ոչ ջուր գտնելու և ոչ ինչ և իցէ պաշար, ոչ մարդ և ոչ վայրի գազան մը. ասանկ երկրի մը վրայ բան չկայ որ կարենայ ապրիլ։» —

Քիչ մը ջրային հիւթ որ դեռ ևս մնացած էր վրանին՝ աչքերնուն վրայ իջնու և առատաբար վազեց. սակայն նոյն իսկ այն աղի արցունքներն որ հետզհետէ այն թշուառութենէ խորշանկեալ երեսաց վրայէն կ'իջնային, խեղճերը բնական բերումէ մը մղեալ՝ մատով կը ժողվէին ու բերաննին կը տանէին. խնայելով որ չըլլայ թէ կորսուին հապա քիչ մը թըր-

ջեն այն իրենց պապակեալ լեզուն որ այն ատեն այրած մագաղաթ կը նմանէր . անանկ կարծրացած էր որ մեծ դժուարութեամբ կրնային խօսք մը արտասանել և իրարու բան հասկցընել ։

Երկրորդ օրը , ահաւոր օր մը անցընելէն ետև , իրիկուան դէմ՝ նաւաստիներէն մէկը յանկարծ կանչեց .

« Կարծեմ լոյս մը կը տեսնամ » ։

Եւ յիրաւի կրակի մը բոցն էր ։ Բնիկ Ափրիկեցւոց բանակետղ մը մօտակայ գուշակելով , որոշեցին որ գիշերը լռելեայն անոնց քովը մօտենան . սակայն այս իրենց առաջադրութիւնը չկրցան յաջողցընել ։ Յաջորդ օրը , որ սեպտեմբերի տասն էր , մտքերնին հաստատուն թէ դէպ 'ի յայտնի մահ կ'երթային , անզէն՝ ինչպէս էին՝ յառաջ քալեցին , և քիչ մը ետքը ուղտերու խումբ մը տեսան ու մարդոց բազմութիւն մը ։ Նաւապետն իր մարդիկներէն երկուքը միայն հետն առած՝ դէպ 'ի այն մարդիկներուն յառաջեց , ու գետինը իյնալով և երեսը հողուն տալով նշանացի անոնց գութը շարժել կը ջանար ։ Բայց այն բարբարոսները գութ շարժելու տեղ՝ վրանին յարձըկեցան , զգեստնին մերկացնելով կողոպտեցին , և ապա զիրենք ալ մէջերնին իբր գերի բաժնեցին ։ Նաւապետն երկու պառաւներու ձեռքը տրուեցաւ , որոնք զաւազանաւ ծեծելով դէպ 'ի ուղտերը քշեցին տարին ։ Գլխէն մինչև ոտք մերկ , առանց կօշկի , չէր կրնար շատ քալել . այն պառաւներուն բերանը կը ցուցընէր , որ ճերմակ ու ցամաք՝ սառած կը նմանէր ։ Երբ ջրհորոց քովը մօտեցան , անոնցմէ մէկը ուրիշ կին մը կանչեց , որ ձեռքը փայտէ մեծկակ սկուտեղ մը բռնած լի ջրով քովերնին եկաւ ։ Այն սկուտեղը գետինը դնելով՝ զնաւապետը ուրիշ մէկ

ընկերով մը անոր առջին չորեցուցին և ուղտերու պէս գլուխնին մէջը խոթել տուին։ Նաւապետը թէպէտ և ընկերներուն յանձնած էր որ եթէ ջրհորներու մօտենան զգուշանան մէկէն շատ ջուր չխմեն, չկրցաւ հանդուրժել և իսկոյն կոնքին ջրին կէսը խմեց։ Ջուրը գրեթէ անանկ պղտոր և անախորժ էր ինչպէս թէ երկայն ատեն նաւու մը խորշը կեցած՝ լճացած ու նեխած ըլլար։ Հանդերձ այսու այն ջուրը իրենց համար նախախնամական էր։ Նոյնը խմելէն յետոյ, դարձեալ ուրիշ մեծ կոնք մը լեցուցին նոյն ջրէն ու մէջը քիչ մը ուղտու թթուած կաթ աւելցուցին։ Այն ըմպելիքը հիանալի ըմպելիք մը եղաւ այն թշուառներուն, յորմէ այնչափ խմեցին մինչև որ ստամոքսնին ուռեցաւ։ Անկէ ետքը քիչ մը ուտելու բան խնդրեցին. բայց դժբաղդաբար այն Արաբացիք հետերնին ամենևին պաշար մը չունէին։ Արևը կիզիչ սաստկութեամբ վրանին զարնելով կը սպառեցնէր զիրենք. մորթերնին անանկ կը տապկէր ինչպէս միս կրակի առջին։

Քիչ մը ետքը այն արաբացի կարաւանը երկու բաժնուեցաւ. մէկ մասը ուրիշ ճամբայ մը բռնեց գնաց, հետը տանելով նաւաբեկելոց կէսը։ Իսկ նաւապետն ուրիշ չորս ընկերներով մնացին գերի երկրորդ մասին հետ։ Իրենց տէրը՝ ուղտերը բեռնաւորելէն յետոյ, բռնադատեց զիրենք որ մերկ ու բոկոտն քալելով ետևնուն երթան։ Աւազն, որու վրայ կը քալէին, անանկ շարժուն ու բարակ էր, որ իրենց ամեն քայլին գրեթէ մինչև ծունկ մէջը կը խրէին։ Անտանելի էր իրենց քաշած վիշտը. մէկ կողմանէ կիզիչ արեն իր բորբոքեալ ճառագայթներն աւազին վրայէն անդրադարձընելով՝ անոնց մերկ մարմինը կը տոչորէր. միւս կողմանէ սրածայր

քարեր աւազին տակէն ցցուելով ամեն ոտնաքայլին ոտքերնին կը վիրաւորէին, թող փորհարութիւնը որ զիրենք ուժաթափ կ'ընէր։ Յոգնած, դադրած, յուսաբեկ այն ժայռուտին գագաթը ելլելու, առ վայր մը աւազին վրայ կը նստէին հանգիստ առնըլու. սակայն իրենց անգութ տիրոջը գաւազանը կը բռնադատէր զիրենք նորէն ճամբանին շարունակելու։

Երբ Սահարայի անհուն ամայութիւնը սկսան մըտնել՝ զիրենք ուղտերու վրայ հեծցուցին։ Նոր տանջանք մըն ալ կը սկսէր իրենց համար. այն կենդանւոյն տատանող շարժմունքէն կաշինին տեղ տեղ շարունակ շփուելով ճայթեցաւ և արիւնը սկսաւ առատաբար հոսել։ Արեւն ալ անգործ չմնալով ուրիշ տեղեր մորթերնին այրեց ու բշտեցուց. ոտքերնին ալ ամեն քայլի խախտելով կարծես բաժնուիլ կ'ուզէին։ Այն կերպով ճանապարհորդել անկարելի ըլլալով, յաջողեցան ուղտերէն վար իջնալ. սակայն հարկ էր ոչ միայն բոկոտն քալել, այլ և որպէս զի կենդանիներէն չբաժնուին սրածայր քարերու վրայ վազել. անով ոչ միայն ամեն քայլին իրենց վէրքերը կը բացուէին, հապա նոր նոր վէրքեր ալ կը ձեւանային։ Այսպիսի անտանելի տանջանքներէն սրտաբեկ ու լքեալ, բոլոր իրենց արիութիւնն ու փիլիսոփայութիւնը կորուսին։ Կ'անիծէին իրենց չար բաղդը ու կը ցաւէին մտածելով որ լաւագոյն էր իրենք զիրենք ծովը նետած ըլլային քան թէ անանկ մարդկային կերպարանօք անգութ գազաններու ձեռքը իյնային. սակայն շատ ուշ էր։ Իրենք իրենցմէ դուրս ելած կը փափաքէին բռնի մահուամբ անձնասպան ըլլալ. այլ ոչ դանակ ունէին և ոչ ինչ և իցէ մահառիթ գործի։ Բայց թէպէտ և այս անտանելի տանջանքները զիրենք ասանկ կրից մէջ ձգած էին, ներքին խղճմտանքնին

վերջապէս արթընցաւ, և զգաստանալով իրենց այս յուսահատութենէն՝ համակամութեամբ իրենք զիրենք Աստուծոյ կամացն հպատակեցուցին։ Շատ չգնաց այն կարաւանին Արաբացիք դարձեալ այն ողորմելի գերիները մէջերնին բաժնեցին։ Համէտ անունով մէկը զնաւապետը ուրիշ մէկ ընկերով մը գնեց և ուղտի մը վրայ հեծցուց, ուրիշ կերակուր չտալով եթէ ոչ քանի մը կաթիլ կաթ։

Սեպտեմբերի տասնըհինգին, միօրեայ հանգստենէ մը ետքը, առաւօտանց կանուխկէկ Արաբացիք իրենց վրանները ծալլելով ուղտերուն վրայ բեռնաւորեցին ճամբայ ինկան։ Իսկ այն խեղճերը բռնադատեցին ոտքով ետևնուն երթալու, թէպէտ և անանկ ցաւ կու տային իրենց վէրքերը և անանկ պընդացած էին անդամնին, որ ամեն քայլ առնելնուն սաստիկ կը պոռային։ Միշտ դէպ 'ի հարաւային արևելեան դին կը ճանապարհորդէին։ Նոյն առաւօտը նաւապետը միւս ընկերներէն Գուլիէլմոս անունով մէկը տեսաւ ուղտի մը վրայ հեծած. երեք ժամէ 'ի վեր ճամբայ ելած էր։ Կաղն 'ի կաղ քայլելով անոր քովը մօտեցաւ ու ձեռքը սեղմեց. ուղտը իսկոյն կանգ առաւ. խեղճը բոլորովին մերկ էր ու մորթը գլխովին այրած. մարմինը, ինչպէս նաև երեսը, անանկ այրած ու բորբոքած էր՝ որ միայն իր նուաղ ձայնէն զինքը կրցաւ ճանչնալ։ Ըսաւ իրեն թէ ողջոյն գիշերը բաց օդուն մէջ պառկելու բռնադատած էին զինքը, և թէ քաշած անտանելի ցաւերէն կը զգար որ մահը շատ հեռու չէր. թէ վրան ալ ուժ չէր մնացեր և թէ իր տիկինը քիչ մը գութ զգալով զինքը ճարպով շփեր էր։ «Սակայն, յաւել ըսելու, կը զգամ որ կը մեռնիմ։ Եթէ երբեք բաղդ ունենաս այս ահաւոր անապատէն ելլելու ու մեր սիրելի հայրե-

նիքը տեսնելու, ըսէ կնկանս որ մինչեւ իմ՝ ետքի շունչս իր յիշատակը մտքէս չէ ելեր, եւ թէ իմ ետքի ա-ղօթքս իր բարօրութեանը համար եղեր է»։ Արտա-սուք ու հեծկլտանք իր ձայնը մարեցին։

Իր տէրը վրայ համնելով ուղտը սկսաւ քալել ու խօսակցութիւնն վերջացաւ։ Սակայն Նաւապետն ու-զելով անոր սիրտ տալ կանչեց ետեւէն. «Աստուած ամենակարող է»։ Եւ ապա կայնեցաւ անոր հեռա-նալը դիտելու։ Ուղտն անանկ գէր էր՝ որ սաստիկ ցնցմունքներով կը քալէր։ Խեղճին սրունքներն ու գիստերը կը դիտէր որ կենդանւոյն վրայ կը չփուէին. մորթը տաքցած ու մսէն բաժնուած՝ կտոր կտոր կա-խուած էր, եւ արիւնը կաթիլ կաթիլ հոսելով կեն-դանւոյն վրայէն գետինը կ'իյնար։ Խեղճ Նաւապետը սարսուռ զգալով այն տեսարանէն, «Տէր Աստուած, կանչեց, մի թողուր որ ասանկ տանջանք քաշելու համար ապրիմ»։

Սակայն բաղդն իրեն ալ չարագոյն պայման մը պա-հած էր. իր տէրը՝ որ չափաւորապէս աղէկ կը նայէր իրեն, զինքը ուրիշ չարագոյն ու վատ Արաբացիի մը ծախեց. որ երկայն ատեն զինքը վազցընելէն յե-տոյ, վերջապէս թող տուաւ որ քիչ մը դադարի։ Պա-ղատանօք ամենէն կաթիլ մը ջուր կը խնդրէր, այլ ոչ ոք իրեն կու տար։ Քաշած նեղութիւնն անանկ էր որ հազիւ կրնար ոտքի վրայ կանգուն կենալ. ծարաւը անանկ սաստիկ էր ինչպէս երբեք եւ ոչ գաղափարը զգացած էր։ Երիկ մարդիկներէն յուսա-հատելով՝ ջանաց կանանց գութը շարժել ու քիչ մը ջուր գտնել։ Բայց անոնք ալ աւելի անգութ ոչ միայն զինքը ծաղր կ'ընէին ու երեսը կը թքնէին, հապա որ-պէս զի կրցածնուն չափ իր տանջանքը սաստկացը-նեն՝ զինքը վրանին շուքին մէջէն, ուր իր տէրը թող

տուեր էր կենալու, մէկդի վարեցին. այնպէս որ բռնադատուեցաւ բոլոր օրը կիզիչ արեւուն սաստկութեանը տակը անցունել։

Քանի մը ժամ ետքը Հասաւ Քլարք անունով ուրիշ գժբաղդ ընկեր մը։ Թշուառը ալ գրեթէ մորթ չունէր. մարմնոյն միսերը կտոր կտոր եղած և այրած կ'երեւնային։ Գիշերը վրայ Հասաւ, և օրուան ջերմութեանը պաղ թացութիւն մը յաջորդեց. նաւապետը ազաչեց իր Արաբացի տիրոջը որ իրենց թոյլ տայ նոյն գիշերը ընդարձակ վրանին մէկ անկիւնը պառկելու։ Եւ կարծես Արաբացին Հաւան էր իրենց խնդիրը կատարելու, որովհետև մատովը կը ցուցընէր իրենց պառկելու տեղը. սակայն կանայք ընդդիմացան ու չուզեցին ամենեւին Հաւանիլ. այնպէս որ Հարկ եղաւ դուրս մնան մինչև որ իրենց տէրերը ուզտերը կթեն։ Ըրմէ ետքը անոնց ամեն մէկուն մէյմէկ շիշ սքանչելի կաթ տուին, և երբ կանայք քնացան՝ տիրոջը որդիքներէն մէկին գութը շարժելով նշան ըրաւ իրենց որ առանց ամենեւին աղմուկ Հանելու սողոսկելով վրանը մտնեն և անկիւն մը կըծկին։ Քիչ մը նուրբ աւազ իրենց իբր անկողին ծառայեց. և որովհետև ցրտին դէմ պաշտպանեալ էին, ամէնը խոր քնով քնացան մինչև երկրորդ առտուն։

Երկու օր մնացին այս տեղը. Հանգիստը, քունը և կաթը նաւապետին քիչ մը ուժ տուին, և մասնաւորապէս արքութիւն սրու շատ կարօտ էր։ Դժբաղդաբար՝ սեւամորթ, անգութ և ուժեղ գերի մը ուզեց անգթանալ նաւապետին և իր Քլարք ընկերոջը վրայ։ Վրանին տակ անկիւն մը գիրենք տեսած ըլլալով, ուզեց անկէ դուրս վարել. սակայն իրենց տէրը ընդդիմացաւ, ու սեւամորթը զիրենք միայն ծաղր ընելով գոհացաւ։

Փոքր կարաւանը ասկէ ալ ճամբայ ելաւ. ծովէն 300 մղոն հեռու էին ու ջուր ամենեւին չունէին. իսկ կերակուր հացի չմեռնելու չափ կու տային իրենց, այնպէս որ հազիւ կրնային ոտքի վրայ կայնիլ. իրենց մարմնոյն հիւթերը ցամքած, ամենայն խոնաւութիւն ցնդած՝ կմախք դարձած էին։ Որպէս զի իրենց պապակը նուազեցընեն, բռնադատուած էին փոքր կարիքնին խմելու։ Ճամբան մէկ քանի խղունջ գտնելով կրակի վրայ խարկեցին ու կերան. այս դէպքս փոքր բարեբաղդութիւն մը համարեցան այնքան թըշուառութեան մէջ։ Վերջապէս անօթութիւննին այն աստիճանի սաստկացաւ, որ ոմանք թեւերնին կը խածնէին միսը փրցընելու ուտելու համար։ Անգամ մը նաւապետը բռնադատուեցաւ մէկին թեւերը կռնակին ետեւը կապելու, որպէս զի խածանէ զինքը որ ինքզինքը չուտէ։ Ուրիշ անգամ մըն ալ իրենցմէ երկուքը տղայ մը ըմբռնեցին ու մորթելու վրայ էին որ ուտեն, երբ նաւապետը վրայ հասնելով խափանեց։

Այսպէս տարտամ ճանապարհորդութեամբ երթալով կարաւանը՝ օր մը երկու վաճառականաց հանդիպեցան, որոնք իրենց վաճառքը ուղտերու վրայ բեռնաւորած էին։ Կարաւանին տիկնայք, երիտասարդք ու պառաւունք, գնացին 'ի տես այն երկու օտարաց. բայց չունէին ջուր որ՝ ինչպէս սովորութիւն էր՝ անոնց տային. անոր փոխանակ առին մեծկակ մորթ մը և վրան շինելու գլան մը լաթ, որպէս զի գոնէ հովանի ընեն անոնց։ Իսկոյն այն օտարականները ոտք ելան, և զանոնք սիրով ընդունելով բարեւեցին «խաղաղութիւն ընդ ձեզ» ըսելով։ Կանայք անոնց ողջոյնին փոխադարձաբար պատասխանեցին, և անմիջապէս մորթով ու լաթով անոնց համար հովանաւոր տեղի մը շինեցին։ Այն հովանիին

ներքև նստելով ամէնը սկսան խօսակցիլ՝ իրենց ճանապարհորդութեան դէպքերը պատմելով։ Բարեբաղդաբար նաւապետը յաջողեցաւ կնիկներէն մէկէ մը իմանալու որ այն վաճառականները Մարօքոյի Սուլտանին երկիրներէն կու գային. և եթէ անոնցմէ մէկը՝ որ Սիտի Համէտ կը կոչուէր՝ ուզենար, կրնար զինքը գնել ու հոն տեղուանքը տանիլ, և այնպէս կրնար յուսալ դարձեալ իր կնիկը տեսնալու։

Ասոր վրայ նաւապետը լի յուսով մօտեցաւ Սիտի Համէտին, և ձեռքը փայտէ ափսէ մը բռնած՝ նշաններով կը ջանար հասկցընել որ լեզուն անանկ չոր ու պինտ էր որ հազիւ կրնար խօսիլ։ Սիտի Համէտ հարցափորձ ըրաւ զինքը քաղցրութեամբ, և ապա անոր ափսէին մէջ գրեթէ շիշ մը յստակ ջուր լեցուց։ Նաւապետը կէսը խմեց ու միւս կէսը տարաւ Քլարքին տուաւ, որ խեղճը հազիւ կրնար շունչ առնուլ. Ի՛նչ ազնիւ ու սրտաշարժ նշան բարեկամութեան զոր թշուառութիւնն աւելի կ'արծարծէ։ Վաղուան օրը Սիտի Համէտ նորէն հարցափորձ ըրաւ զնաւապետը, որ կրցածին չափ ջանաց հասկցընել անոր իր թշուառ վիճակը։ Արաբացին այնչափ թշուառութեանց վրայ չկրցաւ արցունքը բռնել։ Նաւապետը անոր գութը տեսնալով, աղաչեց որ զինքը գնէ ու Մարօքի Սուլտանին տանի։ Բայց Արաբացին պատասխանեց թէ դժուարին էր. սակայն եթէ յաջողէր զինքը գնելու՝ 'ի Մոկատոր կ'ուզէր տանիլ, որ ամրացուցած նաւահանգիստ մըն էր, կ'ըսէր։ Յետոյ հարցուց թէ ի՛նչ տալու էր իրեն այս ծառայութեանս փոխարէն։ Նաւապետը նշանացի հասկըցուց որ յիսուն դահեկան կու տար իր անձին համար, և նոյնչափ տալու էր իրեն միւս նաւավարաց իւրաքանչիւրին համար որ ազատէր։

— Միւսները չեմ ուզեր գնել, պատասխանեց Արաբացին. բայց դու յիսուն դահեկանէն մրջառի աւելի կու տաս քեզի համար, եթէ քեզ գնեմ ու բարեկամացդ քովը տանիմ։

Նաւապետը գործը դիւրացնելու համար յաւել հարիւր դահեկան խոստանալու։

— Ի Մոկատոր ունիս տակ, հարցուց իրեն դարձեալ Արաբացին ձեւերով ու խօսքերով, թէ միտքդ դրած ես ինծի սպասել տալ մինչեւ որ հայրենիքէդ ընդունիս։

Նաւապետը պատասխանեց անոր, թէ 'ի Մոկատոր հասածնուն պէս, հոն իր մէկ բարեկամը ստակը ձեռքը պիտոր դնէր։

— Չիս կը խաբես, ըսաւ Արաբացին անոր երեսը նայելով։

Սակայն նաւապետը փութաց նշաններով հաւատարմացուցանել իր խօսքը։

— Շատ լաւ, ըսաւ Արաբացին, ես քեզ կը գնեմ. սակայն աղէկ ուշ դիր, որ եթէ միտքդ գիս խաբելն է, անմիջապէս վիզդ պիտոր կտրեմ։

Յետոյ յանձնեց նաւապետին որ լուռ կենայ ու ամենեւին նշան չտայ եղած խօսակցութեան։

Ողջոյն օր մը սպասելէն յետոյ, վերջապէս տեսաւ որ Սիտի Համէտ զինքը գնեց, այն Արաբացիներուն փոխարէն տալով երկու խոշոր նիւթէ շինած ծածկոց, մէկ կտոր մը կապուտ գունով հաստարակ լաթ, ու քանի մը ջայլամի փետուր։

Նաւապետն այս կերպով ինքզինքը այն բարբարոսաց ձեռքէն ազատելէն յետոյ, աշխատեցաւ համոզել իր նոր տէրը որ նաեւ իր միւս թշուառ ընկերներն ալ գնէ։ Արդէն Քլարքը խոնջութենէ ըմբռնուած էր և ողջոյն գլուխն ահաւոր վէրք մըն էր։ Իր

երկայն մազերը զզուելի երևոյթ մը ունէին։ Սիտի Համէտին եղբայրը, որ բիրտ մարդուն մէկն էր, գաւազանով մը խեղճին գլուխը խայթելով կը զուարճանար։ Այլ նոյն իսկ նաւապետն առանց նեղութեան չթողուեցաւ։ Սիտի Համէտ, և նաև իր եղբայրը, սկսան յանդիմանել զինքը տեսնալով որ իւր օրուքները միրալից էին. կը զննէին, կը դիտէին ասդին անդին դարձընելով, և անով սաստիկ ցաւեր կը պատճառէին իրեն։

Վերջապէս Սիտի Համէտ համոզուեցաւ նաւապետին ընկերներէն երկուքը գնելու, յորոց մին էր Քըլարք։ Երկու օրէ 'ի վեր ջուրը սպառած էր. նաւապետը քսանըչորս ժամու մէջ միայն քիչ մը կաթ կրցեր էր ձեռք ձգել ու բուռ մը խղունջ։ Կէսօրուընէ ետքը մինչև իրիկուն ինքն ու Քլարք աշխատեցան փայտի կտորներ ժողովելու որ կրակ վառեն։ Կէս գիշերուընէ քիչ մը ետքը իրենց տէրը քովերնին մտենալով մատովը ցցուց թէ ուր դնելու էին փայտը։ Յետոյ ծիրացած անկարող ուղտ մը բերելով, զոր ծածկոց մը տալով գնած էր, ըստ սովորութեան գետինը չոքեցուց, և անոր ստորին ծամելիքէն չուան մը անցընելով՝ գլուխը կողմնակի քաշեցին ու պոչին կապեցին։ Ապա պղնձէ կոնք մը բերին ու Սիտի Համէտ կենդանւոյն վզէն երակ մը բանալով վազած արիւնը մէջը ժողովեցին, որ կիսով չափ լեցուեցաւ։ Այն արիւնը կրակին վրայ դրին և զգուշութեամբ խառնելով եփեցին, և ապա վար առնըլով՝ նաւապետը և Քլարք վրան նետուեցան ու լափեցին. անանկ անոյշ եկաւ իրենց այն կերակուրը։ Այս լմննալէն ետքը ուղտին մորթը հանեցին, և աղիքները խնամքով ամանի մը մէջ լեցուցին. բայց դժբաղդաբար ջուր չունէին որ զանոնք եփեն։ Այն ատեն մտածե-

ցին կենդանւոյն ստամոքսը ծակել, ուսկից աղտեղի ջուր մը դուրս ելաւ. այն ջուրը աղեաց վրայ լեցը-նելով՝ կրակին վրայ դրին որ եփեն.. բայց եփելուն սպասել չկարենալով՝ դեռ եւ կէս մը հում զանոնք լափեցին։

Քիչ մը ետքը Սիտի Համէտ իրենց նաւաբեկեալ ընկերներէն ուրիշ մըն ալ գնեց. այս ողորմելիս ալ երեք օրէ 'ի վեր բերանը բան մը դրած չէր. ուստի այս ուղտին մնացորդներումն ինքն ալ քիչ մը յագե-ցաւ և ստամոքսին ջրէն ալ քիչ մը խմեց։ Նոյն օրը Սիտի Համէտ նաև միւս երեք մնացածներն ալ գը-նեց, և այսպէս այն նաւաբեկելոց մասը իրեն ձեռքը անցաւ։ —

Մեր պատմիչը իւր պատմութեան այս տեղս հաս-նելով՝ առ վայր մը լռեց. և ապա շունչ առնելով իւր խօսքը այսպէս շարունակեց։

Կարաւանը ճամբայ որ ելլելու եղաւ, տեսան որ Սիտի Համէտին ուղտերէն մէկը ուրիշ Արաբացւոց խումբի մը հետ գնացեր էր, որոնք արդէն երկու մղոն հեռացեր էին իրենցմէ. հարկ եղաւ որ նաւա-պետը վազէ ետևէն ու ետ դարձընէ։ Ո՜րչափ ցաւ, ո՜րչափ նեղութիւն ու վիշտ չքաշեց այն հրամանը կա-տարելու համար։ Ուրիշ զգեստ չունէր վրան եթէ ոչ պատառատուն շապիկ մը, զոր իր տէրը տուեր էր իրեն. իսկ միւսները՝ մէկը առագաստի մը կտորով ինքզինքը ծածկած էր, ուրիշ մը կարճ զգեստ մը գտնելու բարեբաղդութիւնը ունեցեր էր. իսկ միւս-ները այծու մորթերով իրենց զգեստ շինած էին։ Այսպիսի խղճալի կերպարանօք սկսան ուրեմն անա-պատին կիզիչ միայնութիւնները կտրել։ Միշտ մի և նոյն մակերևոյթը, մի և նոյն տափարակ գետինն էր որու վրայ կը քալէին, և միայն մերթ ընդ մերթ ժայ-

ներու ծայրեր դուրս ցցուելով միակերպութիւնը կ'ընդհատէին։ Ուղտերը մեծաքայլ կը յառաջէին. և որովհետև շարժմունքնին սաստիկ ցնցմունք կը պատճառէր, մեր խեղճ հեծեալներուն սրունքները՝ ասպանդակ չունենալուն պատճառաւ՝ ետև առաջ կ'երթային ու կու գային՝ կենդանեաց կռնակը շարունակ շփուելով. անով կաշինին քշտելով կ'ելլէր, անանկ որ իրենց զըստից ու սրունից մսերնին ալ ոսկորներուն վրայ հաստատուն մնալ չէին կրնար. ամեն ցընցմունքին կարծես ոսկորնին մէկմէկէ բաժնուիլ կ'ուզէին։ Ջուրը բոլորովին նուազած ըլլալով, ալ ուրիշ ըմպելիք չկար եթէ ոչ իրենց և ուղտերուն մէզը։ Շատ մը օր այսպէս յուսահատաբար երթալէն ետքը՝ հասան ճեղքեալ ժայռի մը քով, որ ծանօթ էր Սիտի Համէտին. հոն յստակ ու զով ջրի աղբիւր մը գտան։ Ո՜հ, ի՜նչպէս ոչինչ բան մըն ալ զմարդ կենաց սիրոյն կը կապէ։ Այն զովացուցիչ տարրը իրենց հոգի տուաւ. որմէն փոքր պաշար մը հետերնին առնլով քիչ մը ետքը հեռացան ու ճամբանին դէպ 'ի արևելք շարունակեցին։

Քառասուն փարսախ միակերպ երթալէն յետոյ ուրիշ Արաբացւոց խումբի մը պատահեցան, և անոնց հետ միանալով ճամբանին շարունակեցին։ Այս ետքիններս խումբ մը յիսունի չափ ոչխար հետերնին ունէին, բայց ամենը անանկ վատուժ ու տկար՝ որ ոտքի վրայ հազիւ կրնային կենալ։ Սիտի Համէտ այն ոչխարներէն մէկը գնեց ու նաւապետին ձեռքը տալով՝ հրամայեց մինչև առաջիկայ օթևանը տանիլ. այս օթևանը բաւական հեռու էր, բայց հոն ջրհոր մը կար, որու քով ոչխարը մորթեցին։ Ջուր խմելէն և երկու տիկ ալ լեցնելէն յետոյ, երկրորդ օրը ճամբայ ինկան ու գրեթէ երեսունուհինգ փարսախ տեղ

քալեցին։ Իրիկուան դէմ, Սիսի Համէտ ոչխարի աղիքները առաւ ու Նաւասարդին և իր ընկերներուն տուաւ. անոնք ալ առնըլով կրակին վրայ խորովեցին ու կերան։ Թէպէտ և չնչին և ողորմելի կերակուր մըն էր այն, խեղճերը մեծապէս կարօտ էին քիչ մը ուժովնալու համար. որովհետև յաջորդ օրը հարկ եղաւ ողջոյն անապատը կարել երթալ, որ այնուհետև ընդարձակ աւազուտ մը կը փոխուէր։ Այն նոր ասպարիզին մէջ աւազը դէզ դէզ հաւաքուած էր, անանկ որ ամեն քայլին մինչև 'ի ծունկս կ'ընկղմէին։ Եւ որովհետև սաստիկ կիզիչ էր՝ հարկ եղաւ որ ամենը ուղտերուն վրայ հեծնան. և այնպէս յառաջելով՝ քիչ մը ետքը զարհուրելի երկրի մը մէջ պաշարեալ գտնուեցան։ Նուրբ ու ձեան պէս թեթև աւազ մը երկու հարիւր ոտք բարձրութեամբ լեռներ կը ձևացընէր։ Այն տարօրինակ լեռները շարժուն և ահաւոր ալիքներու կընմանէին, որ անմիջապէս կարծես զիրենք տակը առնուլ ու ծածկել կ'ուզէին։ Քամին՝ այն հրակէզ աւազները փոթորկաբար մրրկելով վրանին կըլեցնէր ու բոլոր մարմիննին կ'այրէր։ Ուղտերը դժուարաւ կրնային յառաջել. քաշած նեղութիւննին անտանելի էր. սաստիկ չարչարանք քաշելէն յետոյ՝ վերջապէս իրիկուան դէմ կարող եղան այն սպառիչ տեղէն դուրս ելլել։ Մեր մարդոց մի միայն կաղդուրիչ մխիթարանք՝ ոչխարին մսէն փոքր կտոր մը տրուեցաւ. այնպէս քաղցեալ էին՝ որ միսը ուտելէն յետոյ ոսկրներն ալ մանրեցին կերան։ Երկրորդ օրը ուղտերը յանկարծական սարսափէ մը բռնուեցան, անանկ որ մեծ դժուարութիւն կրեցին մինչև որ կրցան ժողովել. և այնուհետև երկու օր ճամբայ ընելէն յետոյ՝ վերջապէս աւազուտից սահմաններէն դուրս ելան։ Այն տեղուանք Արաբացւոց

մը հանդիպեցան, որմէն՝ մինչդեռ քուն կ՚ըլլար՝ քիչ մը դարի գողցան ու փախան. սակայն այն Արաբացին արթննալով և եղած գողութիւնը իմանալով յափշտակողաց ետևէն վազեց և անոնց հասնելով ըսաւ. «Դուք հրազէն ունիք ձեռքերնիդ և մտքերնիդ դրած էք որ գիս սպաննելը դիւրին բան մըն է. սակայն ես երկիւղ չունիմ. արդարն Աստուած իմ պաշտպանս է։ Խաղաղութի՞ւն է մէջերնիս, հարցուց։

— Խաղաղութիւն է, պատասխանեց Միտի Համէտ։

Յետ որոյ երկայն խօսակցելով՝ համոզուեցան ու դարին իրեն ետ դարձուցին. գողն ու գողցուածին տէրը միաբան աղօթքնին ըրին, ու յետոյ իրարմէ բաժնուեցան։ Երկայն ատեն ընթանալէն յետոյ մինչև մութ գիշեր, այս մեր տխուր ճանապարհորդք քուն ըլլալու կը պատրաստուէին, երբ մերձաւոր տեղէ մը ձայներ լսուեցան։ Ամենը լուռ կեցան ու մտիկ ըրին. յետոյ խիստ դարուվար տեղ մը գտնելով ժայռուտի մը քով՝ զգուշութեամբ անկէ վար ինջան դէպ 'ի տեսակ մը հովիտ, որու ծայրը մէկ քանի Թուփեր գտան. հոն իրենց ուղտերը Թողուցին որ այն ցամքած ճիւղերը ծամեն։ Տէրերը զէնքերնին պատրաստեցին, ու յետոյ այն հովտին մէջ ցիրուցան գտնուող աւազուտ բարձրաւանդակները ելան. մեր գերիներն ալ անոնց հետևեցան, և ծունկ ու ձեռք 'ի կիր առնըլով նոյն բարձրաւանդակներուն վրայ մագըլցի ելան։ Մօտ դաշտը երբ հասան, Արաբացիք սկսան գազաններու պէս ոռնալով կանչել, այնպէս որ մարդու վրայ վախ կը բերէին. մերթ վագերց ձայնը կը հանէին, մերթ առիւծներու մռնչիւնը, մերթ ալ կարծես քաղցած գայլեր էին։ Այս աղաղակներէն ետքը սկսան բնտռել այն մարդիկը՝ որոնց

ձայնը ականջնին զարկած էր։ Բայց բոլոր իրենց խոյզ ու խնդիրն ունայն եղաւ. և վերջապէս փոքր անկիւն մը գտած ըլլալով գիշերը անցընելու պատշաճ, նորէն նոյն ահռելի ձայները հանեցին և լռելով՝ ամենը քուն մտան։

Օրն որ լուսցաւ օտար ուղտեր տեսան. անոնց հանդիպումը այս օգուան ունեցաւ որ մեր գերիները փորձ առին թէ մարդասիրութիւնը բոլորովին օտար բան չէր այն բարբարոս երկրին մէջ։ Վասն զի մինչդեռ կը պատրաստուէին ճամբայ ելլելու, պառաւ կին մը իրենց մօտենալով հարցուց, թէ արդեօք տէրերնին ալ իրենց պէս անօթի էին. և իրենց հաստատողական պատասխանին վրայ՝ կինը փութաց տղայ մը, որ հետը եկած էր, տեղ մը ղրկելու։ Քիչ մը ետքը տղան դարձաւ՝ ոչխարի մը կամ այծու խաշած կտորներ բերելով։ Բայց աւա՜ղ. բոլոր այն մնացորդքն կենդանւոյն ոսկորները և աղիքներն էին։ Տէրերը իսկոյն աղիքները լափեցին կերան. իսկ ոսկորները թողուցին գերիներուն, զորոնք աղէկ մը կրծելէն յետոյ՝ ակռաներնուն տակը մանրեցին կերան։ Այն ողորմած կինը՝ իր գութը աւելի ընդարձակելով՝ չափ մըն ալ ջուր տուաւ իրենց թթուած կաթով խառն, որ իրենց սքանչելի ըմպելիք մը երևցաւ։

Վաղուան օրը նոյն գարիին մարդը դարձեալ եկաւ իրենց. վասն զի անդրադարձեր էր որ Սիտի Համէտ բաց 'ի գարիէն նաև ափիոն ալ գողցեր էր իրմէն. ինչպէս նաև մէկ քանի փոր գաւազաններ, որոց մէջ լեցուցած էր ոսկիի փոշի, ծխախոտ և տեսակ մը խոտի արմատներ, որ աչքիլելուն ու կախարդութեան դէմ մէկ հատիկ դեղ կը համարուին։ Արաբացիք այս արմատը շատ կը յարգեն. այծու մը սրունից կամ զատին ոսկորի մը միջոցաւ անոր ծուխը կը քաշեն, և այնուհետև իրենք զիրենք անխոցելի կը համարին։

Քանի մը օր ետքը ուղտերու, ոչխարներու և այ-
ծերու մեծ խումբ մը առջևնին ելաւ. անոնց տէրերը
իրենց մեծ ընդունելութիւն ըրին: Միտի Համէտ ու[լ]
մը գնեց և անոր աղիքները մեր թշուառներուն տը-
ւաւ, որոնք՝ հում և առանց լուալու՝ իսկոյն կերան
անհետացուցին. այնպէս բուռն էր իրենց անօթու-
թիւնը: Այ՞ Արաբացիք անգէորդք՝ գիշերանց գնա-
ւապետը արթնցնելով՝ մեծ սկաւառակ մը տուին ձեռ-
քը լի տեսակ մը բուտինկայով. այն ուտելիքը գրեթէ
հինգ լիտր կը կշռէր, թող որ վրան առատ կաթ լե-
ցուցած էր: Ի՛նչ ազնիւ ընծայ երևցաւ այն խեղճե-
րուն, և ի՛նչպէս ախորժով և առատաբար կերան
ամենը. մէկզմէկ մեղադրելով որկրամոլ կը կանչէին:
Ահաւորապէս քաղցած էին. վատուժցած ու ցամքած՝
ալ կաշի և ոսկոր դարձեր էին:

Երեք չորս օր առանց ջրի և առանց կերակրոյ վա-
զելէն յետոյ՝ ուղտերէն մէկը կորուսին, որ չարա-
չար աշխատութենէ սատկեցաւ: Ամենը ուժաթափ և
լքեալ՝ հազիւ կրնային իրենք զիրենք քաշկռտել. ոչ
միայն մեր այս խեղճ գերիները, այլ նաև իրենց Ա-
րաբացի տէրերն իսկ: Եւ մինչդեռ այս յուսահատա-
կան վիճակին մէջ էին, յանկարծ մարդու մը ու կնկան
մը պատահեցան, որ հետերնին քանի մը այծ ունէին:
Սակայն անոնց ձեռքէն բան առնել անկարելի էր.
մինչև հարկ եղաւ մահ սպառնալ կնկան որ համո-
զուի իրենց հինգ այծ ծախելու: Այս դէպքէս ետքը
վերջապէս հեռուանց ծովը տեսան. այն տեսարանը
իրենց սիրտը յուսով լեցուց, ու երեսնին քիչ մը
ժպիտ եկաւ. այծու մսէն ալ մէկ քանի կտոր ուտե-
լով քիչ մը ուժովցան և արիացան: Սակայն իրենցմէ
մէկը կարծես թէ ալ ապրանաց չէր. չարունակ բեր-
նէն արիւն կու տար: Ճամբանին շարունակելով չորս

Արաբացի ընտանեաց հանդիպեցան, որոց հետ խօսք դրին մէկտեղ ճանապարհորդելու։ Այս խմբին գըլխաւորին կինը մարդասիրել ուզելով՝ մեր այս գերիներուն բուտինկայի կտոր մը տուաւ. քիչ մը ետքն ալ ծովեզերքը հասնելով մէկ քանի ձկնականջ ժողովեցին, և այնպէս կէս մը ասոնցմով և կէս մը այծումսով քանի մը օր կերակրուեցան։ Մէկ օր մըն ալ, սաստիկ ընթացքէ մը ետքը, մինչդեռ երկնքէն կարծես կրակ կը թափէր, այն հիւանդոտ մէկն ալ յոգնութենէ չնչասպառ՝ անզգայ գետինը ինկաւ։ Անգութ Արաբացիները սկսան գաւազանով անխնայ զարնել անոր որ ոտք ելլէ։ Այս տեսնելով Նաւապետը՝ շուտ մը ուղտէն վար սահեցաւ և անոր օգնութեան վազեց։ Սէյիտ, Սիտի Համէտին եղբայրը, անգթաբար կը շարունակէր գաւազանով հարուածել այն առերևոյթս անկենդան մարմինը, որ անզգայ գետինը փռուած էր։ Ուրիշ Արաբացի մըն ալ մէկ ձեռքով մորուքէն բռնելով միւս ձեռքով սուրը վերուցած անմիջապէս գլուխը կտրել կ'ուզէր։ Նաւապետը առանց ժամանակ կորսնցնելու մէջը նետուեցաւ, հրեց մէկդի այն արաբացին, և այն անզգայ գլուխը ձեռքերուն մէջ առնելով՝ գետնէն քիչ մը վեր վերուց ու քիչ մը ջուր ուզեց։ Արաբացին կատղած՝ կ'ուզէր զնաւապետը սպաննել. սակայն Սիտի Համէտ վրայ հասաւ ու զինքն արգիլեց. թէպէտ և Նաւապետը այն խեղճը ազատելու համար ամեն վտանգ դիմագրաւելու պատրաստ էր։ Բոլոր այն Արաբացիք մտքերնին դրած էին թէ այն Նաւաստիին տկարութիւնը յամառութենէ առաջ կու գար, իբր թէ միտքը դրած ըլլար անով կարաւանին ընթացքը ծանրացընել. բայց Նաւապետն ամեն ջանք բանեցնելով կրցաւ համոզել զՍիտի Համէտ որ այն հիւանդին տկարու-

թիւնը սաստիկ խոնջութենէ առաջ կու գար։ Միտի Համէտ այն ատեն ուղտ մը մօտեցնել տուաւ, և խեղճ նաւաստիին քիչ մը ջուր խմցնելով անմիջապէս ըզգաստացուց։ Երբ Միտի Համէտ անոր աչքերուն թացուիլը տեսաւ, ուրախութենէն լացը չկրցաւ բռնել. և անմիջապէս Պլարքին քովը գետեղեցնել տալով կանչեց. «Անգղիացիք անչափ մարդիկ են. կնկան ու տղու պէս քալել գիտեն միայն»։ Նաւապետը տըհաճելով պատասխանեց թէ ինքը շատ աղէկ կրնար քալել։ Եւ այս յօժարութեան ցոյցէն ախորժելով, «Շատ աղէկ, պատասխանեց Արաբայքն, դու ընտանիքդ միւսանգամ՝ պիտոր տեսնաս»։

Հոկտեմբերի տասներեօթին առաւօտը կանուխկեկ ճամբայ ինկան. քալած երկիրնին անոյշ դարուվար մըն էր. յանկարծ հեռուանց բարձր լեռներ տեսան, որոց երևութէն հասկցան որ այն ահաւոր անհուն անապատէն ալ դուրս ելած էին։ Իրենց սիրտը կըրկին արիացաւ երբ գետի մը քովը հասան, որու եզերքը բարձր խոտեր կային բուսած։ Այս գետս գրեթէ երեսուն ոտք լայն էր, ու երկու խոր։ Անոր մօտ եղած առուակի մը մէջ խոշոր ձկներ տեսան որ ջրին երեսը կը խաղային։ Արաբացիք փոյթ չտարին այն ձկներէն որսալու. կարծես արհամարհ կը համարէին։ Երկրորդ օրը իրիկուան դէմ սկսան մշակեալ երկիրներ տեսնալ ու դաշտի մը մէջ գարւոյ յարդի դէզ մը։ Սակայն նոյն օրը այծու մը նեխեալ միսացորդներէն զատ ուրիշ ուտելու բան չունեցան. անոնք ալ չորս օրէ 'ի վեր ուղտի մը վրայէն կախուած էին։ Եւ սակայն կարօտութիւննին անանկ էր որ այս ապականեալ միսն ալ իրենց ամենաքաղցր կերակուր մը երևցաւ. գիշերն ալ հանգիստ անցուցին՝ յարդի վրայ պառկելով։ Այնչափ երկայն ատեն չարունակ բռնա-

գտտուած ըլլալով իրենց խոնջ ու վիրալից մարմնով անապատին ժայռուտներուն և կամ անոր կիզիչ աւազուտներուն վրայ հանգչիլ, հիմայ այս յարդը իրենց փետրալից անկողնոյ անուշութիւնը կու տար։

Հոկտեմբերի տասնուիննին իրենց աչաց ներկայացան վրաններ, ջուր, կովեր, էշեր, ոչխարներ, կանաչ խոտ, ծաղիկներ ու բազմաթիւ արմաւենիներ։ Անանկ անակնկալ տեսարանի իրենցմէ ոչ ոք կը սպասէր. ուստի և երախտագիտութեամբ իրենց սիրտը առ Աստուած վերուցին։ Իրենց զգացած յետին աստիճանի ուրախութիւնը զիրենք վերջի աստիճանի ապշութեան մէջ ձգեց։ Առուակին եզերքը հասնելով՝ գլուխնին ջրին մէջ խոթեցին՝ և այնչափ խմեցին մինչև յագեցան։ Այս առուակին անունն էր Նուն։ Յետոյ արմաւենիներուն շքին մէջ տարածուելով հանգչեցան։ Սիտի Համէտ գնաց հիւղէ մը չորս լիտր մեղր գնեց ու բերելով անոնց հետ մէկտեղ բաժին ըրաւ։ Իրիկուան դէմ տեսակ մը բուտինկա տուին իրենց, և երկրորդ օրը, տասնըութ մղոն քալելէն յետոյ, գերեզմաննոցի մը քով պառկեցան։

Նոյն ամսուն քսանին ճամբանին շարունակելով հանդիպեցան Մաւրիտանացւոց և Արաբացւոց խումբերու, որոնք ուղտեր և ընտիր ձիեր ունէին հետերնին. այս յետիններուս վրայ հեծեալք գեղեցիկ զէնքերով զինեալ էին։ Եբրայեցւոյ մը իսկ հանդիպեցան որ 'ի Մոկատոր կ'երթար, և իրենց ըսաւ թէ բոլոր հիւպատոսաց անունները գիտէր. այս ետքինէս իմացան Անգղիոյ հիւպատոսին անունը, զոր լսելով նաւապետը կանչեց թէ իր բարեկամն է. թէպէտ և ստոյգն ըսելով և ոչ իսկ կը ճանչնար զինքը։ Նոյն օրը իրենց մի միայն կերակուր տրուեցաւ քիչ մը մեղր։

Երկրորդ օրը վրանաբնակ Արաբացւոց օթևան մը հասան, ուր գթած սրտերու հանդիպելով՝ ջուր և քիչ մը արմաւ ձեռք բերին. յետոյ այս տեղս ալ թողլով, յաջորդ օրը վրանի մը տակ պառկելու բարեբաղդութիւնն ունեցան, յետ քանի մը ձկնականջ ուտելէն, զորոնք ծովեզերքէն ժողոված էին։ Որպէս թէ կրածնին բաւական չըլլար՝ հոկտեմբերի քսանուերկուքին գողեր յարձկեցան վրանին. սակայն արիանալով յաջողեցան անոնց սիրտը վախ ձգելու, և այնպէս անվտանգ ճամբանին շարունակեցին։ Սիտի Համէտ յաջորդ օրը չորս մեծ ձուկ գնեց և իրենց տուաւ, որոնք կտոր կտոր խորովեցին ու մեծ ուրախութեամբ կերան։ Այնուհետև կեանքը կը սկսէր իրենց քաղցրանալ, որովհետև հետզհետէ, և գրեթէ ամեն քայլին, ջրամբարք և այլ և այլ կենդանեաց խումբք առջևնին կ'ելլէին։ Կը սկսէին արաբական քաղաքակրթութեան նշանները տեսնել. կանանց խումբք մշակութեան զբաղանաց ուշադիր, և այլք դարձեալ որ տղաքնին կռնակնին առած՝ այլ և այլ ուղղութեամբ կ'երթևեկէին։ Անոնց սկսան յաջորդել փշենի ցանկապատօք պարտիզապատ գիւղեր։ Բայց հանդերձ այս բնակարանաց մերձաւորութեամբը՝ դարձեալ աղէկ զինեալ ձիաւոր ասպատակներ վրանին յարձըկեցան. սակայն Սիտի Համէտին արիութեամբը յաջողեցան կռուէն անվնաս ելլել, և վերջապէս վրանաբնակ Արաբացիներու օթևան մը հասնելով դադարեցան գիշերն անցընելու։ Այն հիւրասէր Արաբացիք մարդասիրելով՝ քիչ մը չոր ձկնականջ և բուտինկա ընծայեցին իրենց։ Մինչև այն ժամանակ ճամբան ամենևին հիւանդութեան մը նշան չէին տեսած, և ոչ ինչ և իցէ խօթութեան հետք. բայց մշակեալ երկիրներ հասածնուն պէս հիւանդաց բազմու-

թիւն սկսան տեսնալ. ոմանց սրունքները ուռած էին այլք բորոտութենէ կը նեղուէին, և այլք դարձեալ ուրիշ սուր ցաւերէ կը չարչարուէին։ Այս ախտաժէտք մեր գերիները տեսնելով, չեմ գիտեր ինչէն գրգռեալ՝ բժիշկ կարծեցին. ուստի ամեն կողմէն սկսան վազել իրենց հիւանդութեանց դեղ ուզելու։ Կնիկ մը լանջաց վրայ ուռեցք մը ունէր. Նաւապետը հրամայեց որ ծեծած գարուոյ սպեղանի մը շինէ ու վրան դնէ. զորն որ քանի մը անգամ կրկնելով վերջապէս ուռեցքն անցաւ։ Եւ կինը իր երախտագիտութիւնը ցուցնելու համար՝ ջուր ու բուռ մը ձկնականջ բերաւ Նաւապետին ընծայ տուաւ։ Նորէն ճամբայ ելլալով իրենց ընթացքը շարունակեցին, և կէսօրուընէ ետքը, 'ի հեռուստ, ծովուն եզերքը բարձր բլուր մը տեսան։ Սիտի Համէտ մօտենալով Նաւապետին ու մատովը ցուցնելով ըսաւ. « Ահաւասիկ Մոկատոր »։

— Քանի՞ օրուան մէջ կրնանք հոն հասնիլ, հարցուց Նաւապետը։

— Տասն օրուան մէջ, պատասխանեց Սիտի Համէտ

Սակայն այն տասն օրն անլմննալի օրեր երեւնալու էին այն խեղճերուն։ Յանկարծ սաստիկ կռիւ մը ծագեց Սիտի Համէտին և իր եղբօրը մէջ, անանկ որ մէկզմէկ սպաննել կ'ուզէին. սակայն Սիտի Համէտ ինքզինքը զսպեց և այսպէս այն ձախորդութիւնը տեղի չունեցաւ։ Այն կռուին մէջ քիչ մնաց որ սպաննուէր գերիներէն մէկը, զոր Նաւապետը որդւոյ պէս կը սիրէր. հարկ եղաւ որ Նաւապետը բոլոր իր արիութիւնը 'ի կիր առնու զինքը փրկելու համար։ Այսպէս այն փոթորիկն ալ անցնելով ճամբան շարունակեցին ու գիւղ մը հասան, ուր պատկառելի կերպարանօք ծերուկ մը զիրենք հիւրընկալեց։ Շուտ մը փութաց

խաշած գարի պատրաստեց և առջևնին դրաւ որ ու-
տեն. այնպէս ալ առատութեամբ տուաւ՝ որ առջի
անգամն էր որ իրենց ուզածէն աւելի ուտելիք կը
գտնէին։ Եւ որովհետև սաստիկ անօթութիւն կը ըզ-
գային, լիովին լեցուցին իրենց ստամոքսը. որչափ
ալ կը ջանային իրենք զիրենք բռնել որ չափազանց չու-
տեն, ճար չեղաւ. մինչև յետին հատիկն անգամ՝ լա-
փեցին կերան։ Դժբաղդաբար այս առատ կերակուրս
իրենց սաստիկ ցաւ պատճառեց։ Երկրորդ օրը նմա-
նապէս կարաւանն ուրիշ գիւղ մը հասնելով՝ աղէկ
ընդունելութիւն գտաւ Մոհամէտ անունով մէկի մը
տունը։ Իրիկուան դէմ Սիտի Համէտ վնաւապետն ի-
րեն կանչելով ըսաւ, թէ վաղը, ինքը Համէտ և ի-
րենց հիւրընկալ տանտէրն առանձին 'ի Մօկատոր
երթալու էին. և թէ հոն հասնելու համար՝ գիշեր
ցորեկ ջորւով ճանապարհորդելով՝ իրեք օր պէտք
էր. ուստի իրենց նախընթաց պայմանին համեմատ
գիր գրելու էր իր բարեկամին։

— «Եթէ բարեկամդ քեզի ու քու մարդոցդ հա-
մար մեր դաշնագրած դրամը հատուցանէ, ըսաւ, ա-
զատ կ'ըլլաք. բայց եթէ զիս խաբեր ես, գիտնաս որ
զքեզ պիտոր սպաննեմ և ընկերներդ իբր գերի պի-
տոր ծախուին։ Քեզի բարիք ընելու համար ինչ որ
ունէի ծախեցի. անօթութիւն, ծարաւ, յոգնածու-
թիւն, ամենայն նեղութիւն քաշեցի. մինչև կռիւ ալ
ըրի զքեզ ընտանեացդ հասցընելու համար։ Այսչափ
բան քաշած ըլլալուս համար չեմ ցաւիր, որովհե-
տև խօսքիդ կը հաւատամ և համոզուած եմ որ Աս-
տուած հետդ է։ Հիմա դուք ամենքդ հոս մնալու էք.
կերակրոյ համար մի փոյթ ընէք. յանձնած եմ որ ու-
զածնուդ չափ հաց ու բուտինկա տրուի ձեզի։ Գնա
հիմայ պառկէ»։

Երկրորդ օրը առաւօտը կանուխկեկ Սիտի Համէտ զնաւապետը նորէն կանչելով ըսաւ. «Եկուր նամակդ գրէ»։ Խեղճ նաւապետը մեծ ահուդողով նըստաւ հետեւեալ նամակը գրեց.

Պարոն,

Քոմէրս անուամբ նաւը՝ Ճիպրալդարէն Ամերիկայ երթալու ճամբայ ելած ըլլալով՝ օգոստոսի 28 ին նաւաբեկեցաւ ՚ի Պայատոր հրուանդան։ Ես ու նաւաստիներէն չորս հոգի, գրեթէ մերկ հոս տեղս բարբարոսաց ձեռքը գերի կը գտնուինք։ Կ՚աղաչեմ, միջնորդ ունելով այն յօդը որ զմարդ մարդու կը կապէ, և այն եւրոպական արիւնը որ երակայդ մէջ կը քալէ, ըլլամ աշխարհքիս վրայ ունեցած ամենէնսիրելի անձինքներուդ համար, մեզ ազատելու համար կանխելով շնորհէ առոնց պահանջած ստակը, որ է 920 դահեկան, և երկու կրկնակ հրացան։ Ազատութիւնս գտածիս պէս ինչ և իցէ գումար ալ ըլլայ, կարող եմ հատուցանելու, Լոնտրայու սեղանաւորաց վրայ փոխանակագիր ընելով։ Եթէ զիս չազատես, անմիջապէս զիս պիտոր սպաննեն, թողլով կինս և հինգ զաւակս որ անմխիթար վրաս սուգ բռնեն։ Բաց ՚ի այս հինգ ընկերներէս որ հոս հետս են, դեռ ևս ուրիշ վեց նաւաստի իմ մարդիկներէս գերի մնացած են անապատին մէջ։ Սիտի Համէտ, իմ արդի տէրս, այս թուղթս ձեռքդ յանձնելով պիտոր զուրցէ թէ ուր տեղ կը գտնուինք հիմա։ Ստոյգը վկայելու եմ որ մեզի շատ բարերարութիւն ըրաւ։ Բոլորովին կաշի ոսկր դարձած, մերկ կողոպուտ ու գերի, քու գըթութիւնդ կը պաղատիմ, և կը յուսամ որ իմ թշուառութիւնս սիրտդ կը շարժէ։ Աստուծոյ սիրոյն հա-

մար՝ մեզի թարգման մը ու պահապան մը դրկէ. Գաղղիարէն և նաև սպանիացի լեզուով ալ կը խօսիմ։

ՃԻՄՍԸՆ։

Մինչդեռ գրելու հետ էր, Արաբացիք ուրիշ աղտոտ թղթի կտոր մըն ալ ճարեցին, և իրեն բերելով կարող եղաւ իւր նամակը լրացնելու։ Իսկ հասցէն ապահովցընելու համար ուղղեց զայն առ հիւպատոսս Գաղղիոյ, Անգղիոյ, Սպանիոյ, Ամերիկոյ, և կամ ինչ և իցէ քրիստոնեայ վաճառականի որ 'ի Մօկատոր գտնուի։ Այն թուղթը Սիտի Համէտ առնելով՝ ջորի հեծաւ ու մեկնեցաւ։

Սիտի Համէտին հեռանալովը պահապանները ըսկսան վրանին անգթանալ։ Եօթը օր աղտոտ բակի մը մէջ զանոնք փակեցին առանց կարևոր կերակուրն անգամ իրենց տալու։ Եւ ինչպէս թէ այսչափս բաւական չըլլար, յանկարծ այն նեղութեան օրերը ուրիշ մէկ բռնաւոր անձ մըն ալ ասպարէզ ելաւ, զոր Արաբացիք Ալի կը կոչէին։ Հզօր կերպարանօք, բուռն ուժով ու բարձրահասակ մէկ մըն էր, որու Արաբացիք յարգութեամբ ու երկիւղիւ կը նայէին։ Այս Ալին՝ Սիտի Համէտին աներն էր, և կը պահանջէր թէ այս ետքինս իրեն գումար մը ստակ պարտական էր. այն պահանջին զօրութեամբ գերիներուն վրայ ձեռք դնելով իրեն կ'ուզէր գրաւել, որպէս զի իր առնելիքը ապահովցնէ։ Ալ երևակայելու էր թէ ինչ անտանելի խափան էր որ այն խեղճերուն առջին կ'ելլէր, մինչդեռ իրենք զիրենք փրկութեան դուռը հասած կը համարէին։

Եօթներորդ օրը իրիկուան դէմ Ուլլահ Օմար անունով օտարական մը հասնելով՝ այս թշուառներուն

գտնուած բակը մտաւ. բարձրահասակ մէկ մըն էր, ուժով կազմուածքով ու թխագոյն դիմօք. ձեռքը երկայն հրացան մը կը կրէր, գօտին երկու ատրճանակ, ու կողմնակի սուր մը և երկու դանակ կախուած էր։ Այս նորեկս՝ սովորական բարևները տալէն յետոյ՝ նաւապետին մօտեցաւ և ըսաւ որ Մօկատորէն կու գար ուր զՍիտի Համէտ տեսած էր ողջ առողջ հասած։ Այս այցելութիւնս մեծ ուրախութիւն պատճառեց գերիներուն. որոնց զուրցած ըլլալով որ Սիտի Համէտ շուտով ետ պիտոր դառնար, մեծ անհամբերութիւն մը մտաւ սրտերնին շուտով իրենց տէրը տեսնելու, որովհետև իրմէն կախումն ունէր իրենց ապագայ վիճակը. մանաւանդ նաւապետն՝ որու կեանքը՝ դըրած պայմաններուն պատճառաւ՝ վըտանգի մէջ էր. վասն զի տարակոյս չկար որ եթէ Սիտի Համէտ չգտնար մէկ մը որ ուզենար փրկանքը հատուցանել, անգթաբար զինքը պիտոր սպաննէր։ Ինչու որ Արաբացին իր ամեն ունեցածը զոհած էր, և նաև նաւապետին խօսքին հաւտալով իր կեանքը վտանգի մէջ դրած էր։ Երկիւղն այն աստիճանի տիրած էր նաւապետին սրտին՝ մտածելով քաշելի տանջանքները՝ որ աւելի կը փափաքէր նորէն անապատը գտնուիլ ու տանջուիլ ծարաւով կիզիչ արևու մը տակ՝ և անօթութեան ամենայն կեղեքանք քաշել՝ քան թէ այն դիրքին մէջ գտնուիլ։ Սակայն հուսկ ուրեմն ինքն իր վրայ եկաւ ու զգաստացաւ. և մտածեց որ ցորչափ միւս ընկերներուն վիճակը անստոյգ էր, հարկ էր որ ինքը անոնց փրկութեանը համար ամենայն հնարք բանեցնէր։ Եւ եթէ յաջողէր որ գոնէ մէկը ազատութիւն գտնելով հայրենիքը դառնար, կարենար միւսներուն չար կատարածը պատմել։ Ուստի կարօտով կը փափագէր իր տիրոջը դարձին.

և սակայն ամեն դրան բացուելուն սիրտը դող կ'ելլէր։

Ութերորդ օրը մթննալուն ժամանակ ձիու ոտնաձայն լսեցին, և անմիջապէս բակին դուռը բացուելով ներս մտաւ Սիտի Մոհամէտ, որ Սիտի Համէտին ընկերակցեր էր 'ի Մոկատոր երթալու, հետը շնորհալից կերպարանօք Մաւրիտանացի մը ունենալով։ Խօսքը առ Նաւապետն ուղղելով անգղիարէն ողջունեց զինքը. Նաւապետը իր մայրենի լեզուին ձայնը լսելով այնպէս ուրախութիւն զգաց՝ որ այլայլութենէն քիչ մնաց վրան մարելիք կու գար։ Մաւրիտանացւոյն ձեռքէն բռնելով ջերմութեամբ՝ կ'աղաչէր որ խօսի։ Հիւրն առանց յապաղելու զուրցեց իրեն որ Մոկատորէն կու գար, և թէ իր գրած նամակը Անգղիացիի մը ձեռքը ինկած էր որ իրեն բարեկամն էր, զոր կարդացած ժամանակ չէր կրցած լացը բռնել։ Եւ թէ անմիջապէս հատուցեր էր փրկանքը Սիտի Համէտին, և առանց ժամանակ տալու իրեն, Մաւրիտանացւոյն, որ իր կնկան երթայ բարև մը տայ, ստիպեր էր զինքը անմիջապէս ճամբայ ելլել և իրենց գալ. և ինքը պատուէրը գործադրելով գիշեր ցորեկ անընդհատ ճանապարհորդեր էր շուտով քովերնին հասնելու։ Ա՛լ երևակայելու է այն թշուառներուն ուրախութիւնը, որոնք յանակնկալս մահուանէ 'ի կեանս կու գային։ Մաւրիտանացին փութալով ծոցէն նամակ մը հանեց ու Նաւապետին ձեռքը դրաւ։ Նամակին իմաստն էր այսպէս.

Սիրելի ու Թշուառ Պարոն,

« Անմիջապէս հիմա Սիտի Համէտին ձեռքէն ընդունեցայ ձեր գիրը, որոյ բովանդակածը հարկ չկայ ըսեմ թէ ինչպէս սրտիս գութը շարժեց։

*Ճիպրալդար հրատարակուած օրագրի մը մէջ ձեր նաւուն անունը գտնելով իմացայ թէ էր Ամերիկացի, և անկէ կը գուշակեմ որ դուք ալ Ամերիկացի ըլլալու էք։*

*Նախ ձեզի ուրախակցութիւնս կ'ընեմ անանկ մարդու մը ձեռք ինկած ըլլալնուդ, որ ինչպէս կ'երեւայ, ձեր վրայ մեծ գութ զգացած է։ Ես չեմ կըրնար լռել իմ ցաւակցութիւնս ձեր քաշած նեղութեանցը համար. սակայն մխիթարուեցէք, վասն զի Աստուծոյ շնորհքովը կը յուսամ որ ամենայն ձեր թշուառութիւնք շուտով կը լմննան։ Կը մաղթեմ որ Աստուած ձեզ և ձեր ընկերներուն շնորհէ առողջութիւն և ուժ, որպէս զի ամենքդ կարող ըլլաք ձեր հայրենի երկիրը տեսնելու։*

*Այս նամակս ձեռքերնիդ հասցնողն է Ռէյիս Պէլ Քասիմ. իր վրան ամենայն վստահութիւն ունեցէք. ձեր ամենայն պէտքը մանրամասն գրեցէք ինծի, և ինքը գիրերնիդ ձեռքս կը հասցնէ։*

*Սիտի Համէտին խօսք տուած եմ 920 դահեկան հատուցանելու անմիջապէս որ դուք քաղաքս հասնիք, ու զինքը հոս պատանդ բռնած եմ։ Մեծ հաճութեամբ ձեզի կ'իմացնեմ որ կրնաք ամենայն ազատութեամբ ճամբայ ելլել դէպ 'ի Մօկատոր. սակայն ուժերնիդ խնայութեամբ գործածեցէք ու ծանր ծանր ճանապարհորդեցէք։ Պէլ Քասիմ կօշիկ ու վերարկու պիտոր բերէ ձեզի, և նմանապէս քիչ մը բերնի պաշար և ըմպելիք, որպէս զի անմիջապէս ըսկսիք ձեր ազատութեան ճաշակը զգալ։*

*Հարկ չկայ որ դարձեալ կրկնեմ ձեզի որչափ ցաւ կը պատճառեն ինծի ձեր ձախորդութիւնքն ու քաշած նեղութիւնները։ Եւ այն օրն որ զձեզ ու զձեր ընկերները տեսնելու գոհութիւնը պիտոր ունենամ,*

*ինծի համար մեծ հանդիսի օր մը պիտոր ըլլայ. և այլն։» —*

*Ալ երևակայելու է թէ ինչ զգացին այն խեղճերը երբ այն ազնիւ նամակը իրենց կարդացուեցաւ. այն մարդիկ, կ'ըսեմ, որ այնպիսի դժբաղդութեամբ վերջի ծայր նուաստութեան իջնելէն զատ՝ չարժուն կմախք դարձած էին, և որոնց վայրկեանէ վայրկեան անգութ մահ մը կը սպառնար։ Ի՛նչպէս մխիթարութեամբ կը լեցուէր նաւապետին սիրտը խորհրդածելով այն մարդուն խօսքերը՝ որու քիչ մը առաջ և ոչ իսկ աշխարհքիս վրայ գտնուիլը գիտէր. այլ և այլ զգացմունքներով սիրտը կը յուզէր տեսնելով թէ ինչպէս այն մեծանձն և անծանօթ բարեկամին զինքը յանկարծակի ամենայն բարիքներով լցուցեր էր. խրախուսուելով կը վերակենդանանար, ու սիրտը յուսով կը լցուէր թէ միւս անգամ իր ընտանիքը տեսնելու կարող պիտոր ըլլայ, և իր ընկերներն ալ ազատելու պիտոր յաջողի։ Այն անակնկալ փրկութեան յոյսը այնպէս լցուց ամենուն սիրտը երախտագիտական զգացմամբ առ նախախնամութիւնն աստուածային, որ ամենքը միաբան գետինը խոնալով ձեռքերնին երկինք վերցուցին ու գոհութիւն մատուցին բարերարին Աստուծոյ որ այնպիսի սքանչելեօք իրենց հրաշագործեր էր։ Եւ սակայն կարծես թէ դեռ իրենց տանջանաց վերջը չէր հասած։*

*Որովհետև Շէյխ Ալի այն խեղճ գերեաց ուրախութենէն հասկնալով իրենց փրկութիւնը, կատաղի կերք ելաւ Սիտի Համէտին դէմ, և ուզեց Մաւրիտանացւոյն կամացը հակառակ զնաւապետը իրեն գրաւել։ Իսկ Մաւրիտանացին արգելքը հեռացընելու գիտաւորութեամբ հնարք մտածեց ու ջանաց համոզել զինքն որ նաւապետը նոյն տիտղոսը անկրա-*

ւաքար իրեն սեփականած էր, և թէ իրապէս նաւապետ չէր, այլ նաւաբեկած նաւուն խոհակերը։ Եւ այնպէս հուսկ ուրեմն կարող եղաւ այն խեղճերը լաւագոյն բնակարանի մը մէջ փոխադրել տալով հանգչեցնել. և հոն իրենց կողով մը բերաւ լի ամենազգի կերակրեղինօք։ Խեղճերը առատաբար վայելեցին նոյն բարիքներէն. բայց որովհետև ստամոքսնին տկարացած էր և այն կերակրեղինաց վարժութիւնը կորուսած, բոլոր գիշերը չկրցան աչք գոցել։

Երկրորդ օրը Ռէյիս՝ նաւապետին խրատ տուաւ որ չայ եփէ, և այնպէս զինքը Արաբացիներուն ցուցնելով վերջապէս հաւտացուց որ բուն խոհակերն էր և ոչ նաւապետը։ Նոյն օրը ճամբայ ելան դէպ 'ի Մօկատոր. և Շէյխ Ալի, միշտ խորհելով իր ճախորդ մտածութիւնը գործադրելու, չուզեց իրենցմէ բաժնուիլ այլ հետերնին գնաց։ Իրիկուան դէմ քաղաք մը հասան, ուր և ամենահանգիստ գիշեր մը անցուցին. և յաջորդ օրը դարձեալ ճամբայ ելլելով սկսան Ատլաս լերան յառաջադէմ առաջքը ելլել։ Հոն սաստիկ ցուրտ զգացին. անանկ որ եթէ կօշիկ ու վերարկու տրուած չըլլար իրենց՝ անշուշտ ամենը ցըրտէն կը մեռնէին։ Իրիկուան դէմ փոքր քաղաք մը հասան. ժողովուրդը վրանին թափելով սկսան զիրենք սպառալիքով նախատել. բարեբաղդաբար սաստիկ անձրև մը բռնեց, որ հեղեղաբար իջնելով զամենը ցրուեց։ Բայց ինչպէս թէ ասիկայ բաւական չըլլար, քաղքին գլխաւորը՝ Ալիին անիրաւ թելադրութեանց ունկն մատուցանելով զիրենք բանտարկեց։ Անոր վրայ Ռէյիս Պէլ Քասիմ ըսաւ նաւապետին. «Պէտք է անմիջապէս ճամբայ ելլեմ որ բոլոր այս բաները երթամ պատմեմ ձեր ազատարա-

րին. վեց օրէն միւսանգամ քովերնիդ կը դառնամ»։ Այս բանս լսելով այն գծբաղդները յետին աստիճանի յուսահատութեան մէջ ինկան։

Մինչդեռ Մաւրիտանացին ձի հեծնալու վրայ էր, Սիտի Մոհամէտ, որ ինչպէս ըսինք, Սիտի Համէտին հետ 'ի Մօկատոր գնացած էր, ըսաւ իրեն. «Միւլէյ Իպրահիմ ու Շէյխ Ալի չեն ուզեր որ դու Մօկատոր երթաս»։ Ու յետոյ Նաւապետին դառնալով և անոր արցունքները տեսնալով ձեռքէն բռնեց ու ըսաւ. «Հանգիստ եղիր, մի խռովիր, ես կ'երթամ 'ի Մօկատոր ու Ռէյիսէն ու քեզմէ նամակ մը կը տանիմ ձեր ազատարարին. որ եթէ պատանդի մը պէտք ունենայ՝ ես կը մնամ։ Երկու կանայք ունիմ ու եօթը տղայ, թող հունձքս, դաշտերս և անդեայքս. շատ աւելի յարմար պատանդ կրնամ ես ըլլալ քան թէ Սիտի Համէտ։ Ինքը ձեր բարեկամն ըլլալով կու գայ զձեզ կ'ազատէ։ Աստուած մեծ է և ողորմած»։ Բարեբաղդաբար այս եռքինս դեռ ճամբայ չելած խնդիրը լուծուեցաւ։ Միւլէյ Իպրահիմ՝ քաղաքապետը՝ երկու կողմի դատը լսելով՝ հետեւեալ վճիռը տուաւ. «Դու Շէյխ Ալի, իմ հին բարեկամս ես. դու ալ Ռէյիս կը պահանջես թէ իրաւունք ունիս այդ հինգ գերիներուս վրայ. երկու կողմանէ ալ աղէկ պատճառներ կան յիրաւի։ Բայց որովհետև ես չեմ կրնար վճիռ կտրել առանց նոր ապացոյցներ բնտռելու, միտքս հաստատած եմ այս գերիներս հոս քաղաքս բռնելու մինչև որ պատգամաւոր մը երթայ 'ի Մօկատոր ու զՍիտի Համէտ հոս բերէ, այն ատեն այս գործս կ'որոշուի»։

Այս վճռոյս վրայ Նաւապետն և իր ընկերները բանտարկուեցան, և երկրորդ օրը Սիտի Մոհամէտ ուրիշ մէկ մը հետը ընկեր առնելով դէպ 'ի Մօկա-

տոր համբայ ելաւ։ Սակայն Ռէյիս հարտարամիտ մարդ մըն էր և ամեն արգելքի կը ջանար հնարք մը գտնել. անանկ վարպետութեամբ շարժեցաւ՝ որ վերջապէս քաղաքապետին միտքը դարձուց այն խեղճերուն վրայ գթութեամբ նայելու։ Եւ այնպէս քիչ մը պաշտպանութիւն գտնելով՝ առատութեամբ կերակուր տրուեցաւ իրենց, ինչպէս հաւկիթ, հաւ և ուրիշ ուտելու բաներ. որով այն արգելարանը, որչափ ալ 'ի սկզբան խիթալի երևցաւ, շատ օգտակար եղաւ իրենց առողջութեանը։ Վերջապէս Ռէյիս նոր դաշինք մը ընդունել տալու յաջողելով, առանց պատգամաւորաց դարձին սպասելու, թոյլ տրուեցաւ այն պզտի խումբին նոյեմբերի չորսին համբան շարունակելու։ Իրիկուան դէմ հասան մերձ 'ի Սանդա Քրուզ կամ Ագատիր, որու նաւահանգիստը սկսաւ պարզիլ իրենց աչացը առջին։ Ռէյիս վախնալով Այիին չար դիտաւորութենէն՝ չուզեց քաղաքը մտնել։ Բայց յետոյ ապա արևմտքէն ետքը մեծ զգուշութեամբ և իբր գողունի մտան քաղաքը, և շատ մը քալելէն յետոյ՝ բացօթեայ գետինը պառկեցան հանգչելու։ Ռէյիս խնամքով իրենց յանձնեց որ աղէկ պահպանութիւն ընեն, մինչդեռ ինքը Այիին վրայ հսկելու կ'երթար։ Կէս գիշերուան մօտ շտապաւ դարձաւ քովերնին և ըսաւ. « Հա՛պա, ելէք. շուտ ըրէք երթանք, և մասնաւորապէս զգուշացէք աղմուկ չհանելու։ Յիշեցէք որ եթէ արևուն ծագած ժամանակը ասկէց չորս փարսախ հեռի ըլլաք, ա՛լ ձեր ազատութիւնը ապահով կ'ըլլայ. ապա թէ ոչ նորէն թշուառ գերի պիտի մնաք »։

Այն ազգին վրայ շուտ մը համբայ ելան և զգուշութեամբ քալելով առանց մէկ մը արթնցնելու՝ քաղքէն դուրս ելան։ Սանդա Քրուզէն երեք փարսախ

հեռու էին երբ յանկարծ ձիերու վազելու ձայն մը լսեցին. աչքերնին վերցնելով տեսան որ քիչ մը հեռուանց ձիաւորներ կու գային իրենց դէմ։ Նաւապետին մտքէն յանկարծական մտածութիւն մը անցնելով՝ իսկոյն Սիտի Համէտին անունը կանչեց. և յիրաւի Սիտի Համէտ էր, Սիտի Մոհամէտին և անոր ընկերոջը հետ։ Ո՛րչափ ուրախութիւն պատճառեց գերիներուն այս դէպքս՝ մարդ կրնայ երևակայել։ Քիչ մը ետքը Շէյխ Ալին՝ որ գիրենք հալածելու ելած էր, վրայ հասաւ. սակայն շատ ուշ էր. ա՛լ իր չար դիտաւորութիւնը գործադրել չէր կրնար։ Ստակը տրուած ըլլալով, ա՛լ խեղճերը բոլորովին ազատ էին ու ճամբանին շարունակեցին։

Քանի մը օր ճանապարհորդելէն ետև վերջապէս երկուստեք Թիփազարդ նեղ ճամբայ մը մտան, և անկէ ելլելով շարք մը փոքր շարժուն աւազուտից բլրակներու հասան։ Առաւօտեան ժամը ութ էր երբ այս բլրակներէն մէկին գագաթը ելան, ուսկից Մօկատոր քաղաքը իրենց աչացը առջին ներկայացաւ։

— «Սիրտ ըրէ, կանչեց Ռէյիս առ Նաւապետն, ահաւասիկ Մօկատոր աչացդ առջևն է. և ահա կը տեսնեմ այն նաւը որ քեզ ընտանեացդ գիրկը պիտոր տանի։ Աստուծոյ գոհութիւն որ զիս ընտրեց ձեր թշուառութեանց ժամանակը կնքելու. ուրախ եմ որ ասանկ սուրբ ծառայութիւն մը մատուցանելու արժանի եղայ։ Նոյն ինքն Աստուած ինծի ալ շնորհէ որ կնիկս ու տղաքս ողջ առողջ տեսնամ»։ —

Այն աւազուտ գետնին վրայ շատ դժուարութեամբ կը քալէին. սակայն վերջապէս քաղքին մօտենալով անոր արևմտեան պարըսպին քովը դադարեցան։ Ջորիներէն վար իջնալով խոտին վրայ նստեցան ու սկսան դիտել այն տեսարանը որ իրենց չորս դին կը

պարզէր ։ Փոքր առուակ մը՝ աւազին վրայէն հոսելով
այն կանաչութեան վայրը կ'ոռոգանէր. Նաւահան-
գստին մէջ ալ նաւակաց բազմութիւն մը ամենայն
ուղղութեամբ կ'երթեւեկէր. մինչդեռ այլ և այլ ճամ-
բաներու մէջէն բազմութիւն մարդոց և երամք ուղ-
տուց, կովուց, ձիոց և ոչխարաց՝ կը շրջագայէին ։
Մինարէից բազմութիւնը տանց միակերպութիւնը
կտրելով դէպ 'ի երկնից ջինջ կապուտը կը սլա-
նային ։ Սակայն այս ընդհանուր տեսարանին մէջէն
ամենէն աւելի սրտերնին բաբախել տուողը՝ Ամե-
րիկայի դրօշն եղաւ՝ որ տան մը վրայէն կը ծփար ։
Ի՜նչ քաղցր ապշութեան պատկեր էր այն խեղճե-
րուն համար ։ Դեռ ևս խոտին վրայ նստած անուշ
հիացման մէջ էին, երբ յանկարծ Բէյլիսին ձայնը լը-
սուեցաւ որ կ'ըսէր. «Ահա հոս ենք» ։ Իսկոյն ամենը
աչքերնին վերուցին, և ահա առջևնին կեցած տեսան
իրենց ազատարարը ։ Այն բարերարը լի զգացմամբ
յառաջ նետուելով գրկեց զնաւապետը և ըսաւ.
«Բարի եկար. այս վայրկեանս ինծի երջանկութեան
վայրկեան մըն է» ։ Սրտին այլայլութիւնը այնչափ
էր որ աչքերէն արցունք կը վազէր. միւսնաւաստեաց
իւրաքանչիւրին ձեռքը սեղմելով՝ աչքերը երկինք վե-
րուց և ըսաւ. «Տէ՛ր Աստուած, քեզի գոհութիւն կու
տամ որ այս թշուառներէս ողորմութիւնդ հեռի չը-
րիր ։ Եղբարք..» ։ Սակայն սիրտը սաստիկ ելած՝ չը-
կրցաւ խօսքը առաջ տանիլ. հեծկլտանքը ձայնը
կտրեց ու լռելեայն գետինը նստաւ ։ Ամենը իր չորս
կողմը չոգած կու լային ։ Քիչ մը ետքը զօրանալով ը-
սաւ. «Հա՛պա, երթանք բարեկամք, քաղաքը մտա-
նենք. տունս ձերն է ու հոն այլք ձեզի կը սպասեն ։ »
Եւ այնպէս ամենը միաբան քաղաքը մտան և 'ի հան-
գիստ մարդասէր հիւրասիրութեան ։

Նաւապետն և իր ընկերներն՝ իրենց վշտաց օրերը անանկ անտանելի չարչարանք կրած էին, որ ոսկորնին ու կողերնին ոչ միայն միսը կորուսած էին, հապա նաև գրեթէ բոլոր կաշին. անանկ որ անապատը եղած առեննին՝ կրակով ճերմկցած ոսկորներ կը նմանէին։ Այլ 'ի Մօկատոր հասնելնէն ետքը նորէն սկսան վրայ գնել ու մարմիննին նոր կաշիով սկսաւ ծածկուիլ. սակայն և այնպէս տեղացիք կմախք կամ ցամքած գերիներ կը կոչէին զանոնք։ Նաւապետը ինքզինքը կշռել տալով գտաւ որ հազիւ ինըսուն լիտր կը կշռէր, մինչդեռ առաջ իր բուն ծանրութիւնն էր երկուհարիւր քառասուն լիտր։ Նաւաստիներէն մէկը կար որ և ոչ քառասուն լիտր կը կշռէր։ » —

Մեր պատմիչը հոս լմնցնելով իր պատմութիւնը՝ ոտք ելաւ։ Ունկնդիրք իսկ որ կէս ժամէ 'ի վեր ուշադիր էին այն աղետալի դիպաց, ինչպէս թէ խոր թմրութենէ սթափած՝ ելան, ցնցուեցան ու իւրաքանչիւր ոք ցրուելով՝ ոմն գիրքը առաւ զբաղելու, ոմն ալ ծխախոտը վառեց ու ինքզինքը խորհրդածութեանց տուաւ։ Իսկ ես աչքս ընդարձակ ծովուն տալով՝ մտքէս այն ցաւալի դէպքերը կը յեղյեղէի. փոքր երկիւղ մը սիրտս կը գրաւէր. մենք ալ այն բարբարոս երկիրներուն մօտ էինք. ու եթէ բաղդը ըզմեզ ալ նոյնպէս հարուածէր, անշուշտ լաւագոյն վիճակի չէինք կրնար յուսալ։ Արդէն իսկ հովը զօրացեր էր ու ծովը քիչ մը անսովոր կը յուզէր. նաւուն տատանումն ալ սաստկացած ըլլալով՝ ճանապարհորդաց դիւրազգածք կամ անհետացեր էին խորշերը քաշուելով, և կամ տխրագին կերպարանօք թիկնաթոռոց վրայ կործանած լուրկ կը մնային։ Թեթև գլխացաւութենէ մը ես իսկ ըմբռնեալ՝ կը զգայի որ

ծովային ազդեցութեան անախորժ հետեւանքը կրելու էի։ Ծովու բռնելը անանկ գէշ բան մըն է և անանկ անտանելի նեղութիւն կը պատճառէ, որ ով որ չէ փորձած կարելի չէ գաղափար առնու։ Կ'երեւի թէ տկարութեան բուն աթոռը գլխուն մէջն է. կրողին աչքերը կը մթըննան, ու տեսարանը մշուշ կերպարանք մը կ'առնու. գլխոյ պտոյտը սրտի խառնուքն ալ կը բերէ, որ հետըհետէ սաստկանալով հարկ է որ մարդ ստամոքսը ինչ ունի դուրս տայ։ Այն ատեն ամենայն ինչ գանելի կու գայ, եւ առաւել կերակրոյ հոտը։ Ախորժակն բոլորովին կը գոցուի, ու մարմնոյն վրայ սաստիկ տկարութիւն մը կու գայ։ Ցորչափ նաւուն շարժմունքը կը տեւէ՝ այն տկարութիւնն ալ կը շարունակէ՝ մերթ ընդ մերթ անտանելի փոխողական նեղութիւններ տալով։ Եւ այս նեղութիւնք այնպէս կը սաստկանան՝ որ տըկար կազմուածքի մարդոց կրնան մինչեւ մահ պատճառել։ Իմ այս տագնապս երեք օր տեւեց՝ նոյնչափ ատեն գիս անսուաղ բռնելով։ Որչափ ալ ջանացած են այս տըկարութեան դեղ հնարել՝ ունայն եղած է. դեղ չկայ. մի միայն դարման կամ թեթեւութիւն նեղութեան որ մարդ կրնայ գտնալ՝ խորշը քաշուիլ ու կռնկի վրայ պառկիլն է։ Այն նեղութեան վայրկեանները ոչ երբէք կ'անցնին. ժամերը անլմննալի են, իսկ օրը յաւիտենականութիւն։ Բարեբաղդաբար շոգեմղին անընդհատ ուժը զմեզ շարունակ կը մղէ ու մենք օր աւուր դէպ 'ի Պոմպէյ կը մերձենանք։

Մեր եռօրեայ նեղութեան վերջ տուաւ ցամաքին մերձաւորութիւնը. նուաղեցաւ հողմոյն սաստկութիւնը, դադարեցաւ նաւուն բուռն տատանումը, եւ մեք ճանապարհորդքս ոգի առինք։ Բազմութիւնը ըսկսաւ նաւուն վրայ խռնիլ, եւ զուարթութիւնը, ծի-

ծաղը ու երաժշտութիւնը մեզ սկսան աւետել թէ մեր ճամբորդութիւնը յաւարտ կը մերձենար։

Փորձք 'ի ճանապարհորդաց կը տեղեկացնէին զանգէտքս, պատմելով այն նշաններն՝ յորոց սովոր էին երբեմն նաւորդք գուշակել ցամաքին մերձաւորութիւնը։

Ըստ վկայելոյ հին ճանապարհորդաց, Հնդկային Ովկիանոսին մէջ ցամաքէն չափաւոր հեռաւորութեամբ՝ կան բազմաթիւ օձեր, որոց երկայնութիւնն է տասուերկու և նաև տասուիրեք ըթաչափ. ասոնք երկայն բարակ գիծ մը կը ձևացնեն՝ գլուխնին ջրին երեսէն վեր տնկած բռնելով։ Այս երևոյթս գուշակ էր թէ ցամաքը հեռի չէր։ Արդի նաւորդք իսկ ստուգած են այս տեսարանս՝ ճշմարտելով նախնեաց վկայութիւնը, այլ ըստ սոցա՝ միայն հարաւային արևմտեան քամին շնչած եղանակին է որ այս տեսարանս տեղի կ'ունենայ։ Օձերուն գոյնը դեղին կամ պղնձագոյն է կ'ըսեն, և ասոնց մեծագոյնները նաև ծովուն խորերը կը դիմեն լողալով ալեաց դիմագրաւ։ Ջրին երեսը անշարժ կը մնան, և անանկ ծոյլ կ'երևան որ շոգենաւուն անցած ժամանակն իսկ անփոյթ են տեղի տալու։

Այս երևութիս ականատես ըլլալու ըղձակաթ՝ ուշադրութեամբ ջրին երեսը կը քննենք. բայց ունայն տեղ. այն նախնեաց վկայութիւնը միայն մեր մտաց գաղափարներուն մէջ նկարեալ կը տպաւորի, և ծովային յետին աստեղազարդ երկինքն՝ որ վրայ կը հասնի՝ զմեզ ուրախութեամբ 'ի հանգիստ կ'ուղարկէ՝ յաջորդ օրուան ցամաքային տեսարանին պատրաստելով։

Եւ լուսացաւ հուսկ ուրեմն եօթներորդ ու վերջին ծովային օրը՝ զճանապարհորդքս շարժման ու գործու-

նէութեան մէջ դնելու։ Ամենուն աչքը ըղձակաթ դէպ արևելեան հորիզոնը կը շրջէր, ուսկից 'ի յայտ պիտոր գար ցամաքը։ Ի՜նչպէս անսովոր ծանրութեամբ ժամերը կը սահէին. բայց հուսկ ուրեմն ցամաք ձայնը լսուեցաւ, ու տեսնենք մշուշին մէջէն նուրբ գիծ մը սկսաւ մարմնանալ։ Հետզհետէ որ կը յառաջէինք՝ լերանց կոները կը նկարուէին, և ցա-



Եղեգնակազմ նաւ Նեղիկ.

մաքին ողջոյն ընդարձակ գիծը կարծես մեզի ընդ առաջ կու գար։

— Կը տեսնե՞ս ինչպէս ջրին գոյնն ալ փոխուեցաւ, ըսաւ ուղեկիցներէն մէկը։ Այն ջինջ մութ կանաչ ջուրը՝ որ մինչև ցայսօր մեզի ուղեկցեր էր՝ սա պղտորին տեղի տուաւ. ծովուն յատակէն պատճա-

ռեալ չհամարիս։ Հնդկաստանի բազմաթիւ գետերն են որ իրենց պղտոր ջրերը կը բերեն ծովուն ջրին հետ կը խառնեն՝ սա տղմուտ երանգը անոր տպաւորելով։ Քիչ ատենէ Պոմպէյի մուտքը պիտի տեսնենք, որ ըստ ճանապարհորդաց՝ գեղեցկութեամբ աշխարհիս վրայ չորրորդն է, յետ Կոստանդնուպօլսոյ, Նէապօլսոյ, ու Պուէնոս Այրէսի։ —

Այսու ակնկալութեամբ կը նաւէինք, ոչ ուշ դնելով սաստիկ ջերմութեանը որ ծովուն զովին յաջորդեր էր։ Ցամաքն հետզհետէ յստակ կը նկարուէր. փարոսք իբր յառաջադէմ պահապանք կը կանգնէին և տեղացի եղէգնակազմ նաւերն՝ որ այլևայլ ուղ-



Հնդիկ առագաստաւոր նաւակ.

ղութեամբ քովերնէս կ՚անցնէին՝ սևամորթ ու մերկ անդամ աղտեղի նաւաստեաց տեսարանը մեզի կուտային։

Ուշ եղեալ կը դիտէի հետաքրքրաբար տեսնել հռչակեալ մտից գեղեցկութիւնը։ Շարք բլրոց մեր աջ դին ետևէ ետև կղզիացեալ իրարու կը յաջոր-

դեն։ Մերձաւորագոյնք՝ ապառաժ, անջրդի, անբեր և արևակէզ տեսլեամբ։ Յաջորդքն ոչինչ տարբեր քան զառաջինս. և միայն հեռաւորագոյնք՝ խորհրդաւոր և երփներանգ մշուշի մը մէջ թաղուած՝ գոհացուցիչ տըպաւորութիւն մը կ՚ազդեն։ Աստ անդ ոմանք 'ի բլրոց ծոցեր կը ձևացնեն ու տեսարանին միակերպութիւնը կը կտրեն։ Համբերութեամբ ակնկալեալ կը մնայի տեսանել այն գրեաթէ ամայութեան տեսարանին գեղեցկագոյն մասը. ակնկալութիւն ունայն. այն մի և նոյն տեսարանը շարունակեց մինչև քաղաքին հանդէպ, ուր խարիսխ ձգեցինք միջօրէէն երեք ժամ ետքը։

Փոքր շոգենաւք, և առագաստաւոր և թիավար նաւակաց բազմութիւն մը պատեց մեր չորս դին,



Հնդիկ թիավար նաւակ.

շփոթութեամբ, խռովութեամբ և աղաղակներով օդը թնդացնելով։ Շուարեալ, ապուշ՝ ճանապարհորդքս նաւուն երկու կողմը դիզուած՝ կը նայէինք այն խառնաձայնութեան տեսարանին, մինչդեռ նաւուն ամեն՝ կողմէն իբր դիւահարք՝ վեր կը յարձկէին բազմութիւն մը թարգմաններու, սպասաւորներու, կիսամերկ նաւաստիներու, ամենը բոկոտն։ Պանդոկ, նաւակ, ծառայութիւն, հազար ու մէկ առաջարկութիւն կ՚ըլլուի մեզի, այնպիսի յամառութեամբ՝ որ հարկ է առաջարկուները բռնութեամբ վարենք։ Բայց անոնք դարձեալ կը դառնան աւելի յամառ յարա-

տեւութեամբ, և աղմկելով ու կռուելով կը ջանան զուղւորս իրարու ձեռքէ յափշտակել: Նաւուն մօտից առջին բազմութիւնը խռնած խճողած կ'աղմկի. տէրութեան բոկոտն պաշտօնեայք ամենուն ելքը կը խափանեն՝ մինչև որ մաքսատան քննութիւնք չըլլուին: Թղթաբերին խուրձերը և ուղևորաց կահը ասդիս անդին դիզած՝ նաւուն վրայ շրջելը ալ աւելի կը դժուարացնեն: Ժամանակն երագ կ'անցնի, այլ ուղևորք իբր քամուած՝ նաւէն ելել չեն յաջողիր: Մըղելով աջ դին, զարնուելով ձախ դին՝ կը յաջողիմ ելից քով եղող սևադէմ Հնդիկ պաշտօնէին մօտենալ:



Կը յառաջենք դէպ յամբարտակ մը.

— Ճէնդլմէն, կ'ըսեմ, շնորհք ըրէք փութացուցէք երթալս. ամենակարևոր գործ մը զիս կը սպասէ փութով ցամաք ելլելու: —

Ճէնդլմէն տիտղոսը, որու կաթոգին են տեղւացի Հնդիկք, բոկոտն պաշտօնէին սիրտը կ'ամոքէ: Ժպիտ երեսս կը նայի յարգանօք, ու ենթակայ պաշտօնէի մը ակնարկելով՝ իսկոյն կահս, առանց այլ արարողութեան, նաւակ մը կ'իջեցնէ: Ձեռքը կը սեղմեմ

չնորհակալութեամբ, կ'իջնեմ նաւակը ու կը բաժ-նուիմ. ինծի կ'ընկերէ սպասաւոր մը՝ որ 'ի պանդոկ պիտոր առաջնորդէ։ Երեք սեւադէմ, կիսամերկ, ստ-վալլուկ երեւութիւ անուանեալ մարդիկ՝ չերեփանման թիակներով զմակոյկը դէպ 'ի ցամաք կը մղեն. կոշ-տացեալ բոպիկ ոտքերնին նստարանաց յեց՝ կարծես իբր ընտիր առարկայ՝ բազմողիս տեսարան կ'ուզեն տալ։ Կը յառաջենք դէպ ամբարտակ մը, ուր սպի-տակազգեստ հանդիսականաց բազմութիւն մը խռնած ականատես կ'ըլլան։



փարսի.

— Ո՞յք են ատոնք որ այն հովանոց տեղը դիզուած կեցած են, կը հարցնեմ սպասաւորիս։

— Տեղացիք են, կը պատասխանէ, որ երեկոյեան զովը վայելելու հոն կը ժողովին։

— Եւրոպացի նկամմուտք արդեօք, կը յաւելում հարցնել։

— Եւ բնաւ ոչ, կը պատասխանէ մարդս. ճրագով բնտռես եւրոպացի մը չես գտներ մէջերնին այս ժամուս։ Եթէ գլխարկնին կ'որոշես, կը տեսնես որ մեծագոյն մասը փարսի են։ Եւրոպացի ամենաքիչ կայ քաղաքս. հազիւ թէ երկու հազար կ'ելլէ. անոնք ալ ցրուած են։ Քիչ մը ուշ ատեն այդ ընկաց բազմութիւնը կը քաշուի տեղի տալով եւրոպացւոց կառքերուն։ —

Ցամաքն որ կ'ելլեմ՝ ինքզինքս խառնիճաղանճ բազ-



Ոստիկանութեան զինուոր.

մութեան մը մէջ կը գտնեմ, որ յարգանօք աջ ու ձախ կը բաժնուին ու հիւրիս ճամբայ կու տան։ Ամենուն հագուստը սպիտակ է. իսկ գլխարկնին՝ այլագոյն և այլաձև։ Ամենք ականջի օղ կը կրեն. ճակատնին ալ գունաւոր գծերով դրոշմեալ է. հետաքրքրաբար ինծի կը նային, մինչդեռ գոռոզ փարսին, որ իւր գրեթէ եւրոպական հագուստովը անոնցմէ կը զանազանի, ծանրութեամբ գլխ կ'ողջունէ։

Մինչդեռ ես դէպ 'ի կառքերը կը քալեմ, ոստիկանութեան զինուորք որ բազմութեամբ բարեկարգութեան ուշ կը դնեն, ինձ զինուորական բարևը կու տան, և ուշ կը դնեն որ ժողովուրդը զիս չնեղէ։ Այն առաջին ընդունելութեան տպաւորութիւնը ինծի խորհրդածել կու տայ որ օտար երկրի մը հողը կը կոխէի, որու վարչութեան գաւազանը զընիկ ժողովուրդը ահաբեկած՝ սորվեցուցած էր զեւրոպացին իբր գերազանց տէր ճանաչել, և անոր առջին գոգցես գերութեան չափ նուաստանալ։

Մինչդեռ կառավարիս խարազանը ձիերը կը վարէ՝ աչքս չորս դին կը պտըտցնեմ. ինձ ամենայն ինչ նոր կու գայ ու բոլորովին տարբեր ցայս վայր տեսածներէս. երկինք, տեսարան, մարդիկ, ամենայն ինչ նոր է. փողոցք խճողած են ամբոխիւ. սևամորթ, մերկանդամ մարդիկ լուիկ և կամ կանչուըռտելով ամենայն ուղղութեամբ կը շտապեն. այլք հետաքրքրաբար ինձ կը նային, և շատք այնք են, յորս նաև ոստիկանութեան բազմաթիւ սպասաւորք, որ յարգանաց ողջունիւ՝ ինձ բարի եկար կը մաղթեն։ Բոլոր այն երկայն փողոցը՝ ուսկից կառքս կը սրանայ, և որ գըլխաւոր փողոցն է, շարժման ու գործունէութեան մէջ կ'երևնայ։ Փարսիներու բազմութիւն մը տուները, խանութները ելումուտ կ'ընեն. գործաւոր Հնդկաց ամբոխը, աղջիկ, կնիկ, մանչ ու երիտասարդ, խումբ խումբ արտորնօք ու զուարթ խօսակցութեամբ տուներնին դառնալու կը փութան։ Այն բազմութեանը մէջ հազիւ երբեք եւրոպացւոյ մը երեսը կը նշմարեմ. սակայն հոյակապ շէնքերը հոն կանգուն կեցած են, որ վկայեն անոր տիրական ներկայութեանը։ Այլ կառքը որ շտապաւ կ'ընթանայ՝ յանկարծ նորակառոյց շէնքի մը առջևը դադարելով զիս թմրութենէս կը

սթափեցնէ . Grant Central Hotel հասեր էի, ուր պիտոր իջեւանէի և որու վարիչը Իտալացի մէկ մըն էր։

### Ի ՊԱՆԴՈԿԻ․

Ինձ ախորժելի էր այս պանդոկս և ընտրելագոյն քան զանգղիականս և քան զտեղացւոցը, որ մաքրասիրութեան կողմանէ պարծանք մը չունին։ Բայց երբ պանդոկիս երկրորդ ու պատուականագոյն դըստիկոնին սենեակ մը մտուցին, որու մի միայն կահն էր անկողին մը, աթոռ մը ու լուացուելու անօթ մը, ապշած՝ դադարեցայ տեսնելու թէ ինչ էր այն տեղին։ Ընդարձակ սրահ մըն էր չորս մասն բաժնած, ցած տախտակամած անջրպետով։ Վերէն բոլոր սենեակները իրարու հետ կը հաղորդուէին. հասարակաց ննջարան մըն էր՝ խորշ խորշ բաժանեալ, ուր մարդս ոչ երբեք կրնայ համարիլ թէ առանձնարան մը ունի։ Ապշած դէպ 'ի դուռը կը դառնամ. քառակողմեան փայտեայ շրջանակ մըն էր թղթով պատած։ Կղպանքը շարժական էր, ու երկու օղակի մէջէն անցընելի՝ կղպել ուզելով. գրեթէ մանրադիտական բանալին ձեռքիս մէջ կը կորսուէր, և հարկ էր մեծաւ զգուշութեամբ քսակին մէջ պահել որ չկորսուի։ Բայց որ աւելի զարմանալին էր, այն թղթեայ դուռը անանկ երկրաչափական ճշդութեամբ շինած էր, որ չափաւոր մեծութեամբ կատու մը անարգել անոր ճեղքերուն մէջէն կրնար մտնել ելլել։ Դրսէն՝ դրան հանդէպ՝ հասարակաց սանդուղը դէպ 'ի երրորդ դըստիկոնը ուրիշ հիւրերու առաջնորդելով՝ սենեկին անջրպետը ունայն զգուշութիւն մըն էր. վեր ելլողներուն աչքը ողջոյն սենեկին մէջ կը շրջէր։

Այս անակնկալ տեսարանին առջին զարմացած տարտամ մոօք կը հարցնեմ տիրոջը։

— Ո՞րչափ է սենեկիս գինը։

— Հինգ ռուփի[1] օրը, կը պատասխանէ։

— Ասկէ լաւագոյն սենեակ չունի՞ք, կը յաւելում հարցնել։

— Ամենը ասոր նման են, կը պատասխանէ պանդոկապետը։

— Կը ցաւիմ, կը յաւելում ըսել. ես կը համարէի



Ուանդըրլեա գլխաւոր պանդոկ երկաթաշէն 'ի Պոմպէյ։

ուրիշ տեղի պանդոկաց համեմատ առանձին սենեակ մը գտնել. բայց ինչ որ հոս կը տեսնեմ, այս ոչ սենեակ՝ այլ հասարակաց սրահի խորշ մի է։

— Հոս 'ի Պոմպէյ ուր երթաս՝ ասկէ տարբեր սենեակ չես գտներ. ամեն պանդոկները ասոր նման են, եթէ ասկէ ալ գէշ չեն։ Կլիմայն ասանկ կը բերէ, և շատ բան պահանջելու չէ։ Հոս առողջութեան ամենակարեւոր պայմանը բանուկ և առատ օդն է. առանձին փոքր ու փակ սենեակներ գտնալ անկարելի է։

Այս յառաջաբանը անախորժ էր ինձ որ յԵւրոպէ

1 Գրեթէ 13 ֆրանգ։

կու գայի. սակայն օրը տարաժամելու հետ էր, ու պանդոկէ պանդոկ 'ի խնդիր քօնֆօրդէպլի շրջելը դըժուարին. հարկ էր դադարել ուր բաղդը ձգեր էր զիս. առաջնադրեցի ու մնացի։ Եւ յաջորդ օրը համոզուեցայ որ 'ի Պոմպէյ լաւագոյն քօնֆօրդէպլ բնակարանի ակնկալելու չէր. քաղքին առաջին պանդոկը սենեկի 'ի խնդիր երթալով՝ համոզուեցայ որ ինջած պանդոկս մնալու էի մինչև առանձին տեղ մը բնակութիւն գտնէի։

## ԳԻՇԵՐԱՅԻՆ ՊՏՈՅՏ ՄԸ.

Արեւը մտեր էր երբ ես կահիկս՝ սենեակ համարեալ խորշս ամփոփելով՝ երկարօրեայ ուղեւորութեանս նսեմութիւնը վրայէս թօթափեցի։ Առատ ջրի բաղնիքով մը զովացած՝ մեծ պատուհանին վանդակափեղկը բացի, ու մէկ հատիկ աթոռը քովը քաշելով՝ առ վայր մը շունչ առի։ Անուշ զովութիւն մը փոխանակեր էր ցորեկուան ջերմութեան, ու միտքս ապշութեան թմրութենէն սթափելով, — Ուրեմն, կ'ըսէի մտօքս, հասարակածին երկինքն է որ գըլխուս վրայէն իւր աստեղազարդ կամարը կը պարզէ. այն երկրին բնակչացը մէջ կը գտնուիմ՝ որոց պատմութիւնը այնչափ սիրտս ու միտքս հետաքրքրութեամբ վառած էր։ Հոս ոչ միայն նոր սովորութեանց ու նորակերպ կենաց պիտոր ականատես ըլլամ, այլ և այն կրօնից՝ որ հին համաշխարհական հեթանոսութեան մնացորդք են. քրիստոնէին քովը կռապաշտը պիտոր տեսնեմ, և գուցէ իւր մարդազոհ ողջակէզներովը։ Ոչ ևս 'ի լրոյ էր գիտնալիքս, այլ ստուգապէս ականատես ներկայութեամբ։

կը նայէի այն բազմութեան որ աղմկելով և աղաղակելով փողոցը շարժման մէջ կ'նրեցնէին ։ Կառաց բազմութեան երթևեկը շատցեր էր . ձոխք և պատուականք 'ի քաղաքացեաց երեկոյեան զովը շնչելու ելած էին ։ Նոյն այս ատենս էր որ սկսայ եւրոպացի գաղթականաց ներկայութիւնը հաւաստելու . տեարք ու տիկնայք, օրիորդք ու մանկունք առ հասարակ՝ ձոխ կառաց վրայ հանգչած փողոցները կ'երթեւեկէին ։

Լուսինը զուարթ կը բարձրանար՝ անսովոր պայծառութեամբ մը տեսարանը լուսաւորելով ։ Ծառոց ու տանց ստուերները փողոցներուն վրայ յստակ կը նկարուէին ։ Տանց բաց պատուհաններուն մէջէն ճըրագաց բազմութիւնը տօնախմբութեան մը զաղափար կու տար ։ Անզբաղ միտքս քաղցր ցնորաբանութեանց կը վերանար, երբ ճաշի զանգակը զիս սթափեցուց ։ Պանդոկին ընդարձակ սրահը իջևանելոց բազմութիւն մը սեղանին բոլորը իրենց տեղը բռնած էին . ամենուն աչքը դէպ 'ի նորեկ հիւրս դարձաւ հետաքրքրութեամբ, մինչդեռ Հնդիկ սպասաւոր մը ինձ աթոռ կը մատուցանէր ։

— Ուրեմն արևելցի ես, ըսաւ ձախակողմեան սեղանակիցս, իւր հետաքրքրական քննութիւնը ընելէն յետոյ ։

— Այդպէս կը համարիմ պատասխանեցի, թէպէտ և կեանքս Եւրոպա անցուցած եմ, ու հիմա Իտալիայէն կու գամ ։

— Ես ալ նմանապէս Զմիւռնիոյ ծնունդ եմ, կը յաւելու ըսել ժպտելով. և հոս Լոյտի շոգենաւուց երկրորդ գործակատար ։

— Եւ շատ տարի է որ հոս կը գտնուիս ։

— Այնչափ որչափ հարկաւոր չէ այս երկիրներէս

ժանձրանալու։ Հինգ տարիէ 'ի վեր է որ հոս կը գտնուիմ, և այլ ևս հինգ տարի ունիմ ծառայութեան՝ որ հանգըստեան թոշակս իրաւամբք պահանջեմ։ —

Զուարթ խօսակցութեամբ համեմեցաւ ճաշերնիս. թէպէտ մարդս ինձ ամենևին անծանօթ էր, բայց գոնեա ես կիսով չափ անոր ծանօթ ըլլալու բարեբաղդութիւն ունէի, և այս դէպքը համաձայնութեան շաղկապ մը հաստատեց մէջերնիս։ Կերակրոց առատութիւնը և իտալական ընտիր պատրաստութիւնը միւս սեղանակցաց սիրտն իսկ զուարթացուցեր էր, ու սրահը ծիծաղով ու բարձր խօսակցութեամբ կը թնդար։ Եւ առաւել ևս սեղանակից պանդոկապետուհւոյն շնորհիւը, որ գոլով Ամերիկացի ու երիտասարդ՝ խօսքը, ձայնն ու ծիծաղն էր անսպառ։ Հոս 'ի Պոմպէյ պանդոկաբնակք կը համարին իբր ընտանի թոշակաւորք։ Պանդոկապետը և իւր ընտանիքը, հակառակ այլոց տեղեաց սովորութեան, սեղանին պարագլուխ կը բազմին, և իջևանողք՝ թէպէտ օրական հատուցողք՝ իբր հրաւիրեալ սեղանակիցք կը ձևանան պանդոկապետին ազնուութիւնը վայելելու։

Գինւոյ գործածութիւն գրեթէ ամենևին չկայ. և ովք ևս կ'ախորժին 'ի կիր առնուլ՝ զգուշաւոր չափով կը վարին։ Ընդհակառակն սովորական ըմպելիքը ջուրն է կամ կազային լիմոնաջուրը, և կամ պրանտի՝ ջրախառն սոդայիւ։ Եւ թէպէտ կլիմային ազդեցիկ ըմպելեաց գործածութիւնը չներէր, բայց և այնպէս ախտաւոր արբեցողք կը գտնուին նաև բնիկաց մէջ, այլ ամենասակաւ։ Անուանեալ սուրճը կնքեց ճաշերնիս, և ընկերութիւնը սկսաւ ցրուիլ։

Գիշերուան գեղեցկութիւնն ու զովը զամենը փողոցները ժուռ գալու կը հրապուրէր։ Ընկերօջս

հրաւէրքին ունկնդիր՝ պանդոկին դուռն որ կ'իջնենք՝ առաջին դրամուէյիւ դէպ 'ի բնկաց քաղաքը կ'ուղևորինք, որ մեր տեղէն գրեթէ տասը վայրկեան հեռու է. այս միջոցս որ մինչև ցայժմ անշէն դաշտ մըն էր, հետզհետէ նորանոր շէնքերով գոցուելու հետ է, և արդէն մեծագործ շուկայն, և աւելի ևս մեծագործ երկաթուղւոյն նորաշէն կայարանը՝ ուղիղ գծով գրեթէ զֆորդը, որ է նախկին բերդը, և որու ծայրը կը գտնուի բնակած պանդոկս, բնիկ Հնդկաց քաղաքին հետ կը շաղկապէ։

Դրամուէյն՝ հասարակաց ծառայութեան որոշեալ՝ առ հասարակ ամենուն, ինչ աստիճանի և ինչ և իցէ վիճակէ ըլլան, իրաւունք կու տայ ուզած տեղը բռնելու։ Բայց հոս 'ի Պոմպէյ Եւրոպացւոց մասնաւոր ուշադրութիւն կ'ըլլուի. եթէ բնիկի մը մերձաւորութիւնը անախորժ է, և եղանակաւ մը ցուցուի, փութով տեղի կու տայ և Եւրոպացւոյն արձակ ընելով՝ անտրտունջ ուրիշ տեղ կ'անցնի. և այս անանկ յարգութեամբ կը կատարէ՝ որ չըլլայ թէ հիւրին տժգոհութիւն մը պատճառէ։ Բայց եթէ կառքը շատ լեցուն ըլլայ ու տեղի տալը անկարելի, հարկ է որ Եւրոպացին համբերէ, եթէ չուզեր իջնալ ու հետի քալել։ Դժբաղդաբար ալ անանկ յաճախորդաց բազմութիւն կայ, որ որոշեալ ժամերու ոչ երբեք կառաց մէջ աւելորդ տեղի կը գըտնուի. և եթէ ըլլայ ալ՝ շուտով կը բռնուի։

Կառքին մէջ երկուքս քովէ քով նստած՝ հետաքրքիր աչք մը կը շրջեցնեմ բազմականաց. ամենուն հագուստը պարզ ու մի և նոյն է. միայն գլխարկնին է տարբեր, Հնդկաց այլևայլ դասակարգութեանց որոշիչ նշանն ըլլալով։ Անմիջապէս քովս նստողը ամենէն ընտիրը կրնայ համարիլ. ու գուցէ ես բարե-

բաղդ եմ զինքը քովս ունենալու, թէպէտ և առհա-
սարակ ամենուն արտաքին երևոյթն եւրոպացւոյն
խորշելի կը թուի։ Բայց ընկերս, տեղացի ժողովըր-
դեան աւելի փորձառու, ուշադրութեան հայեացք մը
կու տայ անոր՝ և անմիջապէս ինծի դառնալով,

— Զգոյշ կեցիր, կ'ըսէ. եթէ քովդ ստակ ունիս՝
խնամք տար. քովինդ մասնաւոր ցեղի մը մարդոց կը
վերաբերի, որոնք արուեստիւ գող կը ծնանին և այն-
պէս կը սնանին։

Աչքերս ամուր մը կը բանամ ու զարմացմամբ ըն-
կերոջս կը նայիմ։

— Մի զարմանար, կը պատասխանէ անիկայ, ը-
սածս փորձով գիտեմ. և որովհետև ժամանակ ու-
նինք պատմեմ քեզի այդ ցեղին յատկութիւնը. միայն
կը յանձնեմ որ խօսած ժամանակս քսակիդ ուշ դը-
նես։ Որչափ կը տեսնես որ քովի մարդդ ուրիշ ա-
ռարկաներ դիտելու զբաղեալ կ'երևնայ՝ գիտնաս որ
իւր բոլոր միտքը քսակիդ վրայ կրնայ ըլլալ, թէպէտ
և եւրոպացւոց դպչելու կը զգուշանան։

ՊԱԴԱՑՔ·

Գիտնալու ես ուրեմն որ գողութիւնը ու յափշտա-
կութիւնը Հնդկաց այլ և այլ ցեղերու մէջ առաքի-
նական ու ժառանգական արհեստ մը համարեալ է.
անանկ որ իրենց մօրը կաթին հետ գողնալու արհես-
տըն ալ կը ծծեն։ Քովդ նստողը Պամբատայ կոչուած
ցեղի մը կը վերաբերի, որոնք Բունայի մօտերը կը
բնակին. Բունա երկաթուղիով վեց ժամ հեռի է Պոմ-
պէյէն։ Այս ցեղի մարդիկ այլևայլ գեղերու մէջ ամ-

փոփուած կը բնակին. իրենց յատուկ երկիրներ և անդեայք ունին, ու հանգիստ կեանք մը կը վարեն։ Մէջերնէն ամենէն նշանաւորներէն ոմանք 50էն մինչև 60,000 ռուփի արժէքով երկիր ունենալով հարուստ կը համարուին, և աղէկ շինած տուներու մէջ կը բնակին։

Սակայն առ հասարակ այդ ցեղի ժողովուրդն արհեստիւ գող են ու քսակահատ. և հիմա իրենց արուեստին ասպարէզ երկաթուղիները ըրած են։ Որպէս զի այս իրենց արհեստն աւելի ապահով կերպիւ ի գործ դնեն, հեռաւոր տեղուանք կը ճանապարհորդեն։ Բընճապի հիւսիսային կողմերը և Մատրասի հարաւային դին շատ կը յաճախեն. երկաթուղւոյն ամեն գիծերը իրենց վախճանին ծառայեցնելով՝ վերջապէս առատ աւարաւ տուներնին կը դառնան։ Կանոն մը ունին որ արևը մտնելէն ետքը մինչև արևուն ելլելը գողութիւն չեն ըներ. բայց այս կանոնը երկաթուղեաց կառքերուն մէջ խստիւ չեն պահեր. անոր համար ալ քեզ կը զգուշացնեմ որ գրպաններուդ աղէկ ուշ դնես։

Քաղաքները ու վաճառատեղիները կը յաճախեն յիրաւի, սակայն իրենց բուն կանոն ըրած են երկաթուղիներէն չհեռանալ։ Այր և կանայք առհասարակ կրթեալ են այս արուեստիս մէջ։ Էրիկ մարդիկ երրորդ կարգի կառքերը կը մտնեն, ու երբ գիշերանց ճանապարհորդք կը թմրին ու քուն կ'ըլլան, պատեհը քաղելով՝ անոնց քսակը, անոնց կապոցները, և ուր կասկածին թէ գոհարեղէն կրնայ գտնուիլ, կը կտրեն, աւարը կ'առնուն, և առջի կայարանը հասածնուն պէս վար կ'իջնան կ'աներևութանան։ Կանայք միւս կողմանէ նոյն բանը կ'ընեն կանանց կառքերուն մէջ. և յանդգնութիւննին քիչ մըն ալ

անդին տանելով՝ անկասկած քնացողներուն վրայէն օղերը, գոհարեղէնները, ապարանջանները կը հանեն կ'առնուն. անանկ ալ վարպետ են փոքր ու գնոջ բաները վրանին պահելու՝ որ ինչ և իցէ խնդրառութիւն ունայն կը հանեն։

Երբ խմբովին կ'ելլեն գողութիւն ընելու, էրիկ մարդիկներէն ոմանք ճոխ շալերով ու յարգի գոհարներով կը զարդարուին, որպէս զի իրենց արտաքին երևոյթովը կարծել տան թէ ճոխ ճանապարհորդք են։ —

Մինչդեռ ընկերս այս խօսքը գուրցելու հետ է, հետաքրքրաբար կը դառնամ քովս նստող Հնդկին կը նայիմ. և յիրաւի կը տեսնեմ որ հագուստը ստորագրութեանը համեմատ է. իւրաքանչիւր ականջը հինգ հինգ ոսկիէ օղ կախած է, իւրաքանչիւր օղ ալ մարգրիտներով ու գոհարներով զարդարած։ Աչքովս նշան մը կ'ընեմ ընկերոջս, ու զգեստս սեղմելով ձեռքովս քսակս կ'ապահովցնեմ։ Իսկ ընկերս իւր խօսքը շարունակելով կ'ըսէ.

— Ատոնցմէ ոմանք ճոխ Պրահմինք կը ձևանան, որպէս զի ամենևին կասկած չտան։ Ամէնը գրպաններնուն մէջ ապակիի կտորներ կը պահեն, և բերաննին՝ այտին մէկ կողմը՝ փոքր ու հատու կորաձև զմելին մը՝ որու ուտմուշք անունը կու տան. և այս ամենը կը ծառայեցնեն այլոց քսակներն ու գրպանները կտրելու։

Ասոնք ոչ երբեք աւազակութիւն կամ բռնի յափշտակութիւն կ'ընեն. միայն քաղաքներու ու գեղերու մէջ ինչ որ առջևնին ելլէ, առանց խղճելու կը գողնան կը տանին։ Ուր բազմութիւնը խուռն դիզուած է՝ շատ խիթալի են. տղայոց վրայէն գոհարեղէն և ոսկեայ զարդերը հեշտեաւ կը գողնան.

մարդոց ալ գրպանները մեծ վարպետութեամբ՝ և առանց կասկած կամ նշան տալու՝ կը կտրեն ու կը գողնան։ Կան ասոնցմէ անանկներ որ շոգեկառաց մէջ աւելի հեշտեաւ և ապահովութեամբ գողնալու նպատակաւ՝ Քլորոֆորմը 'ի կիր կ'առնուն, որով կը սաստկացնեն քնացող ճանապարհորդաց թմրութիւնը։ Մասնաւոր լեզու մը կը խօսին որ կը կոչուի Դելեկու. և իրենց պաշտած յատուկ աստուածն ալ ունին որ կ'ըսուի Եղլամա։

Բայց միայն այս Բունայի Պամբտայք չեն որ ասանկ ազնուական արհեստի կը զբաղին․․ կան ուրիշ մէկ քանի ցեղեր ալ որ ասոնցմէ սերած կը համարին, և կը բնակին 'ի Քանտէշ, 'ի Պէրար և 'ի միջին գաւառս, և կը կոչուին Բաթուրքար. ասոնք ամենն ալ նմանապէս արուեստիւ վարպետ քսակահատ են. այլ իրենց կենաց իբր բուն զբաղմունք է դանակ սրելու քար շինել կամ նորոգել։ Խօսած լեզունին նմանապէս դելէկունէ, և Պամբտայց նման մի և նոյն կանոններու կը հետևին գողութեան արհեստնին գործադրելու համար։ Մի և նոյն զմելինը 'ի կիր կ'առնուն գրպանները կտրելու, որու և նոյն անունը կու տան։ Այս զմելինը ստորին ծնօտին և այտից մէջ տեղ եղած խորշը կը պահեն. և այս խորշը մասնաւոր ու կանոնաւոր եղանակաւ կը պատրաստեն նոյն զմելինը ընդունելու. գիշեր ցորեկ բաւական ժամանակ նոյն տեղը աղի կտոր մը կը պահեն, մինչև որ ընտերքը կը կոշտանայ և անզգայ կ'ըլլայ։ Դիլլինճի Բաթուրքարք շատ վարպետ գող ու քսակահատ են։ Տօնավաճառները ու շաբաթական վաճառանոցները շատ կը յաճախեն. և առհասարակ այր ու կանայք վարժ քսակահատ են. ինչ գտնեն, ինչ բանի վրայ կարենան ձեռք դնել՝ կը գողնան կը տանին, տղայոց վրայէն

փոհարեգէններն ալ վերցնելով։ Սակայն ասոնք գեռ եւս երկաթուղիները իրենց գողութեանց ասպարէզ չեն բրած։ Երբ մէկը ասոնց հանդիպելով հարցնէ թէ ով են, ոչ երբեք ստոյգը կը զուրցեն, հապա գրեթէ միշտ կը պատասխանեն թէ Պիլտարք կամ Քամտղիք են։ Այսպիսի է ահա այս ցեղի մարդոց պատմութիւնը։

Բայց առհասարակ Հնդկաց վրայ խօսելով, որով-հետեւ Հնդիկք այլեւայլ դասակարգ բաժնուած են, անկախ իրարմէ եւ առանց իրարու հետ խառնուելու, այսպէս ալ արուեստք մէջերնին միանձնաւորապէս ժառանգական են. որով եւ գողութիւնն ալ համարեալ գոլով արուեստ, իբր իրաւացի ժառանգութիւն որդւոց յորդիս կը յաջորդէ։ Անանկ ճարտարութիւն կը ստանան գողութեան մէջ, որ աշխարհիս վրայ չըկան գողք որ Հնդիկ գողոց ճարտարութեանը հասնարին։ Զարմանալի է լսել անոնց համբերութիւնը, յարատեւութիւնը եւ մտքէ չանցնելու ճարտարութիւնը, որով արթուն ու զինեալ մարդոց մէջ մըտնելով՝ առանց անոնց անդրադառնալուն՝ մտքէ չանցնելու յանդգնութեամբ իրենց որսը, նաեւ ամենավտանգաւոր պարագաներու մէջ ալ, կը յափշտակեն կը տանին։ Սակայն որչափ խիթալի են իբր գող՝ նոյնչափ ալ վստահանալի են երբ իբր պահապան ծառայ կ'առնուին։ Անոր համար ալ թէ գիւղորէից վարչութիւնք եւ թէ առանձնականք այս դասուց գողերէն կ'ընտրեն կ'առնուն իրենց պահապան, որ մեծ գրաւական են ապահովութեան՝ ընդդէմ բուն իսկ իրենց դասուն գողոց։ Այլ եւ օտար դասուց գողոց դէմ ալ մեծ արթնութեամբ եւ յաջող ճարտարութեամբ կ'աշխատին յօգուտ իրենց տեարց։ Կան 'ի Կուզերատ այսպիսի պահա-

պանք որ մեծ հռչակ ունին իբր գողերը գտնելու մասնաւոր տաղանդ ունեցող. գողին ոտից նշանները դիտելով անխոնջ ետևէն կ'իյնան ու վերջապէս զայն կը գտնեն։ Չոր երկիր մը և տաք եղանակին՝ մարդուս ոտքը գետնի վրայ անզգալի նշան մը կը թողու, որու անսովոր աչքը ամենևին չանդրադառնար. և սակայն այս պահապանները անանկ աղէկ կը հասկնան այս հետքը, որ այն անզգալի նշաններուն միջոցաւ չհաւատալու հեռաւորութեամբ գողի մը ետևէն կ'իյնան ու կը գտնեն զինքը։ Անգամ՝ մը եղաւ որ զինուորականներու արծաթեղէնները գողցուելով, ասանկ մէկի մը յանձնուեցաւ գողը գտնել։ Չորս հինգ փարսախ հեռաւորութեամբ գողին ետևէն դիմելէն յետոյ, Ահմետապատ քաղաքին բազմամարդ փողոցաց մէջ յանկարծ հետոց նշանները կը կորսնցնէ. սակայն առանց լքանելու յարատևութեամբ փնտռելով, դռներէն մէկի մը մօտ դարձեալ կը գտնէ զանոնք. և թէպէտ գողին վարպետութենէն առ վայր մի կը մոլորի, որ իր ետևէն ինկողները խաբելու մտօք խել մը տեղ պզտի գետակի մը մէջէն քալեր էր, որու ջուրը մինչև ծունկը կը հասնէր, վերջապէս յանձնարարութիւնը գլուխ կը տանի, և տասը փարսախ հեռաւորութեամբ գողութեան հանդիպած տեղէն՝ գողը կը գտնէ և արծաթեղէնները ձեռքէն կ'առնու։

Սակայն այս կերպ կերպ գողոց պատմութիւնք երկայն է ու հետաքրքրական, ու եթէ հոս քանի մը ամիս մնաս, գուցէ աչքովդ ալ տեսնաս ու փորձ ըլլաս։ Հիմա ահաւասիկ մենք բնիկներուն քաղաքը հասանք, ու հոս լաւ կ'ընենք վար իջնելու։

## ՔԱՂՔԻՆ ՆԵՐՍԵՐԸ·

Մինչդեռ ընկերս այս խօսքերը կ՚ըսէր, կառքը մեծագործ շէնքի մը առջեւը դադարեցաւ, ու մենք վար իջնելով,

— Սա շէնքն որ կը տեսնես, յաւել ըսելու, արժանի տեսնելու մեծագործութիւն մըն է։ Քաղաքին գլխաւոր վաճառանոցն է, և կ՚արժէ որ առաւօտ մը կանուխկէկ գաս այցելութիւն մը ընես։ Տեսնես պիտի թէ Անգղիացիք որչափ արդիւնաւոր են այս ժողովրդեանս առջին, որ շատ քիչ օգուտ կը քաղէ անոնց քաղաքակրթութեան մղումէն։ Եկուր հիմա սա թնիկներուն քաղքին գլխաւոր փողոցը մտնենք. տեսնես քիչ մը թէ ինչ են այն մարդիկ որոց աշխարհը օտարք՝ գուցէ իրաւամբ՝ գրաւած են։ Բայց այս ալ գիտնաս որ այս գիշերային երեւոյթը որչափ զուարճալի երեւնայ քեզի, նոյնչափ գուցէ նողկալի տպաւորութիւն ընէ վրադ եթէ ցորեկը այցելես։ —

Աղմուկ մը, շփոթ մը, հազար ու մէկ խառնաձայնութեանց շաչիւնք ականջնիս սկսան խուլցնել։ Ճրագուց անհամար բազմութիւնն այն փողոցին տօնախմբութեան մը երեւոյթ կու տային։ Բազմութիւնը կը վխտար. աշխուժութիւն մը, գործունէութիւն մը, անվերջանալի զբաղանք մը կը տեսնուէր ամենուն վրայ։ Ոմն աղմկելով, շառաչելով՝ բան կը ծախէր, ոմն կռուելով, աղաղակելով՝ բան կը գաշնադրէր. կանանց բազմութիւն մը խանութից առջեւը կեցած ծիծաղելով ու պօռալով կը գնէին ու կ՚ուտէին, մինչդեռ մերկ տղայոց խումբերը բազմութեանը մէջ վազ-

վըռտելով այն խառնակութիւնը կ'աճեցնէին։ Երթևեկով ու շարժմունքով այն նեղ փողոցը կըղեռար. կարծես մասնաւոր տօնախմբութիւն մըն էր որ այնչափ ժողովուրդ դուրս ձգեր էր։ Այն բազմութեան վրայ յաւել ևս կառաց անցուդարձը, և այն ատեն մարդ կրնայ գաղափար ունենալ այն խառնակութեանը՝ որ այն համեմատութեամբ անձուկ փողոցը կը տիրէր. կառապանին խարազանին շառաչը կը լսուի և անմիջապէս ճեպընթաց հետի ընթացիկ մը պոռալով բազմութիւնը կը ճեղքէ, որ իրարու վրայ խռնելով, ճզմուելով՝ կառքին ճամբայ կը բանայ։ Մերկ Հնդիկք, երիտասարդք ու տղայք, խանութներուն վրայ կանգուն՝ բազմութեան ուշադիր կ'երևնան. այլք՝ անոր հակառակ, անզբաղ՝ խանութին պարկեշտ միջոցը փռուած կ'երազեն։ Եւ այսր ամենայնի լրումին՝ հեռաւոր թմբկի ու խառնաձայն երաժշտութեան շառաչը, որով ողջոյն միջոցը կը թնդայ։

— Այս խանութները գիտէ, ըսաւ ընկերս խանութ ու տուն մի և նոյն բան ըսել է։ Ուր կը տեսնես որ իրենց առևտրոյ նիւթերը ամբարած են՝ մի և նոյն տեղ իրենց անկողինն ալ փռած կը գըտնես։ —

Տեսնեմ խանութներուն լայնութիւնը հազիւ երկու մէգր կը չափէ. խորութիւնն ալ շատին անկէ նուազ. Գետնէն միշտ ծնկէն վեր բարձր են, որպէս զի հեղեղաբեր անձրևաց եղանակին ջուրը ներս չզեղու։ Խանութներուն քովը նեղ ու մութ սանդուղ մը վերը տուն կը հանէ։ Տուները նեղ կ'երևան, այլ բազմայարկ։ Այն խանութներուն մէջ ուտելիքէ զատ ուրիշ բան չեմ տեսնար. իսկ ուտելիք գլխաւորապէս շաքարեղէն են, կամ ընդեղէնք ու համեմունք։ Ամակայն ծախողաց երևոյթը անանկ քստմնելի կ'երևայ՝

որ կիրթ այցելուին ախորժը կը գոցէ․ այն մերկ և աղտոտ մարմինը, այն անլուայ ձեռքերն՝ որ ամենայն նիւթ կը շօշափեն, թող խանութին աղաեղի երևոյթը, ամենէն անօթի ստամոքսն ալ կը խրտեցնեն․ Զեմ կրնար անգրադարձութիւն մը լռել ընկերոջս․

— Կարծեմ, կ՚ըսեմ, Հնդկին առաքինութեանց մէկ մըն ալ աղտոտութիւնն ըլլալու է․

— Գլխաւորը և նախնագոյնը կրնաս գուրցել, կը պատասխանէ ընկերս․—

Այս առաջին գաղափարը այնպէս խոր տպաւորեցաւ միտքս մէջ ու սիրտս չըջեցուց, որ ցորչափ ՚ի Պոմպէյ եղայ՝ ոչ երբեք խանութի մը մերձեցայ կակորդի հրապուրիչ մը խնդրելու․ բաց ՚ի Պանան պըտուղէն, որու նուրբ մաշկը թղի նման կը կեղևի․

Քանի որ փողոցին մէջէն կը յառաջենք տեսարանը աւելի կ՚ոգևորի, բազմութիւնը աւելի կը վխտայ, լուսաւորութիւնը աւելի կ՚առատանայ, մանաւանդ ուր այլադաւան Հնդկաց դաս մը իւր դից տօնը կը կատարէ․ ողջոյն փողոցը լուսոյ դրասանգներով զարդարած է ու խառնաձայն երաժշտութիւնն ականջնիս կը խլացնէ․ Տանց իսկ պատուհանք բաց՝ ներքին լուսաւորութիւնը արտաքնոյն հետ կը խառնեն․ կարծեմ չեմ վրիպիր ըսել որ Հնդկաց տօնախմբութիւնք երկու բանի վրայ կը կայանան․ լուսառատութեան և խառնաձայն ադմըկի վրայ․

Մենք փողոցէ փողոց անցնելով արհեստէ արհեստ ալ կ՚անցնինք․ ուտելեաց խանութներուն կը յաջորդեն պղնձագործաց խանութները․ ասոնց ալ հետըզհետէ կը յաջորդեն խոյրարարաց, ապարանջան վաճառողաց, լաթեղինաց, և այլ ճարտար ձեռագործաց կրպակները․ Կօշկակարաց խանութներն ունայն տեղ կը փնտռեմ․ այս այնպիսի բերք մըն է որ ՚ի Հնդիկս

առաջ չի գար. եթէ ոչ ուզենամ բացատրութիւն մը ընել մէկ երկու խանութներու, որ տեսակ մը հողաթափ կը շինէ կարմիր կաշիէ 'ի պէտս դասու մը Հնդկաց որ Անգղիացւոց քովը իբր գրագիր, թարգման կամ սպասաւոր կը ծառայեն: Իմ այս նիւթիս վերաբերեալ հարցմանս՝ ընկերս կը պատասխանէ.

— Եթէ դառնաս Եւրոպա՝ զգուշացուր բաղդախնդիր կօշկակարներն ու թաշկինակի վաճառականք, որ չըլլայ թէ շահու ակնկալութեամբ 'ի Հնդիկս դիմեն. գիտնան որ երկրորդ օրը կը սնանկանան:

— Ես, ըսի, աւելցնեմ պիտի նաեւ դերձակները, որոց արուեստը՝ ինչպէս կը տեսնեմ՝ բոլորովին անօգուտ է այս աշխարհիս: —

Ծիծաղելով ու խօսակցելով այն բազմութիւնը կը ճեղքենք, որ մեծարանօք ու երկիւղածութեամբ տեղի կու տան մեզի անարգել անցնելու: Այն իրենց յարգանաց երկիւղածութիւնը 'ի նպաստ կու գայ իմ զգուշութեանս՝ չհպելու այն աղտեղի հանդերձիւք ամբոխին: Ինձ կ'երեւի թէ այնչափ մեծարանք առ Եւրոպացիս եթէ կրթութեան մը հետեւանք չէ, գոնէ իրենց քաղաքական վիճակէն առաջ կու գայ:

— Անգղիացիք, կը յաւելու ըսել ընկերս, անանկ երկիւղ տպաւորած են այս բնկաց սրտին մէջ, որ Եւրոպացւոյ մը ներկայութիւնը բաւական է մեծ բազմութիւն մը ցրուելու: Թող որ յաղթող տեարք ըլլալով միշտ սովորած են զասոնք իբր ստորին ըստրուկներ կամ մարդկային դասակարգութեան մէջ իբր ստորնագոյն էակներ նկատելու: Եւ այս զգացումը անանկ տպաւորուած է բնիկներուն մտաց մէջ՝ որ արտաքին նշաններով ալ կը ցուցնեն: Սակայն չհամարիս թէ այս իրենց ցոյց տուած արտաքին նուաստ ծառայականութիւնը սիրոյ արտայայտութիւն մըն է:

Հնդիկը կը ճանչնայ իւր նուաստութիւնը եւրոպացւոյն առջև, և այս համոզումը կը ծնանի յինքն ատելութեան զգացումը։ Այն խոնարհ հպատակութեան քօղին տակ գիտցիր որ խորին ատելութիւն մը կը բունի. այն օրն որ Հնդիկը իւր բազուկը հզօր ըզգայ, գիտցիր որ Եւրոպացւոց վերջին օրն ըլլալու է։

— Կը յուսամ, պատասխանեցի, որ այն օրն չեկած՝ ես այս երկրէս ութ հազար մըղոն հեռի կ՚ըլլամ։ —

Այս ատենս աղմկալից բազմութիւն մը ջահերով ու հրախաղութեամբ հանդիպակաց փողոցէ մը ելլալով միւս փողոցը կըմտնէ։ Հետի գնացող բազմութեանը մէջ ընկղմած փողահար ու թմբկահար երաժշտաց խումբ մը, դիւական շառաչմամբ օդը կը թընդացնեն. կիսամերկ սրիկայք ցատքելով ու պարելով իրենց կը հետևին։ Անոնց կը յաջորդեն երկձի կառքեր ոսկէպաճոյճ բազմականներով, որոնց չորքը մերթ ընդ մերթ ձիաւոր տղայք կ՚ընդհատեն։ Առ հասարակ տղայք և երիվարք արծաթեայ և ոսկեայ և գոյնզգոյն զարդուք ծածկուած են։ Մեծահանդէս թափօր մըն է, որու կոչնականք իրենց փառաւորութեան պարծանքը կը շռայլեն. սիգաճեմ լռութեան երևութնին իրենց փառասէր ոգին կը յայտնէ. հետի գնացող ռամիկը և ոչ հայեացքի մը արժանի կը համարին։

— Ուշ դիր, կ՚ըսէ ընկերս, հարսանեաց թափօր մըն է որ կ՚անցնի՝ հարսին տունէն փեսային տունը երթալով։ Հարսանեաց եղանակն է հիմա, և այսպիսի հանդիսից ասկէ ետև ամեն գիշեր ականատես պիտոր ըլլաս։ Տես այն կառքն ուր այն փոքր աղջիկը նստած է, հարսն է. իսկ փեսայն այն մարդն է որու երեսը ոսկեայ զարդերով ծածկած կը տեսնես։ Հար-

մը գուցէ եօթը տարուան չկայ․ երկրիս սովորութիւնն է այսպէս մատղաշ հասակի մէջ հարսնացնել․ Բայց մի զարմանար․ ուրիշ անգամ առիթ կ'ունենաս այս բանը աւելի մօտանց հաւաստելու․ հիմա մենք այս փողոցը բռնենք։ —

Թողուցինք որ հարսանեաց թափօրն իւր ճամբան յառաջ տանելով հեռաւորութեան մէջ անյայտի, ու մենք մեր բռնած ճամբան շարունակեցինք։ Ժամը երթալով յառաջելու հետ էր ու փողոցները՝ քանի որ կեդրոնէն կը հեռանայինք՝ կը սկսէին լռել, մթնալ ու խանութներուն մեծ մասը գոցուիլ։ Լուսինը չերեւակայելի պայծառութեամբ անամպ երկնքին վրայէն կը շողշողար, և մենք խօսակցելով՝ փողոցէ փողոց կ'անցնէինք։ Լռութիւնն այնպէս խորին կ'ըլլար քանի որ մենք ներսերը կամ հեռուները կը մխուէինք որ տեղ տեղ մեր ոտից ու ձայնից արձագանգը զարմանալի յստակութեամբ կը լսուէր։ Փողոցներուն մէջ գետինը ասդիս անդին կոյտեր կը տեսնէի, նման ցորենի պարկերու․ տանց դըռներուն առջևը մանաւանդ այն պարկերը հինգ, ութ, տասը հատ քովէ քով գետինը պառկեցուցած՝ անհոգ, անխնամ, անպահապան թողած կ'երևնային, ինչպէս թէ տիրոջ մը սեփականութիւն չըլլային։

— Շատ պարկեշտ ըլլալու է, ըսի, ժողովուրդս, որ ցորենի խուրձերը այսպէս անխնամ և առանց հսկողի փողոցին մէջ տեղը կը թողուն։ Անշուշտ գողց երկիւղ ըլլալու չէ։

Այս ըսելով մէկի մը վրայ ոտք կը դընէի կոխելու անցնելու, ճամբուս առջին գտնուելով։

— Զգոյշ կեցիր վրան չկոխես, կանչեց ընկերս թևէս բռնելով։ Այդ պարկերն որ կը տեսնես՝ Հնդիկներու խումբեր են, որ իրենց հանդերձի տեղ ծառայ-

ող լաթին մէջ պլլուած՝ հանգիստ գիշերային քուն կ'ըլլան։

— Մարդի՛կ են սյս խուրձերն, ըսի զարմացմամբ, և կենդանի՛։ Ուրեմն ասոնք և ոչ տան մը, անկողնոյ մը, կամ ինչևիցէ կահի մը պէտք ունին։ Երկրիս որ կողմն ալ իյնան իրենց հանգիստը կը գտնեն, ան ալ ամենադիւրագնոյ։

— Ըսածդ ստոյգ է. անոր համար ալ ատոնց բոլոր ինչքը ծածկոց մըն է, որ գիշեր ու ցորեկ հաւասարապէս կը ծառայէ։ Ասկէ զատ իբր անմեկնելի կարաս պղընձեայ ստոման մը ունին, որու մէջ իրենց անհրաժեշտ կարևոր տարրը, որ է ջուրը, կը պահեն։ Ասկէ կրնաս գուշակել որ ինչև իցէ ժամանակ Հնդիկը՝ առջի ձայնին՝ առանց նեղութեան կամ առանց վնասու պատրաստ է գաղթելու։ —

Այսպէս զգուշութեամբ քալելով կ'անցնիմ այն անշշունչ քնացող Հնդկաց մէջէն, որ իրենց ծածկոցներուն մէջ ամրապինդ պլլուած՝ որդերու խոզակներ կը նմանին. ոչ գլուխ, ոչ ոտք, ոչ ձեռք կը նըշմարես։ Արդար զգուշութիւն ընդդէմ խայթիչ մըժեղաց, որ իրենց բազմութեամբը և սուր խայթոցովը՝ անոնց մարմինը մէկ ժամու մէջ վիրալից կոյտ մը կրնան դարձնել։ Հետաքրքրաբար կը թուեմ. ինձ մօտ երեք հն քովէ քով պառկած. հանդիպակաց անոնց են այլ երկու. քիչ մը անդին են հինգ. շատ տանց դուրսը ամբողջ ընտանիք են ընկողմանած. ամենը անզգայ, անշարժ, անշշունչ. թէ մարդ անցնի, թէ աղմուկ ըլլայ՝ ամեններն կենդանութեան նշան չեն տար։ Փողոցը լռութեան մէջ է. բայց այն լռութիւնը յանկարծ սուր ձայն մըն է կը կտրէ. կատու մըն է, նապաստա՛կ մըն է, կ'ըսեմ, ոտիցս մէջէն անցաւ, սրացաւ, պարկերուն ետևը անյայտ եղաւ։ Սակայն

ընկերս կը փութայ իմ այս զարմանքս լուծելու.

— Այդ քեզի նապաստակ կամ կատու երևցածը՝ մուկ մըն է, որոց անհամար խումբերը ազատաբար կ'ապրին քաղաքս։ Ատոնց կարծես ոչ ոք կը դպչի, նա մանաւանդ պաշտպանութիւն կը գտնեն. և գուցէ նախախնամութիւն մըն է որ անոնց առատութիւնը կը պահպանէ։ Ատոնք են որ փողոցաց մէջի աղտեղութիւնքը կը ջնջեն. անոր համար ալ արդիւնաւոր կենդանիք կը համարին և Հնդկային երախտագիտութեան արժանաւոր։ Մաքրասիրութիւնը Հնդկաց առաքինութիւն մը չէ, աչօքդ հաւաստեցիր։ —

Այս դէպքը բազմիցս այնուհետև առիթ ունեցայ հաւաստելու։ Քանի՛ քանի՛ անգամ՛ որ գիշերանց լուսնին լուսովը այն լռիկ փողոցներն ուզեցի մտնել, բնական քըստմունք մը գիս ետ կեցուց. այն մեծամեծ մկունք այնպէս աներկիւղ քովլիցս առջևը կ'ելլէին և անանկ բազմութեամբ, որ խըրտելով հարկ կ'ըլլար ետ քաշուիլ։ Իսկ սակայն Հնդիկք անտարբեր և անհոգ քուն կ'ըլլան, մինչդեռ անոնք իրենց չորս կողմը կը շրջին։ Միայն փոքր տղայոց համար զգուշութիւն կ'ընեն, բարձր մահճակալի վրայ պառկեցնելով որ չըլլայ թէ այս կենդանիներէն վնասուին։

Մինչդեռ խօսակցելով կը յառաջենք առանձնակ պարսպապատ տեղի մը քովէն քերելով, սաստիկ կըծու հոտ մը ռնգունքս փութով խցել կը բռնադատէ։ Քաղքին լուալիքն էր, ուր ըստ սովորութեան Հընդկաց՝ մասնաւոր մարդիկ տուներէն հաւաքելով կ'ամբարեն ժողովածը, մինչև ուրիշ տեղ փոխադրուի։ Քաղքին ու բնակութեանց մօտ և ցորեկուան սաստիկ տաքուն անշուշտ դրացեաց անհանդուրժելի ըլլալու էր։ Քամին քառասունչորս ժամու մէջ իբր կեդրոնի մը վրայէն իւր շրջանը ընելով՝ հարկ էր որ ամենուն ջերմ այցելութիւն մը ընէր։

Գիշերային ժամը որ երթալով կը յառաջէր՝ զմեզ կը յորդորէր դէպ 'ի պանդոկ փութալու։ Երկաթուղւոյն քովէն քերելով, որ ծովեզերքի ուղղութեամբ կը դիմէ, այրած մսեղինի սաստիկ հոտ մը ինծի ըսել կու տայ.

— Անշուշտ հոս մօտ տուն մը հարկինք ընելու հետ ըլլալու են, թէպէտ և ժամը շատ յառաջացած է։

— Ըսածդ վրիպակ չէ, կը պատասխանէ ընկերս. միայն տեղւոյն նկատմամբ գաղափարդ կը սխալի։ Այդ հարկինքը տարին տասուերկու ամիս, և օրը քանը չորս ժամ անդադար կը շարունակէ հոս տեղս. գուշակէ ինչ է։

— Անշուշտ մեծ հարսնիք մը ըլլալու է։

— Կը մոլորիս. Հնդիկը միս չուտեր։ Նայէ ձախակողմդ. սա մեծ շէնքին մէջէն բարձրացած բոցին լոյսը կը տեսնե՞ս։

— Այո. և ոչ մէկ, այլ երկու, երեք տեղ նոյն տեսակ լոյս կը տեսնեմ։

— Շատ աղէկ. ըսել է որ երկու, երեք Հնդիկք կը ճենճերին։

— Ի՞նչ ըսել կ'ուզես։

— Ըսել կ'ուզեմ որ Հնդիկք իրենց մեռելները չեն թաղեր հողին տակ, ինչպէս մենք սովոր ենք ընելու. հապա դիակը կասկարայի մը վրայ դնելով՝ խարոյկը կը վառեն, ու կը թողուն որ կրակը մինչև յետին կտորը մաշեցնելով մոխիր դարձնէ։

— Ուրեմն այս երեք Հնդիկք ալ ըսել է որ վաղը առտու մոխրոյ կոյտ մը պիտոր ըլլան, զոր քամին այն պարսպապատ միջոցին մէջ առնու ցրուէ պիտի։

— Եւ յիրաւի ալ այդ այդպէս է։ Եւ զարմանալու չէ Հնդկաց այս սովորութեան վրայ, և ոչ իսկ բարբարոս բան համարելու է։ Հին ատեն ալ կար այս

սովորութիւնը. և նոյն իսկ հիմա յԵւրոպա դարձեալ նոյնը յարուցանելու հետամուտ են։ Ինծի աւելի բարբարոս ու քստմնելի երևցած է միշտ Փարսիներուն յուղարկաւորութեան արարողութիւնը։ Սակայն այս երկու տեսակ արարողութիւն մօտանց տեսնալը ուրիշ առթի թողուլը լաւ է. և թէպէտ երկրորդներուն տեղւոյն այցելելը դժուարին ըլլայ, կը ջանամ բարեկամի մը ձեռօք դիւրացնել։ —

Մեր խօսակցութիւնը զմեզ մինչև պանդոկը բերաւ, ուր իրարու գիշեր բարի մաղթեցինք։



# Ի ՊՈՄՊԷՅ

---

## Ա.

*Հնդիկ սպասաւոր մը. — Օրուան խօսակցութեան նիւթը. — Փողոցին տեսարանը. — Մուրացկանաց ողոքը. — Վաճառանոցը. — Ծաղկավաճառք. — Պտղավաճառք. — Անակնկալ անանաս մը. — Հացավաճառք. — Ի հիւպատարանն Աւտորիոյ. — Նոր սենեկիս բնակիչք։*

«Յորչափ 'ի Հնդիկս մնաս, իմ խրատս այս ըլլայ քեզի, — կը գրէր ինծի երկրին փորձ բարեկամ մը. — կերակուրդ ըլլայ յաճախ, այլ ամենաթեթեւ. մսեղինի չափաւոր գործածութիւն. մեծ զգուշութիւն եւ չափաւորութիւն կանաչեղինի եւ պտղեղինի. մասնաւոր փոյթ ընելու ես ստամոքսդ թեթեւ բռնելու։ Գիտնաս որ երկրին սովորական հիւանդութիւնը մաղձացաւն է. որ թէպէտ միայն բնիկներուն մէջ յարատեւաբար կը բունի, այլ փոքր անզգուշութենէ մը եւրոպացւոյն ալ աղետալի կ'ըլլայ։ Երկրին ջերմութիւնը՝ մարմնոյն արտաշնչութիւնը հեշտեաւ կը գրգռէ. ուշ դնելու ես զգեստեղինաց, որպէս զի պաղառութենէ պահպանուիս։ Քունդ ըլլայ չափաւոր. թուլացուցիչ օդը երկայն քուն ըլլալու կը հրաւիրէ. ժուժկալ արիութիւն ունենալու ես անոր դէմ դնելու, եթէ չես ուզեր որ մարմինդ թուլանայ, կենսական գործողութիւններդ դանդաղին եւ զքեզ հի-

ւանդութեանց նեթակայ ընեն։ Քնացած ժամանակդ նայէ որ բրդեղէն ծածկոցով մը ստամոքսդ պատըսպարես. գիտնաս որ այս զգուշութիւնը անհրաժեշտ է։»

Ա՛սոնք կարեւոր ազդարարութիւնք էին ինծի, որ ոչ միայն տեղւոյն ու կլիմային անտեղեակ էի, այլ և անփոյթ անձնական զգուշութեանց։ Եւ հիմա որ այս հողուս վրայ կը գտնուէի, անմիջապէս որ աչքերս առջի օրուան արեւուն լուսոյն բացի, խկոյն մտքէս յեղյեղեցի։ Արեւը դեռ նոր սկսեր էր երկնից կամարը գունաւորել. բայց գիշերային զովը դեռ ևս կը տեւէր։ Անուշ թուլութիւն մը զիս անկողնոյ մէջ կը դանդաղեցնէր, երբ յանկարծ թմրութեանս մէջէն անակընկալ ձայն մը զիս սթափեցընելով մեր ցատկեցուց։

— Պարոնը սուրճ կը հրամէ՞. —

կ'ըսէր սպիտակազգեստ մէկ մը՝ բաժակը ինծի հրամցընելով։

Պանդոկին անկոչ սպասաւորն էր, որ ընդդէմ ակնկալութեանս հանգիստս խռովելով՝ փախած համարեալ սեննեկիս դուռը յանզգաստից բացեր մտեր էր։ Տեղւոյն սովորութեանը անտեղեակ՝ խորհուրդս 'ի զայրոյթ կը յորդորէր զիս, այլ խոհեմութեան մասծութիւն մը բռնկած արիւնս հանդարտեցուց։

Մ'ինչդեռ ըմպելեայն սուրճը կ'առնում, սպասաւորը լռութիւնը կտրելով,

— Եթէ Պարոնը, կ'ըսէ, սպասաւոր մը կ'ուզէ վարձել՝ հոս դուրսը մէկ մը կ'ըսպասէ։ Աղէկ ու հաւատարիմ մէկ մըն է, և Պարոնը ամենայն վստահութիւն կրնայ ունենալ վրան. չունիմ տարակոյս որ գոհ պիտի ըլլայ իրմէն։—

Այս առաջարկութեանս իմաստը չէի կրնար հասկնալ. որը հինգ ռուփի հատուցանելով պանդոկին՝

կը համարէի թէ ոչ միայն կոտրած աթոռ մը և անփակելի դուռ մը վայելելու իրաւունք ունէի, հապա նաև պանդոկին սպասաւորին փոքրիկ ծառայութիւնը։ Բայց կը խաբուէի. պանդոկապետին կը մնար տեղւոյն սովորութեանը զիս տեղեկացընել։

Յատուկ ծառայն 'ի Հնդկաստան ամենակարևոր կահերէն մէկն է. չունեցողը ճամբորդի մը կը նմանի՝ որ առանց արկեղ կամ՝ ինչ և իցէ կահի կը ճանապարհորդէ։ Կահիդ հոգը, սենեկիդ մաքրութիւնը, սեղանի ծառայութիւնը, հանդերձեղինացդ խնամքը՝ իր մի միայն գործն է։ Եթէ տունը մնաս՝ դրանդ ետևը շան պէս կծկտած՝ կամ՝ ակնարկութեանցդ կը սպասէ, և կամ՝ քանգայն շարժելով քեզ կը հովահարէ։ Եթէ դուրս ելլես՝ հաւատարիմ շան մը պէս հետոցդ ետևւէն կը փութայ։ Բարեկամդ կամ ծանօթդ քեզ սեղանի՞ հրաւիրեց. ծառայդ անհրաժեշտ պէտք է հետդ տանիս, որով հետև իրեն պարտքն է սեղանին վրայ քեզի ուշադիր ըլլալ, խոհակերոցը փութալ՝ կերակուրդ բերել, և ուրիշ ինչ և իցէ պիտոյիցդ ուշ դնել։

Սենեկիդ բոլոր բովանդակածը իրեն ձեռքն է. և զարմանալու չէ եթէ տեսնես որ քեզնէ առաջ ինքը ունեցածդ կը ձեռնածէ։ Արկղերդ կը բանայ, բովանդակածը դուրս կը հանէ, կը զետեղէ, կը կարգաւորէ ուզածին պէս, և այնպէս կը վարի ինչպէս թէ բուն տէրն ինքն ըլլար, և կամ տարիներով միշտ քու գործիդ զբաղած ըլլար։ Սենեկիդ ազատութիւնը չունիս ամենևին. ինչ և իցէ ժամանակ ծառայդ առանց զգացընելու դուռդ կը բանայ, կը մտնէ, կ'ելլէ, կը նայի, կը բնտռէ, ինչպէս թէ պաճուճապատանք մը ըլլայիր։ Եւ այնպէս բնական կերպիւ կ'ընէ այս ամենայն՝ որ տրտունջդ բերնիդ մէջը կը մարի։

Այս ծառայք մասնաւոր դասակարգ մը կը կազմեն,



Նաւահանգիստ Պոմպէյի.

որ գոգցես որդւոց յորդիս Եւրոպացւոց կը սպասաւորեն։ Եւ որովհետեւ Հնդկաստան գնացող Եւրոպացիք համառօտ ժամանակ կը դադարին, կը հետեւի որ այս ծառայք ալ ստէպ ստէպ տէրերնին փոխելու ենթակայ ըլլան։ Թէ ինչ աստիճանի է իրենց հաւատարմութիւնը՝ անձնական և այլոց փորձիւ կրնամ ապահովցընել, որ եթէ տէրը իւր ունեցածին հաշւոյն ուշադիր չըլլայ, տարւոյն վերջը, եթէ ոչ առաջ, հարկ է որ իւր կարեւորագոյն պիտոյից առարկայքը վերանորոգէ։ Ուստի՝ իբր ընդհանուր օրէնք՝ կարեւոր է որ առջի օրուընէն ամենայն ինչ հաշուով սպասաւորին ձեռքը յանձնուի, և ապա ամիսը մէյ մը կամ երկու աչքէ անցուին։ Մեծ գողութիւն ընելու չեն յանդգնիր, որովհետեւ ոստիկանութեան ուշադրութիւնը ու խստութիւնը մեծ է. բայց ուր տիրոջը անուշադրութիւնը տեսնեն, կամաց կամաց և յանզգաստից ինչ որ ձեռքերնուն տակ իյնայ՝ կ'աներեւութացընեն։

Այս անհրաժեշտ սովորութեանը հարկ էր հետեւիլ. սակայն առաջին ներկայացողին փայփլուն աչաց վրայ տպաւորութեանը չժուժացի, և ոչ ուշադիր եղայ անոր սալամներուն, որ ծռելով իւր ծառայութիւնը կ'առաջարկէր։ Եւ մինչդեռ տարակուսեալ իրեն կը նայէի, ինքը ծոցէն թղթոց ծանր ծրար մը հանելով ինձ մատոյց յընթերցումն։ Քառասունի չափ վըկայականք էին, անշուշտ ամենը ընծայելոյն 'ի գովեստ. թէ զինքը ծառայութեանս մէջ առնէի, օր մըն ալ իմս այն պսակին քառասնեակ գոհարաց վրայ պիտի աւելնար։

Սակայն մարդ ի՛նչ հաւատք կրնայ ընծայել սպասաւորի մը ներկայացուցած վկայականին. գթոյ և պատշաճութեան զգացումը շատ անգամ ճշմարտու-

թիւնը կը քօղարկէ. և որ աւելին է՝ հոս 'ի Հնդիկս վկայական մը ստանալը փոքր գրամոյ մը միայն պէտք ունի։ Ի շուկայն մասնաւոր գրագիրք կան որ չնչին փոխարինով մը ինչ և իցէ վկայական կը հնարեն 'ի շահ խնդրողին։

Խօսքս մարդուն ուղղելով,

— Ի՞նչ է տալի վարձքս, հարցուցի։

— Եթէ սահապը, կը պատասխանէ, կ'ուզէ աչք մը տալ վերջի տիրոջս այս վկայականին, կ'իմանայ ոչ միայն ամսական վարձքս հապա նաև այն ամենայն ծառայութիւններն որ կարող եմ մատուցանելու։ Որովհետև ոչ միայն սենեկին ու կահին ուշ կը դնեմ, ինչպէս սովորական սպասաւորները, հապա նաև խոհակերութիւն կ'ընեմ, վաճառանոցը կերթամ, կար կ'ընեմ, ճերմակեղէն կը լուամ, և ուրիշ ինչ և իցէ ծառայութիւն պէտք ըլլայ կ'ընեմ։ Ասկէ զատ ոչ միայն անգղիարէն կը խօսիմ, հապա նաև գաղղիարէն և գերմաներէն։ Այս ամեն ծառայութեանցս համար միշտ յիսուն ռուփի ամսական վարձք առած եմ, թող ընծաները։ Հիմա ալ սահապէն նոյնչափ կը պահանջեմ։ —

Այս պարզ խօսակցութիւնը ամենայն ինչ կը լուսաբանէր և կը լուծէր տարակուսանքս։ Իմացուցի իրեն որ իմ չափաւորութիւնս այնքան գիտուն ու կարող սպասաւորի անբաւական էր. որով լաւագոյն բաղդ կը մաղթէի իրեն ուրիշ սահապի մը քով։ Ես առանց ուշ դնելու անոր պահանջմանց նուազեցնելուն, յիշելով այն սովոր խօսքը որ կ'ըսէ, թէ «տգէտը որչափ հզօր ըլլայ՝ միշտ խորամանկին ստրուկ է,» հրաժարեցայ այլ ևս անոր մտիկ ընելէն։ Բայց հազիւ թէ ոմն մեկնեցաւ, ինչպէս թէ մէջերնին խօսք դրած ըլլային, ուրիշ մը նոյնանման հագուստով սենեակը մտաւ,

նոյն սովորական սալամով, և նոյնպիսի վկայականաց ծրարով։ Երևոյթը աւելի բարեմիտ կ՚երևնար և վըստահութեանս աւելի պատասխանող։

— Անգղիարէն կը խօսիս, հարցուցի։

— Այո, սահապ, պատասխանեց, վկայականներուս մէջ գրած է։

— Կը հաւատամ, ըսի, բայց ես վարքդ սորվելու պահանջն ու ժամանակը չունիմ. անունդ ի՞նչ է։

— Պանա, պատասխանեց Հնդիկս։

— Շատ աղէկ, ըսի. ինծի եղեր է, քեզի եղեր է, մէկու մը ծառայելու ես, եթէ այդ է արուեստդ։ Քեզ ծառայութեանս մէջ կ՚առնում թէ որ տասնըչորս ռուփիով գոհ կ՚ըլլաս։

— Շատ աղէկ, սահապ, կը յուսամ որ ինծմէ գոհ կ՚ըլլաս. հիմա հրաման մ՚ունիս։

— Իմ հրամանս այս ըլլայ, ըսի, որ ամեն առտու ժամը եօթին հոս ըլլաս, և երեկոյեան ութին արձըկուիս։—

Ծռեցաւ ու ելաւ դռնէս դուրս, կծկեցաւ նստաւ։ Շան մը կընմանէր որ սննեկին պահպանութեանը հսկելու սեմին առջին դրուած ըլլար։

Վար ճաշատունը իջնելով մինչդեռ նախաճաշելու հետ եմ՝ ուշ կը դնեմ օրուան խօսակցութեանց. Պոմպէյի ատեանը սպանութեան մը վճիռը կտրած էր, և այն դէպքը ամենուն բերանն էր։ Խօսողաց մէջէն ոճրագործին վրայ ցաւակցողները չէին պակսիր։ Ոճրագործը Հնդիկ աղքատ կնիկ մըն էր, չորս զաւկի մայր։ Աւելի աղքատութենէ մղեալ քան թէ գողութեան մոլութենէ, դրացւոյն երեքամեայ աղջկան թևոց և վզին արծաթեայ զարդերուն յափշտակութիւնը մտածեր էր։ Սակայն բռնի յափշտակելը կարելի չէր, հարկ էր աղջիկը գլխովին մէջտեղէն վերցընել որ երը

ծածուկ մնայ։ Գործը յանդուգն. բայց եթէ ոճրագործը ամեն անգամուն վախնար որ գործածը դուրս երեւան կ՚ելլէ՝ ոչ երբեք ոճիր կը գործէր։ Թող որ այս կինս քաղաքէն դուրս հեռու տեղ խրճիթ մը կը բնակէր, եւ հաւանական էր որ կասկածը մինչեւ իր դուռը չգար։ Աղջկան թեւէն բռնած քաղաքը կը բերէ, եւ հոն ոսկերչի մը խանութը թեւոց ապարանջանքը եւ վզին քառամանեակը կտրել կու տայ։ Յետոյ գժկամակեալ աղջիկը բռնի ու լալով կը տանի հեռու լճակի մը քով, եւ հոն ջրին մէջ կը խղդէ։ Ոճիրը յաջողութեամբ գլուխ կը տանի, բայց խիղճը կ՚երեւայ թէ կ՚արթըննայ. փոխանակ անմիջապէս արծաթեայ զարդերն օգտեցնելու, կը տանի հիւղին մէկ անկիւնը կը ծածկէ, եւ ըրածին հետեւանքը տեսնելու կը մնայ։

Կ՚երեւակայէր որ հայրը իւր աղջիկը փնտռելու պիտոր ելլէ, ինչպէս ալ եղաւ. եւ վերջապէս անմեղ աղջկան մարմինը լճակին մէջէն հանուեցաւ։ Տարակոյս չկայ որ կրնար հետեւցուիլ թէ աղջիկը դիպուածով ջուրը ինկած խղդուած ըլլայ, գոնէ ոճրագործին մտածութիւնը ասանկ էր։ Բայց ան որ ոստիկանութեան գլուխ կեցած էր՝ կարծես բարիք մտածելու անգամ կարողութիւն չունէր. ամենայն ինչ չար մեկնելու սովորութիւն ունէր, ամեն դէպքի մէջէն միշտ չարիք մը հանել կը փնտռէր։ Ի՞նչպէս կրնար լռել այս դէպքիս մէջ որ յայտնի ոճիրը կը քարոզէր։ Աղջըկան դիակը մերկ էր ամեն զարդէ. ուրեմն վրան բըռնութիւն մը բանեցուցած պիտոր ըլլային։ Համբերատար եւ յարատեւ քննութիւններով խրճիթներէ ու խանութներէ կ՚անցնի, ու լարին ծայրը կը բերէ ոճրագործ կնկան խրճիթը։

Ոճրագործը կը բանտուի, սակայն չկայ վկայ մը որ զինքը ամբաստանէ. զարդերը խրճթին մէջէն գտնը-

ւեր են, խլաւ է. բայց կարելի է թէ օտար թշնամի մը, կամ որ և իցէ մէկ մը գնացած հոն ծածկածըլլար, ոստիկանութեան ուշադրութիւնը իրմէն հեռացնելու դիտմամբ։

Պաշտպան փաստաբանը 'ի զուր իւր ամենայն ճարտարութիւնը կը թափէ. չի կրնար դատաւորներն համոզել 'ի նպաստ իւր պաշտպանեալին. և ոչ իսկ անոնց գութը կրնայ շարժել՝ յիշեցնելով յանցաւորին չորս մատաղ տղոց այրի մայրն ըլլալը. որոնք առանց հօր յուսահատ վիճակի մէջ կը մնային։ Օրինաց խըստութիւնը հարկ էր որ գործադրուէր. վճիռ կտրեցին թէ մահապարտ է։ Բայց յուսոյ նշոյլ մը թողին քաղաքապետին իշխանութեան, որու իրաւասութեանը կը վերաբերէր պատուհասը հաստատել կամ մեղմացնել։ Այլ քաղաքապետն իսկ խստութիւնը պատեհագոյն համարելով և դեղ ընդդէմ չար օրինակին, բազմաց ակնկալութեանը հակառակ, մահապարտութեան պատուհասը 'ի մշտնջենաւոր կալանաւորութիւն փոխեր էր։ Արդ մինչդեռ վճիռն գործադրըւելու վրայ էր, յանկարծ բանտին դռներն կը բացուին, և չորս մատաղ տղայք իրենց չարաբաղդ մօրը գիրկը կը նետուին։ Աղիողորմ տեսարան մըն էր, որ ականատեսից սիրտը կը կեղեքէր. այն փոքր տղայք չէին կարող ըմբռնել իրենց մօրը սրտին օրհասը։ Ոչ խօսք, ոչ ձայն կը լսուէր այն արգելարանին մէջ, այլ լաց և ողբ։ Եւ սակայն անողոքելի օրինաց վճիռը անհրաժեշտ և իսկոյն պիտի գործադրուէր։ Բռնութեամբ տղայքը մէկդի ընելով՝ այն կիսամեռ մօրը երեսէն մոռացութեան անխորտակելի դուռը կը փակեն։

Այս դէպքս ինձի գաղափար մը կու տար թէ մարդս ինչ և իցէ աստեղ տակ ծնանի՝ միշտ մի և նոյն կրից ենթակայ է։ Ոճիրը առ հասարակ թէ պալատին մէջ

ազատ մուտք ունի և թէ խրճթին տակ։ Թողի որ խորհրդածութիւնք յառաջ տանին, ու ես ելայ դէպ 'ի վաճառանոցը ուղևորելու։

Ի՜նչ տեսարան է որ կու տայ ինծի փողոցը։ Այս կէս մը անգղիացի ու կէս մը հնդիկ քաղաքին մէջ միտքս աւելի գրաւող բանը պէսպիսագոյն ժողովրդեան բազմութիւնն է։ Հոս ոչ միայն մարդկային մորթոյ կերպ կերպ գունոյ հանդէս մըն է, հապա միանգամայն զգեստեղինաց բազմակերպ ձևոց ու գունոց տեսարան։ Կարծես մուսէոն մըն ես ուր տեսութեանդ առջին ետևէ ետև կը յաջորդեն այլ և այլ ազգաց, այլ և այլ ժողովրդոց, այլ և այլ ցեղերու նախատիպք։ Փարսին, այն նախկին պարսկային սերունդն, որ բռնութենէ փախչելով հոս ապաւիներ է, իւր գլանաձև գլխարկովը ու սպիտակ զգեստովը խրոխտաբար քովէդ կը սահի. մերկանդամ քօօլիք, բեռնակրութեան զբաղողք, անտարբերաբար կը շտապեն. և այս ամենուն և ուրիշ անհամար բազմութեան մէջ խառնուած կը տեսնես եփենոսի սևութեամբ բարիս սևամորթ աղջիկները։ Հապա ո՜ր թողում գլխարկներուն կերպ կերպ ձևը, գոյնը, մեծութիւնը. աչքդ կը շփոթի։ Առհասարակ փաթթոցաձև են, կարմիր, կանաչ, մանուշակագոյն գոյներով, եղջիւրաւոր կամ պարզ, պոչաւոր կամ անպոչ. և ասոնց մէջ մերթ ընդ մերթ խառն կըտեսնես նաև եւրոպացի գաղթականին սաղաւարտաձև, հոլանոցաձև, ստոմանաձև և ամենայն տեսակ այլանդակ ձևով գլխարկը։ Իսկ խառնաձայնութի՜նը. ո՞վ կըրնայ անոր գաղափարը տալ. աշխարհիս բոլոր լեզուներու հնչիւնը, շփոթը, աղմուկը՝ կարծես ժամադրեր են վայրըս, որ ճշդիւ Բաբելոնի խառնակութեան

գաղափարը կը զարթուցանէ յիս. յաւել ատոնց վրայ բալաճքիներուն ընթացքը, դրամվայից անընդհատ երթևեկը, խարազանաց ճայթիւնը, ձիոց ու եզանց կառքերուն աղմուկը, և մուրացկանաց աղաչանաց պէսպէս ողոքը:

Այս ինծի համար ամենևին նոր տեսարանը մտածութիւնս կը գրաւէ, և ամեն քայլ առնելուս աչքս կը զբօսնու այն խառնիճաղանճ բազմութիւնը դիտելով: Առհասարակ ռամիկ ժողովուրդ կը թուի. սակայն ինչպէս կարելի է անփորձ նորեկի մը ռամիկը ազնուականէն զանազանել: Կանայք և աղջկունք քան զարս կը գերազանցեն բազմութեամբ. ամենուն վրայ շտապ և զուարթութիւն կը նշմարեմ. կարծես մեծամեծ գործոց կը փութան: Առհասարակ ամենուն ոտքը բոպիկ է և ճակատնին նշաններով դրոշմըւած: Ոմանց ճակատը ուղղահայեաց կարմիր գծերով դրոշմուած է, ըստ որում պահպանիչ Վիշնուի պաշտողք. այլոց ճերմակ ու կարմիր միանգամայն. ոմանց նշանը զուգահեռական գծերով է. ըստ որում պականիչ Շիվայի երկրպագուք. և այլ ոմանց կարմիր կամ դեղին կէտ մըն է: Այլոց բոլոր ճակատը ճերմակ գոյնով կնքած է. ոմանց ալ ոչ միայն ճակատն այլ և ողջոյն լանջքը կովու ապաւառով ծեփած է: Ըստ իրենց դասակարգին ամենը իրենց արտաքին նըշանագրոշմը ունին:

Զարդք իսկ չեն պակսիր վրաներնէն. կանայք ոչ միայն ականջներնէն մեծագին օղեր կախած են, այլ և ռնգունքներուն վրայ մարգարտայեռ ու գոհարազարդ օղակ մը կըկրեն. թևերնին ոսկեայ, արծաթեայ և ապակեայ այլ և այլ մեծութեամբ ապարանջաններ կան, պարզ կամ զարդաշէն, յորոց մին՝ որ է մեծագոյնը՝ արմկան վրայ կը կրեն: Պարանոցնին ոսկեայ

և արծաթեայ քառամանեակներու տակ ծածկուած է։ Սրունքնին և ոտքերնին իսկ անզարդ չեն․ հաստ ու լայն արծաթեայ օղակ մը գարշապարին կռնկին վրայ կը յենու, մերթ տասնի չափ ուրիշ օղեր վեր բռնելով․ քայլելու ժամանակնին ոտնամատից օղակներուն շառաչը օդը կը թնդացնէ։ Իսկ ձեռաց մատուըները կիսով չափ մատնիներով ծածկած են։

Երիկ մարդիկ իսկ անմասն չեն այս զարդասիրութենէն․ շատերը ոչ միայն ռընգօղակ կը կրեն, հապա նաև ականջնին հինգ, վեց և աւելի կարգ գոհարաւոր օղակներով զարդարած են։ Բարեբաղդաբար կլիմային բնական ջերմութիւնը հարբղխի տածիչ չէ։

Պանա սպասաւորս՝ որ ուշադիր ետևէս կու գայ՝ ապշութեանս նիւթը կը գուշակէ և մօտենալով կ'ըսէ․

— Ահաւա, մեր Հնդիկներուն զարդասիրութիւնն զքեզ կ'ապշեցընէ․ գիտցիր որ անոնց մի միայն ամբարտաւանութիւնը պճնասիրութիւնն է․ իրենց գոյնզգոյն զգեստներուն փայլը աճեցընելու համար բոլոր ճոխութիւննին ու չահերնին կը հաւաքեն ոսկեայ, արծաթեայ ու պղնձի զարդեր շինելու, գիշեր ցորեկ վրանին կրելով։ Սա աղջիկներուն խումբը նայէ որ ծիծաղելով ու խօսակցելով կը քալեն․ վրայի զգեստնին երկու ռուփի չաժեր, և սակայն իրենց վրայի զարդերը հարիւր ռուփիէ աւելի աժէք ունին։ Ասանկ է առհասարակ բոլոր Հնդիկներուս բարքը․ միշտ զարդարանքը ամեն բանէ վեր կը գերազանցէ։ —

Եւ սակայն ինքը սպասաւորս վրան ամենևին զարդ չէր կրեր․ և ոչ իսկ իր ընկեր սպասաւորները․ գուցէ անոր համար որ եւրոպացի եկաւորաց կը սպասաւորեն, կը զգուշանան որ չըլլայ թէ անախորժ երևոյթ մը բերեն։

Հանդերձ այս զարդուց շռայլութեանը, այն ռամիկ

բազմութեան աղտեղի երևոյթը գիս կը խորշեցնէ։ Շատին զգեստը քանի որ զգեստ սկսեր է կոչուիլ կ՚երևայ թէ թափչի ձեռքը չէ անցած. զգացած խորշումս զգուշութիւնս կ՚աւելցընէ որ մէկի մը չհպիմ։ Արդեօք բազմութիւնը միտքս կը հասկնա՞ր, թէ գերութեան երկիւղածութենէն յառաջ կու գայ որ ամեն անգամուն որ աջ կամ ձախ կը խոտորիմ գիմացս ելլող Հնդիկք հակառակ դին կը խուսափեն։



Համալսարան 'ի Պոմպէյ։

Եթէ աչքս վերցնեմ երեսնին նայիմ՝ անոնք երկիւղիւ՝ իսկոյն աչքերնին վար կ՚առնուն։ Արդեօք պատկառա՞նք է կ՚ըսեմ, բո՞ւն երկիւղ թէ խորշում որ այս զգուշաւորութեանս կը պարտաւորէ զիրենք Եւրոպացւոց առջին։ Այս իրենց երկիւղածութեան զգուշաւորութիւնը ինձ Նախնի Տաճկաստանին պայմանը կը յիշեցնէ, և համարել կու տայ թէ տեղացւոց առջին Եւրոպացին քաղաքակիրթ եէնիչէրի մ'ըլլայ։

Շոգեկառաց նորակառոյց կայարանին քովէն կը դառնամ. մեծագործ շէնք որ դեռ ևս շինութեան հետ է։ Թէպէտ և արևը իր սաստկութիւնը դեռ չէ բոլորովին ստացած, բայց հանդերձ հովանոցիս պաշտպանութեանը ինծ կըզգացնէ որ հովանաւոր տեղ մը ապաւինելու եմ։ Եղանակը թէպէտ և ձմեռնային է բայց անանկ ջերմ որ հիւսիսային Իտալիոյ յունիս և յուլիս ամիսներուն կը համեմատի։ Ցորեկուան ջերմութիւնը այն աստիճանի է որ նորեկը՝ տունէն դուրս համառօտ շրջանէ մը դառնալով՝ հարկ է իր հանդերձը գլխովին փոխէ. հոս մարդ կը հալի։ Բայց եթէ արևն անտանելի է շուքն ալ նոյնչափ անուշ ու զով։ Սակայն մեծագոյն աղէկութիւնը գիշերն է. ըստ երկրին սովորութեան՝ պառկելէն յառաջ պաղ ջրի բաղնիք մը օրուան ջերմութեան հետևանքը կը կտրէ, որմէ ետքը գիշերուան անուշ զովութիւնը քնոյ քաղցրութիւնը կ'առաւելու. շատ է որ մարդ անհանդուրժելի մժեղաց խայթին դէմ անկողնոյ պատսպարիչ վարագոյր մ'ունենայ։

Այսպէս մինչդեռ Հնդիկը այս եղանակիս ցորեկը ցուրտ կը զգայ, իսկ գիշերը կը սառի, Նորեկ եւրոպացին ցորեկը կը հալի, իսկ գիշերուան զովութեամբ իր կորուսած ուժը կը վերստանայ։

Ճամբան կը կտրեմ ու կայարանին դիմացի ծառոց շարքին հովանւոյն ներքև կը մտնեմ։ Մուրացկանաց աղաղակները ականջս կը խլացնեն. ճամբուն երկայնութեամբ՝ հաշմ, վիրաւոր, կոյր, պակասաւոր Հընդիկք գետինը պառկած՝ պէս պէս ողոքաւոր ձայներով անցաւորաց լումայն կը պաղատին։ Ամեն քայլ առնելուս բազմաթիւ ձեռք դէպ ինծ կ'երկննան, Սահապ, Սահապ կանչելով. ամեն մէկուն ձայնը, ամեն մէկուն ողոքը, ամեն մէկուն շարժուածքը՝ երկայնժամանա-

կեայ արուեստական կրթութիւնը կը յայտնեն ։ Տասնամեայ կոյր տղայ մը մասնաւորապէս կը զանազանէր ոչ միայն ձայնիւ այլ և մարմնոյն շարժմամբ, որ ինչպէս փիղք իրենց գլուխը, այսպէս ինքն ալ իր մարմնոյն ողջոյն կոճղը աջ ու ձախ կը շարժէ, շարունակ մի և նոյն ձայնը հանելով։ Լեզուն չեմ հասկընար, սակայն ինձ կ՚երևայ թէ մինչդեռ լումայն կ՚ողոքէ, միանգամայն և կը սպառնայ, ինչպէս թէ ըսէր. «ով որ չտայ՝ կրողը տանի, ով որ չտայ՝ կրողը տանի». Շարունակ նոյն համառօտ խօսքը և եղանակը կը կըրկնէ։ Գուցէ սպառնալիքէն վախնալով՝ երկու անա արծաթիկ մը ձեռքը կը դնեմ, և առանց երախտագիտական ցոյցի մը սպասելու ճամբաս կը շարունակեմ։

Ծառոց շարքին հովանին ինձ կ՚առաջնորդէ մինչև մեծաշէն վաճառանոցը, որ ընկած կամ ան քաղաքին առընթեր կանգնած է, ընդարձակ ու հոյակապ և մեծագործ կղզի։ Անհամար բազմութիւն մը անոր լայնարձակ դրան մէջէն կ՚երթևեկէ, մինչդեռ կողովակիր բեռնակրաց խումբք մուտից առջին կանգուն կան՝ պատրաստ ՚ի ծառայութիւն։ Երեք կիսամերկ սևամորթ տղայք իրենց կողովներովը զիս կը պատեն ու ծառայութիւննին կ՚առաջարկեն. այլ Պանա սպասաւորս մէկզի կը վարէ, և ինձ կը դիւրացնէ այն մեծագործ շէնքին մուտից առջևը առ վայր մը դադարելու և ընդհանուր հայեացք մը տալու։ Հոն կը յիշեմ և իրաւունք կու տամ՝ ոչ միայն բարեկամիս՝ որ ինձ կը յանձնէր այն տեղւոյն այցելութիւնս զանց չընելու, այլ նաև քաղաքացւոց որ կը պարծին իրենց վաճառանոցովը, ինչպէս թէ գեղեցկութեամբ աշխարհիս առաջինն ըլլար. լոյս, ընդարձակութիւն, մաքրութիւն, հանգստութիւն, կարգաւորութիւն, ամեն բան

այցելուին ախորժը կը հրապուրեն։ Վաճառանոցս 72000 քառակուսի կանգուն միջոց բռնած է, և ըստ այլոց ևս ականատեսից՝ աշխարհքիս ամենէն գեղեցիկն է։ Բոլորը կրանիտ քարէ, երկըթէ և ապակիէ շինուած է։

Երկու գլխաւոր ընդարձակ սրահք կան. մին՝ աջակողմեանս՝ դէպ 'ի հարաւ կը դիմէ. միւսը՝ ինձ հանդիպակաց՝ դէպ 'ի արևելք։ Ես դէպ 'ի աջակողմեանը կը խոտորիմ, որ ծաղկանց ու պտղոց որոշեալ է, և որու ընդարձակութիւնն է հարիւր յիսուն ոտք երկայն ու հարիւր լայն։ Իմ ուշադրութիւնս ծաղկանց բազմութիւնն ու պէսպիսութիւնը կը գրաւեն. դեկտեմբերի ամսուն մէջ ենք և շատոնց 'ի վեր այն ծաղկանց շատին յիշատակը մտքէս ելած է։ Վարդը իր պէսպիսութեամբը և առատութեամբը կը գերազանցէ։ Յասմիկը կոյտ կոյտ՝ կանանց և աղջկանց առջին ձըգած է, որք համբերութեամբ ոսկէթել աղանիի վրայ կ'անցունեն ու պսակներ կը շինեն։ Թօկէծաղկունք, վերպէնայք և այլ տեսակ տեսակ հոտաւէտ և գոյնզգոյն ծաղկունք՝ իրենց բոյրովը տեղին կը լեցընեն. յաւել ասոնց վրայ նաև այն մշկահոտ գաւազանիկները՝ որ ամեն դին շարունակ կը վառեն և որոց անոյշ հոտը այցելուին այնչափ ախորժելի է։ Շատ ծաղկունք կան որ առ մեզ ամառնային եղանակին միայն կը զարդարեն մեր պարտէզները. իսկ հոս ընդ հակառակն նոյեմբերէն մինչև մայիս առատաբար կը գտնուին։ Հիմա այնպէս յառաջացած է ծաղկագարմանութիւնը 'ի Հնդիկս, որ յԵւրոպ հազուագիւտ եղած ծաղիկները հոս ամենասովորական են. որովհետև մեծ նեցուկ է ծաղկագարմանութեան կլիմային քաղցրութիւնը։

Որչափ ալ փիլիսոփայաբար մարդս ծաղկանց նայի

չի կրնար ներքին մղման մը տեղիք չտալ ու փունջ մը չգնել։ Վարդի ու յասմիկի փունջ մը ձեռքս առնելով բանիւ և ձեւով գինը կը հարցնեմ. իսկոյն քըսան ձեռք ծաղկանց փնջերով դէպ ինձ կ'երկննան. Եթէ ուզենամ՝ զամէնը գոհ ընել՝ քանի մը բեռնակրաց կողովք պիտոր չբաւեն։ Սակայն Պանա սպասաւորս տարակոյս կը լուծէ. վրաս դիմողները մէկդի կը վարէ, և ձեռքիս փունջը հատուցանելով կ'անցնինք սրահին հանդիպակաց կողմը, որ պտղոց վաճառման որոշեալ է։

Ծաղկավաճառաց ամէնն արդէն պտղավաճառք զգացեր են թէ նոր հիւր մը եկած է, և իրարու նշան կ'ընեն թէ ինչպէս խաբեն։ Հազար աչք կը տեսնեմ որ սևորակ դիմաց մէջէն փայլուն փայլուն դէպ ինձի կը հային։ Ամէն դիէն սահապ ձայնը դէպ ինձի կ'ուղղի. ամէնը կը ջանան զիս իրենց ձգելու, իրենց վաճառած պտուղներն, իրենց պարտիզաց արդիւնքներն ինձի ցոյց տալով։ Անտարբերաբար և իբր անզգայ՝ ամէնուն երեսը կը նայիմ, մինչդեռ անոնք սպասաւորիս կ'ակնարկեն։

Այս պտղոց առատութիւնը զիս կը հիացընէ. շատը ամէնևին անծանօթ են ինձ. ոմանք այլոց եղանակի արդիւնք։ Կարմրագոյն պանաններու կոյտի մը առջին կը դադարիմ, զորոնք դիւասես սևամորթ մը իբր յաղթանակ՝ բուրգ բուրգ առջևը կանգնած է։ Համարելով թէ ստանալ կ'ուզեմ՝ ծանր փունջ մը ինձ կը հրամցնէ. այլ Պանա որ միշտ շարժմանցս ուշ կը դնէ,

— Մի՛ առնէ, կ'ըսէ, սահապ. լաւագոյնը և համեղագոյնը դեղին փոքրագոյն մէկ մըն է, քիչ մը վարը կը գտնենք։ —

Այս ըսելով ինձ ուրիշ տեղ կ'առաջնորդէ, մինչդեռ պտղավաճառ Հնդիկը օրհնութեանց պսակ մը

ետևնէս կը կարդայ. սակայն այն օրհնութիւնք սպասաւորիս ձեռաձիր մըն է՝ որ ինձ չի պատկանիր։

Քիչ մը անդին անանասի կոյտերու կու գանք. անանա՛ս՝ որոյ համբաւը այնքան մեծ է յԵւրոպ, և որ ամենուն հեշտեաւ մերձենալի չէ։ Արդ. բուն իւր հայրենիքն եմ, բուն անանասի բուսած տեղը, և հարկ է վայելել 'ի լաւագունից և 'ի համեղագունից։ Մէկ մը կը նշմարեմ մեծագոյն և գունով մութ կարմիրրակ. անշուշտ հասունագոյն և քաղցրագոյն ըլլալու է. գագաթին ծայրէն փունջ մը առկախեալ կայ նման նուրբ տերևներու, թէպէտ աւելի մազի թելերու նմանութիւն կը բերեն։ Ես նշան կը համարիմ աղէկ հասունութեան, և թափով երկու ձեռօքս կը բռնեմ ու դէպ 'ի վեր կը քաշեմ. այլ այն կարծես գետնի վրայ հաստատուած գամուած է, տեղիք չի տար. չորս կողմս բազմութիւնը կը լռէ, մինչդեռ ես անանասը վեր ձգելու կ'աշխատիմ։ Այլ յանկարծ անանասին տակէն երկու վատուժ ձեռքեր դէպ 'ի վեր կը նետուին ու ձեռքերս կը բռնեն. օձի մը պտոյտներու երկիւղը ինձ անանասը ձգել կու տայ, այլ ձեռքերուս վրայ գամուած են։ Ծիծաղը չորս դիս կը բրդի. աչքերս կը բացուին ու կ'անդրադառնամ որ փոխանակ անանասի՝ քնացող հնդկի մը գլուխը ըմբռնած էի։ Ծիծաղողաց ծիծաղակից՝ 'ի փոխարէն անպատեհութեան՝ լաւագոյն անանասը ընտրանօք սպասաւորիս ձեռքը կու տամ։

Շատ այլ անծանօթ պտղոց մէջէն՝ մէկ քանին 'ի դէպ համարեցայ տուն տանելու։ Ասոնց սակի էր տեսակ մը խոշոր նարընջի, զոր բոմիլօ կը կոչեն (pumelo, pamplemousse), և որ խոշոր ձմերուկի մեծութեամբ կ'ըլլայ։ Ներքին գոյնը կարմիր ու ճերմակ խառն է, և է քաղցրահամ և անուշ, թէպէտ թեթև մը լեղուա-

համ. առաւօտանց և շրջագայութենէ մը ետքը՝ զովարար և շատ ախորժելի է. այլ միանգամայն և զգուշալի. անհնարին է առ անգամ մի ամբողջ մը ուտել. կտրած՝ չաւրուիր, այլ երեք և չորս օր և աւելի կը դիմանայ. բայց այն ատեն փորհարութիւն կը պատճառէ, զոր 'ի փորձոյ ստուգեցի: Արտաքին առևտըրոյ կարծեմ թէ նիւթ կրնայ ըլլալ, որովհետև նարնջի պէս՝ մանաւանդ թէ աւելի երկայն կը դիմանայ:

Ձմերուկն և սեխն առատ է. սակայն առջինին ներքին տժգոյն տեսքը գիս ճաշակելու չի հրապուրեր: Նոյնպէս առատաբար կը գտնուի նարինջը, մանտարին կոչուածը, այլ ընտրելագոյն և համեղ: Խաղողն իսկ չի պակսիր, այլ փոքր կողովիկներու ու տփերու մէջ՝ իբր ազնիւ բան՝ կը վաճառեն. բայց ոչ է Պոմպէյի արդիւնք այլ Ջուրունկապատէն ու Քապուլէն կու գայ, և է ընդհանրապէս թթուաշ՝ կատարեալ հասունացեալ չըլլալուն: Նոյն տեղերէն կու գան նաև ընկոյզ, փստուղ, չոր դեղձ և խնձոր: Թուզ, ելակ թարմ ու չոր արմաւ, և այլ տեսակ Հնդկաստանի յատուկ պտուղք շատ են, բայց ընդհանրապէս մեր քմացը ախորժահամ մէկ քանին է. մեծաւ մասամբ լպրծուն համ մը ունին:

Մանկօ պտուղը կ'ըսուի թէ Հնդկաստանի պտղոց մէջէն ամենէն համեղն ըլլայ. բայց դժբաղդաբար այն պտուղը մայիս ամսուն մէջ կը սկսի հասուննալ. ես շատ ուշ եկեր էի զայն վայելելու: Յիրաւի կան կանխահաս տեսակներ ալ, որոնք խաբեբայ Հնդկին առիթ կու տան զօտարականը խաբելու. ինչպէս ինձ հանդիպեցաւ մարտի ամսուն մէջ, որ և շատ վատահամ գըտայ: Սակայն գիտցողք կ'ապահովեն թէ մանկօն ընտրելագոյն է ամենայն հնդիկ պտղոց:

Ինձ յաւէտ ախորժելի է պանանը. պանանը, կ'ը-

սեմ, որ իւր պէս պէս գոյնովը, ձեւովը ու մեծութեամբը՝ նախանձելի պտուղ մըն է մրգասիրաց։ Ցորչափ եղէ 'ի Պոմպէյ՝ ոչ երբեք նուազեցաւ պանանը օրը հինգ անգամ քմացս ներքեւը խնալու։ Այս եղաւ մի միայն ուտելիք՝ զոր կրցայ շրջագայութեանցս ժամանակը Հնդկին ձեռքէն առնուլ և ճաշակել։ Իւր թղանման բարակ մաշկը մատանց ծայրով թեթեւաբար վերցնելով, ճերմակ, փխրուն և անուշ միսը կը մնայ, որ լեզուին ներքեւը կը հալի։ Ցիրաւի եթէ ուրիշ բանի համար Հնդկաստան երթալ չաժէր, գոնէ պանան պտուղը ուտելու համար երթալու էր։

Քոքոյի ընկոյզն առատութեամբը պանանի կը համապատասխանէ. բայց եթէ քմացս գրգռիչ ըլլալու ուժը չունեցաւ՝ գոնեայ ստուգեցի երկրին ինչ օգտակար պտուղ ըլլալը։ Ասոր տուած իւղը ոչ միայն լուսաւորութեան կը ծառայէ, հապա նաեւ բնիկներուն իբր օծիչ մարմնոյ։ Այս ծառիս պտուղներէն Հնդիկք տեսակ մը ոգելից ըմպելիք կը թորեն, հեշտացուցիչ քմաց, որով և կը գինովնան ալ։

Պտղոց սրահին այցելութիւնս լմնցնելով, վաճառանոցին հարաւային թեւը կըմտնեմ, որոյ երկայնութիւնը 150 ոտք է, իսկ լայնութիւնը 100։ Այս թեւս ինչպէս ըսինք՝ կանաչեղինաց, ընդեղինաց և համեմոց որոշեալ է։ Կ'ըսեն թէ հարիւր տարի առաջ կանաչեղինաց մշակութիւնը ոչինչ էր 'ի Հնդիկս. իսկ հիմա այնքան յառաջացած է՝ որ անհատնում տեսակներ կը մշակուին։ Դդմականաց տեսակը զիս կը հիացնէ. կան տեսակներ որ երբէք տեսած չէի։ Սակայն այս վաճառանոցին մէջ պատնճանի և վարունգի ազգը բնտռելը շատ զգուշալի է, կամ գոնէ շատ սուր ու փորձ աչք ունենալու է ինչպէս փորձով իսկ տեսայ։ Որովհետեւ ողջոյն այն վաճառանոցին սրահը

մէկ մեդրիւ չափ բարձր տախտակամածներու գծերով բաժնուած է ծայրէ 'ի ծայր։ Այն տախտակամածները դարձեալ խորշ խորշ որոշած է, ինչպէս առանձին առանձին խանութ։ Վաճառողը վրան կըծկած՝ իր բերքերն առջևը դիզած սփռած է։ Եւ որովհետև շատ անգամ երկու կամ երեք հոգի կ'ըլլան նոյն մասին տէր ու վաճառող, երկայն սպասելը քընոյ ծանրութիւնը կը բերէ։ Այն արձակուրդին միջոցը ոտք ու ձեռք պատնճաններուն ու փարունգներուն հետ կը խառնուին ու կը շփոթուին. և դիպաւ ինծի որ պատնճան բռնել համարելով Հնդիկ տիրոջը անլուայ սրունքն ու թևը վերուցի. բարեբաղդաբար ջրի աղբիւրը հոն մօտ էր։

Համեմոց բաժինը ամենաճոխ է։ Կարծես Հնդկին քիմքը մասնաւոր կերպիւ ասոնց տրամադրեալ է, մինչև որ իր ուտելիքն առատաբար չհամեմէ՝ չուտեր։ Գուցէ այս պիտոյքը կլիմային առողջաբանական պայմանին պահանջ մըն է. անանկ որ ոչ միայն այս վաճառանոցին մէջ, հապա նաև քաղաքին փողոցաց կրպակներուն շատերը համեմք կը վաճառեն, և յաճախորդք անպակաս են։

Հացագործն իսկ մոռցուած չէ, իւր բաժանմունքն ինքն ալ ունի. և հացագործքն են բորդոգալցի սևամորթ և անկօշիկ հին գաղթականք։ Որոց շարունակութիւն կ'ընեն պանրավաճառք, կարագավաճառք և այլ ուտելեաց վաճառողք։

Այն տեղւոյն երթևեկը, այն բազմութեան աղաղակը, այն գլուխներու զեռացումը չեն կրնար նորեկ եւրոպացի այցելուին վրայ տպաւորութիւն չընել. մանաւանդ առաջին անգամուն որ տեղւոյն այց կ'ընէ։ Եւ ես իսկ իմ այս շրջանիս մէջ ախորժելով կը քայլեմ այն խառնիճաղանճին հետ խառնուած, զբօսանք

զգալով ու դիտելով ոչ միայն այն արգաւանդ երկրին բերքերն, հապա նաև այն գոյնզգոյն զգեստներով բնիկները, որ փոխադարձ զարմացմամբ ինծի կը նային և յարգութեամբ ճամբայ կը բանան։

Այս երկու սրահներէն դուրս և որիշ է մսեղինաց և ձկնեղինաց վաճառանոցը. սակայն այն տեղին այցելելու ոչ երբեք համարձակեցայ։ Թէպէտ և ջրին առատութեամբը այն տեղւոյն մաքրութեանը մեծ հոգ կը տանին, սակայն կլիմային տաքութեանը պատճառաւ այն վաճառանոցներէն հոտը ջնջելը անկարելի է. անոր համար ալ միշտ հեռուանց քերելով կ'անցնէի։

Հաւավաճառաց ու Թռչնավաճառաց բաժանումն ուրիշ մասնաւոր թև մը կը ձևացնէ։ Թռչնասէրը իւր ախորժը գրեթէ լիովին կրնայ յագեցնել։ Ի Պոմպէյ յաճախող շոգենաւք՝ այլ և այլ երկիրներու Թռչուններ հոն կը բերեն 'ի վաճառ, յորս կը գերազանցեն թութակք, պլպուլք, դեղձանիկք, և այլ կերպ կերպ և գոյնզգոյն Թռչունք, ընդ որս և կապկունք, եղնիկք, և այլ կենդանիք։ Սակայն այս Թռչնականաց գինն ալ, ընդդէմ ամենայն ակնկալութեան, ծանր է։ Զոյգ մը դեղձանիկ, օրինակի համար, մինչև երեսուն և քառասուն ֆրանգի կը ծախուի։ Աժնագոյն՝ Պոմպէի թութակքն են, որոց ձագերն՝ մինչև կէս ֆրանգ կ'աժեն։ Սակայն և այս տեսակ թութակը, որ ամենէն հասարակը կը համարուի, ամենէն խելացին և ամենէն աշխոյժն է։ Ասոր ապացոյցը իմ Բովէրէդոս կուտայ, որ Պոմպէի թութակաց մէջէն կարծեմ ամենէն գողտրն է։ Այնպէս կը կապուին մարդու՝ որ շան մը պէս ետևէն կ'երթան։ Մարմնոյն ձևը, գլխուն աղւորութիւնը, կանաչ փետուրներուն փայլը, և ամենէն աւելի անոր ընտանութիւնը՝ Թռչնոց մէջէն աւելի

տիրելի կ'ընեն զինքը։ Եւրոպացի ճանապարհորդաց ներկայութիւնը անպակաս է այս վաճառանոցիս մէջէն։

Մեր վաճառանոցին ստորագրութեան վերջը գալով՝ բոլոր այս շինուց մէջտեղի միջոցը մշտականաչ պարտէզ մը բռնած է, որոյ կեդրոնէն մշտահոս և գեղեցկաշէն աղբիւրի մը ջուրը յարատև կ'արբուցանէ անոր գոյնզգոյն ծաղկանց տունկերը։ Այս աղբիւրս կանգնողը ճոխ Փարսի մը եղած է, որոյ այլ և այլ առատաձեռնութեան արդեանցը համար՝ անգղիական վարչութիւնը ազնուականութեան տիտղոսը տուած է։ Աղբիւրս անդրիներով զարդարած է, որք Հնդկաստանի այլ և այլ գետերը կը ներկայացնեն։

Մասնաւոր ծաղկադարման սպասաւորք շարունակ նոյն պարտէզը խնամելու հետ են, տունկերը ջրելով, ծառերը հոգալով, ծաղիկները դարմանելով, և այն շաւիղներուն փոշիները՝ զով և շարունակեալ ջրով նստեցնելով։ Այնքան զուարճութիւն ազդած է ինծի այս տեղւոյս տեսութիւնը՝ որ շատ անգամ նոր նոր ախորժով այցելած եմ, և միշտ առանց անդրադառնալու որ ժամերը երագութեամբ կ'անցնէին. և այն զգացած զուարճութեանս առեն միշտ ըսած եմ թէ յիրաւի է պարծել Պոմպէացւոց իրենց վաճառանոցին վրայ։

Հաճոյացեալ պտուղներու հաւաքմամբ՝ ոտքս վաճառանոցին դռնէն դուրս կը դնեմ և քայլս դէպ 'ի պանդոկը կ'ուղղեմ, աճապարելով միջաճաշի ժամուն հասնելու։ Սակայն խանութպանից միջնորդներու խումբ մը զիս կը պաշարէ դէպ 'ի շրջակայ խանութները ձգելով։ Վաճառանոցին հիւսիսային կողմը՝ բնիկներուն քաղաքին ընդհանուր ճակատը՝ կրպակներու շարունակեալ գիծ մըն է։ Հոն ամեն տեսակ

ձեռագործի նիւթ կը գտնուի։ Սակայն երից ժամուց հոգնեցուցիչ այցելութիւնս գիս հանգըստեան կը շտապեցնէ։ Գրեթէ կռուելով՝ այն յամառ հրաւիրողաց ձեռքէն կ'ազատիմ ու քիչ մը ետքը պանդոկը կը հասնիմ։

Խոնջ ու վաստակեալ միջաճաշէն յետոյ սենեկիս մթութեանը մէջ հանգիստ կը բնտռեմ. սակայն տեսութիւնս սենեկիս միջնորմէն դուրս՝ սանդղին վերը երկու անպատկառ աչքեր կը նշմարէ, որ մըթութեան մէջէն երկու ադամանդից փայլը կը նմանին։ Աչքերս մէկդի կը դարձնեմ, բայց կամայ ակամայ դարձեալ հոն կը տանիմ, և դարձեալ այն սևորակ դէմքին փայլուն աչքերը հոն սևեռեալ դէպ 'ի սենեակս կը նային։ Կը համբերեմ և աչքերս կը գոցեմ։

Բայց երևակայութիւնս կը ջերմանայ, և անպատշաճութեան դիպաց կրիւք,

— Ուրեմն, կ'ըսեմ, հոս տեղս առանձնութեան հանգիստ բնտռելը կարելի չէ՞։—

Նեղսրտութեամբ կը կանգնիմ, գլխարկս կ'առնում և սպասաւորիս ձայն կու տամ՝ ինձ դէպ 'ի Աւստրիոյ հիւպատոսարանը առաջնորդելու։ Սենեկիս դռնէն դուրս՝ աչքերս դէպ 'ի փայլուն աչաց վայրը կը տանիմ, և մի և նոյն ատեն սևամորթ կատու մը սանդղին ծայրէն ոստոստելով վար կը գահավիժի։ Գաղտնիքը կը լուծուէր. կատուին աչքերն ունայն տեղ գիս խռովեր էին։ Բայց մղումը մէյմը առած էի. հարկ էր որ Աւստրիոյ հիւպատին երթայի յանձնարարականքս ներկայացնելու։

Քսան վայրկեան ետքը Էնֆինաղըն սըրքը բոլորչի հրապարակն էի, որու կեդրոնը ջրի աւազանով գեղեցիկ ծաղկազարդ պարտէզ մը շինած է։ Հրապարակը կամարակապ ու մեծագործ շէնքերու բոլորշի մըն է,

որ գլխաւորապէս վաճառականաց և առևտրական գործոց սենեակք են։ Հոն մօտ է նաև անգղիական մայր եկեղեցին։ Հոն մեծ դրան մը ճակատը Աւստրիոյ և Իտալիոյ հիւպատոսաց նշանադրոշմը կը նշմարեմ, և անմիջապէս տախտակեայ սանդղի մը աստիճաններէն առաջին դստիկոնը կ'ելլեմ։ Բոկոտն, կապտազգեստ Հնդիկ սպասաւոր մը զիս կը դիմաւորէ. անոր ուսին ոսկեհիւս լայն ժապաւէնը և աւստրիական ոսկէզօծ երկգլուխ արծուին՝ ինձ կ'ըսեն թէ հիւպատին սպասաւորն է։ Հարցմունքս իրեն ուղղելով՝ ինձ ընդարձակ սրահի մը մէջէն՝ հիւպատին սենեակը կ'առաջնորդէ։ Հինգ կամ վեց Փարսի և Հնդիկ գրագիրք՝ առանձին գրասեղանաց առջին նըստած՝ կը գրեն. տեղին աւելի վաճառականի սենեակ է քան հիւպատոսարան. հիւպատին սենեակն իսկ վաճառականի մը գործատեղւոյն երևոյթն ունի։ Եւ յիրաւի այդպէս է. որովհետև հիւպատք 'ի Պոմպէյ, գոնեա Աւստրիոյ և Իտալիոյ, ոչ միայն իրենց սեփական տէրութեանց ներկայացուցիչք են, այլ և նաւական գծերու գործակատարք։ Այսպէս և Աւստրիոյ հիւպատս, առ որ յանձնարարական ունէի 'ի հիւպատէն Վենետկոյ, ոչ միայն տէրութեան ներկայացուցիչ էր, այլ և Լոյտի հնդկային գծին գործակատար, և առանձին վաճառական։

Ի Հնդիկս, ինչպէս նաև ամեն հեռաւոր երկիրներ, եւրոպացի օտարականք՝ իրենց սակաւութեանը պատճառաւ՝ իրարու վերայ իբր ընտանի, իբր ընկեր, իբր եղբայր կը նային։ Նորեկի մը գալուստը զիրենք կը դրդէ անոր ընկերութիւնը բնտռելու, և անկէ հայրենեաց լուրերը լսելու. և այսպէս նոր հիւրոց ամենայն մարդասիրութիւն կը ցուցնեն։ Որպէս եղաւ և ինձ աստ 'ի հիւպատոսարանին. և սիրոյ և ջերմ

ընդունելութենէ մը ետքը, հիւպատին միջնորդելովը լաւագոյն և ըստ տեղւոյն բաւականապէս հանգիստ բնակարան մը յաջողեցայ գտնել։

Հինգ օր միայն բնակեցայ 'ի Սանճրալ Օդէլ իտալական պանդոկը. վեցերորդ առաւօտը, առանց ունկն մատուցանելու պանդոկապետին, որ զիս քովը թոշակաւոր բռնելու համար ամենայն ներողամիտ ուշադրութիւն կը խոստանար, փոքր կահիկովս 'ի Սարկըն տունը թոշակաւոր կը մտնէի։ Նոյն տունը արդէն թոշակաւորք կային՝ Գաղղիացի մը, Զուիցերացի ժամագործ մը, և Անգղիացի պաշտօնախնդիր պատանի մը։ Եթէ նոր սենեակս բոլորովին խնդրածիս համեմատ չէր, գոնեա պատշաճագոյն էր։ Անպատշաճութիւնը, զոր ես սկզբան կ'անգիտանայի, բնակչաց թուոյն վրայ էր. կը համարէի թէ բնակարանին վարձքին հատուցումը յինէն ըլլալով, անոր վայելքն ալ իմս միայն պիտոր ըլլար. սակայն առանց պանդոկապետին գիտութեանը հաշիւ կ'ընէի. շատ չուշացայ հասու ըլլալու՝ որ նոյն սենեակը գրեթէ գրեթէ կենդանաբանական ապաստանարան մըն էր։

Հազիւ թէ առջի գիշերը վարագուրաց ներքև ամփոփուած՝ մթան մէջ քնոյ հանգիստը կը բնտռէի, անկողնիս չորս կողմը քայլելու աղմուկ մը սկսայ լսել. մկա՞ն էր քալուածքը, կատուի՞ թէ այլոյ կենդանւոյ. հապա եթէ օձի՞ մը այցելութիւնն ըլլար, որ դժուարին բան մը չէր, ինչ ընելու էր։ Հարցումս առանց լուծելու՝ միւս կողմը դարձայ։ Բայց անմիջապէս քայլողն ալ մագլցելով վարագոյրներէն վեր սկըսաւ ելլել. և ինչպէս թէ լարախաղաց մը ըլլար՝ վեր վար վազվռտէր, իջնէր, ելլէր, որպէս թէ պար բռնէր։ Հանգիստս կորսնցնել չէր արժեր. հիւրիս բարի զուարճութիւն մաղթեցի. անշուշտ, կ'ըսէի, ինչ ալ ըլ-

լայ, մուկ ըլլայ, կատու թէ օձ, կամ թէ Հնդկի մը ոգին, անփութութեանս առջին ձանձրանալով տեղիք տայ պիտի։ Ակնկալութեանս հակառակ բոլոր գիշերը զուարթ պարահանդէսը շարունակեց։

Առաւօտու լոյսը այն գիշերային անկոչ այցելուն հալածեց. բայց նորատեսակ աղմուկ մը աչքերս բանալ տուաւ։ Արևը ծագեր էր՝ իւր կարմրորակ ճառագայթները չեշտակի վարագուրիցս վրայ նկարելով. Թռչնոց մերձաւոր ճռուողիւն մը ականջս խայթեց. վարագուրին ծայրէ մը տեսնեմ հինգ ոստոստող ճնճղուկ գետնէն փշրանքները կը քաղէին։ Ուստի՞ մտեր էին այս նոր հիւրք։ Աչքս պատուհանաց կը տանիմ. այն վանդակափեղք այնքան ճարտարութեամբ չինուած էին, որ ագռաւք անգամ ազատ մուտ կրնային ունենալ. ապակւոյ կիրառութիւնը ունայն է 'ի Պոմպէյ։

Այն օրէն սովորեցայ առաւօտները Թռչնոց ձայնին հնազանդ զարթնուլ։ Իսկ ագռաւք թէ և պատուհանիս վրայ կու գային կը հանգչէին, ոչ երբեք համարձակեցան ներս սենեակը մտնելու։

Սակայն առաջին օրուան հիւրս ձանձրացող տեսակէն չէր. իւր այցելութիւնները շարունակեց, կարծես ինծի մերձենալու դիտմամբ. այլ ապահովացուցած վարագոյրք միշտ խափան էին, և միայն վեր վար վազվռտելով կը գոհանար։ Բայց գիշեր մը համբերութիւնս հատաւ. ալ ուզեցի անշնորհք հիւրիս հետ ծանօթանալ. ո՛հ, կ'ըսէի մտօքս, եթէ Հնդկի մը ոգին ըլլայ, որ կ'ըսեն թէ շատ կան թափառական, որչափ հետաքրքրութեան աղբիւր պիտի ըլլայ ինծի։ Ճրագն անցուցի ու լռիկ կը մնայի. և ահա հաւատարիմ իւր այցելութեանցը՝ իսկոյն սկսաւ վարագուրիս վրայէն մագլցել. աճապարեցի ճրագը վառելու.

բայց հիւրը դիւական երագութեամբ լռեց անյայտ եղաւ։ Համբերութեամբ սենեկիս բոլորը կու գամ հիւրը բնտռելով. յանկարծ թռչող մութ մարմին մը անկողնիս վրայէն անցնելով՝ գնաց պատին զարնուեցաւ մնաց։ Այս անգամուն, ըսի, տեսնեմ թէ ո՛վ է։ Երկու, երեք շրջանով հալածական վարեցի, մինչև հարուածի մը տակ ընկճեալ մնաց. գեղեցիկ սևագոյն պատենաթև մըն էր բթաչափ մեծութեամբ։ Բայց մինչդեռ զայն գետնէն կը վերցընէի, աչքերս դէպ 'ի որմը գնացին. հոն նոյն միջատաց լեգէոնք այլ և այլ ուղղութեամբ կը վազէին։ Առ վայր մը կեցայ զարմացմամբ. ինչ ունէի ընել, զամէնը հալածել, ջարդել անհնարին էր. Թողուլ անկողին դառնալ կը մտածէի, երբ անոնց ետևէն մողեսի տեսակներ տեսայ, որ նմանապէս պատէ պատ կը վազվռտէին։ Աչքերս գոցեցի, անշուշտ ըսի, ասոնց ետևէն կարիճք և օձք պիտի գան. անոնցմէ ետքն ալ ո՛ գիտէ ինչ։ Հասկըցայ որ նոյն սենեկին իրաւունքն միայն իմս չէր. Թողի և անկողին մտայ։

Թմրութիւնը չուշացաւ աչքերս գոցելու, բայց այն թմրութեան մէջէն վրաս քայլող բան մը զգացի։ Ըշտապաւ վեր նետուեցայ և ձեռքս ճրագին տարի. կը համարէի թէ այն անակնկալ հիւրը հնդկային համբաւաւոր օձերէն մէկ մը ըլլայ։ Գաւազանով ձեռքս զինած, վարագուրին տակը կը հսկեմ. չափաւոր մեծութեամբ սև մուկ մը անկողնիս վրան վեր վար վազելով կը խաղար։ Գաւազանը գահավիժաբար ինջաւ, բայց անկոչ հիւրը հարուածին իջնալուն չսպասեց. անկողնին մէկ անկիւնէն ինքզինքն գահավիժեց, և անմիջապէս մերձակայ ծակ մը մտաւ։ Երկրորդ հարուածն ինջաւ երագաբար, բայց անմիջապէս փոշիի ամպ մը տեսարանը ծածկեց. մկան դիւ-

կին տեղ՝ գետնի տախտակին խորտակած կտոր մը մնաց։

Ուստի՞ կրցեր էր մուտ ունենալ այն անախորժ հիւրը. Թուի թէ Պանա սպասաւորիս հետ դաշնա-դիր եղած էր. որովհետև վարագուրին մէկ փոքր ծայրը զգուշայընելու անհոգացած էր։

Այս անգամուն ծանօթանալով սենեկիս բնակչացը՝ համբերել առաջադրեցի, և անոնց հետ բնակակից ըլլալու հաստատուն դիտաւորութեամբ՝ թողի որ ջուրը իւր ճամբէն երթայ։

---

# Բ

Պոմպէյի սովորութիւնք. — Գաղղիացի թոշակաւորը. — Բաղդախնդրին դէպքը. — Ճականադայի թափորը: — Անկարելին 'ի Պոմպէյ. — Վալքիշվար: — Լռութեան Աշտարակը: — Փարսից յուղարկաւորութիւնք: — Անակնկալ յարուցեալ մը:

Հիմա որ յիշատակներս կը յեղյեղեմ՝ բաց յայլոց՝ երկու գլխաւոր առաւելութիւն կը նշմարեմ, որ սիրտս մասնաւոր կերպիւ Պոմպէյի հետ կապած են. ասոնց մին կը հայի բնութեան, միւսը մարդկային բարեկարգութեան: Ցետինս աւելի մասնաւոր կերպիւ Եւրոպացւոց կը պատկանի. ոստիկանութեան աչքը այնպէս ուշադիր է՝ որ տանդ բովանդակելոց վրայ սիրտդ կրնայ ապահովաբար հանգչիլ. եթէ գողը ընտանի չէ՝ կրնաս վստահ ըլլալ՝ որ ոչ ոք անոնց կը դպչի: Ամեն երկու քայլ առնելուդ՝ ոստիկանութեան սպասաւորի մը կը հանդիպիս. այս ըսպասաւորք բազմութեամբ ամեն դին ցրուած, միշտ կանգուն, միշտ ուշադիր, վեր վար քայլելով՝ ամենուն շարժմունքը կը դիտեն:

Բնակած տունս փողոցի դուռ չունէր, կամ թէ ունէր՝ ոչ երբեք կը գոցուէր: Սենեկիս դուռը նմանապէս գիշեր ու ցորեկ բաց էր. եթէ գող մը չար դիտաւորութիւն ունենար, շատ էր սանդղէն վեր սրահը ելլէր. տանը ամեն սենեկի դուռը բաց կը գտնէր, և տեարքն կամ 'ի քուն և կամ արտաքս: Բայց այս բանս երբեք չի հանդիպիր. գոնէ ցորչափ հոն եղայ՝ չլսեցի:

Երկրորդ առաւելութիւնն է բնութեան կամ օդոյ. տարին ութ ամիս միակերպ անամպ երկինք մը կը պարզէ ընդհանուր կղզւոյն վրայ. արևը միշտ միակերպ պայծառութեամբ արևելքէն կ'ելլէ, և անայլայլակ արևմուտքը կը խոնարհի, ոսկեղէն հորիզոն մը հետոցը ետևէն նկարեալ թողլով։ Բայց այս ութ ամսէն ետքը՝ չորս անխուսափելի անձրևային ամիսք կը յաջորդեն, յորում բնութիւնը երկնից սահանքը կը բանայ, ամենօրեայ և անընդհատ փոթորկալից կատաղութեամբ։ Այն ատեն՝ Գոմպէյի բնակութիւնը անտանելի կ'ըլլայ, մանաւանդ եւրոպացի գաղթականաց, որոց շատք հեռանալով բարձունքը կ'ապաւինին։ Սակայն այն չորս ահաւոր ամիսներէն ետքը, երբ բնութիւնը իւր կատաղութեան բուռն թափը կը սպառէ ու ցամաքութեան միջոցը կը սկսի, չկայ երկիր մը կ'ըսեն, որ դաշտաց, բլրոց, բուսականութեան և ընդհանուր բնութեան գեղեցկութեան գաղափարը տայ։

Իմ բաղդս գիս այս երկրորդ եղանակին ձգեր էր ՚ի Գոմպէյ. սակայն թէպէտ և ախորժելի էր ինձ, այլ հուսկ ուրեմն այն երկարօրեայ երկնից պայծառութիւնը, և միակերպ արևուն կիզիչ փայլը, ինձ փափագելի կ'ընէր մթնոլորտի փոքր այլայլութիւն մը։ Ո՜րչափ կ'անձկայի դոյզն ամպրոպ մը, համառօտ փոթորիկ մը, գոնեա երկնից վրայ քանի մը մթին ամպեր, յորոց քանի մը զովացուցիչ կաթիլք իյնային այն ծարաւի ու հրկիզեալ և փոշելից գետնին վրայ։ Ունա՜յն ակնկալութիւն. ինչ արև որ ողջունեց գիս առաջին օրը, դարձեալ մի և նոյնը վերջին օրը գիս շոգենաւ յուղարկեց։ Բայց և այնպէս յաւէտ այս միակերպութիւնը իւր քաղցրութիւնն ունի. մեզի նկատմամբ մանաւանդ, որոց երբեմն մեր կլիմային պայմանը՝ օրերով արեգին երեսը փափաքելի կ'ընէ։

Արդի բնակած տունս 'ի Ֆօրդ, կանխաւ կզզւոյն բերդը, կենդրոնական տեղ մըն էր, ուր կը զեռար բուն առևտրական և գործունէութեան կեանքը։ Մեջի հանդէպ բողոքականաց հաղարաւոր ճիւղերէն մէկի մը ժողովատեղին, որոյ ջերմեռանդից եռանդը՝ կարծես դիտած էր երեկոյեան ճաշին անդորր խօսակցութիւնը երաժշտութեամբ ու երգօք համեմել. վաթսուն քայլ անդին՝ Հայոց եկեղեցին, որոյ բակին խորհրդաւոր մթութիւնը մշտավառ կանթեղի մը լոյսը կը փարատէր. անոր ալ կից Լատինաց եպիսկոպոսարանը հանդերձ իւր ժամատեղեաւը։

Որչափ հոյակապ չէնք որ անգղիական վարչութիւնը այն Ֆօրդ կոչեցեալ ընդարձակ միջոցին մէջ կրցեր է ցրուելով կանգնել 'ի զարգացումն քաղաքին, մեծագոյն մասը իմ բոլորս կը գտնուէին. գանձատունը, դիւանը, համալսարանը, բարձրագոյն ատեանը, Թղթատունը, հեռագրատունը, Հնդկաստանի կայսրուհւոյն յիշատակարանը, Կալեսի իշխանին ձիաւոր արձանը, և այլ շքեղ ու հոյակապ չէնքեր։ Աչքս կը զբօսնոյր ամեն անգամ որ այն մեծագործութեանց քովէն կ'անցնէի, և սիրտս կը բացուէր այն գեղեցիկ ծաղկունքը դիտելով որ այն չէնքերը պատող պարտիզաց մէջ կը մշակուէին։ Եւ եթէ երբեք այն փառահեղ շինուածոց պակսութիւն մը կը գտնէի, ընդհանրապէս գոթացի ճարտարապետութեան միակերպ ոճն էր, որ հուսկ ուրեմն նորութիւն սիրող մարդուն աչքը կը յոգնեցնէ։

Օրերը կ'անցնէին այն հետաքրքրութեան արժանի փողոցները պտտելով 'ի տես ինձ անսովոր տեսարանաց. ամեն փոքր դէպք ինձ զուարճալի կը թուէր իւր նորութեամբ։ Ոչ այնքան տեղեակ երկրին ներքնոյն՝ կը համարէի թէ Պոմպէյ գտնուելովս ընդհա-

նուր Հնդկաստանին ճշգրիտ գաղափարը կ'ունենայի· որովհետեւ քաղաքս Հնդկաստանի բոլոր ժողովրդոց ժողովատեղի մը կրնայ համարուիլ։ Ատէպ երեկոյեան ճաշուն բազմելով՝ օրուան տեսածներուս ու տպաւորութեանցս վրայ կը խօսակցէինք։ Գաղղիացին, որ նոյն տունը ինձ բնակակից էր, եւ որ շատ տարիներէ 'ի վեր Հնդկաստան կը գտնուէր, ուր շատ տեղ ճանապարհորդած ըլլալով՝ քաջ տեղեակ էր աշխարհին, ինձ սովոր էր ըսելու՝ թէ Պոմպէյ չէր Հընդկաստան, թէպէտ եւ ընդհանուր Հնդկաստանեայց ժողովատեղի էր։ Հընդկաստանի ճշգրիտ գաղափար մը ունենալու համար հարկ էր ներսերը քալել. հարկ էր գոնէ Տէլհի, Ճակերնակ կամ Ճականադա եւ կամ բուն իսկ Պէնարէս երթալ. հոն բոլորովին նոր տեսարան հանդիսանալու էր ինձ։ Եւ ապա իւր խօսքերը հաստատել ուզելով գլխէն անցած դէպքերը կը պատմէր։ Ուշի ուշով մտիկ կ'ընէին բոլոր սեղանակիցք, որք ինձ նման Պոմպէյէն դուրս ելած չէին։

Ինձ յաւէտ հետաքրքրական էր կրօնական խօսակցութիւնը, որ այնպէս ճշգրիտ գաղափար կրնայ տալ ժողովրդեան քաղաքական կրթութեան ու բարուց, եւ շատ անգամ խօսքը անոր վրայ դառնալով ականատես Գաղղիացւոյն գրոյցը՝ ըստ ընդաբոյս սովորութեան իւր ազգայնոց՝ անհատնում էր։ Օր մը Ճականադայի թափօրին նկարագրութիւնն ընելով այսպէս սկսաւ ըսել.

— Տէլհի եղած ատենս, օր մը հնդիկ զգեստով մէկ մը զիս կը դիմաւորէ. այն զգեստին եւ այն հընդկաներկ մորթին տակը ոչ ոք կրնար գուշակել թէ Եւրոպացի մը ըլլայ. եւ սակայն զիս դիմաւորողն ոչ միայն Եւրոպացի մըն էր, այլ եւ որ ինձ աւելի զար-

մանալի երևցաւ, գաղղիացի ոմն էր և Բարիզու Թա-
ղերէն մէկի մը ծնունդ։ Անհաստատ բնաւորութիւնը
և կենաց պայմանը զինքը բաղդախնդիր մը ըրեր էին.
որ աշխարհքէ աշխարհք անցնելով Հնդկաստան ին-
կեր էր։ Հոս ուզելով ոչ միայն կենցաղավարութեամբ
այլ և կրօնիւք տեղացւոց նմանիլ, Պրահմինի մը ոտ-
քը աշակերտեր էր Մանուի կրօնքը սորվելու։ Պրահ-
մինը չադուրվէտի մըն էր, որ է ըսել՝ չորս վետաներն,
որ Հնդկաց սրբազան գրքերն են, սորված էր։ Այս
Պրահմինը վարդապետելով իրեն ուսոյց, թէ Հնդիկք
որ հոգեփոխութեան կը հաւատան՝ կը համարին թէ
սրբոց՝ այսինքն քրմաց հոգիք՝ չիտակ երկինքը կ'ել-
լեն ու կ'երթան Պրահմային հոգւոյն հետ կը միա-
նան՝ յաւիտենական նրանութիւնը վայելելու։ Իսկ
այն Պրահմիններուն հոգիները՝ որ երկինքը չեն ելլեր,
եզանց, կովուց և ուրիշ պաշտելի կենդանեաց մար-
մինը կը մտնեն։ Ռաճաններուն ու Նապապներուն հո-
գիները տեսակ մը շատ յարգի համարեալ կապիկնե-
րու մարմնոյն մէջ կը բանտուին. իսկ հասարակ քա-
ղաքացւոց, վաճառականաց և արհեստաւորաց հո-
գիները՝ պիղծ կենդանեաց մարմինը կը մտնեն, որ-
պէս զի նոր թշուառութեանց կեանքով մը սրբուին։
Այս ամենէն դուրս բարիայց դասակարգը կու գայ.
ասոնց համար Հնդիկք կը համարին թէ հոգի չունին.
սակայն Պէնարէսի պառաւանց կարծիքը ասոր նկատ-
մամբ տարբեր է. ասոնք կը համարին թէ բարիայք
ալ հոգի ունին. միայն թէ այս դասու մարդոց հոգին՝
չարագործ ոգիներուն երևակայական մարմինը կ'եր-
թան կը բնակին։ Այս ոգիներէս ոմանք, յորոց մին
է Ռավանա, հրէշաւոր սկայք են. մարդոց ամենևին
վնաս մը չեն ըներ, որովհետև չարունակ զբաղած
են դից հետ կռուելու. զորոնք և մերթ ընդ մերթ

յաղթահարելով կը ջարդեն ու կ'ուտեն, այլ առանց անոնց անհամար թիւը զգալի կերպով նուազեցընելու: Այլք, ինչպէս Հիտիմպա, անտառաց ու գերեզմաննոցներուն մէջ կը բնակին, և վամբիռներու նըման՝ աղջկանց արեան ծարաւի են, զոր գիշերը անյագաբար կը ծծեն, և կամ թէ փոքր տղաքը կ'ուտեն:

Երկայն ատեն Հնդկաստան թափառելով՝ վերջապէս մորթը արևուն ջերմութենէն հրկիզեալ մութ գոյն մը առաւ. անանկ որ տեղացւոց հետ կը շփոթուէր: Մերթ մուրալով, մերթ աշխատութեամբ, և գրեթէ միշտ խեղճաբար ապրելով, հուսկ ուրեմն 'ի Ճականադա կը հասնի, ուր ժողովուրդը մեծ շարժման մէջ կը գտնէ: Այն քաղաքին մեծագործ տաճարին դիմացը կեցած՝ կը դիտէր այն մարդկային մտաց ստեղծագործութիւնը՝ որոյ այլանդակ ու խճողած զարդերուն իմաստը հասկնալ չէր կրնար: Անոր ամեն մէկ փոքրիկ մասին վրայ այլանդակութեան կնիք մը կը նշմարէր: Երևակայեալ կենդանեաց, ճեմելիքներու, սեանց կարգերու կոյտ մըն էր տեսածը. որոց զարդ կ'ընէին անհամար կապիկներու, փիղերու, կովերու, պայատէրներու, և ամեն հասակի պրահմիններու արձանաց բազմութիւն մը: Այսպիսի զարդերով հօծ՝ շէնքը դստիկոնէ դստիկոն դէպ 'ի երկինքը կը բարձրանար, նման աշտարակին Բաբելոնի:

Հնդիկ ջերմեռանդից անհուն բազմութիւն մը կը տեսնէր, որ ամեն կողմէն փութալով հոն կը դիմէին. Պրահմինք, գոյներով ծեփուած Ֆաքիրք, ուխտաւոր արք՝ հետերնին ունենալով նուիրական եզներ՝ ոսկեզօծ ու պսակեալ եղջիւրներով, և կիսամերկ կանայք՝ որ ոտքէ մինչև ցգլուխ մետաղեայ ապարանջաններով ու քառամանեակներով ծածկուած, կը զբաղէին բակոտին պաշտամանց կարևոր սրբէլ ջուրն ու

հալած կորագը պատրաստելու։ Այս ամենայն պատրաստութիւնք Թափօրի մը հանդէսին համար կ'ըլլային, որ նոյն այն օրը տեղի պիտոր ունենար։

Հնդկաստան, ձեզի փոքր տեղեկութիւն մը տալու համար, կը չարունակէր ըսել գաղղիացին, չկայ չափաւորապէս նշանաւոր տաճար մը որ իւր Թափօրը չունենայ. սակայն այս Ճականագայի տաճարը՝ ամիսը մէյմը Թափօրի մը հանդէսը կատարելու առաւելութիւնն ունի։



Հեռագրատուն։

Այս կրօնական հանդէսներուն առԹով՝ գլխաւոր կուռքը մեծ հաստակառոյց կառքի մը վրայ դրած կը պտտցընեն. կառաց անիւք մեծ, ստուար, ու լեցուն են, և ոչ սովորական սայլից նման։ Անուոց լխառունք ծանր գերանք են, որոց վրայ կը հանգչի երբեմն տասնըվեց մեղր բարձրութեամբ ծանր շէնք մը։ Շէնքին խարսխին տախտակներուն վրայ էրիկ մարդոց ու կանանց լկտի նմանութիւնք փորուած

կան։ Անկէ դէպ 'ի վեր չէնքը դատիկոնէ դատիկոն միշտ նեղնալով կը բարձրանայ, անանկ որ բոլոր մեքենան բրգաձև կերպարանք մը կ'առնու։ Այսպիսի հանդիսաւոր օրեր սայլը՝ նկարեալ կտաւներով, ազնիւ կերպասներով, պսակներով ու ծաղիկներով կը զարդարեն, և կուռքը, որ ուրիշ բան չէ եթէ ոչ փայտի կոճղ մը կոշտաբար արձան ձևացուցած, և որու մէջ կը համարին թէ Քրիշնա դից աճիւնը ըլլայ, ամենաճոխ զգեստներով կը հագուեցնեն, և ազնիւ և մեծ գին ունեցող գոհարներով կը զարդարեն։

Այսպէս զարդարեալ արձանը սայլին գագաթը աստիճանաւոր բարձր տեղ մը զետեղած է։ Անոր պատուանդանին աստիճաններուն վրայ բազմութիւն մը պարաւոր կանանց կեցած, ոմանք սիրամարգի փետուրներով շինած հովահարներով զկուռքը կը հովահարեն. այլք օդու մէջ փոքր դրօշակներ կը ճօճեն։ Ասոնցմէ զատ շատ մը մարդիկ՝ կառավարելու նպատակաւ սայլին վրայ ելած՝ անընդհատ աղաղակներով ժողովրդեան եռանդը կը խրախուսեն. որոնք հազարաւոր բազմութեամբ ձիու պէս լծուած՝ հաստ չուաններով զսայլը կը քաշին։

Անպատմելի խառնակութեան և աղմկի մէջէն սայլը ծանրաքայլ կը յառաջէ։ Այն դից ընկերացող անհամար բազմութիւնը կը զեռայ. առ հասարակ արք, կանայք, տղայք կը կանչեն, կ'երգեն, կը ծիծաղին, կուլան, և չերևակայելի խռովութեան մը տեսարանը կու տան, լի ցոփութեամբ և անառակ երևութով. ուր խորհող մարդը ոչ խելք կը նշմարէ, ոչ վայելչութիւն և ոչ պատկառանք։

Մինչդեռ թափորը ծանր ծանր կը յառաջէ, այլանդակ կատաղի աղաղակները երթալով կը սաստկանան, որոց արձագանգ կ'ընէ մօքէ չանցնելու

անհամաձայն, անիմաստ և աղմկալից երաժշտութիւն մը, որ մարդուս ականջը կը խլացնէ։ Պարաւոր կանայք իսկ, որ ասանկ հանդէսներու միշտ բազմութեամբ կը վազեն, ցոփաբար պար կը բռնեն, մինչդեռ կրօնամոլ ջերմեռանդք սողալով սայլին առջևը կը նետուին, շատք պատիւ ու երջանկութիւն համարելով անոր անուոց տակը ջախջախուելու։ Այլք սոյնպիսիք դարձեալ՝ իբր ապաշխարողք՝ սայլին վրայ հաստատուած շարժուն ու ճանկաւոր գերանի մը ճանկը՝ ուսերնուն միսին մէջէն անցուցած կը կախուին, և օդու մէջ ճօճանակի նման կը ճօճան։

Այս հռչակաւոր թափօրներուն ներկայ ըլլալու համար Հնդիկք անհամար բազմութեամբ 'ի Ճականադա կը դիմեն. անանկ որ մինչև 300,000 ջերմեռանդն ուխտաւոր կը համրեն տարուէ տարի։ Եւ շատք յայսպիսեաց ապաշխարողի կերպարանօք կ'ընեն բոլոր ճամբան, որ երբեմն տարիով ալ կը քշէ. կան ասոնցմէ որ իրենց տանը դռնէն սկսեալ՝ մարմնոյն հասակաւը ճամբուն գետինը կը չափեն իյնալով ու ելլելով, անանկոր ըստ հեռաւորութեան երբեմն երկու և աւելի տարի կը քշէ մինչև այս դից տաճարը ուխտաւոր հասնելու։ Ցաւալին այն է որ այս ուխտաւորաց շատք դեռ նպատակին չհասած ճամբուն վրայ կը մեռնին. և շատ այլք 'ի դարձին՝ դեռ տուն չհասած՝ ամբողջ ընտանիքով կ'իյնան ու գազանաց կեր կ'ըլլան։ Անոր համար բոլոր այն ճամբաները որ դէպ 'ի Ճականադա կը տանին, միշտ մարդկան դիակներով լեցուն են. և շագալք և անգեղք և այլ գազանք, կարծես մարդկային դիակներով սնանելու սովոր են։ Հաշուող եղած է որ տարուէ տարի միայն Ճականադայի վիճակը այս ուխտաւորներէն 5000 մարդ ճամբաներուն վրայ կը

մեռնին։ Սովորական բան է ողջոյն ընտանիքներ տեսնել որ ճամբուն վրայ կիսամեռ ինկած ետեւէ ետեւ կը մեռնին, մինդեռ չագալք և անգեղք 'ի հեռուստ կեցած անոնց անկարութեանը կը սպասեն որ վրանին ինկնան ու պատռտեն։

Այլ ես այս տեղեկութիւններս մէկդի թողլով բաղդախնդրիս դէպքին դառնամ։ Մինչդեռ բակոտը դիտելու հետ էր, յանկարծ տեսնէ որ դռները կը բացուին և ահագին սայլը երևան կ'ելլէ։ Իսկոյն ժողովուրդը յախուռն վրայ կը թափի և չուաններբը ձեռք կ'առնու․ սայլին վրայ խրախուսիչք կանգուն կ'աղաղակեն, ու դիւահարական շարժմունքներով կը քաջալերեն զջերմեռանդները որ զսայլը քաշեն։ Այն հազարաւոր բազկաց ուժովը ահագին մեքենայն ծանր ծանր կը սկսի շարժիլ որ քաղաքին փողոցաց միջէն իւր շրջանն ընէ։ Բաղդախնդիրը չհամարձակելով սայլին լծուելու՝ անոր քովէն քալող քանի մը ջերմեռանդից կ'ընկերանայ․ և յուսով թէ կարենայ քրմերէն ու պրահմաններէն մէկ քանի ղրամ ողորմութիւն ձեռք ձգել, անոնց կրօնական ջերմեռանդն ամփոփումը կը կեղծաւորի։ Իր մորթոյ գոյնը և զգեստը զինքը Հնդիկ մը համարել տալով դշըրջակայքը կը խաբէ․ և նոյն այս բարեպատեհ դէպքը զինքը մահուան վտանգէ կը խալըսէ։

Սայլէն չորս քայլ հեռու գտնուելով, կը տեսնէ որ իր քովէն քալող ջերմեռանդներէն մէկը ստէպ ստէպ գլուխը դէպ 'ի սայլը դարձընելով կը դիտէ այն ահագին, լայն ու միակտուր անիւները, որ ծանր ծանր հոլովելով այն ահագին մեքենայն կը կրեն։ Յանկարծ տեսնէ որ այն մարդը գոյնը այլափոխելով ռուղի, սուղի կը սկսի կանչել, և անմիջապէս վազե-

լով՝ սայլին առաջին անուին առջեւը գետինը կը տարածուի։ Բաղդախնդիրը համարելով թէ գլուխը դարձած ըլլալուն դիպուածով գետինը ինկած ըլլայ, վրան կը վազէ և մէկ սրունքէն բռնելով՝ ծանր ծանր յառաջացող անուին առջեւէն մէկդի քաշել կ'ուզէ։ Սակայն պրահման մը այն յանդուգն գործը տեսնելով, սրբասէր նախանձու վրէժխնդրութեամբ լըցուած՝ բարեգործին վրայ կը յարձըկի, գաւազանաւ գլուխը կը հարուածէ, և ապա երկու հզօր բազուկներովը զինքը գրկելով՝ ամբողջ մարմնովը կը վերցընէ ու սայլին առջեւը կը նետէ, միւս անիւին քովը։ Մի և նոյն ատեն քրմաց երգերը, թմբուկները, փողերը, սրինգները՝ զարհուրելի դղրդիւնը կը սաստկացնեն, որպէս զի ջախջախուողին ցաւոց աղաղակները չլսուին։ Բարեբաղդաբար մեր մարդը այս անակնկալ դէպքէն չի շփոթիր. մինչդեռ սայլին անիւը՝ զարհուրելի ցաւոց աղաղակներու տակ այն թշուառ ջերմեռանդին ոսկորները կը ջախջախէ, ինքզինքը ուժով մը կը ցնցէ, և այնու շարժմամբ սայլին տակը կ'իյնայ ըստ երկայնութեան. այնպէս որ չորս անիւները քովէն կ'անցնին առանց փորուն կամ ողնաշարին վնասելու։ Միայն անուին մէկը ուսին քովէն քսուելով՝ թիկնոսկրը կը կոտրէ, որ յետոյ անոր կուզ մնալու պատճառ կ'ըլլայ։

Հնդիկք սուրբ կը կոչեն այն կամաւոր զոհը որով մարդ իր կեանքը կը նուիրէ, համարելով թէ այնու մահուամբ կը հաճոյանայ իրեք կամ չորս միլիոն դից մէկի մը, զորոնք իրենք կը պաշտեն։

Այս ակամայ սուրբին ամենէն տպաւորութիւն չըրաւ այն ջերմեռանդն Հնդկաց վրայ. որովհետև եթէ մէկը այս առթով անմիջապէս մեռնելու բարեբաղդութիւնը չունենայ՝ մտքերնին կը դնեն թէ

մեղք մը գործած պիտոր ըլլայ 'ի Նախատինս Հընդկային երրեակ դից, Պրահմայի, Վիշնուի և Սիվայի։ Այսպէս եղաւ այս մեր մարդուն ալ. Հնդիկք զինքը մեղաւոր և անարժան համարելով նոյն տեղը կիսամեռ թողին։ Մէկ քանի Սուտրայք որ հեռուանց սայլին ետևէն կ'երթային, — որովհետև իրենց դասակարգին մարդիկ պիղծ կը համարին ու չեն համարձակիր այն սուրբ առարկայից մերձենալու, — վրան գթացին, ու զինքը վերցընելով հիւանդանոցը



Բարձրագոյն ատեան։

տարին։ Բաղդախնդիրն ուզելով պատճառն իմանալ, հարցուց անոնց թէ ինչո՞ւ այն ջերմեռանդները զինքը ողջ թողեր գնացեր էին։

— Վասն զի, պատասխանեցին, յանյիշատակ ժամանակաց եկած սովորութիւն մըն է, որմէ և բան մը փոփոխել կարելի չէ յաւիտեանս. որովհետև ամէն բանի մէջ անյիշատակ սովորութիւնը սուրբ ճանչցուած է թէ 'ի յայտնութենէ, թէ յաւանդութենէ և թէ 'ի Վէտայց Մանուի։ —

Այսպիսի վատ և կրօնամոլութեամբ անգութ ժողովրդեան մը անտեղի հաւատաքանութիւններէն բոլորովին զզուած, մեր բաղդախնդիրը միտքը դրաւ որ առողջացածին պէս ամենայն ջանք ընէ Եւրոպա դառնալու. զոր և բազում աշխատութեամբ վերջապէս 'ի գործ դրաւ։

— Ինչպէս օր մըն ալ, և կարելի եղածին չափ շուտ, ես ալ պիտոր ընեմ, ըսի, ճարտարախօսին անհատնում խօսքը կտրելով։

— Սակայն ես չէ, պատասխանեց գաղղիացին։ Այսչափ տարի հոս բնակելէս յետոյ, այս երկիրս գրեթէ իմ հայրենիքս եղած է։ Տեղացւոց կրօնական կամ ինչ և իցէ ուրիշ խնդրոց մէջ ամենեւին անմասն ըլլալով, չունիմ պատճառ երկիրս ատելու. թող որ և մորթս իսկ այսուհետև կլիմային յարմարած է։ Սակայն ցորչափ դու հոս մնաս՝ ձեռքէս եկածը կ'ուզեմ ընել քաղաքս և քաղաքացիքս քեզի ճանչցընելու։ Եւ նախ եթէ քեզի հաճոյ է առաջիկայ կիւրակէն երթանք Փարսից Լուսթեան կամ Մահու Աշտարակը տեսնենք։ —

Ի Պոմպէյ անկարելի բաներէն մէկը տաճարները մտնելն է. Հնդիկք անողոքելի են. թոյլ չեն տար քրիստոնէից ինչ և իցէ առթիւ տաճար մը մտնելու։ Եւ եթէ անխոհեմ ոմն բռնի ուզենայ մտնել, ոստիկանութիւնը գրեթէ պատասխանատու չըլլար հետեւանքին. և այս բանս կը յաւելու Եւրոպացի քրիստոնէից զգուշութիւնը։ Քանի մը անգամ փորձ փորձեցի տաճարներու դուռը մօտենալով. բայց հոն հսկողաց երբ ներս մտնելու կամքս յայտնեցի, իսկոյն ժխտական պատասխան առի։ Մի անգամ եւեթ կարող եղայ փոքր և անպաճոյճ մատրան մը դուռը

մերձենալ ու փոքր արարողութիւն մը տեսնել առանց հասկնալու։

Ի շուկայն մինչդեռ խանութներուն առջևէն կ'անցնէի 'ի տես առ և տրոյ վաճառաշահութեան և հնդկային ձեռագործաց, յանկարծ երաժշտական գործեաց աղմուկ մը ականջս խայթեց։ Ի հետաքրքրութենէ շարժեալ քայլս այն կողմը ուղղեցի դէպ ուր կը տեսնայի որ բազմութիւն մը ժողովրդեան կը դիմէր։ Փոքր կրպակի մը դռնէն տեսնեմ հնդիկ կը մտնէր, հնդիկ կ'ելլէր. ի՞նչ էր եղածը. ստուգելու համար համբերութեամբ ոտն առ ոտն կը հետևէի ես ալ բազմութեան, որ ջերմեռանդն ամփոփմամբ կը մերձենար, կը մտնէր, կ'ելլէր ու կը հեռանար։ Երեկոյեան դէմ էր և փողոցները կը սկսէին նսեմանալ։ Վերջապէս դրան կրցայ մերձենալ. փոքր սենեակ մըն էր ամենևին կրպակի մը նման. գետնէն գրեթէ մեդրիւ չափ բարձր՝ սենեկին կէսը տախտակամած էր։ Պրահմին քուրմ մը, կիսամերկ, սրունքները ծալլած նստած էր. քովը փոքր կրակարանի մը վրայ իւղային նիւթ մը կը հալէր։ Հանդէպ պատին վրայ մէկ քանի փոքր կուռքեր. քանի մը գրեթէ կիսամեռ ճրագք այն նսեմ կրպակը, որ մատուռ մի էր, կը լուսաւորէին։

Շատ մը թմբկահարք ու փողահարք դիւաբար աղմկելով ժողովուրդը կը կոչէին. այն հրաւէրքին հլու՝ այր, կին, մանչ, աղջիկ խառն, ափ ափի եկած կը մտնէին, կը ծռէին քրմին առջին. որ մատը այն հալեցուցած նիւթոյն մէջը մխելով իւրաքանչիւրին ճակատը կը դրոշմէր։ Եւ անոնք 'ի փոխարէն՝ ափսէի մը մէջ իրենց դրամական նուէրը կը ձգէին, և ջերմեռանդն պարկեշտութեամբ դռնէն կ'ելլէին կը մեկնէին։

Թէ ի՞նչ էր այս արարողութեան նպատակը չկրցայ հասու ըլլալ. զի այն բազմութեանը մէջ չգտայ մէկ մը որ անգղիարէն խօսէր. և ոչ այնպիսի մը որ յանձն առնուր իրենց սրբազան արարողութեան մը մեկնութիւնը անհաւատի մը ականջը լեցնելու։

Այս կրօնական խստութեան կը հետևին նաև փարսիք. այսու տարբերութեամբ միայն որ Եւրոպացւոց ընկերակցութեանը ըղձակաթ ըլլալով դիւրին է բարեկամաց ձեռքով թոյլտուութեան մը հրամանք ձեռք ձգել։ Մեզ այլ այնպէս եղաւ, և չորս այցելուաց անուններով առանձին տոմսակ մը Լռութեան Աշտարակին դուռը բացաւ մեզի։

Ճամբան Պլէք Պէյին ծովախորշին քովէն կը քերէ, որ ընդարձակ և գրեթէ կիսաբոլոր աղեղ մըն է, որու մէկ ծայրը դէպ 'ի ծովուն մէջ երկննալով կը ձևացընէ Մալապար–Հիլ բլուրը, իսկ անոր հանդէպ միւս կողմը Քօլապայի ծայրն է, ուր կը գտնուին Անգղիացի զօրաց զինուորանոցը, փարոսը և քրիստոնէից նախկին գերեզմաննոցը։

Կառքերնիս կէս ժամու ընթացքէն ետքը զմեզ Մալապար–Հիլին ոտքը կը հասցնէ, ուսկից ծանր ծանր կը սկսինք վեր ելլել։ Մալապար–Հիլ կը համարի ճոխ Եւրոպացւոց և ազնուական Հնդկաց թաղը. ճոխք 'ի գաղթական Եւրոպացւոց, 'ի Փարսից և 'ի Հնդկաց՝ այս տեղւոյս վրայ կանգնած են իրենց անդորր բնակարանները. ամենը պարտիզազարդ, ամենը գեղեցկաշէն, ամենը վայելչատես, մինչև նախանձելի ընել այն վայրը։ Բուսականութեան գեղեցկութիւնը արուեստին հետ կը զուգընթանայ. տնկոց աճումը անանկ բուռն է, որ անհրաժեշտ և անդադար մարդուս չափաւորիչ ձեռքին կարօտ է։ Եւ տեղիս ոչ

միայն գեղեցկութիւն կը մատակարարէ բնակչաց,
այլ և օդոյ զովութիւն, որովհետև ծովային հողմի-
կը անդադար կը շնչէ: Ո՜րչափ քաղցր ու յանկուցիչ
ըլլալու է այն եւրոպացւոյն որ քաղաքին լքուցիչ աշ-
խատութենէն ու ջերմութենէն խոնջ երեկոյեան
դէմ կառօք այս իր հանգստարանը կ'առանձնանայ:
Առաւօտեան շրջան մը այն ծաղկալից ճամբաներուն
մէջ այնպէս ախորժելի է որ երբեք մարդուս մըտ-
քէն չելլեր. այնպէս տպաւորած է մտքիս մէջ՝ որ
ինծ ըղձալի կ'ընէ միւսանգամ հոն գտնուիլ: Բլրէն
քիչ մը վեր ելլելով անկիւն մը կը հասնինք որ դէպ
'ի ծով կ'երկննայ. այս անկեան վրայ կանգնած է
քաղաքապետին ամուսնոյն ամարանոցը, որ կրնայ
ըսուիլ թէ Պոմպէյի ամենէն զուարճալի և ամենէն
զով տեղն ըլլայ: Սակայն մօնուշնի եղանակը, որ է
անձրևւաց և ամպրոպաց ժամանակը, անընակելի է
կ'ըսեն. որովհետև բուռն հողմոց և ծովու ալեաց
կատաղութեանը դիմագրաւ է:

Անկէ քիչ մը անդին Վալքիշվար պզտի շէնը կ'ելլէ
առջևնիս: Հնդիկք քաղաք սուրբ կը կոչեն այս վայրը.
որովհետև թէ հին ու համբաւաւոր տաճարք կան
կանգնուած և թէ պրահմիններու անհուն բազմու-
թիւն մը. թող այն կրօնական աւանդութիւնք որ տե-
ղւոյս հետ կը շաղկապին: Բայց շինիս էականագոյն
առարկայն հնագոյն տաճար մըն է, որու համար
Հնդիկք կ'առասպելաբանեն թէ Ռավանա թագաւո-
րը՝ զՍիդա՝ Ռամայի կնիկը՝ յափշտակած ըլլալով,
Ռամա միտքը դրաւ զայն պատուհասել և իր կնիկը
ազատել: Այսու դիտմամբ ճամբայ ելաւ Սէյլան եր-
թալու. սակայն երբ այս տեղս հասաւ, ուր հիմա
տաճարը կանգնած է, օրը երեկոյացաւ և ինքը դա-
դարեցաւ գիշերն անցնելու: Լաքշմա իր եղբայրը սո-

վոր էր ամեն իրիկուն ոգիի մը ձեռօք Պէնարէսէն լինկամ [1] մը իրեն ղրկելու, որպէս զի իւր ջերմեռանդութեան պաշտօնը առ Շիվա կարենայ կատարել։ Նոյն իրիկունը լինկամը ժամանակին չհասնելով Ռամային համբերութիւնը հատաւ ու չուզեց սպասել. հապա տեղւոյն աւազէն առաւ ու լինկամ մը շինեց։ Քիչ մը ետքը միւս լինկամն ալ հասաւ Պէնարէսէն, զոր Ռամա առնելով իր շինած լինկամին քովը կանգնեց։ Բայց երբ Բորդոգալցիք տեղւոյս տիրեցին, կ'ըսեն թէ այս երկրորդ լինկամը, չհանդուրժելով տեսնել այն բարբարոսներն որ Հնդկաստանի երկիրը կը պղծէին, ինքզինքը ծովը հոսեց։ Այն տեղին ուսկից Ռամա աւազն առաւ, խոր աւազան մը ձեւացաւ, որ մինչեւ ցայսօր ամեն այցելուաց կը ցուցընեն։ Անոր չորս կողմը բնակութիւններ շինուեցան եւ տեղին անուանեցաւ Վալքիշվար, որ կը նշանակէ Աստուած աւազոց։

Բայց գիտնալու է թէ այլք այլապէս կ'ըսեն ձեւացած այս աւազանը, որու եւ վանա դիրքա անունը կու տան, որ կը նշանակէ Աղեղան նետի։ Կ'ըսեն թէ Ռա-

1. Լինկամը Շիվայի դէց խորհրդաւոր նշան մըն է. եւ է գլանաձեւ սիւնակ մը, կլորցած ծայրով, քարի մը կեդրոնը տնկուած. քարին չորս դին ալ փոքր ձուաձեւ փոս մը կայ։ Այս քարը կ'ըսուի եօնի, եւ է նշանակիչ սերական զօրութեան, ինչպէս նաեւ լինկամը է նշանակիչ բեղմնաւոր կարողութեան։ Հաւատացեալք 'ի լինկամ զՇիվան եւ իւր Բարվադի ամուսինը ներկայացած կը տեսնեն։ Այս կրկին կուռք' միասին առած կը կայացընեն պրահմական արդի պաշտաման հիմը. ուստի եւ ամեն տաճար եւ ամեն տուն անհրաժեշտ կը գտնուին։ Արք այս կուռքը ծաղիկներով կը պսակեն, իսկ կանայք իւղով եւ կամ պարզ ջրով կը սըրսըկեն։

մա սաստիկ ծարաւ զգալով և ջուր չգտնելով, նետ մը առաւ ու գետինը զարկաւ, և այն հարուածէն աւազանն երևան ելաւ։ Անոր չորս կողմը այսօր բազմաթիւ ծառեր հովանի կ'ընեն, և անոնց մէջէն գեղեցկապէս կը փայլին շատ մը սպիտակ որմերով բակոտայք և պրահմիններու վայելուչ տնակք։ Այս ա-



Պրահմինի քուրմ մը,
որ զՇաստրաս կամ սրբազան գրեանքը կ'ընթեռնու։

ւազանիս բոլորը մանաւոր աստիճաններ կան որ մինչև լճացեալ ջրին երեսը կ'իջեցընեն. անհամար բազմութիւն մարդոց, կանանց և տղայոց, որոց շատք հեռու տեղերէ եկած են, անդադար կ'ելլեն ու կ'իջնեն՝ այն սրբազան ջրին մէջ լուացուելով։ Շատք իսկ այնք են որ այն աստիճաններուն վրայ նստած՝ երջանիկ զմայլման վիճակի մէջ ընկղմած կ'երևին. առ հասարակ ամենուն շրթունքը ջերմեռան-

դարար աղօթք ընելու հետ է։ Բակոտայք հոծ են բազմութեամբ. պրահմինք յաճախորդներէն լումայն կը պահանջեն 'ի նպաստ իրենց կուռքին. և ճգնաւոր ֆաքիրք՝ իրենց ոսկրեայ ծանր քառամանեակները շարժելով՝ ժողովրդէն սատակ կը մուրան. մինչդեռ երաժշտական փողք և թմբուկք գժոխային աղմկաւ ականջ կը խլացընեն։

Մինչդեռ կառքերնիս կը յառաջէ, գաղղիացին 'ի հեռուստ ժայռ մը մատնանիշ ընելով,

— Սա ժայռը կը տեսնես, կ'ըսէ նա. այն ժայռին վրայ ճեղք մը կայ, ուսկից չկայ Հնդիկ որ ջերմեռանդաբար չանցնի, համարելով թէ կրկին անգամ կը վերակենդանանայ. որովհետև նախ և առաջ իրենց Շիվա աստուածը անցած է։

Եթէ կարելի ըլլար կ'ուզէի քեզ հոս Պրահմինի մը տանիլ որ Հնդկաց մէջ մեծ համբաւ ունի, որովհետև հետամուտ է հնդկային կրօնքը վերանորոգելու։ Քովը շատ մը աշակերտք ժողոված՝ շարունակ վէտական գրոց քննութեանը կը զբաղի։ Ինքը յառաջագոյն ճոխ մէկ մըն էր. այլ ուզելով իւր այս գիտաւորութիւնը անարգելք կատար հասուցանել, բոլոր ունեցածը ծախեր և աղքատաց տուեր է, միայն իր բնակած փոքր տնակը իրեն յատուկ պահելով։ Վախեմ անունը քեզի զարմանք պիտոր բերէ. Իմաստութեան ովկիանոս կը կոչուի, որ անշուշտ չափազանց պարկեշտ է։ Ինքը հիմա ողորմութեամբ կ'ապրի. ժողովուրդը այն աստիճանի կը յարգէ զինքը՝ որ իւր պիտոյքը մեծաւ խնամքով կը հոգայ՝ ամեն տեսակ կերակուր տանելով իրեն։ Այլ ինքը այն ամենը աշակերտացը բաժնելով սակաւ մի բրինձով ու բանջարիով կը շատանայ. և սակայն զինքը տեսնես՝ ահաւորապէս գէր է։

— Անշուշտ ինչպէս սա պրահմինք, ըսի, որ հոն բազմութեամբ նստած կը ծխեն։ Ի՞նչպէս գէր ու ծոյլ երեւոյթ ունին։

— Այդ պրահմիններէն գաղթական բազմութիւն մը կայ հոս, պատասխանեց գաղղիացին, ըստ որում որ տեղիս Հնդկաց գլխաւոր սրբավայրն է։ Առհասարակ՝ ինչպէս կը տեսնես՝ անհոգ ու ծոյլ կեանք մը կը վարեն, ողջոյն օրը ափիոն ծխելով ու ծամելով։ Իրենց գերակայութեանը վրայ այնչափ է համարմունքնին՝ որ ամէն օտարը պիղծ կը համարին։ Պրահմինը նուիրական սուրբ մըն է. քրիստոնեայ մը անոր հպիլ չի կրնար. եթէ ձեռք երկնցընես 'ի նշան բարեկամութեան՝ քստմնելով ետ կը քաշուի որ չպղծի։

— Թէ այդպէս է, ըսի, թողունք զիրենք իրենց սրբութեանը մէջ ու ճամբանիս շարունակենք։ —

Մինչդեռ մենք կը յառաջենք՝ շրջագայութեան եղող ճոխից կառքերը՝ արամբք ու կանամբք լեցուն՝ այլ և այլ ուղղութեամբ քովերնէս կ'անցնին։ Ամարանոցաց դռները բաց՝ զմայլմամբ կը հայինք այն բազմաթիւ տնկոց ու գոյնզգոյն ծաղկանց՝ որ այն բնակարանները նախանձելի կ'ընեն։ Հսկայատես պանիանը ամեն գին կը գտնուի. իւր ոստոց թեւերը դէպ 'ի խոնարհ երկընցուցած՝ միայն յենարան կը բնտռէ նոր զաւակի մը արմատը հաստատելու։ Բարձրաբերձուն լայնատերեւ պանանը իր պտղալից ծոցը պատկառազարդ կ'երեւցնէ։ Կոկոսն երկնասլաց ձողի մը վրայէն հովանոցաձեւ կը տարածէ իւր տերեւները, որոց արմատին քովէն մեծկակ ընկոյզներ կ'առկախին։ Տերեւալից, երկայնաճիւղ, լայնատարած մանկոն իւր անհամար ծաղիկները կ'ուեռէ, որոնք քիչ տեղնէն Պոմպէյի ամենէն ազնիւ ու համեղահամ

պտուղը սխտոր ընծայեն։ Այս ծառերուն մէջ խառ-նուած կը տեսնեմ թումբլօն, որու ճիւղերը ձմերուկի մեծութեամբ ու ծանր նարինջներով դէպ 'ի գետինը կը հակին, և որոց մէջ կ'ամփոփի այն քաղցրահամ ու զովացուցիչ օշարակը՝ որ ծարաւելոյ ուղևորին ըս-փոփում կը շնորհէ։ Սքանչելի և ապշեցուցիչ է ար-դարև այն բուսաբերութիւնը, և մարդ չի կրնար չըզ-գալ նախանձ մը այն բնակչաց բաղդին վրայ որոց բաժին ինկած է, թէպէտ և կ'աւաղէ անոնց մեղկու-թիւնը։

Վալքիշվար չէնը ետևնուս թողլով գեղեցիկ ու լայն ճամբու մը վրայ կ'իյնանք որ Մալապար-Հիլ բը-լըրին գագաթը կը հանէ։ Այս ճամբան ալ Սըր Ճէմ-շիտճի Ճիճիպոյ ճոխ փարսիին առատաձեռնութեանը արդիւնք է։ Քանի որ վեր կը բարձրանանք՝ տեսա-րանը որ առջևնուս կը պարզի՝ երթալով կը գեղեց-կանայ։ Պոմպէյի կղզին և անոր նաւահանգիստը հետզհետէ կ'ընդարձակի 'ի սքանչացումն ամենեցուն մեզ։ Կարծես բնութիւնը միասնաւոր ճիգ թափեր է ինքզինքը գեղեցկացընելու. քօքօներու անտառները, բլուրները, հեռաւոր լեռները, ջուրը, բնութիւնն ող-ջոյն միով բանիւ, հանդերձ մարդկային մեծագործու-թեան արդիւնքներովը՝ անպատմելի լուսոյ գեղեց-կութեամբ կը շողշողան։ Մեր ոտից ներքև եղած ընդարձակ ծովածոցը, Պոմպէյ քաղաքակղզւոյն ընդ-միջելովը՝ երկու ծովու խորշ կը ձևանայ։ Քաղաքը կարծես անտառախիտ արմաւենեաց մէջ թաղուած է. հոյակապ շէնքերը յաջորդաբար իրարու ետև ե-տև կը կանգնին, և անոնց մէջէն ցիրուցան կը տես-նուին եկեղեցեաց երկնասլաց աշտարակները։ Շէնք շէնքի յաջորդելով կը հեռանան, կը ստուերանան,

մինչև աչք շլացընող պայծառ արևուն նշուլից մէջ անստուգաբար կը թաղուին։ Քաղաքէն անդին կը տեսնուի ընդարձակ Նաւահանգիստը իւր հարիւրաւոր կզզիներովը ու բազմաթիւ շոգենաւներովը, և անկէց անդին Կոնկանի լեռներուն գագաթները, որոնցմով կը յանգի տեսարանը։

Ճամբան մեծագործ ջրամբարի մը կը հանդիպինք որ դեռ ևս շինութեան հետ է, և որու ծախքը պիտի ըլլայ ինը միլիոն ֆրանգ։ Ի Պոմպէյ թէպէտ և ջուրը առատ է, բայց և այնպէս տէրութիւնը այն կարևոր տարեր առաւելութեանը համար անհոգ չի կենար։ Այս ջրամբարէս անդին կը սկսինք տեսնել Փարսից Լռութեան Աշտարակաց միջոցին բարձր պարիսպները։ Գիշատիչ թռչնոց երամք որ անոնց վրայէն կը սաւառնին՝ վրանիս սարսուռ կը բերեն։ Հոս տեղս բնութիւնը ահռելի երևոյթ մը կ'առնու։ Այն գիշատիչ թռչուններէն դուրս ուրիշ էակ մը չես տեսներ որ այն ժայռուտ կողերը այցելէ. պարիսպները մերկ կը կանգնին. կարծես թէ բնութեան ճիգն իսկ 'ի գերև կ'ելլէ այն տարօրինակ վայրը մարդկութեան աչքէն ծածկելու։ Վայրենի երևոյթ մը ունի արտաքսապէս, որ ուրիշ դարուց, ուրիշ բարուց և ուրիշ զգացմանց վայել է։ Եւ, տխրազգեաց ժայռից կողերը կարմրագոյն հողոյ մէջէն կը ցցուին, դոգցես 'ի նմանութիւն սգազգեաց մարդկութեան որ այն բարբարոս ջնջման դատակնքոյն դէմ ողբալով բողոքէր։ Հուսկ ուրեմն կառքերնիս կը դադարի փոքր դարուվերի մը առջին, զոր հետի ելլելու ենք։ Ոստիկանութեան զինուոր մը մեզ կը դիմաւորէ, ու տոմսակնիս առնելով պահապանին կը տանի, մինչդեռ մենք այն տեղւոյն մեծ ու խորհրդաւոր դրան առջին կեցած՝ այս արձանագրեալ խօսքերը կը կարդանք.

հա բաց 'ի փարսից ուրիշ մէկու մը թոյլ տրուեալ չէ
իս մտնել »։

Պաշտպանին հրաւիրելովը դրան սեմը կը կոխենք՝
խոյն տեսարանն ալ կերպարանափոխ կ՚ըլլայ, և
եսարանին հետ նաև մեր քստմնափուշ զգացումն
։ Ընդարձակ վայր մը կը բացուի առջևնիս, ծառա-
րդ, ծաղկալից, վայելչատես, իբր 60,000 քառա-
ուի մեդր։ Անդէտ ոք չի կրնար գուշակել թէ այն
ղեցիկ տեղւոյն վրայ, Զրադաշտի օրինաց հետևող
րսին իւր մեռեալ սիրելւոյն մարմինը անհամար
շատիչ թռչնոց առջևը կը նետէ 'ի կերակուր։

Այն ընդարձակ շրջապատին մէջ հինգ բոլորշի ըս-
տակագոյն աշտարակք կան ասդիս անդին ցրուած,
ոց մեծագունին ծախքը 30,000 լիրա աղէրլին եղած
իսկ միւսներունը միջին հաշուով քսանական հա-
ր լիրա։ Մեծագոյնը շուրջ շուրջանակի ութը մեդր
րձրութիւն ունի և իննըսունուերկու շրջապատ։
տնէն իրեք մեդր բարձրութեամբ երկըթէ դուռ
է կայ, ուր ելլելու համար քանի մը աստիճանա-
նդուղ շինուած է։

Անգեղք, ագռաւք և այլ գիշատիչ թռչունք այն
շտարակաց շրթունքին վրայ մշտատև կը թառին.
նոց խլացուցիչ աղաղակք և զազրատի տեսիլն մար-
ու վրայ սարսուռ կը բերեն։ Ոմանք կարծես յըղ-
ացեալ մարդկային մարմնովք՝ ծոյլ ծոյլ կը ննջեն և
մ փետուրնին կը յարդարեն. այլք կարծես ան-
մբեր որսի կ՚սպասեն, թող այն բազմաթիւք որ օ-
ու մէջ կը սաւառնին և աշտարակները կը դիտեն։
րևակայութիւնս ինձ այն գազանաց վրայ մարդ-
յին արեան հետք նշմարել կու տայ. ամենուն հա-
ացքը կատաղութեան երևոյթ մը ունի և կարծես
րդկային մարմնոց անյագ են։ Սարսուռ մը կը

բռնէ զիս երբ պահապանը կը սկսի մեկնել՝ թէ ին պէս դիակը այն գազանաց մագիլներուն կ'աւա դուի։

Դեռ ես ժամ մը չկար որ դիակ մը դրուեր էր ա աշտարակին մէջ որու առջին կեցած էինք, և հետ իսկ չէր մնացեր բաց 'ի ոսկորներէն։ Ուրեմն այն ա գեղց բազմութիւնն որ շրջապատին վրայ կեցած էի կերածներին մարսելու կը հանգչէին։ Աշտարակէն հ վեց քայլ հեռու չորս աղքատին երևութով Փարսի գետինը նստած դէպ 'ի այն երկրթէ դուռը կը նայէ ուշադրութեամբ ու պատկառանօք. կարծես սրտ նին կը տրոփէր. կարծես այն իրենց սիրելիին կ գւոյն վերանալուն կը սպասէին, որ քիչ մը առաջ աշտարակին մէջ դրուած անհետացած էր։ Յա կարծ մէկը թափով կանգնեցաւ, երկու քայլ ա յառաջ գնաց, ինկաւ ծնգաց վրայ, խոնարհեցո գլուխը գետինը ու մնաց լուռ՝ ինչպէս թէ աղօթէ Մղում մը զիս դէպ յառաջ կը մղէր. կ'ուզէի մերձ նալ այն սգաւորաց փոքր խմբին, կ'ուզէի հետերն խօսակցիլ, իրենց ցաւը, իրենց յոյսը տեղեկանա սակայն պահապանին արգելքը, և աւելի ցաւակց լոց պատկառանքը զիս յետս կասեցոյց։

Ոչ ումեք թոյլ տուեալ է այն աշտարակին մերձ նալու. նոյն իսկ Փարսին թէպէտ կրնայ մինչև սան ղոց ոտքը հպիլ, բայց անկէ անդին չ'իշխեր յառա ջել. միայն դաստուրք կամ հրոյ քուրմք իշխանութի ւնին աստիճաններէն վեր ելլել և աշտարակին դր նէն ներս մտնալ։

Տեղիս այնպէս վայելչապէս զարդարեալ է որ ա գէտը չի կրնար գուշակել թէ այն դրախտավայ վայրը ողջոյն մարդկութեան մը նշխարքը գազանա ձեռքով բնաջինջ ընելու կը ծառայէ։ Ասդիս անդին կ

ածինք 'ի տես այլ և այլ դրից. 'ի զուր կը խնդրեմք
իշատակարան մը, նշան մը, որ հանգուցելոյ մը անցը
իշատակէ. տխուր զգացմամբ մը սրտերնիս կը յու-
ի. կարծես այն տեղւոյն դրան սեմէն աստին ամե-
յն մարդկային գործոց կը դադարի։ Ծառերուն
այ գիշատիչ գազանք կը թառին, որմոց վրայ գիշա-
իչ գազանք կ'աղմկին. գլուխներնուս վրայէն գի-
տիչ գազանաց երամք կը սաւառնին, և աճռելի
յներով օդը կը թնդացընեն։ Նոյն իսկ պահապա-
ն որ քովերնէս կը քալէ՝ քստմնելի, անզգայ և ան-
ութ երևոյթ մը ունի. իր միայն նպատակը այն գա-
նքը մարդկային մարմիններով կերակրել կը թուի։
րելի՞ է արդեօք այն տեղւոյն բնակիչ մը ծնողական
ր զգայ, բարեկամական գործով, կամ սիրոյ գութ։
չափ տարբեր 'ի մէնջ որ սիրելեաց յուղարկաւո-
ւթիւնը ամենասուրբ, ամենավսեմ ու նուիրական
րտք կը համարիմք. որ զոհիւք կը ճգնիմք մեր սի-
լւոյն նշխարքը անարատ հանգչեցնել յիշատակա-
նի մը ներքև, ուր ստէպ ստէպ այցելելով մեր
տասուքը և մեր աղօթքը անոր աճիւնից հետ
առնել, և իւր յիշատակը մեր սիրոյն հետ մշտըն-
նաւորել։
Սակայն կ'երևի թէ Փարսիք իսկ մենաւոր չեն թո-
ւր տեղին. մերթ հոս մերթ հոն այն Ջրադաշտի
աւոր. ջերմեռանդներէն կը տեսնենք՝ որ ըստ ա-
ելեան ոճին գետինը նստած՝ աղօթագիրք մը ձեռ-
րնին՝ դէպ 'ի խոնարհող արևը իրենց երեկոյեան
ղօթքը կ'ուղղեն։ Տղայք իսկ ոմանք անհոգաբար
ղիս անդին կը վազվռտեն. և զօտարքս տեսնելով
ս, բավոյրին՝ հետաքրքրաբար կը մերձենան։ Ես
կայն՝ կ'ըսեմ մօրս՝ այս անմեղք ալ իբր տունկք
մշակուին յապաղայ սնունդ այս գազանաց. և մ

գիտէ թէ չուառով ասոնք ալ իրենց փոքր մարմնո
այն անյագները պիտոր չդիրցընեն։

Փոքրիկ մատուռի մը քովէն կ'անցնինք. — Ա
տեղս, կ'ըսէ պահապանը, կը ծառայէ յուղարկաւ
րաց իբր ժողովատեղի, ուր կը հաւաքուին աղօթել
մեռելոյն վրայ։ —

Քիչ մը հեռու՝ աշտարակաց մօտ՝ տաճար մը կ
նշմարենք. այն նուիրական տեղւոյն մէջ անշիջանել
կը պահուի այն սուրբ կրակը, զոր առաջին փախստա
կանք 'ի Փարսից հետերնին բերեր են Պարսկա
ստանէն, և որ ոչ երբեք շիջած է։ Սոյն հուրը մի
սանտալ անուշահոտ փայտով կը սնուցանեն. անոն
որ այն խորհրդաւոր տեղէն, ուր երբեք Եւրոպացւո
սրբապիղծ ոտքը կոխած չէ, շարունակ նոյն հոտաւէ
փայտին անուշաբոյրը կը բուրէ։ Այն հրոյ բոցին լո
սը՝ մասնաւոր լուսամուտից մէջէն թափանցելով չը
տակի աշտարակաց որմոց վրայ կը զարնէ։

Սակայն մենք պահապանէն Փարսից յուղարկաւ
րութեան մեկնութիւնը կը խնդրենք։ Եւ պահապան
մեզ մեծ արկղի մը քովը առաջնորդելով՝ աշտարա
մը փոքրադիր նմանութիւնը կը ցուցընէ, և ան
ներքին կազմութիւնը բացատրելով՝ արարողութի
կը մեկնէ։

Փարսի մը երբ կը մեռնի՝ դիակը կ'զգեցուցան
սպիտակ հանդերձիւք, բայց դագաղի մը վրայ
հանգչեցընեն ու վրան ճերմակ քօղ մը կը ձգե
Զորս Փարսիք դագաղը ուսերնին կ'առնուն և ք
լելով բլուրը կը տանին։ Միայն էրիկ մարդոց թ
տուեալ է ետևէն յուղարկաւոր երթալ, ամէ
սպիտակազգեստ, յոտից մինչև ցգլուխ։ Այսպ
մեռնողին ազգականք ու բարեկամք զոյգ զոյգ կը
տեւին, իւրաքանչիւր զոյգը սպիտակ թաշկինակի

ծայրէն բռնած։ Դագաղին անմիջապէս քովէն երկու երկայնամօրուս Փարսիք կը քալեն, որ են քուրմք, և որոց միայն թոյլ տուեալ է աշտարակին ներսը մըտնել։ Ձեռքերնին ձեռնոց կը կրեն, և դիակին ոտկորներուն միայն երկայն ունելիքներով կը դպչին։

Դագաղը նախ փոքր մատրան մէջ կը հանգչեցընեն, և հոն մեռելոյն դիակին վրայ աղօթք կը մատուցուի. որմէ ետքը կը վերցընեն և աշտարակներէն մէկուն քովը կը տանին. ծնողք, ազգականք և բարեկամք մինչև այն տեղ կրնան մերձենալ. անկէց անդին միայն քրմաց իրաւասութիւնն է։ Քուրմք մեռելը կը մերկացընեն և սանդղէն ելլելով դիակը դըռնէն ներս կը մտցընեն. իրենք ալ ապա մտնելով դիակին ոտքէն ու գլխէն բռնած՝ այնպէս կը զետեղեն որ գիշատիչք միայն մարմինը կարենան ուտել՝ առանց անդամները առնելու տանելու։

Աշտարակը ծածք չունի, այլ բոլորովին բաց է. ներսէն բոլորշի տախտակամած կամ գետնայարկ մըն է, որ ձագառաձև դէպ 'ի կեդրոն կը խոնարհի։ Այս տախտակամածը իրեք համակեդրոն շրջանակ կամ գօտի բաժնուած է. իսկ մէջտեղը կամ կեդրոնը խոր փոս մը կամ հոր մըն է, տասնըհինգ մեդր տրամագծիւ։

Արդ այս իրեք շրջանակները կամ գօտիներն որ ըսինք, բազմաթիւ շառաւիղներով մասն մասն բաժնած է, անանկ որ բազմաթիւ օրօրոցներ կը ձևացընեն, որոց վրայ կը հանգչեցընեն դիակները։ Ներքնագոյն կամ կեդրոնին մերձաւոր գօտին որոշեալ է տղայոց դիակներուն. միջինը կանանց, իսկ հեռագոյնը կամ շրջապատինը էրիկ մարդոց վերապահեալ է։

Քուրմք այս բաժանմանց մէկուն վրայ դիակը հանգ-

չեցընելէն յետոյ՝ կը քաշուին ու դուռը կը գոցեն։ Այն անհամար գիշատիչք որ աշտարակին որմոց վրայ անյագ և անհամբեր կը սպասեն, հազիւ թէ միջոցը ազատ կը տեսնեն՝ ահռելի աղաղակներով դիակին վրայ կը յարձըկին, և կէս ժամու մէջ պատառ պատառ ըրած կ'անհետացնեն, պարզ ոսկերց կոյտ մը թողլով, զորոնք ապա արևը կը ճերմըկցընէ։ Քանի մը օր ետքը քուրմք կը դառնան աշտարակը, և այն ցամքած ոսկորները ունելիքներով ժողովելով հորը կը լեցընեն։ Հոն՝ ժամանակը, արևը և անձրևները զանոնք կը մաշեցնեն, կը փոշիացնեն. և այն փոշիները, կ'ըսեն Փարսիք, անձրևաց ջրերը և ստորերկրեայ հոսանքները կ'առնուն ծովը կը տանին։ Այս մարդկային նշխարաց աճիւնք անանկ ծանր ծանր կը հաւաքուին այս հորերուն մէջ, որ տասնըհինգ տարիէ 'ի վեր մէկի մը մէջ հազիւ երկու մեդր թանձրութեամբ խաւ մը ձևացած է։

Այս կերպով է որ Փարսիք իրենց նախնեաց, նախկին Պարսից, սովորութեանը կը հետևին. որոնք նըմանապէս մարդկային դիակները լերանց գագաթը կը թողնէին 'ի կեր գիշատիչ թռչնոց։ Առողջաբանական օրինաց նայելով, մանաւանդ այնպիսի տաք կլիմայի տակ, դիականց այս կերպ բնաջինջ սպառումը շատ օգտակար է. որովհետև օդը ապականող ամեն գոյացութիւնք շուտով կ'անհետանան։ Բայց նկատելով մարդկային բնածին զգացումը որ իւր մեռելը մանաւոր սրբավայրի մը մէջ յարգանօք ամփոփելը նուիրական պարտք մը կը համարի, քաղաքակիրթ մարդը չի կրնար քստմունք մը չզգալ։

Այս ամենայն տեսնելէն յետոյ մարդ չի կրնար չխորհրդածել թէ ինչպէս Փարսիք որ Հնդկային ժողովրդոց մէջէն ամենէն քաղաքակիրթք կը թուին

և դարուս հոգւոյն աւելի մերձաւորք, կրնան դեռ ևս իրենց նախնեաց այս հին սովորութիւնը պահել, հանդուրժելով որ անգեղք, ագռաւք և այլ գիշատիչք իրենց սիրելեաց մարմինը պատառ պատառ ուտեն։ Ի՞նչպէս կարելի է սրտիրնին տանի տեսնել այն անհամար մագլաւոր գազանք որ մարդկային մսով յագեալք՝ աշտարակաց որմոց, ծառոց ու թըփուտից վրայ կը թառին, ու չմտածել քստմնելով թէ գուցէ մարսելու հետ ըլլան իրենց զաւակին փափուկ միսը, կամ իրենց հօրը, մօրը, եղբօրը սիրտը։

Եթէ Փարսիի մը այս խորհուրդ առարկես քեզի այսպիսի պատասխան մը կու տայ։ Տարերք սուրբ են ու պղծելու չէ զանոնք մարդկային մսովը որ անսուրբ է։ Մարդուս դիակը այրելու չէ, որովհետև կրակը կը պղծի. թաղելու չէ որովհետև անով հողը պղծել կ'ըլլայ. գետը կամ ծովը նետելու չէ, և ոչ իսկ բաց օդու մէջ թողլու է որ նեխի, որովհետև այսու օդն ու ջուրը անմաքուր ընել կ'ըլլայ։ Ընդհակառակն այս կերպ ջնջմամբ մարդկային մարմինը մէկ մարմնէ միւս մարմինը կը մտնայ, և այնպէս Զրադաշտի խօսքը կը կատարուի որ ըսեր է, թէ մահը առհասարակ զճոխը և զաղքատը պիտի հաւասարեցընէ։ Եւ արդարև այդպէս ալ կ'ըլլայ. որովհետև Պոմպէյի ամենէն ճոխին ու բարձրագունին դիակը յետին աղքատին դիակին քովը կը դրուի այս լռութեան աշտարակին մէջ. և երկուքին ոսկերք խառն կը գլորին հասարակաց հորին մէջ։

Թէպէտ և ամենաճշմարիտ է այս ետքի սկզբունքը, սակայն քաղաքակիրթ ու կրօնասէր մարդը, որ ամեն բանի մէջ վսեմ և ազնուական զգացումը կը բընտռէ, նուիրական ու սուրբ ըրած է հանգուցելոց նըշխարքը ու հանգստարանը։ Եւ ո՞րչափ աւելի վսե-

մութիւն ու բանաստեղծութիւն չինք գտներ մեր քրիստոնէական յուղարկաւորութեանց մէջ. մանաւանդ այն նուիրական սրբավայրից մէջ, ուր աղքատք և ճոխք առհասարակ քովէքով անզորրութեան քունը կը ննջեն, յետին այցելութեանը սպասելով որ իրենց ոսկերքը միւսանգամ պիտի մարմնացընէ։ Ինձ կարծես գերեզմանէն անդին ալ պիտի քաղցրանայ մտածութիւնս, թէ իմ ոսկերք հողակշտոյ մը ներքև կը հանգչին, ամպհովանի ունենալով աստեղազարդ երկինքը, տխրագգեաց ուռենւոյ մը զովարար հովանին, և յուսոյ խաչի մը վկայութիւնը։

Այցելութիւննիս լմնցուցած էինք. դէպ 'ի դուռը ուղևորելով յետին նայեցուածք մը տուինք տեղւոյն, ու զառիվայրն իջնելով,

— Մի անգամ ևեթ, ըսինք, արժան է տեղւոյս այցելել, մարդկութեան բարուց ու սովորութեանց ծանօթանալու նպատակաւ։ —

Մինչ կը մեկնիմք խորհրդածելով տեսածներնուս վրայ, կը հարցընենք.

— Հապա թէ մէկը առերևոյթս անզգայ՝ մեռեալ կարծուելով, ինչպէս երբեմն կը դիպի քաղաքակիրթ ազգաց մէջ, և որ հոս իսկ յուղարկաւորութեանց փութացուցմամբ դժուարին չէ որ պատահի, ողջ ողջ այլ անզգայ որ դրուի այն աշտարակը՞ գազանաց մագիլներուն առջին, ինչպէս կարելի է ազատի եթէ ժամանակին զգացումը վրան գայ։

— Ատոր դարմանը հոգացած է, կը պատասխանէ Գաղղիացին. և կ'ըսեն թէ այդպիսի դէպք մը հանդիպած է։ Աշտարակին շրթունքը, ներսի կողմէն, լար մը հաստատուած է, որու միջնորդութեամբ վտանգեալը կրնայ փրկուիլ։

Երիտասարդ Փարսիի մը համար կը պատմեն, թէ

տկար, հիւանդոտ, ու շատ վշտերէ նեղեալ, օր մը անկողնին մէջ անզգայ կը գտնուի։ Փոքր քննութենէ մը ետքը մեռեալ վճռուելով, ըստ պահանջելոյ տեղւոյն սովորութեան, յուղարկաւորութիւնը շուտ մը կը պատրաստուի. որովհետև կլիմային ջերմութեանը պատճառաւ մարմինը փութով ու հեշտաւ կը սկսի լուծուիլ ու նեխիլ, որ ողջոց ամենավտանգաւոր պարագայ է։

Մեռեալ կարծուած երիտասարդը ըստ սովորութեան սպիտակ հագուեցուցած դագաղը կը դրուի, սպիտակ քօղը վրան կը ձգուի, և բարեկամք և ազգականք սպիտակազգեստ՝ կը վերցընեն ու մեռելոց վայրը կ'ուղևորին։ Հոն օդը խղդուկ և արևը կիզիչ, զամենը կը փութացընեն արարողութիւնը համառօտելու. և ապա ամենը կը քաշուին, դիակը քրմաց ձեռքը թողլով. որք մերկացուցած՝ աշտարակը կը մտցընեն, իւր տեղը կը զետեղեն, և մեկնելով աշտարակին դուռը ետևնուն կը գոցեն։

Թէ ինչ կը պատահի աշտարակին մէջ մարդ կրնայ գուշակել. անգեղք որսին վրայ կը յարձըկին. սակայն այն մեռեալ համարեալ դիակը բուռն մղում մը կը սպասէր կենդանանալու։ Հազիւ թէ առջի կըտցին հարուածը կը զգայ, իսկոյն անզգայ վիճակէն կը զարթնու, և մահու սարսափը վրան ուժ բերելով յուսահատաբար գազանաց դէմ կը կռուի. լարին վրայ յարձըկելով աշտարակին շրթունքը կ'ելլէ և ինքզինքը միւս կողմը կը հոսէ։ Հոն սրտատրոփ, պարհուրագին այն մահագոյժ վտանգէն՝ կը կանգնի, դուռը կը դիմէ, և ստուերի մը պէս՝ ապշած պահապանին առջևէն կ'անցնի և արիւնաթաթախ՝ ինչպէս էր՝ քաղաքը կ'աճապարէ։ Բայց թէ այնուհետև ինչ կ'ըլլայ այն կերպ յարուցեալը ոչ ոք գիտէ. վասն զի

այնպիսի յարուցեալք թէ դիպին, կենդանեաց ըն-
կերութեան մէջ տեսնուիլ չեն կարող. հարկ է որ
ծածկուին, անհետանան, և վրանին ամենևին չխօ-
սուի: Այնպէս չարագուշակ կը համարի այն անխու-
սափելի սրբավայրէն իբր դասալիք ելլել փախչիլ:

Սակայն ինչպէս կը տեսնէք, բնակութիւնք այս
բլրոյս վրայ երթալով կը բազմանան, և օր աւուր կը
մերձենան այս մահու խիթալի ու քստմնելի վայրը:
Եւրոպացին չի կրնար իր քստմունքը զսպել այս բար-
բարոս սովորութեան տեղին այնպէս մերձ տեսնելով
իւր բնակարանին, և շարունակ լսելով այն գիշատիչ
գազանաց չարագուշակ ու խլացուցիչ աղաղակները:
Արդէն տրտունջք ու բողոքք կը յաճախեն, ստի-
պելով զվարչութիւնը տեղին հեռացընելու. և այս բո-
ղոքոց աւելի ուժ կու տայ վերջի օրերս դիպածը:
Տեղւոյն մերձակայ Եւրոպացւոյ մը պարտիզին մէ-
ջէն փոքր տղու մը թևը գտնուեցաւ կրծեալ 'ի գի-
շատչաց: Զարմանալու չէ եթէ ընդ հուպ Փարսիք
բռնադատին այլուր խնդրելու իրենց մեռելոց սպա-
ռիչ ապաստանարանը:

---

# Գ.

*Հնդիկ յուղարկաւորութիւնք: — Արարողութիւնք յափն Գանգիսի:*

Կառքերնիս՝ Պայքալայի բազմամարդ փողոցաց մէջէն հոլովելով՝ դէպ 'ի քաղաք կը տանէր զմեզ, այլ ոչ կառաց յաճախութիւնը, ոչ անհամար երթեւեկաց աղմուկը, եւ ոչ փոփոխ առարկայից յաջորդութիւնը մեր խօսակցութեան նիւթը կը փոխէր: Երբ 'ի Ֆորդ մօտենալու կ'ըլլայինք՝ Հնդիկներու բազմութիւն մը բռնադատեց զմեզ ընթացքնիս չափաւորելու: Գաղղիացին որ դեռ եւս խօսելու հետ էր, այն բազմութիւնը ուշադրութեամբ դիտելով, — Հնդիկ յուղարկաւորութիւն մըն է, կանչեց. ասոնց ալ արարողութիւնը մի անգամ տեսնալը հետաքրքրական է: Մեր եւ Փարսից սովորութեանը հակառակ, ասոնք իրենց մեռելոց դիակները հրով կը ջնջեն: Բայց ասոնց ալ արարողութեանց սրբավայրը մերձենալը անկարելի է մեզի համար, միայն Մահմետականաց գերեզմաննոցէն, որ կից է Հնդկաց սրբավայրին, կարելի է ականատես ըլլալ ասոնց սովորութեանցը: —

Առիթը 'ի դէպ կու գար ինձ. քանի որ հետաքրքրութիւնս ջերմացած էր՝ ուզեցի յագեցնել: Ընկերքըս թողլով՝ համբերութեամբ յուղարկաւորաց հետեւեցայ 'ի բացուստ: Մեռեալը ստորին դասակարգի ոմն կը թուէր. զոնեա այնպէս գուշակել կու տար յուղարկաւորաց աղքատին ու ռամիկ երեւոյթը: Թէպէտ եւ նորեկի մը ամենադժուարին է, եթէ ոչ ան-

կարելի, փողոցը տեսնուած Հնդիկներէն զանազանել ռամիկը ազնուականէն։ Սովորական է տեսնել զոմանս չորս հինգ սպասաւորօք, որ ցոյց է թէ չեն յաննշանից ոմանց. սակայն իրենց գունաթափ հանդերձքն և հնացեալ հողաթափք, և քան զսպասաւորս ողորմելագոյն կ՚երևցունեն զանոնք։

Բազմութեան առջևէն չորս յուղարկաւոր դիակակիրք կը քալէին, դիակը ծաղիկներով զարդարած՝ դագաղի մը վրայ բաց հանգչեցուցած էր։ Ամենը շտապելով կը քալէին, մեղմաձայն, շարունակեալ ու միակերպ եղանակ մը լսեցնելով։ Շատ չուշացանք կիզման սրբավայրը հասնելու. բարձր պատերով առանձնատեղի մ՚ըն էր, ուր յուղարկաւորութեան լրացուցիչ մասը պիտի կատարուէր։ Բազմութիւնը ընդարձակ դռնէ մը ներս մտնելով հուսկ ուրեմն ինձ արձակ թողուց. մերձեցայ մտից, այլ Հնդիկ պահապանը մուտքս խափանեց. սրբավայրը պղծելու չէր։ Յիշեցի Գաղղիացւոյն խօսքը և իսկոյն մահմետականաց գերեզմաննոցը խոտորեցայ, որոյ պահապանին առաջնորդելովը, շուտ մը գերեզմաննոցին որմին վրայ յեցեալ՝ ողջոյն այն հնդկային տեսարանը աչքիս ՚առջին պարզեցաւ։

Ընդարձակ միջոցի մը մէջ չորս հինգ խարուկաց բոցը դեռ ևս կը բորբոքէր, և անոնցմէ բարձրացած ծուխը՝ ճենճերեալ դիականց հոտը մթնոլորտին մէջ կը սփռէր։ Յետին յուղարկաւորութեան խմբիկը եղած տեղէս քանի մը քայլ անդին դադարեալ՝ դիակը գետինը հանգչեցուցեր էր։ Ոմանք ՚ի խմբէն, գուցէ մերձաւորք, հոն մօտ եղող փայտավաճառէն, խարուկին կարևոր փայտը առած՝ բերին խարոյկը կազմեցին, դիակը վրան հանգչեցուցին, և նոյնը դարձեալ ուրիշ մանր փայտերով ծածկեցին։

Այս ամենայն այսպէս հանդերձեալ, մին 'ի յուղարկաւորաց, որ թուէր մերձաւորագոյն ազգական, ձեռքը ջահ մը առած՝ մերձեցաւ խարուկին և անոր չորս անկեանց հուր մատոյց. և մի և նոյն ատեն չրջակայ յուղարկաւորք վրան իւղային նիւթ մը թափելով՝ բոցը արծարծեցին։

Եւ մինչ այս և մինչ այն, աչքս յանկարծ ուրիշ խարուկի մը գնաց, որու վրայ դրուած բարձրահասակ դիակին սրունքը խարուկէն դուրս երկննալով չէին այրեր։ Տեսնեմ՝ Հնդիկ մը երկայն երկըթէ ձողով մը մերձեցաւ, կրակը խառնեց արծարծեց, և ապա ձողովը զարկաւ այն անզգայ սրունից, ջախջախեց, և անտարբերաբար, ինչպէս թէ փայտի կոտորք ըլլային, խարուկին վրայ նետեց որ հրով ըսպառին։

Այս ատենս նորեկ դիակին բոցը արծարծեալ վեր կը բարձրանար և դիակը այրելով կ'ուռեցնէր. ջերմութենէն պատճառեալ կաշերը բազկաց 'ի սրունից ճըջճըջող շարժմունք մը տպաւորեցին. և ինչպէս թէ սաստիկ ցաւ զգար՝ մին 'ի սրունից իր վրան չրջելով խարուկէն դուրս երկնցաւ։ Մատուըները կ'ուռէին, կը ճայթէին, զզուելի տեսարան մը տալով, որու հանդուրժել չէր հնար. թողի անդին ու հեռացայ։

Ըստ հնդկային սովորութեան խարոյկը վառելէն ետքը, երբ դիակը բոցակերպ երանգ մը կ'առնու, եթէ մեռեալը պրահմին մըն է, որդին երկըթէ ձողով մը կը մերձենայ և ամուր մը գանկին կը զարնէ կը ջախջախէ, որպէս զի հոգին ազատ անցք գտնելով՝ շուտ մը մարմնէն ելլէ։

Երբ ամենայն ինչ այրելով կը սպառի, մոխիրը ասդին անդին կը սփռեն, խարուկին տեղը ջրով կը

թրջեն, և ապա ոսկերաց սակաւ մնացորդք անկիւն մը կը դիզեն։ Ըստ ինքեան, բաց 'ի գիակին գարշ երևութէն, այս Հնդկային յուղարկաւորութեան արարողութիւնը ուրիշ խորշելի բան մը չունի. Նա մանաւանդ այս առաւելութիւնս ունի, որ մարդ աներկիւղ կ'ըլլայ առերևոյթ մահուամբ թաղուելէն։

Սակայն ըստ այլ և այլ տեղեաց Հնդկաստանի՝ այս արարողութիւնք կը տարբերին, կամ թէ ըսեմ բարբարոս և անգութ կերպարանք մը կ'առնուն։ Ըստ ասելոյ Գողղիացւոյս, 'ի Պէնարէս կամ Գանգէսին շրջակայքը, հազիւ թէ Հնդիկ մը ինքզինքը ծանր հիւանդ կը զգայ, իսկոյն օրացոյցը զննել կու տայ, որ տեսնէ թէ ինչ համաստեղութեան ներքև կը գտնուի, ըստ այնմ տանը քուրմը կը կանչէ, որ կրօնական արարողութիւնները կատարելով չար ոգիները հալածուին և ինքը իւր առողջութիւնը վերստանայ։ Տնեցիք անհրաժեշտ առաւօտ և իրիկուն աղօթք կը մատուցանեն տանտիրոջ առողջութեանը համար, և մայրը կամ կնիկը ուխտադիր կ'ըլլայ դից մասնաւոր ընծաներ տալու։ Եւ որպէս զի դիք հաւատարիմ համարին իւր այս ուխտը և թէ աննախարդախ սրտիւ պիտի կատարէ իւր խոստմունքը, մասնաւոր ստակ կը դնէ 'ի պահեստի։

Բայց կ'ըլլայ որ հիւանդութիւնը անբուժելի կը վճռուի և մահը անհրաժեշտ ու մերձաւոր կ'ըլլայ։ Մահացու հիւանդը կը վերցնեն ու հանդիսաւոր եղանակաւ Գանգէսին գետափը կը տանին։ Եւ զարմանալին այս է՝ որ շատ անգամ փոխադրութիւնս երկու, երեք և աւելի մղոն հեռաւորութենէն կ'ըլլայ. և հիւանդը բոլոր այն ճամբան ոչ միայն սաստիկ ցնցմանց նեղութիւնը կը կրէ, հապա նաև արևուն սաստիկ կիզիչ զօրութիւնն ալ անոր ոգիքը կը քաշէ.

անանկ որ շատ անգամ փոխադրութիւնս մահագոյժ կ'ըլլայ դեռ գետը չհասած։

Հանդերձ այսու ստէպ նաև կ'ըլլայ որ հիւանդը ողջամբ գետափը կը հասնի. հոն յուղարկաւորք, 'ի բարեպաշտութենէ ձգեալք, կը ջանան անոր մահը երագել. Նուիրական գետին տղմէն կ'առնուն ու հիւանդին բերանը կը լեցնեն. և որպէս թէ այս բաւական չըլլար, ամբողջ մարմինովը վերուցած, գետափը ջրին մէջ կը պառկեցնեն և մերթ ընդ մերթ ողջոյն գլուխը ջրին տակ կ'ընկղմեն։ Այլ կ'ըլլայ երբեմն որ հանդերձ այս ամենայն արարողութիւններով, որով հիւանդին մահը երագել կը ջանան, գրեթէ հոգեվարք Հնդկին մորթը յամառութեամբ կը դիմանայ ու մահու դէմ կը կռուի առանց ընկճելու։ Այնպիսի առթիւ յուղարկաւորաց համբերութիւնը կը հատնի, և հիւանդը վերցնելով միւս անգամ տունը կը դարձընեն։

Եթէ մեռնելիքը ծեր ոմն է, այս դարձը ոչ միայն գայթակղական, այլ և ամբարիշտ կը համարի. եթէ այրի կնիկ մը ըլլայ այնպիսին՝ այսու և ևս առաւել չարագուշակ կը համարի։ Նկատմամբ այրի պառաւի մը կը զրուցեն թէ յետ տասնըհինգ անգամ Գանգէսին ջրերուն մէջ գլխով մարմնով ընկղմուելէն՝ միշտ մահու դէմ յաղթանակելով տասնը հինգ անգամ տուն դարձուեցաւ. և սակայն ողջոյն տարի մը արհամարհեալ ու նախատակոծ ապրելէն ետքը, չկարենալով այլ ևս հանդուրժել, միտքը հաստատեց կեանքը կնքելու, և այսու դիտմամբ ինքզինքը ողջ ողջ նետեց ու խեղդամահ եղաւ Գանգէսին ջրերուն մէջ, որու ճամբան դէպ ուղիղ երկինք կը հանէ, տարակոյս չկայ։

Անգամ մըն ալ բարձրահասակ Հնդիկ մը մահու

դուռը հասնելով, բարեկամք զինքը մահճակալի մը վրայ դրած՝ Թափօրաբար դէպ 'ի Գանգեսի ափունքը կը յուղարկաւորեն. ճամբան այնպէս կ'երևար ինչպէս թէ վայրկեանէ վայրկեան վերջին շունչը տար. գլուխը անհաստատ՝ մէկ կողմը կը կախուէր, և դողդոջուն ձեռքերովը կ'աշխատէր աչքերը պաշտպանել արևուն կիզիչ ճառագայթներուն դէմ։ Այս բանս տեսնելով իր որդին՝ որ քովէն կը քալէր, հովանոցովը անոր գլուխը պատսպարեց։ Երբ գետը հասան զինքը գետափին ծայրը հանգչեցուցին սպասելով որ մեռնի։ Ցանկարծ ծարաւելով ջուր խնդրեց, որու շրջակայք փութալով ջրի տեղ իրեն կաթ խըմցուցին։

Այսպէս երկու օր գետափը մնաց առանց մեռնելու։ Յուղարկաւորք ձանձրացած՝ զինքը վերցուցին ու ջրին մէջ ինջեցնելով մինչև կուրծք ընկղմեցին. և այնպէս մահը երագելով յետին շունչը փչեց։

Ուրիշ անգամ մըն ալ նմանապէս պառաւ կնիկ մը Գանգեսին գետափը տարուեցաւ. իր աղջիկները՝ որ ներկայ կը գըտնուէին՝ տեսնելով որ իրենց պառաւ մայրը մեռնել չէր ուզեր, չէին գիտեր ինչ ընեն։ Ներկայ գտնուող յուղարկաւորներէն ոմանք խորհուրդ կու տային որ ողջ ողջ խարուկին վրայ այրեն. իսկ այլք աւելի խնայութեան միջոց սորվեցնելով խորհուրդ կու տային ողջ ողջ Թաղել զինքը։ Սակայն աղջիկները այս խորհուրդներէն և ոչ մին ընդունելով՝ յետ երկայն ատեն սպասելէն՝ որոշեցին միւսանգամ պառաւը իրենց գեղը դարձնել։ Վերուցին ու երկաթուղւոյն կայարանը տարին. այլ ւքան մնացին երբ տեսան որ պաշտօնեայք չուզեցին հոգեվարք մէկ մը շոգեկառք ընդունելու։ Ճարերնին հատնելով՝ այն աղջիկներն իրենց մայրն առին և ինչպէս

թէ կահ մը ըլլար՝ պատատեցին իբր կապոց և այնպէս տուն յուղարկեցին։

Ժամանակաւ, երբ մեռնողք 'ի ճոխից կ'ըլլային, բաց 'ի Գանգեսին ջրէն՝ բերանը նաև ոսկի և ամեն տեսակ ազնիւ գոհար կը դնէին։ Կուրծքին վրայ դուլսի կոչուած տնկին ճիւղերէն կը հանգչեցնէին, և մասնաւոր կաւով մը ճակատը կը կնքէին։ Սակայն հիմա, դարուս լուսաւորութեան ազդեցութեամբը գուցէ,



Հանրական Թղթատուն։

այս սովորութիւնները և արարողութիւններն երթալով կը նուազին և կարելի եղածին չափ կը համառօտուին։

Այս ամենայն արարողութեանց վրայ խորհրդածելով՝ կրնանք ըսել թէ Հնդկի մը մահուընէն աւելի գէշ մահ չկայ. 'ի բաց թողլով այն չարչարանքը որ գետափը ընկողմանած ատեն կիզիչ արեւուն սպառիչ ճառագայթներէն կը կրէ, մինչդեռ նաև՝ մահը երագելու դիտմամբ՝ մերթ ընդ մերթ գլխով մարմնով

ջրին տակ կ՚ընկղմուի, նաև ականջէն ՚ի վար յարա-
տև և շարունակութեամբ անհամար դից լիթանիա
մը կը յեղյեղեն, յուսալով թէ այնու զինքը սրբու-
թեամբ և արժանապէս կը պատրաստեն՝ այս յետին
ճանապարհորդութեան։ Այլ շատ անգամ բնութիւ-
նը մարդիկներէն աւելի գթած, այն խեղճ Հնդկին
մահը յիրաւի կ՚արագէ. որմէ ետքը դիակը կը վերց-
նեն և այրելու սեփական վայրը կը տանին։

Այն տեղը հասնելով դիակը նոր լաթի մը մէջ
կ՚ամփոփեն ու կարագով կ՚օծեն։ Ապա նոր անօթոյ
մը մէջ ջուր ու դուղսի և կտաւատի հունտեր լեցու-
ցած, բոլորը մէկտեղ մեռնողին գլխուն վրայ կը թա-
փեն։

Այս ընելէն ետքը դիակին վրայէն հին գոհարե-
ղէնները կը բառնան, և անոնց փոխանակ նորեր կը
դնեն։ Ճոխից խարոյկը հալուէի և սանտալի հոտա-
ւէտ փայտերով կը կազմեն. իսկ աղքատք, որոց մի-
ջոցք չեն բաւեր այնքան ծախուց, ամեն զոհ կ՚ընեն
որ գոնէ հասարակ փայտերուն հետ քանի մը կտոր
սանտալ ալ գտնուին։

Խարոյկը այսպէս պատրաստելէն յետոյ՝ դիակը
վրան կը հանգչեցնեն։ Ապա պրահմին մը վրան ա-
ղօթքներ կը կարդայ, բերանը կարագ կը լեցնէ, և
աչքերուն, քթին, բերնին և ականջներուն մէջ ոսկի
հատիկներ կը դնէ։

Յետ այսորիկ եթէ մեռնողը որդի ունի անոր կ՚իյ-
նայ խարուկին կրակ տալ. ապա թէ ոչ պարտքը մեր-
ձաւորագոյն ազգականին է։

Խարուկին վրայ նաև կարագ ու ձիւթ կը թափեն.
և դիակը նոր կտաւի մը մէջ պատած, եթէ էրիկ
մարդ է, երեսը դէպ ՚ի վեր երկինքը կը դարձնեն, իսկ
եթէ կնիկ է, դէպ ՚ի վար գետինը կը շրջեն. գլուխը

դէպ 'ի հիւսիս, ոտքերը դէպ 'ի հարաւ։ Որդին կամ մերձաւորագոյն ազգականը ձեռքը վառած յարդ-բռնած՝ երեք անգամ խարուկին բոլորը կը շրջի, միշտ երեսը դէպ 'ի հակառակ կողմը դարձուցած, ու վառած յարդը մեռելոյն բերնին կը դպցնէ։ Որմէ ետքը բոլոր շրջակայ յուղարկաւորք կը մօտենան ու խարոյկը կը բռնկցնեն։ Կրակը գրեթէ երկու ժամ կը տեւէ։

Արարողութիւնը լմննալէն ետքը խարուկին տեղը ջրով կը լուանան, և փոքր փոս մը կը բանան, որպէս զի խարուկին ջուրը Գանգեսի ջրին հետ երթայ խառնուի։ Յետոյ անօթ մը կ'առնուն ու ջրով կը լեցընեն և բերանը հողէ պնակով մը կը ծածկեն։ Ապա մէկը ձեռքը բրիչ մը կ'առնու, և անոր կոթովը զարնելով ամանը կը խորտակէ ու ջուրը կը վաթի։ Անկէ ետքը ամեն յուղարկաւորք հերիպօլ կանչելով կը մեկնին։

Նախնի օրէնսդիր մը պատուիրած էր խարուկին վրայ այս գեղեցիկ իմաստը արտասանելու։

— « Յիմար է այն մարդը որ կենաց յարատեւութիւն կը բնտռէ, մինչդեռ կեանքը պանանի կոճղին նման դիւրաբեկ է, և կամ ծովու փրփրոյ պէս վաղանցիկ։ Ի՞նչ կ'օգտէ աշխարել այն մարմինը որ հինգ տարրերէ ձեւացած ըլլալով միւսանգամ առ նոյն հինգ գոյացուցիչ սկզբունս կը վերադառնայ, որ այնուհետեւ կենաց ժամանակը գործածներուն հատուցումը առնու։ Երկիրը կ'ոչնչանայ, ովկիանոսը և նոյն իսկ դիք կ'անցնին. Ինչպէս կարելի է չապականի այն ոչինչ էակը, այն մահկանացու մարդը։ Ինչ որ խոնարհ ու ստորին է, վերջապէս հարկ է ոչնչանայ. ինչ որ բարձր է՝ հարկ է որ կործանի. ամենայն բաղադրեալ մարմինք հուսկ ուրեմն պիտի լուծուին և կեանքը մահուամբ պիտի վերջանայ։ Մեռելոց ստուերք ազ-

գականաց թափած արտասուաց վրայ կը դժկամակին. մի՛ հեծէք ուրեմն, այլ մտադիւրութեամբ մեռելոյն յուղարկաւորութիւնը կատարեցէք»: —

## Դ

*Սուդիք կամ մեռելոց վրայ ինքնայօժար զոհք:*

Ըստ Հնդկային սովորութեան աղջիկունք տասուերկու կամ տասուիրեք տարուան կը կարգուին, և ըն-տէպ տարիքն առած ու ծերացեալ մարդոց հետ: Այս բանս այսպիսի չար հետևանք մը կ'ունենայ, որ բնականապէս այրը նախ բնութեան օրինաց հպատակելով մեռնի, և այնուհետև այրի մնացեալ կնիկը ոչ միայն երկրորդ ամուսնութեան չի կրնար անցնիլ, այլ և ոչ իսկ նոյն տանը մէջ կրնայ ապրիլ, առանց ամենուն քամահելի և արհամարհելի երևնալու: Ուստի այրի կանայք աշխարհիս նախատինքէն խուսափելու ըղձիւ, առ ոչինչ համարելով դառն մահը որ քան զվատահամբաւ կեանքը աւելի քաղցր կը թուի իրենց, մինչև այս յետին ատեններս սովոր էին ահաւոր մահուան մը ձեռնարկելու, ողջ ողջ ինքզինքնին իրենց էրկանը խարուկին վրայ այրել տալով:

Բայց հիմայ Անգղիոյ գաւապանին զօրութեամբ, թէպէտ և այրի կանայք ալ իրենք զիրենք չեն այրեր, սակայն և այնպէս խարուկին վերջուիլը կ'ափսոսան. որովհետև ալ ընտանեաց մէջ ապրիլ անհանդուրժելի է իրենց. ամենուն ատելութեան և արհամարհութեան նիւթ են, ամենէն կը նախատուին, և մինչև տնէն ալ կը մերժուին: Հարկ կ'ըլլայ այնուհետև իրենք զիրենք վատթար կեանքի մը զոհ ընեն, որ խա-

րուկին ազդած կրօնական մխիթարութիւնը չունի։

Այս չար հետևանքը բնաջինջ ընելու համար հետամուտ են հիմա Հնդիկ յառաջադէմ ընկերութիւնները. որոնք ամենայն ճիգն կը թափեն որ այրի կանանց միւսանգամ ամուսնանալու իրաւունքը ստանալ տան. և ամենայն զօրութեամբ կը կռուին այն նախապաշարմանց դէմ որ այս բանիս կը հակառակին։

Եօթը ութ տարի յառաջ՝ 'ի Սիքանտարբուր ջերմեռանդն ու խստակրօն կենօք ապրող Հնդիկ մը կը մեռնի. անոր այրի կնիկը, որ դեռ ևս երիտասարդութեան հասակ ունէր ու փոքր մանկիկ մը կաթովը կը սնուցանէր, անանկ սաստիկ ցաւ զգաց այս անդարմանելի կորստեանս վրայ, որ ա՛լ ոչ կերակուր առնուլ ուզեց և ոչ ջուր խմել։ Ջանաց թոյլտուութիւն առնուլ որ իւր էրկանը հետ խարուկին վրայ մեռնի. այլ բնական էր որ վարչութիւնը զլանար։ Բայց երբ տղուն սնունդը պակսելով ան ալ մեռաւ, կնիկը զանխլաբար՝ իւր ձեռօքը խարոյկ մը շինեց, անկողինը վրան դրաւ, և ապա ինքն ալ վրան ելլելով ու տղուն դիակը գրկացը մէջ սեղմելով, խարուկին կրակ տուաւ, և այնպէս մոխիր դարձաւ։

Անգղիական վարչութիւնը թէպէտ և արթնութեամբ կը հսկէ այսպիսի բարբարոս զոհերը խափանելու, հանդերձ այսու, կ'ըսեն, թէ կրօնամոլք ամենայն ջանք 'ի գործ կը դնեն ուր կրնան վարչութեան հսկողութիւնը 'ի դերև հանելու. անանկ ծածուկ կը պահեն իրենց այս դիտաւորութիւնը որ թէ և վարչութիւնը կասկած առնու, ոչ տեղին կրնայ իմանալ, ոչ անձը և ոչ զոհին ժամը։

Կ'ըսեն թէ ոչ շատ տարի յառաջ իշխանաւորի մը երիտասարդ կնիկը սաստիկ անդարմանելի ձախորդու-

թեան մը հանդիպելով՝ անվրէպ ուղեց իւր էրկանը հետ այրիլ։ Եւ առ այս կը մղէին զինքը գլխաւորապէս իւր ազգականք, որ անոր սեփական ժառանգութենէն մեծ շահ ունէին։ Զոհէն յառաջ սովորութիւն էր իրեք օր զոհուելի անձը հանդիսաւորապէս ու թափօրաբար քաղքին այլ և այլ տաճարները պտըտըննել. գիշեր ցորեկ նուագարանօք, պարուք, թմրեցուցիչ ըմպելեօք զբաղեցնել, պատրաստելով զինքը որ արիաբար և անյողդողդ սրտիւ լրացնէ իւր առաջադրութիւնը։



Պաշտօնարան Քարտուղարի։

Այսպէս և զայս եղկելին բազմաթիւ խմբով, երաժշտօք, գուսանօք, սպասաւորօք և այլ անհամար ուղեկցօք Կալկաթա ժամատեղի ըրած, ցորեկը մերթ այս մերթ այն տաճարը զոհելու և աղօթելու կը տանէին. իսկ գիշերը խմբովին քաղքէն դուրս ելլելով վրաններու տակ կը պատսպարէին։ Հոն ողջոյն խումբ երաժշտաց ու պարերգակ գուսանաց հետեւելով՝ իրենք զիրենք ամեն տեսակ ցոփ զբօսանաց կուտային. նպատակ ունենալով միշտ զոհուելիքին առաջադրութիւնը վառ պահելու։

Այս արարողութիւնը երբեք օր քշեց, այլ միշտ գիշերային օթևանաց տեղին փոփոխելով։ Ի լուսանալ չորրորդ առաւօտուն այն բազմաթիւ մարդոց խումբը իբր շամանդաղ ցնդելով անյայտ եղած էր, առանց մէկի մը կասկած կամ ազդ տալու, և առանց իմացունելու թէ ուր կամ դէպ որ կողմը գնացած էր։ Զոհին ժամադրութեան տեղւոյն վրայ ամենայն գաղտնութիւն պահած էին, և միայն յետին ժամուն իմացուցած էր խմբին. և այնպէս իւրաքանչիւրը այլ և այլ ճամբով հոն փութացեր էին արարողութեան լրումը տալու, որ ապա անտառաց լռութեան մէջ կը թաղուէր։

Այլ ես արժան կը համարիմ հոս այսպիսի զոհի մը ստորագրութիւնն ընել, ականատեսի մը բերնէն առնելով, որ ամօք յառաջ ըստ դիպաց ասանկ անգութ տեսարանի մը կրցեր էր ներկայ գտնուիլ։

— Այրին, կ'ըսէ, երիտասարդ, գեղեցիկ ու բարեկազմ մէկ մըն էր. և անոր տեսքը սիրտս կը կեղեքէր, մտածելով թէ ինչ անհանդուրժելի տանջանք կը պատրաստէր այն քրմաց ու ժողովրդեան անողոքելի կրօնամոլութիւնը։ Առանց մեծ դժուարութեան՝ և որչափ հնար էր՝ մերձեցայ խարուկին, որպէս զի ամենայն ինչ աղէկ տեսնամ, առանց այն ահաւոր տեսարանէն բան մը կորսնցնելու։

Այրին քովը քանի մը ամսուան անմեղ տղայ մը ունէր. սակայն անանկ անտարբեր աչքով կը նայէր վրան, որ կարծես թէ գերագոյն պարտականութեան մը զգացմունքը բոլորովին յափշտակած էր զինքը, բառնալով իրմէն ինչ և իցէ երկրային առարկայի մտածութիւն։ Թէպէտ և կը տեսնար որ չորս դին իրեն համարի զարհուրելի պատրաստութիւններ կ'ընէին, 'ի վերայ այսր ամենայնի երեսին վրայ

վսեմ հանդարտութիւն մը կը փայլէր։ Չէի կրնար զարմանքս զսպել մտածելով թէ ինչպիսի անյողդողդ սրտիւ և արիական ու հաստատուն դիտաւորութեամբ դիմագրաւ կ'երթար այնպիսի դառն մահու։

Բայց այս պատրաստութեանց ժամանակը շատ երկարելով՝ գիտեցի որ այլուոյն զգացմունքները երթալով կ'այլայլէին։ Անոր սև աչքերուն վրայ յայտնի կերպով ջղային այլայլութիւն մը կը տեսնուէր, ու հայեցուածքին վրայ զարհուրանքը յայտնապէս կը կարդայի։ Տարակոյս չկար որ սաստիկ ափիոնով ջանացած էին առժամանակեայ կերպիւ թմրեցնել անոր զգայարանքները. որովհետև միշտ այդպիսի առթից մէջ սասնկ միջոց կը բանեցնեն, որպէս զի զոհ ըլլուողին երկիւղը հանդարտեցնեն և արիութիւն ստանալ տան քաջապէս դիմելու ընդդէմ մահու։ Բայց ժամանակը դեղին զօրութիւնը կոտրելով, այրին կամաց կամաց կը սկսէր սթափիլ այն արուեստական թմրութենէն, միտքը իւր գործունէութիւնը կը սկսէր ստանալ, և բնական էր որ երկիւղն իսկ վըրան տիրելով արտաքուստ ալ տեսնուէր։ Իւր շարժմունքներէն կը գուշակէի որ վայրկեանէ վայրկեան տագնապը երթալով կը շատնար։ Այլ եթէ դիւրին էր գուշակել անոր ներսի դին անցածը, միանգամայն դիւրին էր գուշակել նաև որ իւր առաջադրութեանը վրայ հաստատուն կենալու ըրած ջանքը՝ սովորական արիութենէ մը առաջ չէր գար։ Իր վրայի զարդերը մէկիկ մէկիկ հանելով՝ մերձ եղող բարեկամաց բաժնեց. սակայն այս գործը անուշադրութեամբ ու վերացեալ կերպիւ գործադրեց ինչպէս թէ ըրածը չըհասկնար. և այս յայտնի նշան էր թէ ներսէն կրած բարոյական տանջանքը՝ իւր մտաւոր կարողութիւնները երթալով կը տկարացընէր։

Այս ատենս անոր փոքրիկ զաւկին ճիչն արթնցուց 'ի նա մայրական գութը. աչքին վրայ գործւող խանդաղատանք մը փայլեցաւ. շրթունքն սկսաւ դողդոջալ, կուրծքը բաբախել, շնչառութիւնը բռնուեցաւ ու բերանը թեթև մը բացուեցաւ. Նշան թէ իւր այլայլեալ միտքը դարձեալ 'ի նա կը վերադառնար: Նետուեցաւ դէպ 'ի տղան, յափշտակեց զայն պահապանին ձեռքէն, առաւ սեղմեց իւր գրկայը մէջ. արցունքը իջաւ աչքերէն ու հեծկլտանքը ականջս խայթեց: Օգնութիւն խնդրել մըն էր. կարելի՞ էր որ մարդու սիրտ հանդուրժէ: Կ'ուզէի ազատել զինքը այն դառն պայմանէն. բայց ի՞նչպէս հնար էր երբ ինքը իւր կամօքը վճռած էր իւր ճակատագիրը: Այս վայրկեանէս յայտնի եղաւ բոլոր հանդիսականաց որ յետին օրհասին մտածութեամբը իւր արխութիւնը երթալով կը նուազէր: Աչքերնուս առջին կանգուն՝ հոգեվարք հոգւոյ մը անբարբառ յուսահատութեան կենդանի պատկերը կու տար:

Արարողութիւնը կատարող պրահմինք վախնալով որ այրւոյն արխութիւնը բոլորովին սպառի, հարկ սեպեցին գործին լրումը փութացընելու. անոր համար հեռացուցին քովէն բոլոր ազգականները, բարեկամները ու միւս հանդիսակիցք: Անով խարուկին բոլորը չափաւոր ընդարձակ միջոց մը ձեւացաւ, ուր մնացին միայն այրին և պրահմին քուրմք: Բայց նախ քան զայս քուրմերէն մէկը մօրը գրկէն բռնութեամբ քաշեց առաւ տղան, և առանց երկուքին ճչոյն ուշ դնելու ուրիշի մը ձեռքը յանձնեց: Այն ատեն վըսեմ գեղեցկութիւն մը նկարեցաւ այրւոյն դիմաց վրայ: Գիտնալով թէ այս առաջին բռնութենէն ետքը ինչ պիտի հետեւէր, ա՜լ բնութիւնը չկրցաւ զսպել. գետինը ծունր կրկնեց, աչքերը երկինքը վերուց, ու

*լռիկ յուսահատութեամբ ձեռքերը մէկմէկու բերե-լով սեղմեց։ Այն ատեն պրահմին մը հանդարտ կեր-պարանօք մերձեցաւ իրեն, ձեռք տուաւ որ կանգնի,*



Յիշատակարան Թագուհւոյն։

*և ուրիշ պրահմինի մը օգնելով զինքը խարուկին քովը տարաւ։ Բայց այրին դէմ դրաւ, և յուսահա-տութիւնը վրան անանկ ուժ բերաւ՝ որ երկուքին ալ բռնութեանը յաղթանակեց։ Այս տեսնելով միւս*

պրահմինք, շուտ մը երկուքին օգնութեան վազեցին․ և ամենը միաբան բռնի մղելով՝ այն թշուառ այրին խարուկին մօտ տարին։ Խարուկին փայտերն արդէն ճարպով օծած էին որպէս զի շուտով բռնկին, և այս բանս կերպով մը շնորհք մըն է որ կ'ընեն այն անձին որ ինքնակամ ինքզինքը կը զոհէ․ որպէս զի մահը երագելով՝ տանջանքին միջոցը կարճի, այլ և միանգամայն փախուստն իսկ խափանեն։

Այրին օրհասին արհաւիրքը զգալով՝ սկսաւ ահռելի ձայնիւ աղաղակել․ բայց մի և նոյն ատեն թմբկաց ու փողոց զարհուրելի աղմուկը, և միանգամայն շրջակայ կրօնամոլից աղաղակներն՝ անոր վշտաց ձայնը խեղդեցին։ Ա՛լ այնուհետև անոր բոլոր ճիգը ունայն եղաւ․ բռնութեամբ խարուկին վրայ քշեցին, ուր ինկաւ ոգեսպառ։ Պրահմինք վրան իյնալով խարուկին վրայ նստեցուցին, ծնկուըներուն վրայ էրկանը գլուխը դրին․ ապա խարուկին փայտերուն տակը դիզուած յարդին կրակ տալով՝ անմիջապէս ծխախառն բոցը ամէն կողմէն վեր բարձրացաւ, պատեց զխեղճ Հնդիկ այրին, և հանդիսատեսից աչքէն անյայտ ըրաւ։ Պրահմինք մի և նոյն ատեն վախնալով որ չըլլայ թէ այն անհանդուրժելի հոգեվարքին ժամանակը չժուժալով ինքզինքը խարուկէն վար նետէ, ձեռքերնին երկայն պամպու եղէգէ շինած ձողեր առած, 'ի հեռուստ վրան կոխելով բոլոր իրենց ուժովը՝ զինքը խարուկին վրայ անշարժ բռնեցին։ Բարեբաղդաբար կրակին բռնութիւնն ու երագութիւնն այն աստիճանի էր՝ որ այն ահաւոր տանջանքը երկայն չքշեց։

Երկու ժամ ետքը այն խարուկին ու երկու դիականց տեղը մոխրոյ կոյտ մը միացած էր․ իսկ հանդիսատեսք առհասարակ ցրուած էին։

## Ե

### Աշխարող կանայք և մեռելոց հոգեհանգիստ։

Եթէ Հնդկին դիակը երկու ժամու մէջ մոխիր կը դառնայ, զոր հողմը կը ցրուէ առանց հետք թողլու, սակայն ընտանեաց կոծը այսպէս շուտ չի լռեր. հարկ է արտաքին ցոյցերով ալ աշխարհ իմանայ իրենց ըրած անդարմանելի կորուստը։ Այս բանիս ծառայելու նպատակաւ կը դաստիարակուին մասնաւոր դաս մը կանանց, որոց պաշտօնն է կեղծեալ ցաւոյ արտասուօք հռչակել աշխարհի գնացելոյն առաքինութիւնները և ընտանեաց զգացած անմխիթար ցաւը։

Վերուստ 'ի վայր սևազգեացք, դուրս փողոցը մեռելոյն դրանը առջին՝ խմբովին կը կծկին, ու մեղմաձայն և միակերպ եղանակաւ իրենց ողբոց իմաստները կը հիւսեն, բնականապէս միշտ 'ի գովեստ մեռելոյն։ Եւ որովհետև 'ի բազմամարդն Պոլսոյ չկայ օր որ շատ մը մեռելոց յուղարկաւորութիւնք չըլլուին, չկայ նաև օր որ սոյն կանայք այս կամ այն փողոցը գետինը կծկած՝ իրենց արուեստական կոծը անցաւորաց չվաճառեն մեռնողին գամբանականը հիւսելով։

Ատէպ փողոցէ փողոց շրջելով այդպիսի սգոյ խմբից կը դիպէի. առ վայր մը դադարելով կը դիտէի այն կեղծ արուեստաւորաց երեսը, որոնք ցաւ հռչակելով ցաւի զգացմունք չունէին։ Մերթ տասը մերթ տասներհինգ թուով խումբ խումբ բաժնուած գետինը կը կծկին, գլուխնին ծնգաց վրայ կը հանգչեցընեն՝

սև քօղի մը տակ ծածկուելով։ Մէկը իբր դասագլուխ մեռելոյն գովեստը կը հիւսէ. միւսներն անոր իւրաքանչիւր պարբերութեան դասովին կը ձայնակցին՝ լաց ու կոծ ձևացնելով. բայց լաց՝ յորում և ոչ կաթիլ մի արտասուաց կը հոսէ։ Ոչ երբեք կը տեսնես որ առհասարակ ամենը մտաց ամփոփմամբ իրենց պաշտօնը կատարեն. այլ ընդհանրապէս մինչդեռ դասագլուխը իւր փոքր խմբին հետ կ՚ողբակցէ, այլք անտարբերաբար աչքերնին ասդիս անդին շրջեցնելով կը զբաղին, և կամ՝ մէջերնին անտարբերաբար կը խօսակցին։

Եւ սակայն այս ալ սգոյ սովորական արարողութիւն մըն է, որ ամեն միջոց ունեցող Հնդիկ ընտանիք հարկ է ընել տան 'ի պատիւ և 'ի յիշատակ իրենց մեռելոյն։

Նոյն իսկ գաղթական Փարսին այսպիսի սովորութեան կը հետևի, և իւր կանոններն ալ ունի. փոքր տղայ մը չորս օր կ՚աշխարեն, չափահաս մը ինը օր. լացն ու կոծը առաւօտեան ժամը հնգէն կը սկսին ու երկուքին կը վերջացընեն. իսկ լացողք տան կանայք են, որոց անհրաժեշտ կ՚ընկերակցին մերձաւոր ու հեռաւոր ազգականք, դրացիք և բարեկամք։ Ցաւակցութեան այցելուք առաւօտը կանուխկեկ մեռնողին տունը կը հասնին ու լացին ժամուն կը սպասեն։ Երբ ժամանակը կը հասնի, աշխարողաց դասագլուխը ճիչ մը հանելով ազդը կու տայ, և աղաւաղելով ամուր մը կուրծքը կը հարուածէ. անանկ որ հարուածոց թնդիւնը մինչև հանդիպակաց տուները կը լսուի։ Էրիկ մարդիկ դուրսը փողոցը լուռ կը կենան. իսկ կանայք մէկմէկու ետևէ ետև լալով՝ մեռնողին առաքինութիւնները կը պատմեն, և թէ որչափ ցաւ կրեց հիւանդութեան ժամանակ, որչափ ճիգն թա-

փեցին խնամող բժիշկք զինքը փրկելու, և թէ ինչ եղաւ մեռելոյն վերջին կամքը։ Այս ամենը և դարձեալ ուրիշ որչափ բան կրնան երևակայել, լացով ու հեծկլտանքով բարձրաձայն կը զուրցեն. և իւրաքանչիւր աշխարող հարկ է որ տասը կամ տասնըհինգ վայրկեան խօսի։

Գեղերը այս մեռելոց կոծը՝ կ'ըլլայ որ ամիս մը և աւելի կը տևէ։ Երբ տանտիկինը՝ իւր դամբանական խօսակցութեամբ ողբոց սկիզբն կ'ընէ, քիչ անգամ կ'ըլլայ որ զինքը թողուն որ ողբը լմնցընէ. Ներկայ եղողներէն ամեն մէկը խօսքը բերնէն առնելով անոր տեղ աշխարել կը ճգնի. սակայն տանտիկինը թող չի տար, այլ կ'ընդդիմանայ անոնց ցուցած փութոյն, և այն ատեն սրտաճմլիկ մրցում մը տեղի կ'ունենայ։ Երբեմն ալ երբ տանտիկինը երկայն աշխարելէն յոգնած՝ դադրելու միտք կը ցուցընէ, «Չէ, չէ, կը կանչեն ամենը միաբան, բաւական չէ. հարկ է որ բոլոր ցաւդ դուրս տաս»։

Այսպիսի արարողութեամբ կը վարին թաղի համբաւով մեռնողի մը հետ. սակայն իրբ միշտ այսպէս չ'ըլլար։ Եթէ մեռնողը չար մէկ մը եղած է ու շատ կրել տուած է, այն ատեն կոծը տրտունջի կերպարանք կ'առնու. աշխարողը կը սկսի անկէ քաշած վըշտերը գանգատելով զուրցել. և կամ այլապէս, ընտանեացմէն այս կամ այն անձին վրայ ամբաստանութիւն կը դնէ՝ իբրու թէ մեռնողին շատ վիշտ ու նեղութիւն կրել տուած ըլլայ։ Այնպիսի ատեն կոծը բուռն յանդիմանութեանց կերպարանք կ'առնու, որ ետքը ետքը ամբաստանողին և ամբաստանեալին մէջ ծանր մեղադրութիւններով ու սաստիկ նախատինքներով կը վերջանայ։

Սակայն հիմա կամաց կամաց Փարսից մէջ այս մե-

ռելոց կոծին չափազանցութեանց չափ մը դնելու հե-տամուտ են։

Ինչպէս մեռելոյն յուղարկաւորութեան պարտքը այսպէս ալ հոգեհանգիստ կատարելու պարտքը ժա-ռանգին կ'իյնայ։ Հոգեհանգիստ կամ մեղսաքաւիչ արարողութիւնք կատարելու գլխաւոր ժամանակ-ներն են՝ մահուընէն տասնըմէկ օր ետքը, իւրաքան-չիւր ամսոյն վերջին օրը, և հուսկ ուրեմն մահուան տարեդարձին։ Հոգեհանգիստ արարողութիւնք կը կայանան մեռնողին և անոր ոգւոյն՝ բրինձ, ծաղիկ, ջուր և այլ բաներ նուիրելուն վրայ, որպէս զի ա-նոնց միջոցաւ իւր հոգին կարողանայ բիդրայց երկին-քը ելլել. այս բիդրայք կը համարին մարդկային ազ-գին նախահարք։

## Զ

Ամուսնութիւն 'ի Հնդիկս։ — Հարսնեկան թափօր մը։ — Հարսնիքի մը արարողութիւնք։ — Պայմանքը։ — Ամուսնութեան կապին նախապատրաստութիւնք։ — Կապուրք և կապքին։ — Դաշնագիրը։ — Առաջին ամուս-նութիւն։ — Վերջին ամուսնութիւն։ — Տղոց ծննդեան արարողութիւնք։

Զմեռնային եղանակը լաւագոյն և հետաքրքրա-կան ժամանակն է 'ի Պոմպէյ. որովհետև ճոխ է հանդիսիւք և կրօնական արարողութեամբք։ Գիշեր-ները բնկաց ընդհանուր քաղաքը լուսաւորութեան հնոց մը կը դառնայ. ո՛ր փողոցը մէկը խոտորի՝ մէյ-մէկ հանդիսի մէյմէկ հետաքրքրական տեսարանի ականատես կ'ըլլայ։ Առհասարակ մահմէտականը, Հնդիկ կռապաշտը, կրակապաշտ Փարսին, իրենց

տօնախմբութիւնք գիշերը կը կատարեն, երբ ամեն ծառայական, ամեն առևտրական, ամեն գործունեայ կեանք կը դադարի: Փողոցք այնպիսի առթիւ կը գրաւին իւրաքանչիւր աղանդին հետևողներէն, որ զանոնք կարծես մէյմէկ տաճար կը փոխեն: Գետինը գորգերով ծածկած՝ հաւատացեալք խումբ խումբ բազմեալ կը կծկին քրմաց բոլորը՝ անոնց քարոզութեանց և ընթերցուածոց ուշադիր: Այնպիսի առթիւ այն մասնաւոր փողոցաց մէջէն անցուդարձը կը դժուարանայ, ևս առաւել այլադենից նկատմամբ. սակայն ներողամտութիւնը զԵւրոպացին ամեն դին կը դիմաւորէ, որ պարկեշտաբար և զգուշութեամբ այն աղօթող հաւատացեալներուն խմբից մէջէն կ'անցնի առանց անպատշաճութիւն մը կամ տըրտունջ մը յարուցանելու:

Սոյն այս ձմեռնային եղանակը նուիրեալ է նաև ամուսնութեանց, և ինձ յաճախ կ'ըլլար դիպել այն հարսնեկան թափօրներու, յորում Հնդիկը իւր կարողութեանը համեմատ, նա մանաւանդ ստէպ ալ կարողութենէն վեր, ճոխութիւն մը կը ջանայ 'ի կիր առնուլ: Յաճախ այսպիսի թափօրի մը երաժշտական աղմուկը 'ի հեռուստ լսելով՝ փողոցի մը անկիւնը կը դադարէի 'ի զնին հանդիսաւոր անցից. այն անհասկանալի շփոթէն յիս խորհրդածութիւնը կը զարթնուր, և ես ինձ կը հարցընէի թէ ինչ էր այն շառաչող գործեաց խառնաձայնութեան իմաստը՝ որու Հնդիկք ներդաշնակ երաժշտութեան անունը տալու արդար կը համարին: Եւ մինչդեռ խորհուրդըս զիս կը զբաղեցնէր, և ահա թափօրն ինձ կը մերձենար, յառաջադէմ ունենալով սևամորթ մերկանդամ տղայոց ջահակիր բազմութիւն մը. որք ոստոստելով, աղմկելով և ջահերը իրարու զարնելով՝

հանդիսին վայրենի երևոյթ մը կու տային։ Ջահուց ծուխը, ճարպին հոտը, յաւել ևս հնդիկ քաղքին փողոցաց յատուկ սիրտխառնուկ չարահոտութիւնը՝ ինձ գլխու պտոյտ կը բերէին։ Բայց անձիս այլայլութեան ուշ դնելու ժամանակ չէր ըլլար. Երաժշտաց խումբն որ ջահակիր տղայոց կը հետևէր մտածութիւնս յինքն կը գրաւէր. այն խմբին մէջէն ոմանք ահաւոր մեծութեամբ թմբկաց ներքև կարծես կ'ընկճէին. և սակայն երկու փայտոյժ բազուկք երկուստեք երկննալով, դիւահարապէս գթըմբուկը կը հարուածէին։ Փողահարք որ անմիջապէս երկրորդ կարգը կը ձևացնէին, լանաձև ահեղ երկայնութեամբ փողերը ուսերնէն կախած՝ բոլոր սաստկութեամբ կը հնչեցնէին, անբացատրելի խառնաձայնութիւն մը և խլացուցիչ աղմուկ մը պատճառելով։ Եւ սակայն կ'ըսեն թէ Հնդիկք կը պարծին իրենց այս խառնաձայնութեանը վրայ, իբրու թէ երաժշտութեան արուեստին մէջ քան զՀնդիկը չիք գերազանցող։

Երաժշտաց խմբէն ետքը հեծեալ հանդիսականք կու գան, առ հասարակ տղայք ու երիտասարդք, որք յոսկի, 'ի բեհեզ և 'ի գոյնզգոյն հանդերձս պաճուճեալք, սիգաճեմ՝ կը յառաջեն. 'ի սոսա կը գիտեմ որ չեն պակսիր և զրահաւորեալք։

Կառաց շարք մը որ ասոնց կը հետևի, 'ի տես կ'ածէ այն գոհարազարդ ու բեհեզեայ գոյնզգոյն հանդերձիւք զարդարեալ ազգականք, մերձաւորք և կոչնականք, որ իրենց փայլովը հանդիսին շքեղութիւնը կ'առաւելուն։ Ամենը զուարթ, ամենը ծիծաղերես, ամենուն սրտին գոհութիւնը երեսին ժըպտին վրայ կ'ընթեռնում։

Բայց ահա փառազարդ կառք մը յորում ամուս-

նացեալքն կը բազմին. ամենէն մերձաւոր ազգականք անոնց կ'ընկերակցին։ Փեռայլին երեսը տեսնել չէ հնար. ոսկեթել վերջաւորաց քօղի մը տակ ծածկուած է. գլուխը արքայական թագ մը կը կրէ, և 'ի թիկանց և 'ի վայր ոսկէգիպակ պճղնաւոր մը կը ձգի։

Կոչնականաց և 'ի պատիւ եկեղոց կառքերը թափօրին գծին կը կցին, և ամենքն ծանրաքայլ փողոցէ փողոց խոտորելով՝ երկայն շրջանաւ փեսային կամ հարսին տունը կ'ուղևորին։ Բոլոր այն թափօրին երկայնութեամբ ցրուած բազմաթիւ ջահակիրք տեսարանը կը լուսաւորեն, և շատ այլք հրախաղութեամբք հանդիսին աւելի փայլ կը տպաւորեն։

Տեսարանը իւր հետաքրքրական գեղեցկութիւնն ունի, մանաւանդ առաջին անգամ ականատես եղողին։ Երկնից անլուսին մթութիւնն իսկ անոր խորհրդաւոր կնիք մը կը տպաւորէ. և մարդ ինքզինքը առասպելական աշխարհ մը կը համարի։ Այն գործեաց հեռաւոր խառնաձայնութիւնը, այն մթութեան մէջէն 'ի հեռուստ շարժուն ջահից լոյսը, այն ծովու ալեաց նման բացակայ աղմուկը որ երթալով կը մերձենայ, որ անկերպարան տեսարանը կը մարմնաւորէ, որ գրեթէ փոթորկանման կը սաստկանայ, որ հուսկ ուրեմն շարժող էակներու երևոյթը կու տայ, ուր այր, կին, տղայ, աղջիկ, ձիաւոր, հետի, սևամորթ, մերկանդամ, առ հասարակ կը զեռան և առջևէդ կ'անցնին կը սահին կ'երթան, ետևնէն լուսոյ, ծխոյ, հոտոյ և աղմկի հետք մը թողլով, զքեզ յապուշ կրթած կը թողուն, և թմբրութենէդ արթննալով կը հարցնես թէ արդեօք ցնորք մըն էր տեսածդ, եթէ իրական աշխարհի մը բնական երևոյթ։

Այսպիսի էր այն տեսարանն որ գիշեր մը, և առաջին անգամուն, փողոցի մը անկիւնը կեցած ուրիշ երեք բարեկամօք կը դիտէի։ Երբ այն թափօրին մէջէն Հնդիկ մը բաժնուելով՝ իբր ծանօթ՝ մեզմէ մէկին կը մերձենայ. մեր հետաքրքրութեանը ախորժելի նիւթ համարելով՝ կը հրաւիրէ ճոխ Հնդկի մը հարսանեաց ամեննուս առաջնորդելու։ Չըթողլով որ առաջարկը կրկնէ, շնորհակալութեամբ իրեն կը հետեւինք, և այլ և այլ փողոցաց միջէն՝ վերջապէս ծառազարդ տեղի մը կը հասնինք, ուր հազարաւոր ճրագաց լոյսը իբրև 'ի տուընջեան կը լուսաւորեն։ Ժողովուրդը այնպէս հոծ ու խռնած էր, որ գժուարաւ ու մղելով՝ հազիւ ծանրաքայլ կըրնայինք յառաջել. որ կողմը երթայինք, որ դին խոտորէինք ամեն դին նոյն բազմութեանը կը դիպէինք։

Անտեղեակ հնդկային սովորութեան՝ 'ի զուր կը յուսայի այն տեղը փեսային ու հարսին հանդիպելու. հարկ էր քայլերնիս ուրիշ տեղ ուղղել եթէ կ'ուզէինք արարողութիւնը տեսնել։

Ամուսնութիւնը մարդկային կենաց գերագոյն պարագայն ըլլալով, Հնդիկք իրենց բոլոր ճիգն կը թափեն նոյն պարագայն շքեղաբար հանդիսացնելու։ Սովորութեան պարտք մըն է որ ճոխք իրենց ուրախութեան մասնակից ընեն նաև ժողովուրդը, հաղորդելով զանոնք իրենց առատաձեռն ճոխութեանը։ Հասարակաց զբօսատեղիք կը վարձեն և շքեղ լուսաւորութեամբ զանոնք զարդարելով՝ երաժշտութեամբք ու խաղերով կը պատրաստեն յանխտիր վայելս ժողովրդեան։ Նոյն տեղեաց մէջ չեն պակսիր նաև մասնաւոր վերապահեալ սրահք, որ ջահերով, գործերով, բազմոցներով ճոխապէս պատրաս-

տեսալք, միայն ծանօթից ու բարեկամաց հպելի են։

Այս մեծաց ու ճոխից հարսանեաց հանդէսք ընդհանրապէս երեսունէն քառասուն օր կը տեւեն. և բնական հետեւանք է որ սանկ առիթներու մէջ մեծամեծ գումարներ սպառին։ Այս ճոխ Հնդկին համար կը զուրցէին թէ երեք հարիւր հազար ռուփի ծախսած ըլլայ այս իր հարսնեկան նաւակատեաց. և այս՝ անհաւատալի չէր երեւնար տեսնելով այն ճոխ զարդարանաց շռայլութիւնը։

Տեղւոյս տեսարանը վայելելէն յետոյ՝ Հնդիկ առաջնորդնիս մեզի այլով ճամբով աւելի փառազարդ տեղի մը կ՚առաջնորդէ. հոն լուսաւորութեան շըռայլութիւնը անպատմելի էր։ Եւ այն էր վերապահեալ տեղին ուր հարսանեաց կրօնական արարողութիւնը տեղի պիտի ունենար, և ուր միայն մասնաւորապէս հրաւիրեալք կրնային մուտք ունել։ Ոստիկանութեան զինուորք մտից առջին կեցած՝ խըռնած ժողովուրդը դժուարաւ կը մղէին՝ հրաւիրելոց անցք բանալով։ Մենք չունէինք հրաւիրանաց նշան. սակայն Եւրոպացւոյն ներկայութիւնը մեծ պատիւ կը համարուի հընդկային հանդիսից. անոր համար իր առջին ամենայն դժուարութիւն կը հարթի։ Այսպէս եղև և մեզ. ոստիկանութեան զինուորք մեր կամքն որ զգացին առաջնորդին ակնարկութեամբը, խուռն ժողովուրդը աջ ու ձախ մղեցին, և արձակ միջոց մը բանալով մեզ 'ի ներքս առաջնորդեցին։

Այն ընդարձակ պարտիզին շաւիղներուն մէջէն անցնելով հասանք ծառազարդ վայր մը, ուր վայելուչ ու ճոխ վարագուրապատ ամպհովանիի մը տակ փեսայն ու հարսը նշմարեցինք. որ արարողապետ քրմի մը ակնարկութեանց հպատակ՝ հարսանեաց

արարողութիւնը կը կատարէին։ Ամպհովանիէն դուրս շուրջանակի հրաւիրելոց բազմութիւն մը հետաքրքրաբար ուշ կը դնէին այն ստէպ կրկնաբան հնոյ օրէնքի մը արարողութեանց, որ զուրկ են ամենևին այն սրբազան ու բարձր վսեմութենէն որուն սովորեալ եմք քրիստոնեայքս, և որ թուի լի են անելորդապաշտական դիւրահաւատութեամբք։

Հրաւիրելոց բազմութեանը մէջէն կը փայլէին մասնաւորապէս Եւրոպացի արանց ու տիկնայց խմբիկներ. որք մասնաւոր բարձրագոյն պատրաստեալ տեղեաց վրայ բազմեալ՝ լուիկ և ուշադիր արարողութեանց լրմանը ականատես կ՚ըլլային։ Այլ ինձ դժուարին ու երկայն է նկարագրել այն ստէպ կրկնաբան, ճղճղեալ ու երկարաձիգ արարողութիւնները, շարժմունքները, այն կրակին բոլորը ըրած շըրջանները, այն ստէպ բազմիլ ու կանգնիլները՝ առ որս կ՚ենթարկէր զինքը պրահմին քուրմը, որ ինչպէս կը թուէր, արարողութեան մի միայն տեղեակն էր, և որու հարկ էր հետևէին մեքենաբար երկու ամուսնացեալք։ Ամեն շարժման, ամեն շրջանին յատուկ աղօթքներ կը հնչէին, մինչդեռ կրակին մէջէն, գուցէ ողջակիզին, ծուխը դէպ ՚ի վեր կը բարձրանար։ Մի և նոյն ատեն երգեցող կանայց խմբիկ մը գետինը կծկած՝ մեղմ ձայնիւ և միակերպ եղանակաւ հարսանեկան երգ մը կ՚երգէին՝ որ այնպէս կ՚երևար ինչպէս թէ օրօրք նուագէին։

Հանդիսին աւելի մերձաւորապէս ականատես ըլլալու ըղձիւ կը ջանամք մեր առջևը եղող բազմութիւնը ճեղքել. բայց մի և նոյն ատեն ազդարար կուգայ, թէ արարողութիւնն այն խորհրդաւոր կէտը հասած է որ այլազգեններէ առանձնութիւն կը պահանջէ։ Հարկ է հպատակիլ ու հեռանալ։ Հարսին

ու փեսային չորս կողմը մտերիմք և ազգականք կը պատեն, և նոյն ատեն գաղտնի արարողութիւն մը կը սկսի՝ որու մեք 'ի բացուստ միայն ձայնը կը լսեմք։ Մեզ այնպէս կը թուէր ինչպէս թէ քուրմը օրհնութեանց պսակ մը դարձնէր, և իւրաքանչիւր օրհնութեան փեսայն դրամով պատասխանէր. այնպէս գուշակել կու տար ափսէի մը մէջ կործանող դրամոց շառաչը. և նա մանաւանդ այնպէս կը համարէինք թէ որչափ օրհնութեանց ձայնը յաճախէր նոյնչափ յաճախ դրամոց շառաչը կրկնէր։

Բայց մեք, որ արարողութեան լրմանը ականատես ըլլալու արգելեալ էինք, հարկ էր այլուր զբօսանքնիս խնդրէինք։ Առ վայր մը այն չքնաղազարդ շաւղաց մէջ կը թափառինք 'ի տես լուսաւորութեան, և ապա առաջնորդին հետևելով ճոխաքար զարդարեալ ընդարձակ սրահ մը կը մտնենք, զոր բաց 'ի բազմաթիւ ճրագներէ, երեսուներեք վենետիկեան մեծամեծ ջահք կը լուսաւորեն։ Միագոյն ճոխ գորգ մը, Լիոնի գործուած, նոյն ընդարձակ սրահին գետինը ամբողջապէս կը ծածկէ։ Շուրջանակի, որմոց կից, ճոխ բազմոցք և թիկնաթոռք կարգաւ շարած կան, որոց վրայ Հնդիկ հրաւիրելոց նշանաւորք կը բազմին, յորս կը փայլի Հնդիկ Ռաճա իշխանաւոր մը իւր բազմագին գոհարներովը։ Ամենը լռիկ ուշ կը դնեն երաժշտութեան ու երգոց։

Մեր մուտքը 'ի նոյն սրահ յարգանօք կ'ողջունուի. շատք 'ի բազմականաց կը կանգնին և մեզ Ռաճային հանդէպ կը բազմեցունեն։ Մեր աջակողմը Ռաճային հանդէպ՝ երկու անկոչիկ գուսան աղջըկունք՝ պայուսերաց յատուկ թատրոնական հանդերձիւ, կանգուն յոտին, տուն առ տուն քերթութիւն մը կը նուագեն. և ամեն դադարելուն երկու երա-

ժիշտք իրենց ջութակաց լարերը կը հնչեցնեն։ Ջութակահարք կը լռեն և գուսանը իւր քերթութեան տունը չեշտիւ արտասանելով, փոքր քայլիւ ու մեղմիկ մեղմիկ դէպ 'ի Բռաճայն կը յառաջէ, և դարձեալ մեղմիկ մեղմիկ յետս յետս կը նահանջէ իւր քերթուածը յանգելով։ Բռաճայն և հանդիսականք լռիկ և ուշադիր ակնկառոյց կան այն տեսարանին որ զիրենք կը զմայլեցնէ, և ինչպէս թէ զիրենք իրենցմէ դուրս կը հանէ։

Եւ այսպէս նաև մեք յանակնկալս այս պայատերաց տեսարանին հանդիսատես կը գտնուէինք, որոց համբաւը ամեն տեղ կը լսուի։ Պայատէրք, որ անգղիական անուամբ Նօչ-կըրլ կը կոչուին, տեղացւոց հանդիսից անհրաժեշտ զարդ են։ Ոչ միայն պարաւորք և գուսանք, այլ և յաճախ յանկարծերգակ բանաստեղծ են։ Սակայն իրենց արտաքին ձևը շատ պարկեշտ է, և ընդհանրապէս ճոխ հանդերձիւք և մեծագին զոհարեղինօք զարդարեալ կը ներկայանան։

Պարաւոր գուսանքս 'ի մանկութենէ այս արուեստիս կը նուիրուին իւրեանց ծնողացմէ, որ զիրենք վայելչագէմ և բարեկազմ տեսնելով՝ շահու դուռ մը կ'ակնկալեն։ Եւ այս արուեստս 'ի Հնդիկս ամենաշահաւոր է. մէջերնէն գեղեցկագոյնք և հռչակաւորք իբր պարերգուք՝ շատ սուղ կը վարձեն իրենց արուեստը. միայն հազարաւոր Ֆրանգներով յանձն կ'առնուն տեսարանի մը ներկայանալ ու պարել. և որչափ ճոխ ու բարձր կարգի ըլլայ վարձողը՝ պահանջն ալ այնչափ աւելի կ'ըլլայ։ Կան այնպիսի հռչակաւորք որ իշխանաւորաց հանդիսից ներկայանալով, մինչև գրեթէ լաք մը ռուփի կը շահին, որ երկու հարիւր հազար Ֆրանգէն աւելի ըսել է։ Այս-

պիսի յառաջադէմք շատ կան 'ի Նշանաւոր քաղաքս Հնդկաց. որոնք իրենց ստացած ճոխութիւնը շռայլելով՝ վերուստ 'ի վայր մեծագին գոհարեղինօք զարդարեալ՝ ոսկէզարդ փառահեղ կառաց մէջ կը բազմին ու փողոցները ժուռ կու գան։

Ահա ճաշակ մը այս գուսանաց յանկարծերգակ քերթութեանց.

« Ե՛րբ դառնաս պիտի, ո՛վ սիրելիդ, ե՛րբ գաս պիտի, ո՛վ սրտիս բերկրութիւն, ո՛վ գանձ հոգւոյս։ Ե՛րբ պիտի երեւնաս յերջանկութիւն Բոզանայիդ։ Ի զուր սպասեմ դարձիդ. դու սիրելւոյդ քովը չես գար. հեռուոցդ վրայ հսկելէն աչքերս յոգնեցան։ Սիրելւոյս անկողինը յասմիկէ կամարի մը տակ մոկրի ծաղկանց պսակներով ծածկեցի. քրանի անուշ փոշւով սրսկեցի և վարդի անուշահոտ իւղով օծեցի։ Լահորի անուշահոտ իւղերով անուշաբուրեցի զայն ու ներկեցի հիանայի ծաղիկներով։ Փութա՛ ո՛վ սիրելիդ քու սորկիդ քովը, և քու ներկայութեամբդ անոր սիրտը ուրախացուր »։

Այսպիսի տեսարանաւ կը զբօսնուին Հանդիսականք, մինչդեռ Հարսանեաց արարողութիւնք իրենց լրումը կ'առնուին։ Այլ յանկարծ յակնարկել Ռոճայլին երաժիշտք ու գուսանք իրենց խաղը լռեցուցին։ Եւ այն ատեն սպասաւորաց խմբիկ մը երեւցաւ ափսէիւք՝ լի ծաղկանց փնջերով. զորոնք սրսկելով վարդեջրով և այլ հոտաւէտ նիւթով, նախ 'ի մէնջ սկսեալ՝ բոլոր Հանդիսականաց բաշխեցին։ Ջինի ծաղկանց բան-սոպարի ծամելու գնտիկաց կարգն եկաւ. յորոց երկերկու իւրաքանչիւր Հանդիսականի ձեռքը դրին։ Այս գունտերն պէթէլ տնկոյն տերեւք են, որոց մէջ կը պլլեն սպիտակ խիւս մը,

որ է արեքայի ընկոյզին ծեծածը կրով խառնած։ Հընդիկք այս բան–սօբարին շարունակ կը ծամեն, և անկէ բերաննին, ակռանին ու լորձերնին կարմիր կը ներկի։ Բայց թէ ինչ համ ունի այս նիւթս՝ ոչ երբեք սիրտս տարեր է փորձելու։ Գաղղիացի բարեկամիս վկայութեանը նայելով, որու նաև ընծայեցի ինձ շնորհեալը, համեղահամ ու զբօսեցուցիչ ուտելիք մըն է, թէպէտ առ սակաւ մի կծու։

Այս ընծայք էին վասն պատուաւորաց 'ի հանդիսականաց. իսկ վասն ստորնագունից բաշխեցին քօքօի ընկոյզ։

Բաշխումն ընծայից է նշան արձակման հանդիսականաց, հանդէսը իր լրման հասած ըլլալով։ Մի և նոյն ատեն փեսայն ներկայացաւ 'ի սրահին, և հանդիսականք առհասարակ յոտին կանգնեցան։ Իր ոսկէդիպակ պատմուճանաւը և արքունական թագիւը ինձ յիշեցուց այն նախնի երկայնամիտ նկարչաց նկարքն, յորս սոյն այս հանդերձիւք կը ներկայացնեն երից մոգուց երկրպագութիւնը։

Ռաճայն զփեսայն դիմաւորելով՝ իւր բարեմաղթութիւնքը մատոյց, և ապա ոսկի ու գոհար ընծայելով մեկնեցաւ։ Իր օրինակին հետևեցանք և մեք, և մեր Հնդիկ առաջնորդովը փողոցը ինկանք, ուրիշ բազմաթիւ հարսնեկան աղմկալից թափօրներու ականատես ըլլալու։ Հոն մեր առաջնորդը մեզի կը մեկնէր՝ թէ ինչպէս Հնդիկք որ հաստատած են մտքերնին ամուսնանալու, այս եղանակս օգտեցընելու կը ջանան, որու բարեբաղդ օրերը քրմաց գուշակութեամբ կը վճռուին։ Անկէ դուրս եղած օրերը չարաբաղդ համարուելով՝ ոչ ոք կը յանդգնի ամուսնութեան ձեռք զարնելու։ Ինքն իսկ մեր առաջնորդը, որ Պարսատացի երիտասարդ մըն էր, չու-

տով իր հայրենիքը դառնալու էր․ իր ծնողքը քովերնին կը փութացնէին զինքը, որոշած ըլլալով օրիորդի մը հետ նշանելու։ Ցաւարկելն մեր թէ ինչպէս կարելի էր մէկի մը հետ ամուսնութեան կապ յօդել, մինչդեռ բնաւ իսկ տեսած չէր, ինքը կը պատասխանէր, թէ վստահ էր ծնողաց ընտրութեանը վրայ, որոց մի միայն նպատակը իրեն համար աղէկ օրիորդ մը ընտրել էր։ Այսպէս 'ի Հնդիկս դեռ ևս հին նահապետական սովորութիւնք կը յարատևեն․ բայց կամաց կամաց նոր քաղաքակրթութիւնը կը յառաջադիմէ․ և շատք 'ի լուսաւորելոց յօժար են իրենց հին սովորութիւնները նորոց հետ փոխանակելու։

Ի Հնդիկս երբ աղջիկ մը հինգ կամ վեց տարեկան կ'ըլլայ, կրնայ պուրցուիլ թէ իր ապագայ ամուսնութեան պատրաստութիւն կը սկսի տեսնել։ Որովհետև այն հասակէն սկսեալ՝ տարեց կնիկ մը զինքը ամուսնական արարողութեանց նախապատրաստութիւններու կը վարժեցնէ․ այս արարողութեանց գլխաւոր նպատակն է նախ էրիկ մը ապահովցնել իրեն, և ապա զինքը կրօնասէր ու երջանիկ ընել բոլոր կենաց ընթացքին մէջ։

Այս արարողութեանց առաջինը Շիվա բուճա կը կոչուի։ Իրենց տարւոյն վերջին օրը պէտք է որ Տուրկա գիցուհւոյն երկու կաւէ նմանութիւններ շինէ․ զորոնք մասնաւոր պտղոյ կճեպին մէջ ամփոփելով, յետ բաղնիք մտնելէն և զգեստները փոխելէն, այն երկու պատկերաց առջին երկրպագութիւն կ'ընէ։ Ապա այն պատկերներուն գլուխը մէկ քանի կաթիլ նուիրական ջրէն սրսկելով հետեւեալ բառերը կը գուրցէ․ «Ի մեծապատիւ Շիվայի —

որ իբր օրինակ կը համարի կանամբեայց ։ — Ի մեծարանս Հարայի — Շիվայի ուրիշ անուանակոչութիւն մը ։ — Ի մեծարանս Պուճարայի — Երկու փոքր հողէ գնտիկք, որ կաւէ պատկերաց վրայ կպած են ։ —

Այս ընելէն ետքը միտքը ամփոփելով՝ մտաւոր աղօթից կը զբաղի, նոյն այս վերի աղօթքն երեք անգամ կը կրկնէ, նուիրելով դիցուհւոյն ծաղիկ ու տերեւ ։

Այս արարողութենէս ետքը կու գայ Հարիի կամ Քրիշնայի պրադայն ։ Սանտալ փայտի փոշւով սպիտակ խմոր մը կը շինէ ու պղնձէ ափսէի մը վրայ կը դնէ. այն խմորով աղջիկը Քրիշնայի դից ոտքերը կը ներկէ, և մի և նոյն ատեն ծաղիկ ու խմոր կը նուիրէ ։

Կ՚ենթադրեն որ Քրիշնա այս գործէս ախորժելով այսպիսի հարցմունք մը կ՚ընէ. «Ո՞վ է այն աղջիկը որ իմ ոտքերս կը պաշտէ, և ինծմէ ի՞նչ շնորհք կը խնդրէ» ։ Առ որ աղջիկը կը պատասխանէ. «Թագաւորը իրեն էրիկ ըլլա՛, ըլլա՛ գեղեցիկ և առաքինի. մայր ըլլա՛ եօթը խելացի և առաքինի մանչ տղոց և երկու գեղեցիկ աղջկանց ։ Իր նուանք ըլլան ճարտար և հնազանդ. իր փեսաներն աշխարհիս վրայ փայլին իրենց բարի ձիրքերովը. իր ամբարները ըլլան լի ամեն տեսակ հնտեղէններով, և ախոռը կաթնատու կովերով ։ Եւ երբ մեռնելու ըլլայ, այն ամենքն որ քովը գտնուին ու զինքը սիրեն, երկայն ու բարեյաջող կեանք վայելեն ։ Եւ եթէ կարելի է, Հարիի օրհնութեամբն ու զօրութեամբը կարենայ Գանգէսի գետափը մեռնիլ և այնպէս երկինքը տանող ճամբան մտնել» ։

Գուցէ այս աղօթքս հինգ տարուան աղջկան մը համար շատ բարձր համարուի. սակայն ստոյգն այս է որ Հնդիկ աղջկունք այս հասակիս մէջ շատ բաց միտք ունին ։

Երրորդ պրագայն կու գայ յետոյ, և կը հայի տասը պատկերաց պաշտաման։ Բրնձէ ալիւրով խմոր մը կը շինեն, և աղջիկը այն խմորով գետնի վրայ տասը սրբացեալ մարդոց կամ դից պատկերները կը նկարէ։ Յետ որոյ անոնց աղօթք մը կը մատուցանէ, որու համառօտ իմաստն այսպիսի է. «Տաղարաթ Ռամ Չընտրըի հօր պէս աներ մը ունենամ. Քուզալյա՝ Ռամ Չընտրըի մօր պէս զոքանչ մը ունենամ. Ռամ Չընտրըի պէս էրիկ մը. Ռամին կրտսեր եղբօր Լըքմընի պէս քեռայր մը. Տասղիի պէս մայր մը, որու բոլոր որդիքը կենդանի են։ Ըլլամ Քունտիի նման, որու իրեք որդիքը հռչակաւոր եղան իրենց արդարասիրութեամբը, բարեպաշտութեամբը, արիութեամբը և դիւցազնութեամբը. Նմանիմ Գանգեսի, որու ջրերը ամենուն ծարաւը կը յագեցնեն. Նմանիմ երկրիս, մեր մօրը, որու համբերութիւնն անզուգական է»։ Եւ յետ ամենայնի՝ կը խնդրէ որ Տուրկայի պէս օրհնեալ ըլլայ՝ սիրելի ու հաւատարիմ էրիկ մ'ունենալով. ըլլայ Տրօբատիի նման, որ նշանաւոր եղաւ իր ճարտարութեամբը, կրօնիւք և խոհեմ յաջողակութեամբ. ըլլայ դարձեալ Նման Սիդայի, որու անարատութիւնը և առ իւր էրիկը ունեցած սէրը ամեն գովեստի արժանի են։

Բոլոր այս երեք պրագայք կամ ուխտք՝ ապրիլ ամսուն մէջ կ'ըլլուին, որ մի միայն պատշաճ ամիս կը համարուի ամեն տեսակ արդիւնաւոր գործոց։

Չորրորդ պրագայն Սաձուղի Պրադա կ'ըսուի. և այս ուխտիս նպատակն է հեռի բռնել իր ապագայ տնէն ամուսնական օրինաւոր սիրոյ հակառակորդքն։

Նոյն սովորական բրնձի խմորով աղջիկը շատ մը բաներ կը նկարէ գետինը. ինչպէս ըսենք ծառի ծաղկալից ճիւղ մը, թալանքին մը, որու մէջ կնիկ մը ու

մարդ մը նստած են, հանդերձ արևով ու լուսնով, Գանգէս ու Եումնա գետերը նաւակներով, Մահատև-դից տաճարը, շատ մը ոսկեայ զարդեր և ակունք, տներ, վաճառանոցներ, պարտէզներ, յորենոցներ և ուրիշ շատ մը բաներ, որոց նշանակութիւնն է ճոխութիւն և առատութիւն: Յետոյ կը սկսի աղօթք մատուցանել Մահատև դից, մինչդեռ տարիքը առած կնիկ մը կը սկսի հակառակորդ տափողին կամ Յաղիին դէմ, որ յապագայն կրնայ ունենալ, հայհոյութեանց և անիծից շարք մը զուրցել, զորոնք աղջիկը մէկիկ մէկիկ կը կրկնէ:

Հնդիկք շատ բարոյական ու կրօնական բան կը համարին երկու տղաք իրենց մանկութեան ժամանակէն իրարու հետ խօսեցնել յապագայ ամուսնութիւն: Ընդհանրապէս աղջկունք ութ տարուան հասակէն կը նշանուին:

Պրահմին տղայք, մուճայի արարողութենէն ետքը, ինչ և իցէ ատեն կրնան կարգուիլ: Մունճայն նուիրական թել մըն է զոր տղայն ութ տարեկան ըլլալէն ետքը կ'ընդունի: Հնդկաց ուրիշ դասակարգաց մանչ տղայք ինչ և իցէ ժամանակ ազատ են կարգուելու:

Ընդհանրապէս պատանի մը տասներեօթը կամ տասներութ տարուան որ կ'ըլլայ, նկարուք կամ ամուսնութեան միջնորդք մէջտեղ կը նետուին: Ասոնք առ հասարակ ստասաց, մեծաբան ու շաղակրատ ոմանք են: Ըսենք օրինակի աղագաւ՝ որ աղջիկ մը առաջարկելով վրան խօսք ընեն. «Լրացեալ լուսնի պէս գեղեցիկ է, կ'ըսեն. մարմնոյն կազմուածքը ամենակատարեալ է, ակռաները նռան մը հատիկներուն կը նմանին. ձայնը արտաքոյ կարգի անոյշ է. քալուածքը շնորհալից, խօսուածքը կատարեալ Լրքի դի-

յուհւոյն նման է. թաղդաւոր կ'ըլլայ այն ընտանիքը որ զինքը առնու»։ Եթէ պատանւոյ մը վրայ խօսք ընեն այսպէս կ'ըսեն. «Գարդիք (գեղեցկութեան դէք) դից պէս գեղեցիկ է. ազնուական մարդու մը երեւոյթ ունի. ազատ է ամենեւին ինչ և իցէ ախտէ. գիշեր ցորեկ ուսանելու հետ է. միտք բանի՝ ազնիւ գոհար մըն է և զարդ գրացեաց»։

Ծնողք մի և նոյն ատեն իրենց ապահովութեանը համար տեղեկութիւններ կը սկսին ժողովել, քննելով ապագայ փեսային ու հարսին դաստակարգին անբծութիւնը, հարստութիւնը և ուրիշ առանձնաշնորհութիւնները։ Ամենայն ինչ 'ի դէպ գտնելով՝ փոփոխակի իրենց հաւանութիւնը կու տան. բայց նախ փեսային հայրը հարսին հօրմէն շատ մը գոհարներ և արծաթեայ և ոսկեայ զարդեր կ'ուզէ ու կ'առնու։

Մեծարոյ համարեալ անձանց մէջ հազիւ վայելուչ ըսուելու ամուսնութիւն մը երկուքէ մինչև երեք հազար ռուփի կ'աժէ։ Իսկ իշխանաւորաց ամուսնութիւնք շատ լաք ռուփի կը պահանջեն, որ է ըսել շատ մը հարիւր հազար փրանք։ Եղած են ամուսնութիւնք յորս հնգէ մինչև տասը լաք ռուփի ծախք եղած է, կամ թէ ըսենք մէկ կամ երկու միլիոն փրանքէ աւելի։

Ամուսնական դաշնադրութեան սկիզբը ըլլալէն ետքը, իւրաքանչիւր կողմ՝ նուիրակութիւն մը կ'որոշէ փեսային ու հարսին այցելու։ Սովորաբար այցելութիւնը հարսէն կը սկսի։ Պատանւոյն բարեկամք նուիրակին կ'ընկերանան և աղջկան տունը հասնելով նախասենեակը կը նստին, մինչդեռ աղջիկը հագուելու հետ կ'ըլլայ։ Սովորութիւն է որ տասնըհինգ կամ քսան վայրկեան սպասել տայ. անկէ ետքը այցելու խմբին կը ներկայանայ՝ վե-

բուռա 'ի վայր զարդարեալ փաղփող գոհարներով. հետը կ'ըլլան աղախին մը, անհրաժեշտ կաղքին կամ միջնորդ կնիկը, և ընտանեաց անձինք: Յարգանաց երկրպագութիւն մը ընելով ամենուն՝ սպիտակ գորգի մը վրայ կը բազմի: Երկայն լռութիւն մը կը տիրէ 'ի սկզբան, ուրմէ ետքը մէկը կը սկսի 'խօսիլ, խօսքը խեղճ աղջկան ուղղելով, որ օրուան հանդիսական ծանրութենէն գող կ'ելլէ ու երեսին գոյնը կ'այլայլի:

— Անունդ ի՞նչ է, կը հարցընէ.

— Կրի Պոլա, կը պատասխանէ աղջիկը:

— Քեզի նստողն ո՞վ է:

— Հայրս:

— Կարդալ ու գրել գիտե՞ս:

— Այո՛:

— Կարդա տեսնենք:

Մի և նոյն ատեն կաղքինը կը սկսի երկչոտ հարսին սիրտ տալ. եթէ յաջողութիւն չցուցընէ կը պաշտպանէ զինքը. և կամ եթէ կիրթ ու հաճելի երևնայ՝ մեծարանելով կը ջատագովէ: Բոլոր այս ատենս աղջկան մայրը վարագուրի մը ետևը կեցած՝ մտադրութեամբ աղջկան քննութեանը ուշ կը դնէ, և ամեն անակնկալ դէպքի սիրտը ամուր մը կը նետէ:

Այցելութիւնը լմննալէն առաջ փեսային հայրը կամ եղբայրը հարսին ձեռքը ոսկիէ դրամ մը կը դնէ, որ ստոյգ նշան մի է թէ նորընտիր հարսը իւր տանը մէջ մեծ հաճութեամբ ու սիրով պիտոր ընդունուի: Այս այցելութեանս թուղա—ակէյքա կը զուրցեն, որ կը նշանակէ հաստատական այցելութիւն: Այն պրանձիկը, ինչպէս նաև կապուց, կաղքին ու քոյրին որ այս արարողութեան ներկայ են, երկու կամ չորս ոսկի ընծայ կ'ընդունին: Եթէ այցելութիւնս առաւօտեան դէմ ըլլայ նախաճաշիկ չեն ըներ, որովհետև

բաղնիք չըրած և աղօթք չմատուցած՝ անպատշաճութիւն կը համարուի ուտել։ Բայց եթէ թուրքը անյքան ցորեկը ըլլուի, այցելուաց աղէկ ճաշ մը կը տրուի. և այն ճաշին պակսելու չեն եղանակին ամենէն ընտիր պտուղք, թարմ կաթ, մածուն և տեսակ տեսակ ընտիր շաքարեղէններ։

Երկրորդ այցելութիւնը հարսին ծնողացը կ՚իյնայ, որք քաջ վարժապետ մը հետերնին առած՝ պատանւոյն կ՚երթան. վարժապետին պարտքն է պատանւոյն ընկերական վիճակին և առած կրթութեանը համեմատ խիստ քննութիւն մը ընել։ Եւ ինչպէս հարսին՝ այսպէս ալ հիմա փեսային սիրտը երկիւղիւ կը բաբախէ. որով և քննութիւնը կրնայ յաջող կամ ամենաձախորդ ելք ունենալ։ Սակայն ինչ ալ ըլլայ հետեւանքը, պատանին՝ արարողութեան մասին համարեալ ոսկի դրամը կ՚ընդունի, և եթէ ճաշի ալ տեղիք ըլլայ՝ ինքն ալ բազմական կը նստի։

Այս կրկին այցելութիւններէն ետքը, բարեբաղդ համարեալ օր մը կ՚որոշուի, յորում կը գրուի Բադրան կամ ամուսնութեան դաշնագիրը։ Այս դաշնագիրը գրելու պաշտօնը պրահմինի մը կ՚իյնայ, զոր պէտք է գրոշմէ հնդկային թղթի վրայ, հնդիկ կամ պամպուի եղէգով շինած գրչով մը և հնդկային թանաքով։ Դաշնագրին օրինակն ալ այսպիսի է.

«Ես, Ռամ Զընտըր Պօզի, խոստանամ տալ իմ Կօրինօթ Պօզի երկրորդ զաւակս, յամուսնութիւն Նօպինմընի Տօսի, երէց աղջիկ Իսէն Զընտըր Տըգի, որ նմանապէս իւր հաւանութիւնը կու տայ այս դաշնագրիս զօրութեամբ։ Որոշուած օրը հարսնիքը անվրէպ տեղի պիտի ունենայ»։

Իւրաքանչիւր կողմի հայրը, ինչպէս նաև վկայք, այս դաշնագրին ստորև իրենց ձեռագիրը կը դնեն.

և յետոյ՝ նոյն այս վկայագիրը կը գալարեն ու կարմիր թելով մը կը կապեն։ Այս յարգանաց պատիւներ փոփոխակի իրարու կ՚ընեն, ընծաներ կու տան ու կ՚ընդունին, և այլ ուրախութիւններ կ՚ընեն։

Այս առթիս մէջ սովորութիւն մըն ալ կայ՝ որ յիսուն կամ վաթսուն հոգւոյ ճաշ մը տրուի։

Ամուսնութեան դաշնագրին գրուած ժամանակը՝ օր մը կ՚որոշուի Կադդրէյ հարիտրան կատարելու, որ է ըսել փեսային հնդկային քրքումով օծելու արարողութիւնը։ Նոյն որոշեալ օրը նշանուածը կամ փեսային բաղնիք կը մտնէ, և ապա կարմիր հանդերձ մը կը հագուի, ապա քարի մը վրայ կանգուն կը դնեն զինքը, չորս կողմն ալ չորս հատ պանանի տունկ կը զետեղեն։ Ապա հինգ կանայք պրահմին, որոց էրիկը ողջ ըլլալու է, անոր բոլորը հինգ կամ եօթը անգամ շուրջ կու գան՝ ու մարմինը քրքումով կ՚օծեն. ճակտին ալ կը դպցնեն ջուր, պէղէլ, արէքի ընկոյզ, բրնձի ալիւրով շինած խմոր, և ուրիշ շատ տեսակ բաներ, ինչպէս այլ և այլ տեսակ ոլոռն, բրինձ, ոսկի, արծաթ, և այլն։

Այն օրէն սկսեալ փեսային պէտք է հետը արեքի ընկոյզ կտրելու երկու հատ գործի կրէ, և նմանապէս զոյգ մըն ալ քաձուլեապա, որ են տուփք՝ յորս կը բովանդակի սև գոյն մը՝ որով կանայք իրենց արտևանունքը կը ներկեն։ Այս առարկայից նպատակն է հեռու բռնել նշանածներէն չար ոգիները, և հարկ է որ մինչև իրենց բուն ամուսնութեան օրը հետերնին կրեն։

Սակայն հարսնեկան արարողութիւնք դեռ ևս այս փեսային օծմամբ ալ չեն լմննար։ Դարձեալ օրացոյցը կը սկսին քննել որ բարեգուշակ օր մը գտնեն Ահիպարապադը տօնելու, որ է ամուսնութեան նախա-

շաւիղ հանդէս, որ ուրիշ բան չէ եթէ ոչ փոփոխակի իրարու ճաշեր տալ, ընծաներ նուիրել, նոր հանդերձներ հագուիլ, և մեծագին գոհարներով զարդարեալ իրենք զիրենք այլոց ցոյց տալ։

Վերջապէս ամուսնութեան օրը, այլ որ ըստ ինքեան բուն ամուսնութեան օրը չէ, կը հասնի։ Փեսայն ու հարսը չեն կրնար բերաննին ուրիշ բան դընել եթէ ոչ քիչ մը կաթ ու պտուղ. նմանապէս նոյն տեսակ ծոմի պարտաւորեալ են ամուսնացելոց ծընողքն և իրենց տնական յատուկ քուրմերը։ Երկու հայրերը իրենց նախնեաց աճիւններուն նուէր կը մատուցանեն, և ուխտ մը կ'ուխտեն վասն բարեբաղդութեան ապագայ ընտանեաց։

Այս ամենայն ըլլալէն ետքը, երկու նշանուածքն իրենց ծնողաց տունը առանձին առանձին բաղնիք կը մտնեն, և հինգ կանայք՝ որոց ամուսինք ողջ ըլլալու են, — ինչպէս կ'ըսէ հնդկային արարողական ձևը, — բաց 'ի իրենց ճակատը վերը ըսած առարկաներով դաշելէն, ուրիշ շատ մը մանր արարողութիւններ կը կատարեն, որոնց նպատակն է նոր ամուսնացելոց անայլայլակ երջանկութիւն մը ապահովցնել։

Այս արարողութիւնները սրբազան գրքերէն պատուիրեալ չեն, հապա են ռամիկ կանայց ջերմ երևակայութեան ծնունդք։ Օրինակի աղագաւ, այն աթոռին ետևը՝ որու վրայ հարսը պիտոր նստի, կարմիր թանաքով քսանումէկ բարեբաղդ էրիկներու անունները կը գրեն, և հարսին բոլորը եօթը անգամ շուրջ կու գան։ Նմանապէս այն մետաքսէ սարիին կամ ծածկոցին զոր հարսը ամուսնութեան արարողութեան ժամանակը վրան պիտի կրէ, Ցոդիա դիցուհւոյն անունը կը գրեն. որովհետև Շիվա դիք,

Տուրկային էրիկը, խեր կնիկը կը պաշտէր։ Այսպէս ասոր նման ուրիշ շատ մը արարողութիւններ կը կատարեն։

Մի և նոյն ատեն փեսային տունը մեծ մեծ պատրաստութիւններ կը տեսնան, ճրագներ, տեսակ տեսակ գոյներով կանթեղներ, հրախաղութիւններ պատրաստելով, 'ի չքեղացուցանել այն թափորը որով ինքը հարսին տունը պիտի երթայ։ Հարսն՝ իսկ ճոխապէս զարդարեալ փեսային գալստեանը կը սպասէ. և բազմութիւն մը երաժշտաց ու հրաւիրելոց, յորս են արք, կանայք, աղայք, իրեն ընկերակցելով՝ անպատմելի աղմուկ մը կը հանեն։

Երբ փեսայն տունը կը հասնի, կարմիր մետաքսէ լաթով ծածկած աթոռի մը վրայ կը նստեցնեն զինքը. և այն ատեն բոլոր կոչնականք յառաջ մատչելով զինքը կը բարեմաղթեն, մինչդեռ ամեն դիէն աղաղակներ կը լսուին, «Մտէք, մտէք տեարք և բազմեցէք... Գրանմիններոեն ու Մուսուրայց ժխախուռ քերէք»։ Յետոյ տան աղայք, և գլխաւորապէս հարսին փոքր քեռայրք, երկու արկղայի ընկոյզ կը բերեն փեսային, զորմէ ինքը պէտք է կոտրէ նոյն այն գործիքով՝ որ մինչև ցայն ատեն հետը կրած ըլլալու է։ Երբ ամենը իրենց տեղը կը բազմին, շատ մը աղայք խումբ մը ձևացնելով՝ իրարու դիմացէ դիմաց կը նստին. և այնպէս իրենց առած կրթութեանը համեմատ՝ կը սկսին մէկմէկու հարցմունքներ ընել, ջանալով զիրար չփաթցնել, որպէս զի անով հանդիսականաց ծիծաղի նիւթ մատակարարեն։

Այս ծաղրաբանութիւնը լմննալէն ետքը, երկու կամ երեք մարդիկ՝ արուեստիւ աղգարանք՝ յառաջ կը մատչին, երկայն պատմուճաններ հագած, գլուխնին ալ փաթթոցներով ծածկած. և այնպէս կ'ըսկը-

սին երկու ընտանեաց ազգաբանութիւնը կարդալ, իւրաքանչիւրին նախնեաց մեծագործութիւնները ճոռոմաբան բացատրութեամբք մեծաբանելով։

Այս ատենս 'ի թաքուր-տաշտ կամ պաշտաման սեղանակը ամենայն ինչ պատրաստ կ'ըլլայ Հարսանեաց արարողութիւնը կատարելու։ Ամեն բան, ամեն զարդ տեղն է. բանուած գորգեր, փայտեայ և ասղնեգործ կօշիկք, արծաթեայ անօթք, ծաղկունք, սանտալէ խմորք, նուիրական ջուր, պղնձեայ անօթք, և այլն։ Հոն կը տարուի փեսայն, որ իր ասղնեգործ հանդերձը հանելով, ուրիշ մը կը հագուի կարմիր մետաքսեայ։ Մի և նոյն ատեն երկու ծառայք զհարսը աթոռի մը վրայ նստեցուցած կը վերցընեն, զենանայէն կամ կանանոցէն դուրս կը հանեն ու փեսային աջակողմը կը տանին կը նստեցնեն։

Արարողապետ քուրմը այն ատեն հարսին ձեռքը խուշ ըսուած խոտէն տասներչորս տերև կը դնէ. զորոնք ապա երկու հաւասար փունջ բաժնելով՝ փեսային ու հարսին երեսը կը կապէ։ Ապա հարսին աջ ձեռքին մէջ քիչ մը Գանգէսին ջրէն կը լեցնէ, մինչդեռ իր աները մանդրա մը կամ երդմնեցուցչութիւն մը կը կարդայ, որմէ ետքը այն ջուրը գետինը թափել կու տայ։ Յետոյ դարձեալ ջուր կը լեցնէ, ապա մածուն, և ապա դարձեալ ջուր։ Ասկէ ետքը քուրմը փեսային կ'ըսէ՝ որ ձեռքը պղնձէ ամանի մը մէջ դնէ. և ապա հարսին ձեռքը առնելով անոր ձեռքին վրայ կը դնէ, և երկուքը մէկտեղ ծաղկանց պըսակով մը կը կապէ. և նոյն ատեն աները կ'ըսէ.

« Կուդամի տունէն, Ռամ Զըրն Պօզիի Թոռան աղջիկը, Պլօրըմ Պօզիի Թոռնիայն, Ռամ Զընտեր Պօզիի աղջիկը, որ այս և այն գգեստները հագած է, և այս և այն զոհարները կը կրէ. ես, Տուարքինաթ

Պօղի, կու տամ քեզի զՕմա Չըրն Տըդ, Պարատաճի տունէն, Տինոնաթ Տըդի Թոռնորդի, Շիպ Չըրն Տըդի Թոռն, Ճօտօնօթ Տդի որդի »։

Առ որ փեսայն պատասխանելով կ՚ըսէ.

— « Եւ ես ընկալայ զինքը »։ —

Աները այն ատեն կը քակէ ծաղկանց փունջը որով երկու նշանուածներուն ձեռքերը կապուած էին. գլուխնին նուիրական ջրէն կը հեղու և կ՚օրհնէ զիրենք։ Մետաքսեայ լաթ մը, որ Լաձա Պուրդուր ն՚ըսուի, գլխնուն վրայէն կը ձգուի, և իրենց կը զուրցուի որ առաջին անգամ մէկմէկու երեսը նային։

Այս արարողութենէս ետքը ամուսնացեալք տան գաւիթը կը տարուին, ուր բոլոր կանայք ժողոված իրենց կը սպասեն. զիրենք որ կը տեսնեն՝ աղաղակներով ուրախութիւննին կը յայտնեն, խնդակցութիւննին իրենց կը մատուցանեն, և ապա տեսակ տեսակ արարողութեանց զիրենք կ՚ենթարկեն։

Բայց արարողութիւնը չլմնցած՝ դրացիներուն տըղայոց ամբոխը տունը կը պատէ, ու կը սկսին նրամվաղին ու Պարավարի թուձան ուզել։ Նախ քաղաքավարական կերպերով հարսին հօրը կը յայտնեն իրենց խնդիրը, որ անմիջապէս կը հանէ քսան ռուփի կը դնէ ձեռքերնին։ Բայց անոնք կը սկսին աղաղակել ու քանի տեղ հարիւր պահանջել։ Անոր վրայ կռիւը կը ծագի, մինչև նախատական խօսքեր կը սկսին զուրցել մէկմէկու. այլ վերջապէս երկու կողմէն ալ հանդարտելով կը միաբանին, ու հարիւրի տեղ երեսուն կամ քառասուն ռուփիով կը լմնցնեն։ Այս ստակը տղայոց հանդէս մը տալու կը ծառայէ. սակայն մաս մըն ալ Պարավարի թուձա սրբազան արարողութեան կը պահեն, որու վրայ քիչ մը վարը պիտի խօսինք։ Հարսանեաց արարողութեան իբր վեր-

Ջարան՝ փեսայն կ'առնուն ու քարի մը վրայ կը նըստեցնեն. ապա երկու արք Հարսը աթոռի մը վրայ նստեցուցած կը վերցնեն, ու փեսային գլխէն վեր բարձրացնելով՝ երեք անգամ շրջան կ'ընեն ու հանդիսակիցներուն կը հարցնեն.

— Երկուքէն ո՞վ է աւելի բարձր։

Ու որ պատասխանը միշտ նոյն է.

— Հարսը։

Կանայք այն ատեն ամուսնացելոց գլխուն վրայէն լաթ մը կը ձգեն, յորդորելով զիրենք որ սիրով ու գթով իրարու նային։ Այս հայեացքին շովատորիկի կ'ըսեն, որ կը նշանակէ բարեբաղդութեան հայեացք, որովհետև խոստմունք ու մաղթանք մի է ապագայ երջանկութեան։

Անկէ ետքը փեսայն դարձեալ 'ի բաքար տալան կը դառնայ և արարողութեան վերջ կը տրուի. քուրմը իր երդմնեցուցչութիւնները կը կրկնէ ու գից յետոյն նուէրները կը մատուցանէ։ Քրմաց վճարքը կը տըրուի, և այն հազարումէկ արարողութիւնք լմննալով, փեսայն կ'ազատի ու քիչ մը շունչ կ'առնէ։

Այս ատենն է որ տան գլխաւորն առջ ելլելով՝ հրաման կ'ուզէ Մայա Ջանոռան արարողութիւնը կատարելու, որ է պատկներուն բաշխումը։ Որմէ ետքը, երբ լրումն այս ամենայն երկայնաձիգ արարողութեանց, մեծ ճաշ մը կը տրուի, որու սեղանակից կ'ըլլան գրեթէ միշտ շատ մը անկոչ բազմականք։

Սակայն եթէ կրօնական արարողութիւնք կը լմըննան, խեղճ ամուսնացեալք դեռ ևս իրենց տագնապը լմնցուցած չեն. հարկ է որ տան կանանց զուարճութեան նիւթ մատակարարեն։ Ուստի ճաշը լմննալէն յետոյ, երբ բոլոր հրաւիրեալք կը մեկնին ուրախութեամբ ձրի ճաշած ըլլալնուն, փեսայն ու Հարսը 'ի

Գաղտըկեար կը տարուին, որ է Նոր ամուսնացելոց անկողնոյ սենեակը։ Փեսայն իր ետեւէն ինկողներէն փախչելու նպատակաւ պատրուակներ կը հնարէ, գլխու ցաւ, հոգնածութիւն պատճառելով. սակայն ունայն տեղ։ Զինքը առողջացնելու պատրուակաւ սառ ու սողայի ջուր կու տան խմելու, վարդեջրով և ուրիշ հոտաւէտ նիւթով զինքը վերէն 'ի վար կը թրջեն, ու կը պատրաստուին հազարումէկ կերպով զինքը չարչարելու։ Կերպ կերպ կատակաբան խաղերով բոլոր գիշերը զինքը արթուն կը բռնեն, և երբ առաւօտ կ'ըլլայ՝ հարկ է որ մանկահասակ փեսայն անոնց ամենուն դրամ ընծայէ։

Այլ որ զարմանալին է, երկրորդ օրը նոյն առջի օրուան հազարումէկ արարողութիւնք ճշդիւ կրկնելով վրան կը կատարեն. բայց այս անգամուն քուրմք մէջը չեն մտներ, այլ միայն կանայք ներկայ կ'ըլլան։

Այս արարողութիւնս Պասօ Գիզամէա կը կոչուի, և նպատակն է ամուսնացելոց ապագայ երջանկութիւնը ապահովելով ամրապնդել։

Համառօտութեան համար հարկ է մէկդի թողուլ շատ մը այլաբանական խաղեր որ երկու ամուսնացեալք պարտական են ընելու, մինչև հասնի ժամանակը որ հարսը թափօրով փեսային տունը տարուի։ Այս առենս իսկ հարկ կ'ըլլայ քահանին բերանը բանալ։ Հարսին հայրը հարկ է որ փեսային քոյրերուն իբր Սարձայդօյանի յիսուն ռուփի տայ, և փեսային հայրն ալ փոխադարձաբար իբր Դյաւնսախայմի նոյնչափ, թէ աւելի չէ, տալու է հարսին քոյրերուն։ Բայց ասով ալ չի լմննար. տանը դուռը անհամբերաբար կը սպասեն բազմաթիւ ֆագիրներ, մուրացկաններ և ուրիշ շատ մը մարդիկ, ամենքը ձեռքերնին բաց առատ ողորմութիւն ակնկալելով։ Այս ամենը բար-

ձրաձայն ձէյ, ձէյ — յաղթութի՜ւն, յաղթութի՜ւն — կը կանչեն, և Պար, քօհէյ պաչէյ բաքուկ — երկայն տարիներ ապրին փեսայն ու հարսը։

Զուելէն յառաջ դարձեալ նոր ու երկայն արարողութիւնները կան ընելիք. հարս ծնողացմէ բաժնուելուն համար լաց և ողբ կ'ընէ, թող ուրիշ արարողութիւններ։ Ամուսնացեալք փեսային տունը հասնելով, ինչպէս թէ բան մը եղած չըլլար, կամ ամենևին արարողութիւն մը կատարուած չըլլար, նոր և անլմենալի արարողութեանց սկիզբ կ'ըլլուի։ Ահաւասիկ մէկ քանին։

Զոքանչը՝ նոյն յարատև հպատակութիւնը ապահովելու դիտմամբ, ականջներուն մէջ մեղր կը դնէ և բերանը շաքար, որպէս զի՝ իբր անոյշ ու հեզաձայն աղջիկ, իր հրամանները միշտ սիրով ընդունի ու կատարէ։

Ոմանք 'ի կանանց մանչ տղայ մը կ'առնուն ու փեսային ծնգաց վրայ կը դնեն, որ ինքն ալ ապա առնու ու հարսին տանի։

Հազիւ թէ զոքանչը նոյն երեսը կը տեսնայ հարկ է որ անոր երկու ոսկեայ ապարանջաններ ընծայէ։ Իսկ այլք յընտանի կանանց այլ և այլ ընծաներ կուտան, ինչպէս ապարանջաններ, ականջի օղեր, քառամանեակներ, գօհարներ, և այլն։ Ասով ամենը կը ջանան Մանուին պատուէրը կատարել, որ կ'ըսէ. «Նայեցէք որ հանդէսից և արարողութեանց մէջ կանայք միշտ գօհարեղէններ ունենան, որովհետև եթէ կնիկը ճոխաբար ու վայելչապէս զարդարեալ չըլլայ, չկարենայ պիտի իւր այրը ուրախացնել ... Եթէ կնիկ մը աղէկ զարդարեալ է՝ բոլոր տունը կը գեղեցկանայ»։

Հարսը ապա խոհակերոցը կ'այցելէ, ուր՝ մաէ

դուրս՝ Հարսանեաց ճաշին համար ամեն տեսակ բարիք կը պատրաստեն։

Երկրորդ օրը ամենէն հետաքրքրականներէն մէկն է, որովհետեւ Հարսանեաց արարողութեանը մէջ՝ ծաղկեայ անկողնոյ գիշերը կը նշանակէ։ Իրիկուան ժամը ութին հարսին հայրը իր փեսային անհամար ընծաներու կոյտ մը կը ղրկէ. ինչպէս, ամեն տեսակ պտուղ, կարկանդակներ, տեսակ տեսակ ձեւերով, ինչպէս խմորեղէններ մարդու, կնկան, ձկանց, թռչնոց, կառաց, ձիերու, փղերու, որոց իւրաքանչիւրը վեցէն մինչեւ տասը լիտր կը կշռէ, թարմ կաթ, մածուն, անուշեղէններ, եւ ամեն տեսակ շաքարեղէններ, զարդեր, խաղալիքներ, բրնձէ շինուած գոհարներ, վարդի իւղ եւ վարդեջուր, հագուստներ, ծածկոցներ, գորգեր, ծաղկանց պսակներ, ասղնեգործ կօշիկներ, եւ այլ բազմաթիւ բաներ։ Բոլոր այս ընծաները կրելու համար մինչեւ հարիւր յիսուն ծառայ հարկ կ'ըլլայ վարձել. եւ այս ամենը 'ի թաքար տայեան հաւաքելով կարգաւորեալ կերպիւ կը շարեն, 'ի ցոյց նախ ազգական արանց եւ ապա կանանց։

Ամուսնացեալք ծաղկեպսակ եւ նոր զարդերով ծիրանեգոյն հանդերձ զգեցած, ճակատնին սանտալի խմորէն քսած, քովէ քով կը նստին եւ այն ընծայ եկած բազմաթիւ կերակուրներէն կը ճաշակեն։ Արարողական սովորութիւն է որ նախ փեսայն կերակուր հրամցընէ հարսին, եւ ապա հարսը փեսային. եւ այն մեծարանաց ցոյցն որ երկու անվարժք երկչոտաբար մէկմէկու կ'ընեն, շրջակայից ծիծաղը կը շարժեն մեծ զբօսանք պատճառելով։ Կերակուրը լմնցընելով՝ երբ իրենց մանկական աչաց վրայ քունը կ'իջնէ, սենեակ մը կը տանին, ուր անկողինը անհամար ծաղիկներով ծածկուած է. վերէն 'ի վար զիրենք վարդեջրով կը

թրջեն ու վերջապէս միսակ կը թողուն, սակայն տան բոլոր հետաքրքիրք պատուհանաց ճեղքերէն ուշ կը դնեն թէ այն մանկամտութիւնք իրարու ինչ պիտոր զուրցեն։

Առաւօտն որ կ'ըլլայ՝ տղայ փեսային անհամբերութեամբ դուռը կը բանայ. իսկ աղջիկը աւելի ևս անհամբերութեամբ բաղանիքէնին կը սպասէ որ զինքը ծնողացը տունը պիտոր դարձընէ։ Մեկնելու ժամանակը ոտքերը կը լուան և այս օրհնութեան խօսքերը կը զուրցեն. «Աներոջդ տունէն շարունակաբար ամուսնական երջանկութիւնը կարենաս վայելել»։

Այս ամուսնական հանդիսէն ետքը փոքրիկ հարսը իւր ծնողաց տունը դառնալով՝ մեծ ուրախութեամբ ու հանդիսով կ'ընդունուի։ Մայրը զինքը գրկելով — «իմ պաշտա — զաւակս — կ'ըսէ, իմ սոխարշանտանոր լուսինս — ո՞ւր գնացեր էիր։ Սիրտդ մեր վրան չէ՞ր ցաւեր, տուներնիս խաւար — ամայի — եղած էր քու մեկնելովդ։ Ի՞նչ ըսին մեր ընծաներուն. վար զարկի՞ն. կանայք հետդ ինչպէս վարուեցան. աներդ ու զոքանչդ ի՞նչպէս են»։

Մանկահասակ հարսին վրայէն ծիրանեգոյն մետաքսեայ զգեստները կը հանեն, ու բոլոր տանեցիք հետաքրքրաբար և մեծ ուշադրութեամբ կը սկսին զննել անոր ընծայուած գոհարները, վար զարնելով կամ գովելով զանոնք։ Անկէ ետքը տղայ հարսը շուտ մը իւր մանկական խաղերուն կը վերադառնայ, իւր տղայութեան կեանքը շարունակելով։ Սակայն երկրորդ օրը դարձեալ զինքը իւր մանկական խաղերէն կը վերցընեն ու հանդիսիւ իւր աներոջը կը տանին երկրորդ այցելութիւն մը ընել տալու։ Այս այցելութիւնս կարպասար կը զուրցուի, և նպատակն է տպաւորել անոր մանկական գլխուն մէջ որ օր մը

այն տունը ուր այցելու կ՚երթայ, բուն իր տունը պիտոր ըլլայ։ Հարկ է որ երթայ ու գիշեր մը հոն անցնէ. և թէպէտ լալով կը դժկամակի ու չուզեր երթալ, բայց հարկ է հուսկ ուրեմն հնազանդիլ. որովհետև առանց այս կարգադրի ամուսնութիւնը վաւեր չըլլար. անանկ որ եթէ այս այցելութիւնն ամուսնութեան օրէն սկսեալ ութ օրուան մէջ չընէ, արարողութիւն չի կրնար լրանալ, բայց եթէ տարի մը ետքը։

Երկրորդ օրը ծնողաց տունը կը դառնայ, և այնուհետև մէկ կամ երկու տարի հանգիստ կը մնայ. միայն հարկ է որ երբեմն երբեմն իր աներոջը տունը այցելութիւն մը ընէ։

Երկրորդ կամ բուն ամուսնութիւնք կը կատարուին՝ երբ հարսը արբունք կը հանի, որ է ըսել տասուերկու կամ տասուերեք տարուան հասակի մէջ։

Յակոբ, արդի Հնդիկ մատենագրի մը վկայութեամբ, այս դէպքիս վերաբերեալ արարողութիւնք անանկ պիղծ են, որ ստորագրելը ամօթխածութեան անարգանք դնել կ՚ըլլայ։

Արբունք հասած ըլլալուն լուրը աղմկաւ կը հռչակի, և պաշտօնը տանը վարսավիրային է, որ ընծայեցեալ լուրը դրացիներուն, ազգականաց ու բարեկամաց կը տանի. իսկ տան կանայք 'ի նշան ուրախութեան իրենք զիրենք քրքումի ջրով կը թրջեն։

Այլ մինչդեռ այլք կ՚ուրախանան՝ խեղճ աղջիկը չորս օր մասնաւոր արգելարան մը կը դրուի, որ մութ տեղ մըն է. այն չորս օրը ոչ ոք կրնայ իրեն դպչիլ, որովհետև պիղծ համարեալ է։ Իրեն տրուած կերակուրն է պարզ խաշուած բրինձ առանց աղի, կաթ, շաքար և հնդկարմաւ։ Հինգերորդ օրն երբոր ծագի,

դինը մերձակայ աւազան մը կը տանին, և հինգ կանայք, որոց արք ողջ են, իրեն կ'ընկերակցին։ Ամենը հոն կը լուացուին և ապա տուն կը դառնան. և բանտի տեղ ծառայած սենեկին մէջ ինչ կայ՝ կը հանեն կը նետեն։

Մէկ կամ երկու օրէ ետքը կրօնական արարողութեան մասը կը կատարուի, որ ամենևին անպարկեշտութեան բան մը չունի։ Քուրմը մէկ քանի աղօթներ կը կարդայ, զորոնք փեսայն հարկ է որ բառ առ բառ հետը կրկնէ։ Յետոյ դից ու դիցուհեաց, Շաւրիի, Մարգաւանոյի, Կանեշի, և ինը մոլորակաց կը նուիրէ բրինձ, շաքարեղէններ, պանան պտուղներ, զգեստներ ու ծաղիկներ։ Երկու ամուսնացելոց ձեռքերը մէկտեղ կը կցեն, մինչդեռ քուրմը մէկ քանի արարողական ձևեր կ'արտասանէ. և մի և նոյն ատեն փեսայն հարսին զգեստներուն մէջ մատնի մը կը պահէ։

Յետոյ բրնձի խմորով շինած քսանըմէկ պատկերք առջևնին կը դնեն, որոց քսանը արու սեռը կը ներկայացնեն, իսկ մին էգ սեռը։ Քուրմը այն ատեն հարսին կու տայ շաքար, կարագ, կաթ և հորթու մէզ և ապաւառ որ ուտէ ու խմէ։ Ապա մեծ ճաշ մը կը տրուի, յորում հարսը՝ միայն փեսային աւելցուցածը կ'ուտէ։ Իսկ այն քսանըմէկ պատկերք ամուսնացելոց սենեակը կը դրուին, որ այնուհետև հարսին պաշտօնական բնակարանը կ'ըլլայ։

Կ'ըսեն թէ հնդիկ ամուսինք առհասարակ մեծ սիրով կը կենակցին և իրենց ամուսնական երդումը հաւատարմաբար կը պահեն։ Սակայն եթէ կնիկը մեռնելու ըլլայ, թէ և երիտասարդ, գեղեցիկ ու շատ սիրելի եղած ըլլայ, էրկանը սուգը միայն ամիս մը կը տևէ։ Բայց նոյն իսկ այն սգոյ ու ցաւոց ամսուն

մէջ նոր ամուսնութեան մը դաշնագրութիւն կ'ըլլուի. և եթէ այս դաշնագրութիւնը այրի մնացած մարդը չընէ, իւր հայրը կամ եղբայրները նոյն բանին հետամուտ կ'ըլլան։ Հնդկաստան ամուրի վիճակէն աւելի անհանդուրժելի, աւելի նախատական ու վնասապարտ համարեալ բան չկայ։

Հոս հարկ է նաև համառօտիւ յիշենք հնդիկ տըղու մը ծննդոց վերաբերեալ արարողութիւնք։ Հընդիկ կրօնական մատեանք շատ մը այլ և այլ արարողութիւններ կը պատուիրեն տղու մը յղութեան ու ծննդեան նկատմամբ։ Հազիւ թէ տղայն կը ծնանի, դեռ մօրմէն չբաժնուած՝ հարկ է ոսկիէ դգալով բերանը կաթիլ մը մեղր դնել։ Իսկ հայրը տղայն տեսածին պէս՝ պէտք է ձեռքը կտոր մը ոսկի առնէ, Պըրահմային զոհ մը ընէ, և կիով՝ որ զոհէն մատուըներուն ծայրը մնացածն է՝ տղուն ճակատը օծէ։ Այս մասնաւոր լար մը առած, որ կը բաղկանայ եօթը կամ ինը թելէ ու եօթը չիւղ տարպա ըսուած խոտէ մը, տղուն ձեռքը կը կապէ։

Տասներկու օր ետքը տղուն անունը կը դրուի, և այս առթով մասնաւոր արարողութիւններ կան, որոնք անհրաժեշտ պահելու են. ինչպէս նաև երեք ամիս ետքը, երբ առջի անգամ տղան տնէն դուրս կը հանեն, և վեց ամիս ետքը երբ տղան կը սկսին ձեռքով կերակրել, և նմանապէս եթէ տղան մանչ է՝ երեք տարի ետքը՝ երբ առջին անգամ անոր գլուխը կ'ածիլեն։

# Է

*Դեգերանք յԵլէփանդա։ — Արհեստաւոր բուծարիչք։ — Ելէփանդայի տաճար այրը։ — Արօշօ — Պէնարըր։ — Պենա Սդենա։*

Դեկտեմբեր ամսոյն վերջերը հասած էինք. ամենօրեայ դեգերանքս՝ քաղաքին փողոցաց տեսարանք ինձ սովորական ըրած էին. անսովոր իղձ մը սիրտս կը յորդորէր դոյզն ինչ քաղքէն հեռանալու, 'ի խնդիր նորոյ օդոյ, 'ի տես նորոց տեսարանաց։ Առ այս փութացուցանէին զիս նաև տնեցւոց յորդորք, երթալ 'ի տես դարաւոր գետնափորից Ելէփանդա կղզւոյն, որք նախնի Հնդկաց մեծագործութեան հռչակաւոր յիշատակք են։ Մնայր ինձ ծովային ճամբուն երկայնութեան ու գրեթէ միօրեայ միայնութեան ձանձրութեանը յաղթանակել. առ այս յաջողեց բաղդս՝ զԱնգղիացի բարեկամս, որ 'ի Վենետկոյ ցՍուէզ ինձ ընկերացած էր, այժմ 'ի Սէյլանէ 'ի Պոմպէյ բերելով, որ առաջարկութեանս ունկնդիր՝ զուարթութեամբ ուզեց ինձ ընկերել։

Ի դիւրութիւն մեր դեգերանաց ընտրելագոյն էր առագաստաւոր նաւակ մը վարձել. ասով կղզւոյն ոչ միայն հեշտեաւ կ'ըլլայ մերձենալ, այլ և չուն և դարձը մեր կամքէն կրնար կախուիլ։ Սակայն այս նաւակք այսպիսի անպատշաճութիւն մի ունին, որ երեկոյեան դէմ ոչ միայն տեղատուութեան հոսանք բուռն են, այլ և քամին իսկ կ'իջնայ. և այնուհետև հարկ է թիոց բռնութեամբ նաւակը վարել, որ շատ ժամուց պէտք են մինչև ցքաղաք։

Յօդուտ հետաքրքիր Եւրոպականաց՝ կայ փոքր շո-

գենաւ մի, որ մի անգամ յեօթնեկի, 'ի միջօրէին, կը մեկնի յԱբօ՛լօ Պէնտըր ամբարտակէն, իւր ընթացքը դէպ ուղիղ յԷլէֆանդա ուղղելով, ու երեկոյեան ժամուն միւսանգամ կը դառնայ 'ի Պոմպէյ։

Չորեքշաբաթի օր մըն էր՝ երբ մի միայն երկու ճանապարհորդքս բաղձեցանք 'ի շոգենաւակն, յանձնելով զմեզ երեք Հնդիկ նաւաստեաց խնամոցը. պանդոկի սպասաւոր մի, ըստ սովորութեան, միջաճաշը մատոյց մեզ, մսեղէն, հաւեղէն, այլազգի համեղերձ, և պտուղք և անոյշ գինեաւ զոր հետերնիս առնելու անհոգացած չէինք, և զոր քամեցինք 'ի յիշատակ բացակայ հայրենեաց։

Երկինքը կապոյտ ու ջինջ էր 'ի վերուստ, ինչպէս ամեն օր, և անուշ հողմիկ մը նաւահանգստին պըղտոր ջրերը ծածանելով ժամուն բուռն ջերմութիւնը առ սակաւ մի կ'ամոքէր։ Հանդէպ մեզի հեռաւոր լերանց տեսարանք. անոնցմէ ասդին բազմաթիւ կըղզեկաց կանաչազգեստ ծառաստանք, յորս կը պանծային զոգցես Հնդկային ճոխութեան ամենազգի արմաւենեաց գագաթունք։ Մինչդեռ նաւակնիս շոգւոյ զօրութեամբ ջրին երեսը ճեղքելով բազմաթիւ շոգենաւուց մէջէն կը սողոսկի, նիւթ կը փնտռենք ժամանակին ձանձրոյթը մեռցնելու։ Անգղիացիս իւր սիկառին ծուխը հողմին տալով զոգցես կ'արտասայ որ իւր յետին ճանապարհորդական շրջանին մէջ շարունակ իբր սուրհանդակ ընթանալով չէր կարողացած ճանապարհորդութենէ մեծ օգուտ քաղել։ Գլխէն չէին անցած այնպիսի դէպքեր, որ մարդուս մտաց մէջ խորին և անջնջելի տպաւորութիւն մը կը թողուն, և ամեն ժամանակ ճանապարհորդութիւնը անձկալի կ'ընեն։ Կ'երանէր զիս լսելով փոքր սահմանիս մէջ դիտածներս և գլխէս անցածները։

Սակայն մեր խօսակցութիւնը բաւական չէր զմեզ յագեցնելու. կը փափագէինք մեր գտնուած աշխարհին վրայ նոր բան մը լսել։ Նաւավարաց կ'ակնարկէինք, ռամկաց մտածութիւնքն խուզելով, տեղեկութիւն մը խնդրելով, ժողովրդեան բարուց վրայ ծանօթութիւն անձկալով։ Դժբաղդաբար անոնք անգէտ էին մեր բարբառոյն ինչպէս մենք իրենց լեզուին։ Այլ կը մնայր մեզի ընկեր սպասաւորը՝ որ էր 'ի բորդոգալցի գաղթականաց. որ հոն ծնած ու սնած, աշխարհին ու տեղացւոց բարուց քաջ ծանօթ էր։ Ի նմանէ ուստի շատ մը տեղեկութիւն կը քաղենք և հուսկ ուրեմն խօսակցութիւնը արհեստաւոր թունաւորիչ գողոց վրայ կ'իյնայ, որք այնքան համբաւաւոր եղած են միշտ 'ի Հնդիկս։

— Սա նաւաստին կը տեսնէ՞ք, կ'ըսէ, տարեց Հընդիկ մը ցցնելով՝ որ նաւառաջքը կը հսկէ, այդպիսի դասու գողոյ մը եղբայր է. որ եթէ մի ժամու յանցաւորութեամբ իբր գլխապարտ չէ մեռած, տիրոջս երախտապարտ է. որ հզօր պաշտպանութեամբ կրցեր է զինքը քանի մը տարուան բանտով յայտնի մահուան դատապարտութենէն ազատել։ Այնուհետև իբր հաւատարիմ շուն՝ տիրոջս ծառայութեանը մէջ մտած՝ ոչ երբեք իր գործէն կը հեռանայ։

— Եւ ունի՞ս, ըսինք, այդ թունաւորողաց վրայ բաւական տեղեկութիւն մեզի տալու, զբաղանք մը կ'ըլլայ մեզ ժամանակը հեշտեաւ և անձանձիր անցընելու։

— Շատ դժուարին պատմութիւն մը չէ, պատասխանեց սպասաւորը. եթէ ներողամիտ ըլլաք՝ ահա պատմեմ։ Այդ նաւաստիէն շատ անգամ լսած եմ ու կրնամ ստոյգ ծանօթութիւններ տալ։

— Հաճիս զուրցէ, ըսինք, ինքզինքնիս անգորրա-

քար նստարանին վրայ հանգչեցնելով։ Եւ բորդոգալցի սպասաւորն այսպէս սկսաւ զրուցել։

— Առհասարակ ծանօթ բան է ամենուն թէ շատ դարերէ 'ի վեր միշտ եղած է 'ի Հնդիկս դաս մը մարդոց, որք արուեստ դարձուցած են ճանապարհորդս թունաւորել, որպէս զի անվտանգ և աներկիւղ անոնց ինչքը կողոպտեն։ Սակայն շատ տարի չկայ որ այն արհեստաւոր թունաւորիչք՝ վաճառականները թողլով հնարեցին սայլապաններն ու կառապանները թունաւորել՝ սայլն ու եզները անկասկած յափշտակելու նպատակաւ։ Այս, ըսեմ, ազնուական արհեստին կ'աշակերտին առհասարակ թէ Հնդիկ կռապաշտք և թէ Մահմէտականք։ Միայն թէ այս չարագործք՝ վախնալով որ չըլլայ թէ մատնուին, կը զգուշանան մասնաւոր ընկերութիւն ձևացնելէն. միշտ առանձին և ամենայն գաղտնութեամբ կը գործեն։ Իրենց զգուշութիւնը աւելի անդին տանելով՝ որպէս զի իրենց ոճիրը չյայտնուի՝ ոչ երբեք տեղ մը հաստատուն կը կենան, հապա յաճախ տեղէ տեղ կը փոխուին։ Հարիւր մղոն ընդարձակութեամբ միջոցի մէջ՝ երեք կամ չորս սպանութիւն ընելէն ետքը, կը մեկնին կը հեռանան անկէ, շատ մղոն բացակայ երթալով. և ալ առաջին տեղը չեն դառնար բայց եթէ շատ տարի անցնելէն ետքը, երբ կը գուշակեն որ սայլապանք ալ մոռցած են իրենց արուեստակցաց գլխուն եկածը, և ապահովութեան մէջ կը հանգչին։

Իրենց գործածած թոյնը ընդհանրապէս զառիկն է. և երբ սայլապանը կը մեռցնեն, սայլն ու եզները հեռու տեղ կը տանին, ու հոն տեղի վաճառանոցը՝ այլոց ձեռօք կը վաճառեն, որպէս զի չըլլայ թէ մէկու մը միտքը կասկած մը արթնցնեն։ Այնպէս խորամանկ են այս թունաւորիչք՝ որ շատ քիչ անգամ

կը յանդգնին անձամբ վաճառատնոցը երթալ։ Իրենց գործածած միջոցն ալ այնպէս բնական և նաև երկրին մէջ ալ անանկ սովորական բան է՝ որ ոչ երբեք կասկած կը յարուցանեն սայլից տեարց կամ սայլը վարողներուն միտքը։

Թունաւորիչը ճոխ զգեստ կը հագուի և ինքզինքը վաճառական ձևացնելով ցորեն ու բամբակ գնելու եկած, իբր օտար ոք՝ քաղաք մը կամ գեղ մը կը հասնի, և հոն հասարակաց օթևան մը կ՛իջևանի։ Ապա այնպէս մը կը ձևացնէ ինչպէս թէ հեռաւոր վաճառանոց մը մեծ վաճառականական գործ մը ունի ընելիք. և այնպիսի կարևոր գործի մը համար անհրաժեշտ պէտք ունի վարձելու սայլ մը ու եզներ որ զինքը հոն տանին։ Շատ բնական բան է որ այնպիսի ճոխ երևոյթով մէկ մը առանց դժուարութեան կարենայ սայլապան մը գտնել որ յանձն առնու իր սայլն ու եզները վարձելու։ Մեր ձևացեալ վաճառականն այն ատեն սայլապանին եզներուն մէջէն լաւագոյնները կ՛ընտրէ որ զինքը հոն տանին, վարձքը կը դաշնադրի և անոր փոքր մաս մը կանխիկ կը հատուցանէ, խոստանալով որ տեղը հասածին պէս մնացորդը ամբողջապէս վճարէ։

Այս կարգադրելէն ետքը զտէրը կը հրաւիրէ որ եզները ինքը վարէ. բայց եթէ տէրը հրաժարի, ուրիշ գործ մը կամ անհմտութիւնը պատճառելով, այն ատեն կը խնդրէ որ իւր փոխանակ ուրիշ հմուտ վարող մը շնորհէ իրեն։ Այսպէս ամենայն միջոց 'ի կիր կ՛առնու որ ինչ և իցէ ձախորդ. կասկած հեռի բռնէ իրմէն։

Բաւական է որ մէյ մը ճամբայ ելլեն. այնուհետև Թունաւորիչը մտերմութիւնը ձեռքն առնելով կը ջանայ սայլավարին հետ բարեկամութիւն կապել, և այն-

պէս կը վարի. որ վերջապէս գրեթէ գրեթէ սրտակից կ'ըլլան: Եւ եթէ դաստակարգի խորութիւն մը չմնայ մէջերնին, երկուքն ալ մէկտեղ կը նստին կերակուր կ'ուտեն: Բայց եթէ դաստակարգի խորութեան պատճառաւ այս բանս անկարելի ըլլայ, այն ատեն ձեւացեալ վաճառականը իր անկասկած սայլավար բարեկամին անուշեղէն կը հրամցնէ: Այսպիսի ընտանութիւն ընդ մէջ վաճառականին ու սայլավարին 'ի Հընդիկս սովորական բան է և ամենևին անկասկած: Սայլավարին բնակութենէն շատ հեռանալէն ետքը ձեւացեալ վաճառականը պատեհը քաղելով կերակրով և կամ անուշեղէնով թոյնը կը մատակարարէ:

Երբ թոյնին նշանները կը սկսին յայտնուիլ, թունաւորիչը ցաւակցութիւն ձեւացնելով կը ջանայ զվըշտացեալը մխիթարել անանկ յանկարծակի հիւանդանալուն. և ապա զինքը սայլին վրայ հանգստաբար զետեղելով, ինքը զսայլը կը սկսի վարել:

Առանձնական տեղ մը հասնելով, եթէ սայլավարը մեռած է՝ վիզը չուան մը կ'անցնէ, և սայլէն վար քաշելով ճամբէն անդին կը ձգէ, և կամ առանձին դաշտի մը վրայ կը թողու: Բայց եթէ տեսնայ որ թոյնը ծանր կը ներգործէ, կը մօտենայ և դեղ տալու պատճառանօք՝ նոյն թոյնէն ուրիշ մաս մըն ալ ջրախառն կը խմցնէ անոր: Խեղճ թշուառը արդէն կէս մը մեռած ըլլալով, և ամենևին կասկած չունենալով որ այնպիսի բարեսիրտ բարեկամէ այնպիսի չարիք մը ընդունի, ինքզինքը բոլորովին չարագործին ձեռքը կը յանձնէ: Եւ եթէ այս ալ բաւական չըլլայ, կամ չուանով զինքը կը խեղդէ, և կամ սայլէն վար նետելով քարով մը գլուխը կը ջախջախէ:

Երբ չարաբաղդ սայլավարը կամ թոյնով և կամ չուանով կը մեռնի, այս չարագործ թունաւորիչներէն

ոմանք խսկոյն անոր դիակը մէկդի կը նետեն. սակայն այլք նոյնը ծածկոցի մը մէջ պլլած հետերնին կը տանին, ինչպէս թէ մարդը քնանալու ըլլար. բայց միշտ գեղերէ ու բնակութիւններէ հեռու կը բանեն իրենք զիրենք. թէպէտ և կան նաև այլք աւելի յանդուգն որ այս զգուշութիւնս ալ չեն բանեցներ։ Երբ դիակը կը սկսի նեխիլ՝ այն ատեն կ'առնուն ու մէկդի կը նետեն։ Եւ ասոնց այսպէս ընելուն պատճառն է, որ մարմինը մէյ մ'ըն որ սկսի լուծուիլ՝ այնպէս շուտով կը քայքայի՝ որ այնուհետև վախ չըլլար դիակին ճանչցուելուն, եթէ յանկարծ վարչութիւնը ուզենայ պահել տալ որ քննութիւններ ընէ։ Երբեմն զգեստներն ալ դիակին վրայ կը թողուն. այլ ուրիշ անգամ ալ ոչ միայն զգեստները կ'այրեն, հապա ինչ և իցէ զարդ ալ ունենայ անյայտ կ'ընեն, որ չ'ըլլայ թէ անոնց պատճառաւ դիակը ճանչցուի։

Ուրիշ միջոց ալ կը բանեցնեն այս դիւական մարդիկ, իբր աւելի ապահով իրենց ոճիրը ծածկելու։ Իր զգեստներովը ծածկոցի մը մէջ ամփոփած, գիշեր ատեն ճամբուն մէկդին ծառի մը տակ կը հանգչեցընեն, ինչպէս թէ քուն ըլլար, կարծել տալով թէ օտար ճանապարհորդ մ'ըն է որ երկայն ճանապարհորդութեան խոնջութենէ և կամ հիւանդութենէ սպառած մեռած է։ Այսպէս գտնուած դիակներ գիւղերու առաջնորդաց միտքը ամենևին կասկած չեն տար, որովհետև բնական դիրքի մէջ կը գտնեն զանոնք։ Ուստի ըստ այնմ ալ իմաց կու տան ոստիկանութեան, որ լսածին վրայ առանց մասնաւոր քննութիւն ընել տալու թոյլ կու տայ որ թաղուին «բնական պատճառէ մեռեալ» հրատարակելով զայն, որովհետև արտաքոյ կարգի բան մը չի տեսներ։

Շատ տարի չկայ այսպիսի չարագործ թունաւորիչ

մը դիպուածով բռնուելով՝ խոստովանեցաւ թէ բուն իր ձեռօք տասնեւութ մարդու մահ պատճառած էր, և իւրաքանչիւր դէպքը պատմած ժամանակ՝ ուրախութեամբ ափ ափի կը զարնէր։ Այս չարագործը մահմէտական մըն էր, և թոյնը արծաթ տփի մէջ գրած՝ թևին տակը կապած հետը կը կրէր։

Եւ սա նաւաստին որ կը տեսնէք, յաւել ըսելու սպասաւորը, սոյնպիսի չարագործի մը եղբայրն է, որ շատ ժամանակ տիրոջս ծառայութեան մէջ անցուցած ըլլալով, մի անգամ ևեթ իւր եղբօրը ատանկ ատելի գործի մէջ ձեռնտու ըլլալու համար, քիչ մնաց գլխապարտութեամբ իւր կեանքը կնքելու, եթէ տիրոջս հզօր պաշտպանութիւնն եղած չըլլար, որ զինքը յայտնի դատապարտութենէ ազատէ։

— Եւ այսպիսի մարդ մը, ըսի, ձեր ծառայութեանը մէջ պահելու չէ՞ք խորշիր։

— Երկիւղ մը չկայ, պատասխանեց սպասաւորը, որ մեզ խորշել տայ. որովհետև ըրածը 'ի չարութենէ չէր, այլ 'ի չար խրատտուութենէ և 'ի սիրոյ եղբօրը։ Այլ կրած քանի մը տարուան խիստ բանտարգելութիւնը բաւական խրատ եղած է զինքը ապագայ չարութիւններէ զգուշացնելու։ —

Շոգենաւակը իւր միակերպ ընթացիւք դէպ արևելք կը սրանար. քաղաքը՝ ետևնուս թողած՝ 'ի հեռուստ մշուշի մէջ թաղուած գիծ մը կը թուէր։ Իսկ մեզի հանդիպակաց կղզիք, դէպ ուր կը դիմէինք, երթալով կը մեծնային, ստուգութեան կերպարանք մը կ'առնէին, ու վայրկեանէ վայրկեան կարծես թևերնին բացած՝ մեզի ընդառաջ կը փութային. Հուսկ ուրեմն սպասաւորը կղզիացեալ բլուր մը մատնանիշ ընելով,

— Ահաւասիկ Ելեփանդա, կանչեց. դեռ եւս քանի մը վայրկեան, և ահա այն գծին վրայէն, զոր ջրին երեսը կը տեսնէք, ցամաք պիտի ելլենք։ —

Կղզիին ծովափը որովհետեւ զառիվեր է, մակընթացութեան ժամանակ շոգենաւակք մինչեւ որոշեալ տեղ մը կարող են հասնելու, այն տեղէն մինչեւ ծովափ ջրին մէջէն մեծամեծ քարեղէն քուէիւք երկայն գիծ մը շինուած է. այն գծին վրայէն քալելով ճանապարհորդք ցամաք կ'ելլեն։ Բայց երբ տեղատուութիւնը վրայ կը հասնի, հարկ է որ ջրին հետ շոգենաւակք ալ քաշուին հեռանան, եթէ չեն ուզեր ցամաքը նստիլ՝ յաջորդ մակընթացութեան մնալով։ Եւ այնուհետեւ ճանապարհորդք որ ժամանակին չեն փութար կղզիէն մեկնելու, հարկ է որ տեղացի նաւակաւ մը շոգենաւակը դառնան։ Ալ այս տեղացի նաւակք ուրիշ բան չեն եթէ ոչ ծառի մը կոճղ, որ երկչոտ մարդոց վստահանալի ընդունարանք չեն թուիր։

Այս միջոցիս շոգենաւակը զմեզ այն քուէայ գծին վրայ հանած էր. և մեք մերթ զգուշութեամբ քալելով լպրծուն քուէից վրայ, մերթ անոնց մէկմէկէ թողած պարապ միջոցները ոստոստելով, վերջապէս ոտքերնիս հաստատուն հողին վրայ կոխեցինք։

Ելեփանդա կղզին տեղացւոց լեզուաւը Կարաբուրի կը կոչուի, որ գետնափորից քաղաք կը նշանակէ։ Պոմպէյ քաղաքէն վեց մղոն հեռու է. իսկ հանդիպակաց ցամաքէն չորս մղոն միայն։

Բորդուգալցիք եղան որ այս կղզւոյս անունը Ելեփանդա դրին. որովհետեւ ժամանակաւ ծովափը քարէ փղի մը հսկայ արձանը կար. զոր կէս մը ժամանակը, այլ աւելի Բորդուգալցոց բարբարոս հարուածները կ'ըսեն, մաշեցնելով խորտակեցին։ Հիմա այն

փղին գլխուն մաս մը միայն դեռեւս մնացած է, զոր Գոմպէյի Վիկտորեայ տնկաբանական պարտէզը փոխադրած դրած են։

Ցամաքը ելլելով առջի բանն որ մարդուն երեւակայութիւնը կը ջերմացնէ է այն բարգաւաճ բուսաբերութիւնը զոր չուրջ կը նշմարէ։ Հսկայ ծառք՝ որոնց աճման՝ բնութիւնը իւր ազատութեամբը կը զբաղի, անվրդով ամենեւին մարդկային բարբարոս ձեռքէն. այն բարգաւաճ կանաչութիւնը, այն կերպ կերպ և գոյնզգոյն ծաղկունք, այն ոսկեգոյն պատենաթեւ միջատք, այն պէսպէս երանգ բիւրաւոր թիթռունք՝ զմայլմամբ և քաղցրութեամբ սիրտդ կը վառեն։ Ցաւել ասոնց վրայ նաև այն աղքատին ձկնորսաց մերկ, սևագոյն, վայրենի երևութով տղայք որ փոքր ափերով տեսակ տեսակ միջատք կը ներկայացնեն քեզի, գոյզն ինչ դրամ փոխարէն պահանջելով։ Ինքզինքդ այն վայրենի երկիրներու անտառները փոխադրուած կ'երեւակայես, որոց ստորագրութիւնը այնքան անգամ կարդացած ես, և որք այնքան ախորժելի տպաւորութիւն թողած են սրտիդ մէջ։

Հնդիկ սեւադէմ տղայոց առաջնորդելովը՝ սև քարէ սանդղէ մը կը սկսինք վեր ելլել, որ ժայռին մէջ փորուած գոգցես երեք կամ չորս հարիւր աստիճան բարձր է։ Կ'երանենք այն բարերարը, որ այցելուաց աշխատութիւնը նուազեցնելու դիտմամբ՝ այսպիսի բազմածախս սանդղոց շինութիւնը մտածեր է։ Ըստ ասելոյ տեղւոյն պահապանի մը, շատ տարի չկայ յորմէ հետէ այս մեծագործ սանդուղք շինուած են։ Գուրրումսի Ռամլալ անունով ճոխ Հնդիկ մը, 1854 տարւոյն, քսանըհինգ հազար ֆրանգ ծախք ընելով փորել տուած է։

Անմիջապէս որ սանդղոց գլուխը կը հասնինք՝ տեղւոյն հնդիկ պահապան մը մեզ կը դիմաւորէ, և սովորութիւնը մեզի մեկնելով՝ կը ստիպէ զմեզ տոմսակ առնալ եթէ այրը տեսնել կ'ուզենք։ Թէ ինչ բանի համար զատարս այդպիսի հատուցման կը ստիպեն անանկ երեսի վրայ մնացած տեղւոյ մը համար՝ չկրցանք հասու ըլլալ. բայց մոքերնէս չանցաւ թէ Գուրումսի Ռամլալի բարերարութեանը հետևանք մը ըլլայ։

Տոմսակը՝ որ դրամ հատուցանելէն՝ զատ ուրիշ նշանակութիւն մը չունի, ձեռքերնիս առած՝ դէպ տափարակ փոքր հրապարակ մը կը յառաջենք որ այրին մուտ առջին է։ Բակի մը մէջէն անցնելով տաճար այրը կը մտնենք, որ չորս կարգ ըստուար սիւներէ կը բաղկանայ։ Զարմանքս կը շարժի մտածելով այն դարերը յորս մարդկային երկայնամիտ յարատեւութիւնը այսպիսի մեծագործութեանց կը զբաղէր. ոչ միայն դից պաշտօնը վայելչապէս ապագայից աւանդելու, այլ նաև իրենց յիշատակը դարուց 'ի դարս անմահացընելու։

Ողջոյն տաճար այրը ժայռի մը մէջ փորուած է. երկայնութիւնն է 'ի մտից մինչև խորը քառասուն և չորս մեթր, և գրեթէ նոյնչափ է լայնութիւնը. իսկ բարձրութիւնը կը տարբերի հնգէ մինչև վեց մեթր։ Ահագին ըլուրը բոլոր իւր ծանրութեամբը քսանըվեց հզօրաքանդակ սիւներու վրայ կը հանգչի. բայց ասոնցմէ միայն տասնըութ հատ հիմա ողջ կանգուն են. միւս ութը խորտակած անհետ եղած են, և միայն խարիսխնին ու խոյակնին դեռ ևս մնացած կը տեսնուին, մէկը գետինը ցցուած, միւսը ձեղունէն առկախեալ իբր չթաքարինք այրից։ Այն ահեղատես սիւնք հսկաներու երևոյթ ունին, որ ողջոյն ըլրին

ծանրութիւնը ուսերնուն վրայ վերցնելու կը քրտնին։

Ջուրն՝ որ անձրևաց եղանակին ներս կը յորդէ կ'երևի թէ մաշող ազդեցութիւն մը կը բանեցնէ. և կը կարծուի թէ ժամանակաւ միւս սիւնք ալ մաշելով պիտի ջնջուին։ Սակայն խորտակեալ սեանց կործանիչը ոչ այնքան տարերք կը թուին որքան տգիտութեան բարբարոս բռնութիւնը։

Աչքերնիս չորս դին կը յածենք, ողջոյն որմունք դիցաբանական քանդակներով զարդարեալ են։ Բայց ողջոյն այն քանդակք, յորս կը փայլի նախնի կրօնասիրութեան չքեղութիւնը, այնպէս խորտակեալ ջախջախեալ են՝ որ մարդ չի կրնար ցաւոյ զարմանք մը չզգալ ու պատճառը չհարցնել։ Ըստ վկայելոյ պահապանին, տեղացիք կրկին պատճառ կու տան այս խորտակմանց. մէյմը Եւրոպացի նախնի այցելուաց, և գլխաւորապէս Բորդոգալցւոց՝ կրօնական չափազանց եռանդը եղած է կ'ըսեն, որ այն կռապաշտական յիշատակները ջնջել՝ աստուածասիրական պարտք համարած են. կամ բոլորովին ջնջելով և կամ իբր յիշատակ՝ կտոր կտոր հետերնին Եւրոպա տանելով, այսու գրութեամբ յԵղեփանդայ կղզւոյ։ Երկրորդ, կ'ըսեն թէ երբ քրիստոնեայք տեղւոյն տիրելու վրայ էին, քուրմք չհանդուրժելով տեսնել իրենց տաճարը անհաւատից ձեռքն ինկած, մէջը խար լեցուցած բռնկցուցեր են որ բոլորովին կործանեն. և ահա ասկէ առաջ կու գան, կ'ըսեն, բոլոր այն բարբարոսական ապականութիւնք։

Այրին խորը, անմիջապէս մտից հանդէպ, Շիվա կամ Մահատիվա դից եռադէմ գրեթէ վեց մեդր բարձր՝ հսկայ արձանը կանգնած է, ինչպէս թէ տաճար այրին խորանն ըլլար։ Մին 'ի դիմաց անմիջապէս դէպ 'ի մտից ճակատը կը հայի, միւսքն կողմնակի։

Միջին դիմաց երեւոյթն անդորրութեան վսեմութիւն ունի. գլուխը բարձր թագ կը կրէ, զարդարեալ նուրբ քանդակներով, որ մանեակներ ու գոհարներ կը ներկայացնեն։ Աջակողմեան դէմքը կատարելութեան երեւոյթ մը ունի, բերանը ծամածռեալ է, կատաղի աչքը ակնակապճէն դուրս կը ցցուի, գլխուն թագն իսկ օձերով զարդարած է, և մէկ ձեռքովն իսկ ակնոցաւոր օձ մը կը բռնէ։ Այս դիմաց ահաւոր աչքէն է որ զարհուրելի բոց մը պիտի ելլէ, և ողջոյն աշխարհը պիտի լափէ։ Ձախակողմեան դէմքը կիսաժըպիտ է, ու ձեռքին մէջ ծաղիկ մը բռնած է։

Հնդիկք այս կռոց Դրիմուրդի անունը կու տան, որ կը նշանակէ եռեակ աստուածութիւն. և կը ներկայացնէ զՇիվա ըստ որում ստեղծող, ապականող և պահպանող։ Այս Դրիմուրդիին աջ դին, փոքր ուրիշ սրբատեղւոյ մը մէջ կանգնած է անհրաժեշտ Լինկամը։

Տաճար այրին շուրջանակի որմունք բազմաթիւ քանդակներով զարդարեալ են. ասոնք չեն այնքան զարմանալի իրենց նրբութեամբ ու գեղեցկութեամբը, որչափ իրենց հսկայակերպ մեծութեամբը։ Եւ թէպէտ շատ կրած կը տեսնուին, ոչ միայն քարին կակղութեանը պատճառաւ, զոր ժամանակն ու թացութիւնը կը հիւծէ, այլ նաև գլխաւորապէս Բորդոգալցւոց բարբարոսութեամբը, ինչպէս կ'ըսեն, որ զանոնք ապականելը կրօնական բարեգործութիւն մը համարած են։ Հանդերձ այսու դեռ ևս դժուարին չէ ըմբռնել այն քանդակաց ներկայացուցած իմաստը, ինչպէս նախնի քանդակագործաց ջերմ երեւակայութիւնը ուզեր է ապագայից աւանդել։ Շիվա և իւր Բարվադի կնիկը այլ և այլ կերպերով ներկայացուցած է. մերթ առանձին նստած կը տեսնես զանոնք, մերթ ալ հընդկական դից անհամար բազմութեանը

մէջ, որ յարգանօք իրենց կը նային։ Տեղ մը իրենց հարսանիքը կը նշմարես, այլ տեղ Կանէշա՝ իրենց որդւոյն՝ ծնունդը, Տաքշիայի զոհը, և այլ ասոնց նման առասպելական ներկայացումունք։

Տաճար այրին երկու կողմը գաւիթք կան, նմանապէս ժայռին մէջ փորուած. աջակողմեանը մատուռ մ'ունի Լինկամով հանդերձ, և պաղ ջրոյ փոքր լճակ մը՝ որ ժայռին տակէն դէպ 'ի ներս խորը կը մխի։ Ձախակողմեան գաւիթը խոր վիրապ մը կը նմանի, և լոյսը 'ի վերուստ բլրին գագաթին մէջէն կ'ընդունի։ Այս գաւիթս ալ նմանապէս մատուռ մ'ունի, ուր երկու քարէ առիւծք կան, որ տեղւոյն աւերակաց մէջէն գտնուեցան։

Այս շքեղաշէն տաճարը երեք դարէ 'ի վեր բոլորովին երեսի վրայ թողած է. ստոյգ է որ երբեմն երբեմն կղզին բնակող ձկնորսք յարգութեամբ՝ կայցելեն, և ջերմեռանդաբար իրենց աղօթքն ու երկրպագութիւնը առ դիս կը մատուցանեն, բայց հանդերձ այսու կ'երևի թէ ա՛լ իբր սրբավայր չի համարուիր, որով և ոչ իսկ խնամքով կամ մասնաւոր յարգութեամբ կը պահպանուի։ Մահրադ Հնդիկք 1737ին Ելեփանդա կղզին Բորդոգալցւոց ձեռքէն առնելով, այս տաճարս՝ ինչպէս թէ անհաւատից ներկայութեամբը իւր սրբութիւնը բոլորովին կորուսած ըլլար՝ գլխովին երեսի վրայ թողուցին։

Հնդկաց կրօնքը կ'երևի թէ այժմ բոլորովին կորուսած է իւր այն գերագոյն ահաւորութիւնը և խորհրդաւոր կերպարանքը, որմէ շարժեալ իրենց նախնիք՝ այսպիսի հոյակապ շէնքեր կանգնեցին։ Այս հնաւանդ կրօնից մէջ հիմա ահ ազդող բան չէ մնացեր. ամենայն ինչ անհեթեթ, աղտեղի ու ստորաքարշ է. և նոյն իսկ պաշտօնեայքն ամենևին անտեղեակ են այն հզօր դից՝ զորոնք պաշտեցին իրենց նախահարք։

Թէ որչափ հին են այս Ելեփանդայի այրք չգիտցուիր. այս միայն ստոյգ է որ իրենց հնութիւնը իններորդ դարէն անդին չանցնիր։ Այլ չկայ ամենևին արձանագրութիւն մը որ այս բանիս լոյս տայ. և ասոր պակասութիւնը գլխաւորապէս այրին վրայ եղող մեծամեծ ծառերուն կը տրուի, որոց արմատք գաղտնի զօրութեան մը շարունակաբար մղելովը՝ ամենայն ինչ կործանելու և աւերակ դարձնելու կը ճգնին, ինչ և իցէ նշան կամ՝ յիշատակարան՝ տերևոց թանձր խաւի մը տակ թաղելով։

Կ'ըսեն ոմանք որ եթէ երեք կամ չորս մետր խորութեամբ փորուի, շատ մը հնդկային հնութիւններ գտնուելու են, որ շատ դարերէ 'ի վեր տերևոց խաւերու ներքև թաղուած կը մնան։ Սակայն այս ևս կը յիշատակուի որ ժամանակաւ այրին մտից առջին արձանագրութիւն մը եղած ըլլայ, զոր ապա Բորդոգալցիք 'ի Լիսբոնա տարած են. բայց թէ ինչ աստիճանի ստուգութիւն ունի այս կարծիքս ծանօթ չէ։

Վերջի ատեններս երբ Կալէսի իշխանը ճանապարհորդեց 'ի Հնդիկս, Պոմպէյի քաղաքապետը այս այրիս մէջ իրեն չքեղ ճաշ մը տուաւ. սակայն կ'ըսեն ականատեսք որ ոչ բազմադիմի հանդերձանք, ոչ հազարաւոր ճրագաց փայլը, և ոչ բազմաթիւ կոչնականաց ուրախութեան աղաղակք՝ կրցան այն տեղւոյն խորհրդաւոր ահաւորութիւնը ջնջել։

Այրէս ելլելով դէպ 'ի բլրէն վեր կ'առաջնորդեն մեզ, անմիջապէս այրին վրայ, ուր փոքր մատուռ մը կը գտնուի։ անզարդ ամենևին, բաց 'ի անհրաժեշտ լինկամէն որ կեդրոնը տնկուած է. այն լինկամին բոլորը՝ անձրևներէն քամուած ջրիկ մը փոքր փոսի մը մէջ կը մզուի։ Հնդիկ ձկնորս մը, որ տղայոց հետ հետաքրքրաբար մեզի կ'ընկերանայ, մատրան մուտ-

քը յարգանօք կը մերձենայ ու սեմին կը յենու։ Հետաքըրքիր գիտնալու իրենց աղօթից արարողութիւնը, կը մերձենամ իրեն ու կ'ակնարկեմ որ ինձ ևս սորվեցընէ ինչպէս երկրպագել և աղօթել այն հզօր դից՝ որ քարին ներքև միշտ արթուն կը ննջէ։ Բարեմիտն՝ աչքերը խոշոր մը բանալով, գոգցես ուրախութեամբ իւր կրօնից անհաւատ մը աշակերտելու, և Շիվայի արքայութեանը հոգի մը շահելու, միամտաբար գլխուն խոյրը կը վերցընէ, ծնկան վրայ կու գայ, ինձ ևս նոյնն ընել սորվեցընելով, և ապա գլուխը գետինը դնելով՝ երկրպագութեամբ հողը կը համբուրէ. ապա երկու ձեռքերը ափ ափի բերած՝ երիցս կը ցընցէ, ոտք կը կանգնի, երկու ափով ջուր կ'առնու և այն լինկամին վրայ կը սրսկէ՝ ջանալով ձեռքովը ըզջուրը քարին վրայ տարածել։ Գետնէն իսկ քանի մը վայրի ծաղիկ կը քաղէ և լինկամին վրայ կը զետեղէ խնամքով. և ահա աղօթքն ու զոհը լմնցած էր։ Բայց նորահաւատ դարձողիս այնքան բարեաց երախտագիտական պարտքը չէր լմնցած. ձկնորսս ձեռքերը բանալով ողորքանօք իւր վարձքը կը խնդրէ. և թէպէտ ոչ պրահմին էր և ոչ ինչևիցէ դից քուրմ կը թուէր, բայց և այնպէս կարծես ըսել կ'ուզէր, «Եթէ զքեզ Շիվայի արքայութեան դռնէն կիսով չափ մտուցի, միթէ չա՞տ է թէ քսակիդ ունայն մամոնայէն փոքր փոխարէն մը ինձ շնորհես»։ Բարեբաղդաբար այնքան անգին բարեաց փոխարէն փոքր դրամ մ'իսկ ըլլայ՝ կը գոհացընէ։ Եւ ինձ այնպէս թուեցաւ ինչպէս թէ ձկնորսս աւելի երկու անա փոքր դրամին վրայ ուրախացած ըլլայ, քան թէ իւր Շիվայի արդէն ճոխ արքունիքը նոր և անստոյգ եկամուտով մը ճոխացուցած ըլլալուն։

Դեռ ձկնորս Հնդկին քովէն չհեռացած՝ յետին հարցմունք մըն ալ անոր կ'ուղղեմ.

— Միթէ ա՛յս է քու աստուածդ, կը հարցնեմ. և յիրաւի կը հաւատամ թէ այս քարն ըլլայ այն հզօր էակը որ քեզ ստեղծեր է ու կը պահպանէ, և խընդիրքդ և աղօթքդ կ՚ընդունի երբ անոր առջին ինկած երկրպագութեամբ կը պաշտես։ —

Իսկ Հնդիկս իւր երկու ոտից վրայ չոկուելով, պարծանաց կերպարանօք,

— Այո՛, կը պատասխանէ, ա՛յս է մեր աստուածը. և մենք չենք հանդուրժեր որ օտարք գան մօտենան և մեր սրբութիւնը չօշափելով անարգեն։ Բայց ըռնադատեալ ենք համբերելու, որովհետև մեր տէրերն են։ —

Այս ըսելով՝ տեսայ որ աչքին վրայ ատելութեան զգացում մը նկարեցաւ. յայտ էր թէ իր անկիրթ սրտին մէջ ալ օտարամուտ բռնաւորին ատելութիւնը կը բունէր։ Եւ այսպէս ստուգեցի այսու, որ ամէն դին, ամէն ատեն նաև անտպայ սրտին մէջ հայրենեաց սէրը իւր ճամբայն կը գտնէ։ Հրէշք են անոնք որ այսպիսի բարձր և ազնուական զգացման խայթը չեն զգար։ Քաղաքակրթութիւնը, յառաջադիմութիւնը այլ աւելի կը վառեն այս բնութեան վսեմ ծընունդը։ Եւ Հնդիկը թէ և կը ճանչնայ որ այս քաղաքական կենաց առաւելութիւնք անգղիացւոյն կըրթիչ գաւազանէն յինքն հզօրեղապէս կը զեղուն, բայց և այնպէս չի կրնար սիրել զայն՝ որ իւր հայրենեաց իբր բռնաւոր կը նկատէ, զայն՝ որ վայրենի ուժին իրաւամբք միայն՝ իւր երկիրը գրաւած է. այս մտածութիւնս և իւր տկարութեան զգացումը իր սրտին մէջ օտար բռնաւորին ատելութիւնը կը կրկնապատկեն։

Տեղին թողլով առ վայր մը կը թափառինք այն

գեղեցիկ բլրին զառիվայրին մէջ վայրենի ծաղկանց մինչեր կազմելով։ Որ կողմն որ քայլերնիս ուղղենք՝ մէյմէկ նոր ու գեղեցիկ տեսարան կ'ելլէ առջևնիս։ Մերթ արևուն մէջ, մերթ ծառոց հովանիին տակ կը դադարինք. և այնպէս քաղցր կը թուի մեզ տեղին՝ որ մեր դարձը հոգալու ամենևին անփոյթ կ'ըլլանք։ Զառիվայրէ դարուվեր կ'ելլենք, քարէ քար կը բազմինք զմայլմամբ, միշտ տղայոց խմբիկն ետևնիս ունենալով։ Թփուտի մը քովէն քերելով մեծ օձի մը երկայն շապիկը կը գտնենք. զոր իսկոյն ընկերս ժողովելով խնամօք կ'ամփոփէ, իբր յիշատակ յԵւրոպ տանելու։ Այլ ես՝ օձից ներկայութենէն խրթալով՝ դէպ 'ի վար կը փութամ։ Մեզմէ անդին ծառոց վրայ կապկանց փոքր խմբիկ մը կը դեգերի. այն ծաղրածուք իրենց ճկուն մարմնովը թեթևաբար ոստոստելով ծառէ ծառ կ'անցնին, առ վայր մը կը դադարին մեզի կը նային ու կանչուըռտելով կ'իջնին կ'ելլեն. կարծես մեզ ծանակ ընել կ'ուզեն։

Բլրէն վայր իջնելով առ սակաւ մի փաշտավայրին վրայ կը յածինք. և ահա երեք չորս հիւղից տեսարանը զմեզ դէպ իրենց կը ձգէ։ Կը մօտենանք, ձայն կու տանք. այլ ամենուստեք լռութիւն. չկայ ձայն, չկայ կենդանի էակի ներկայութիւն. կարծես բարբարոսաց ներկայութեանը երկիւղը զբնակիչս ահաբեկելով փախուցած է։ Կը մտնենք 'ի մին 'ի հիւղից, ոչ դռնէն, զի դուռ չկայ. հետաքրքրաբար կահն ու պատրաստութիւնը կը փնտռե՛ք. այլ ոչ կահ ոչ պատրաստութիւն կ'երևի. քանի մը քուրջ որմէն՝ թէ կարելի է այսպէս ըսել՝ առկախեալ կան. գետինը ջրոյ պղընձեայ սափոր մը կայ, քանի մը փայտք, և փոքր մահճակալ մը լարովք պատած։ Իսկ հիւղը գոգցես պարզ ծածք մըն է, պանանի տերևովք կազ-

մեալ. եղեգանց ըստ բաւականի խիտ շարք մը անոր համարեալ որմունքը կը կազմէ. այլ 'ի ստորև կարծես ճարտարապետին արհեստը չէ զօրած լուսամուտից անօգուտ բազմութիւնը խափանելու. տղայոց և այծից կամ այլ կենդանեաց գանէն մտնելու չկայ պէտք։ Միւսքն 'ի հիւղից յար և նման են առաջնոյն, և նմանապէս լռիկ և Թափուր 'ի բնակչաց։ Գուցէ բնակիչքն մեզմէ անդին ծառոց ետևը պահուըտած են՝ բարբարոսաց մեկնելուն սպասելով։ Այնպէս խիթալի է այս կէս մը վայրենի ռամկին Եւրոպացւոց մերձաւորութիւնը որ՝ կանայք գլխաւորապէս՝ ամենայն ինչ Թողլով կը հեռանան շտապաւ և ծառախտից մէջ կ'աներևութանան։

Հիւղից ետևէն միւսանգամ փոքր դարուվեր մը կ'ելլենք, ուստի ծովային տեսարանը՝ բազմաթիւ կղզեկաց մէջէն տողոսկելով հեռու հեռու կը ձգի։ Բլուրք՝ իբր յաւերժհարսունք՝ անդորր ջրին երեսէն վեր կը ցցուին, իրենց կարմրագոյն ժայռուտ կողերը կիզիչ արևուն ընդդիմադրելով։ Ծառաստանաց խմբիկք, անտառախտից կանաչութիւնք՝ խոնարհող արևուն լուսոյն փայլին նուազելովը՝ մԹնագոյն երանգ մը կը զգենուն։ Հնդիկ առագաստաւոր նաւակաց բազմութիւնն այն կղզեկաց առջևէն սրարշաւ դէպ 'ի քաղաք կ'ուղևորին։ Հեռու հեռու իսկ որչափ աչքերնուս տեսութիւնը կը զօրէ՝ այն մեծ քաղաքին շէնքերը հազիւ մուԹ շամանդաղեայ գծի մը մէջէն կը գուշակուին։ Այն շամանդաղեայ նսեմ գիծը Թափանցիկ լուսափիւռի մը մէջէն առկախեալ կը Թուի։ Այն տեսարանին գեղեցկութիւնը գիս կը հրապուրէ. վիմի մը վրայ կը բազմիմ, և մինչդեռ ընկերս ԹիԹռանց որսոյ կը զբաղի, երագ ըստ կարի այն տեսարանը Թղթի վրայ կը նկարեմ։

Սակայն օրը կը տարաժամի և հարկ է 'ի շոգենաւիկն փութալ. յետին աչք մը կը յածենք այն գեղեցիկ տեսարանին զոր խոնարհող արեւուն ճառագայթից վերջին փայլը կը լուսաւորէ, և ապա ծովափը կը դիմենք։ Տեղատուութիւնը յառաջացած էր և մեր շոգենաւակն ծովեզրէն բռնադատեալ էր հեռանալու։ Քուէյաքարանց լպրծուն գիծը զգուշութեամբ կը քալենք, և տեղացի դիւրակործան մակուկաւ զգուշութեամբ միւսանգամ մեր շոգենաւակը կը մտնենք։ Ժամ մը ետքը՝ բազմամարդ քաղաքին հազարաւոր լապտերաց լուսովը՝ յԱբոլօ Պէնտըր տափարակը կ'ելլէինք։ Հոն ժողովրդեան բազմութիւնը, ճոխ կառաց խիտը, և զուարթ երաժշտութեան ներդաշնակութիւնը կարծես մեր դարձը ողջունելու կը սպասէին։

Մին 'ի զբօսավայրից Պոմպէյի է Աբոլօ Պէնտըր ամբարտակը, ուր կանգնած է նաև քաղաքին եւրոպական գլխաւոր սրճանոցը. երիցս յեօթնեկի եւրոպական երաժշտութիւնը զժողովուրդն այն վայրը կը ձգէ։ Այն բարձր տափարակին վրայ, ուր ծովային երեկոյեան զովացուցիչ հովմիկը օրուան տօթոյն հեացորդը կը փարատէ, երկձի շքեղ կառաց բազմութիւնը՝ արանց, տիկնայց, օրիորդաց ու տղայոց խմբերիկները կը կրէ։ Այն ատեն վայրը հոծ է ձիօք, կառօք ու մարդկամբք, և երթևեկն անհնարին. միայն երաժշտութեան ձայնը և հազարաւոր մարդոց զուարթ խօսակցութիւնք տեղին կը թնդացնեն։ Ճոխ Փարսին ու Հնդիկն իսկ չեն անփոյթ ըլլար Եւրոպացւոց ընկերելու, 'ի վայելումն այն անմեղ զբօսանաց։

Բայց 'ի լրանալ ժամուն, հազիւ թէ երաժիշտք՝ ըստ անփոփոխ սովորութեան՝ Հնդկաց կայսրուհւոյն եղանակը կը սկսին հնչեցնել, այն կառաց անհամար բազմութիւնը՝ որպէս թէ սպառնալիքէ մը ահաբեկած՝ 'ի փախուստ կ'աճապարեն. հետի գնայողք անոնց կը հետևին, և դեռ ևս եղանակին առաջին մասը չլմնցած՝ այն զուարթութեան տափարակը լռութեան և ամայութեան կերպարան մը կը զգենու. ուր միայն Հնդիկ աղտեղի նաւավարք կը մնան, որ նորէն Եւրոպացին պաշարելով յամառ յանդգնութեամբ՝ կը յորդորեն նաւակաւ բացը տանելու 'ի զբօսանս։

Բաց աստի, և ոչ իսկ կարի հեռի 'ի տեղւոջէս, քաղաքին ուրիշ երաժշտական զբօսավայր մըն ալ՝ որ և գլխաւորն իսկ է՝ 'ի Պէնտ Սդէնտն է ընդարձակ դաշտավայրի մը վրայ։ Հազիւ թէ արևը 'ի մուտս կը խոնարհի, եւրոպական երաժշտութեան զինուորական ընկերութիւնք ողջոյն ժողովուրդը այն դաշտին վրայ կը գումարեն։ Գմբեթաւոր ծածքի մը տակ երաժիշտք կը զետեղին։ Շուրջանակի ցցապատ գերանօք առանձնացեալ ընդարձակ բոլորշի միջոցի մէջ երիտասարդութեան խումբք՝ զուարթախօս, ծիծաղերես, թև թևի տուած կը շրջին, մինչդեռ հարիւրաւոր տղայք իրենց անմեղ խաղերովն ու ձայներովը տեղին կը լեցնեն։ Ցցապատ ցանկէն անդին կառաց բազմութիւնը կը դիզուի յունկնդրութիւն. և անկէ ալ անդին աղմուկը ատող խմբիկք կանաչին վրայ կը թափառին։

Արևը իւր վերջալուսոյն յետին շնչովը զհորիզոնը կը ներկէ և երաժշտութեան ձայնը դեռ ևս տեղին

կը թնդացնէ։ Այլ ճաշին ժամը կը մերձենայ, և այն ամբոխին տեղատուութիւնն վայրը կը մերկացնէ։ Բայց ստէպ երբ պայծառ լուսինը արևը կը փոխանակէ, երաժշտական երկրորդ ընկերութիւն մը՝ զկնի ճաշոյն՝ միասանգամ զժողովուրդը այն ընդարձակ վայրը կը ժողովէ։ Զուարթութիւնն կը կրկնապատկի, վայրը ուրախութեան աղաղակներով կը թնդայ, և երաժշտութիւնը մինչև ժամը տասը հեռաւոր հայրենեաց յիշատակները կը զարթուցանէ 'ի միտս։

Ո՛րչափ զուարթ երեկոյներ անցուցած եմ այն սրտաբաց դաշտավայրին վրայ։ Ոչ երբեք մտքէս կ'ելլեն այն գով գիշերներուն քաղցրութիւնը. և երբեմն յափշտակեալ 'ի մտաց՝ թուիմ դեռ ես այն զովարար քաղցրիկ օդը ծծել, մինչդեռ երաժշտութիւնը կը հնչէ և անբաւ բազմութեան աղաղակներն ողջոյն միջոցը կը թնդացնեն։

Այս անմեղ զբօսանաց փարսին անհրաժեշտ Եւրոպացւոց կը մասնակցի։ Բայց թէ և Եւրոպացին ու փարսին խառն կը գտնես այն զբօսավայրից վրայ, ոչ երբեք կը տեսնես զերկուսն ալ 'ի համամիտ ընկերակցութիւն. թէ և փարսին Եւրոպացւոյն ընկերութեանը կաթոգին անձկացող է և անոր մերձաւորութիւնը իրեն պատիւ կը համարի, բայց յետինս իւր գերազանցութեան համարումը խնամօք կը պահէ. կարծես զհնդկածին բնիկը, հնդիկ կռապաշտ եղեր է կամ փարսի, իբր ստորին և արհամարհ էակ կը համարի և իւր ընկերութեան անարժան։ Արդեօք կրօ՞նն է որ այս խտիրը կը դնէ թէ կրթութիւնը. թուի թէ երկուքին իսկ ազդեցութիւնը հաւասարապէս կը ներգործէ երկու ժողովուրդը իրարմէ բաժանեալ պահելու. բայց գլխաւորապէս կրօնից խտիրը զօրագոյն

է. վասն զի կան ոմանք 'ի Փարսից որ քրիստոնէութիւնն ընդունած՝ անխտիր կը վարին Եւրոպացւոց հետ՝ առանց ամենևին խորշում մը ազդելու առ վերջինս։

## Ը

**Բինճըրա Բօլ կամ ապիկար անասնոց անկելանոցը։**

Պոմպէյի ընկած կամ Սև քաղաքին ամենէն բազմամարդ թաղին մէջ տարօրինակ անկելանոց մը կը գտնուի, որ անշուշտ աշխարհիս այլանդակ զարմանալիներէն մին կրնայ զուրցուիլ։ Եթէ դիպուածը զիս այն կողմերը չձգէր, դիւրացնելով այն անկելանոցին այցելութիւնը, կարծեմ թէ 'ի լրոյ ևեթ լսէի ինձ անհաւատալի պիտի երևնար. ինչպէս նաև անհաւատալի կ'երևնայ այն ոմանց իմաստնոց ինչ և իցէ դէպք որ ճանապարհորդէ մը կը պատմուի, միայն այսու պատճառաբանութեամբ՝ որ իրենց շրջապատէն դուրս երբեք ելած չըլլալով իրենք իրենց աչքովը տեսած չեն։

Առաւօտ մը անզբաղ՝ այն կողմի փողոցները կը պտըտէի. յանկարծ մեծ աղմկի մը տպաւորութիւնը ինձ դէպ 'ի մեծ ու բաց դուռ մը խոտորել տուաւ։ Հետաքրքրաբար գլուխս դէպ 'ի ներս երկնցնելով Հնդիկ սպասաւոր մը, որ թուէր թէ ինձ նման անզբաղ ու հետաքրքիր այցելուաց կը սպասէր, առաջարկելով ներս հրաւիրեց։ Չթողի որ կրկնէ հրաւէրքը, այլ նոր դիպաց հանդիպելու յուսով կը հետևիմ պահապան Հնդկին և անմիջապէս ընդարձակ գաւիթ մը կը մտնեմ, ուր՝ աղմուկ և աղբալից աղտեղութեան մէջ տեսայ բազմութիւն մը հերաթափ ու

քսոստ եզանց, որ խառն ընդ այլ բազմաթիւ չորք-ոտանեաց՝ որ աւելի սուրբ էին քան կենդանիք՝ մէջը կը թաւալէին: Շուրջանակի այն ընդարձակ գաւիթը խորշ խորշ բաժնուած էր՝ 'ի դիւրութիւն և 'ի հանգիստ այլ և այլ անբանից:

Այն տեսարանին առջին ապշած՝ առաջնորդիս կը հարցնեմ տեղեկացնել զիս տեղւոյն և նպատակին. և իրմէն կ'իմանամ որ այն ընդարձակ վայրն ապիկար և անտէր անբանից բարերարական անկելանոց մըն է, ուր՝ ամեն տեսակ պակասաւոր, հիւանդ, ծերացեալ և անկարող անբանք՝ իրաւունք ունին ապաստանարան մը գտնելու, որպէս զի իրենց կենաց մնացած օրերն անհոգաբար և անդորրաբար անցունեն:

Այս տարօրինակ բարերարութեան հիմնադիրք Ճէյնք են, որ 'ի Հնդիկս մասնաւոր հասարակութիւն մը կը կազմեն՝ գրեա թէ կէս միլիոն բազմութեամբ: Առհասարակ ճոխ ժողովուրդ մըն է ու սովորաբար սեղանաւորութեան ու մեծ վաճառականութեան կը զբաղին: Բարուք խաղաղասէր ու եղբայրասէր՝ շատ սիրով ու միաբանութեամբ կը կենակցին մէկմէկու հետ: Եւ իրենց ողորմածութեան ոգին, խնամքն ու զգացումը նաև մինչև անբան կենդանեաց վրայ կը տարածի. որովհետև իբր կրօնական սկզբունք ունին թէ 'ի մարդ և յանասուն հաւասարապէս յարգելու է կենսական սկզբունքը:

Կրօնասէր Ճէյնը կը համարի թէ մարդ ոչ միայն չարիք ընելու չէ ինչ և իցէ անբանի, այլ նաև պարտական է անոր կեանքը յարգելու ու պաշտպանելու, և ձեռքէն եկածին չափ անոր վիշտը թեթևցնելու: Այս մտածութենէս շարժեալ՝ եթէ փողոցը վիրաւորեալ անասնոյ մը հանդիպի իսկոյն կը դադարի

անոր վէրքը դարմանելու, և կամ թէ հետը կ'առնու ու տունը կը տանի որ խնամէ։

Այս ողորմածութեան զգացումը այն աստիճանի արմատացած է ճէյնից միտքին ու սրտին մէջ, որ իրենց ճոխք ասկէ չարժեալ՝ Հնդկաստանի ամեն մեծ քաղաքներուն մէջ մասնաւոր անկելանոցներ կանգնած են առատ եկամուտներով, ուր ժողովել կու տան ամեն տեսակ հիւանդ ու պակասաւոր անասուններ, որոց խնամ տանելով կը դարմանեն մինչև առողջանան. և եթէ հիւանդութիւննին անբուժելի ըլլայ՝ խնամքնին ոչ երբեք կը նուազեցնեն, այլ անխոնջ կը դարմանեն և ամեն պիտոյքնին կը հոգան մինչև ցմահ։

Անխորհրդաբար այցելող մարդուն գուցէ ծիծաղելի՝ եթէ ոչ արհամարհելի՝ թուի այս տարօրինակ բարեգործութեան հիմնադրութիւնը։ Բայց ուշի ուշով խորհրդածելով մարդ կը տեսնէ որ այս բանս ճէյնից գթասիրտ, մեղմ ու խաղաղասէր բնաւորութիւնը կը յայտնէ. որոց սիրտը չի հանդուրժեր տեսնել գերագոյն Աստուծոյ ստեղծեալ էակի մը չարչարանքը։ Սոյն այս մարդիկ ոչ միայն անօգուտ անբանից վրայ բարեգործութեան խնամքնին տարածած են, այլ և նոյն իսկ մարդկութիւնը չեն մոռցած։ Հնդկաստանի ամեն դին պանդոկները բազմացուցած են, ուր աղքատ ճանապարհորդք ամենայն դիւրութիւն ձրիաբար կը գտնեն. և նոյն պանդոկներն արքայավայել պարգևներով ու եկամուտներով ճոխացուցած են։ Անոր համար ներելի է իրենց այս փոքր տկարութիւնը եթէ մարդկային վսեմութիւնն այն աստիճանի նուաստացուցեր են՝ մինչև ամենևին անօգուտ ու վշտակրեալ անբանից ծառայեցընել, փոխանակ բըռնի ու երագ մահուամբ մը անոնց վիշտը նուազեցնելու։

Արդ աչքս շուրջանակի դարձնելով այն խորթ տեսարանը ապշութիւնս կը գրաւէ. այն եղք, այն ապիկար չորքոտանեաց կոյտք, կարծես այն պարփակեալ տեղւոյն մէջ մարդկութեան յատուկ կնիքը յինքեանս կը կրեն: Կաղք, կարկամեալք, միաչեայք, երկոքումբք աչօք կոյրք՝ անդորրաբար փռուած՝ մաքուր յարդի վրայ կը հանգչին. կարծես հիւանդանոց մըն են՝ ուր բազմավիշտ էութիւնը համբերութեամբ ապաքինման կը սպասէ: Ծառայից բազմութիւն մը շարունակ զբաղեալ են այն անբանքը մաքրելու, բուժելու, հոգալու. կուրաց, կաղաց, անդամալուծից կերակուր տանելու: Այն հնդկային գթասիրութիւնը առհասարակ ամենուն վրայ իւր խնամքը կը տարածէ, ջանալով ըստ կարի երկարելու այն զազրատեսիլ չորքոտանեաց կենաց վերջին վայրկեանները: Բորոտ, քոսոտ, գոնջ, կոյր անհամար շունք և կատուք, հիւանդոտ պառաւեալ կովք, վատոյժ, խլինքոտ ոգեսպառ ձիք, կեղալից էշք, հերաղուրկ կապիկք, խառնիխուռն և անզբաղ անգործութեան մէջ կը հանգչին: Շատք՝ 'ի ակարութենէ, 'ի ծերութենէ և 'ի հիւանդութեանց ծանրացեալք՝ եղկելի երեւոյթ մը կ՚ընծայեն. կարծես ասոնց համար բռնի ու երագ մահը բարերարութեան պարգև մը պիտի ըլլայ:

Այն զազրատեսաց աղտեղութեանց վրայ միլիոնաւոր ճանճք կը սաւառնին. այլ անբաւական են ամենեքին այն խելքէ մաքէ դուրս ապականութեան փոքր մաս մը իսկ զգոյապէս անհետ ընելու: Հազարաւոր մեծամեծ մկունք՝ որոց աներկիւղ ընտանութիւնը զարմանալի է՝ և որք մի միայն առողջ կենդանիք կը թուին այն մահու ըստուերաց շրջապատին մէջ, անյագաբար կը ճգնին սպառելու այն կերակուրները՝ որ հնդկին գթասիրութիւնն անդադար կը կրէ 'ի սնունդ

այն ապիկար անասնոց, որոց ստամոքսը՝ 'ի հիւանդութեանց և 'ի ծերութենէ եղծեալ՝ չի զօրեր ընդունելու։

Այս դաւթէն անդին ուրիշ երկրորդ շրջափակ մը կայ՝ երկոտանի ու թևաւոր անբաններց պահեալ. հոն է տեսնել միոտանի թութակք, ողնաթեք հաւք, պառուած ագռաւք, կուրացեալ բադք, մաշտեալ հերաթափ անգեղք, և այլ զազրատեսիլ գիշատիչք, կաղ հաւք և փետրաթափ բազէք. թողում յիշելու ուրիշ հազարումէկ խառնաբնդոր մազոտ ու փետրաւոր անդամոց տձև կոյտք, որոց շատք գոգցես ամեն ոճիր գործած՝ արդ անդորրաբար կ'անցնեն իրենց կենաց ողորմելի մնացորդն այն անբաններց արքայութեանը մէջ։

Բոլոր ընտանի կենդանեաց ներկայացուցիչներն նշմարեցի այս տեղւոյս մէջ. ճնճղուկք, սիրամարգք, չաքալք, եղջերուք, առհասարակ ամենն ըստ իրաւանց իրենց տեղը գրաւած են. մէկը մոռցուած չէ։ Եւ երկայնամիտ ու համբերող Հնդիկը՝ տարօրինակ գթութենէ մը յորդորեալ՝ անոնց ամեն պիտոյքը ստրկաբար հոգալու չի խորշիր։

Կ'ըսեն թէ նոյն իսկ զազրատեսիլ միջատք իրենց վայելլից մասն ունին. փայտոջիլք, օրինակի աղագաւ, իրենց կերակրիկն աներկիւղ և դիւրագնոյ կը գըտնեն. որովհետև համբերողք 'ի Հնդկաց փոքր հատուցմամբ թոյլ կու տան՝ որ գիշեր ատեն այն կենդանիք իսկ իրենց արիւնովը պարարին։ Եւ զարմանալու չէ. որովհետև ճէյնը անոնց ալ կենսական սկըզբունքը միւս կենդանեաց հաւասար կը յարգէ։

Այս տարօրինակ անկելանոցին տարեկան ծախքը երկու հարիւր յիսուն հազար ֆրանգէն աւելի է՝ կ'ըսեն։

Երկո՛ւ հարիւր յիսուն հազար ֆրանք, ըսի մտօքս զարմացմամբ. և այս՝ սպառեալ, հիւծեալ և ամենևին անօգուտ անբանից երկու օրուան ցաւոց կեանք մը երկընցնելու համար։ Գուցէ ըլլան այնպիսիք որոց այս հաշիւը չնչին երևնայ. թող իրենք աւելին վրայ յաւելուն. անշուշտ շանց, կատուաց, ջորեաց և իշոց յաւիտենական երախտագիտութեանը կ'արժանաւորին։

Մինչդեռ տեղին թողլով այն թաղին բազմամբոխ փողոցաց մէջէն դէպ 'ի Ֆորդ կ'ուղևորէի, խորհուրդս չէր կրնար զսպել մարդկային խելագարութեան վրայ չզարմանալու։ Մարդս, կ'ըսեն, կենդանի էակաց դասագլուխն է, յորոց գլխաւորապէս իւր բանաւորութեամբը կը տարբերի. եթէ խօսի, եթէ շարժի, եթէ գործէ, ինչևիցէ բան ընէ, ամենայն ինչ մտածութեան մը միջամբ կը կատարէ. խոկման ալ արդիւնքին իմաստութիւն կ'ըսեն։ Թէ այդպէս է՝ յիմարը ամենէն իմաստունն ըլլալու է. որովհետև ամենէն շատ կը խորհի, ամենէն շատ կը խօսի, և բնականապէս ալ ամենէն շատ կը գործէ. և եթէ այս ճըշմարիտ ըլլայ փաստաբանը ցուցակին գլուխը դնելու ենք եթէ կ'ուզենք անբանասէր Ճէյնին մտածութիւնը հասկնալ։

Շատ անգամ մարդ իւր գործոց մեկնութիւն տալ չէ կարող. ստէպ կը ցնորաբանէ և իմաստութիւն կը համարի։ Յայտ է որ բնութիւնը ամենուս խելապատակին մէջ մութ ու չմեկնուելու կէտ մը դրոշմած է, որ մեր գործոց մասնաւոր կնիք մը կը տպաւորէ։ Ստէպ տաղանդ կը կոչենք այն բանը որ ըստ ինքեան տաղանդի զեղծում է. գթութիւն կ'ըսենք՝ մինչդեռ յիմարութիւն ըսելու էինք. խոհեմութիւն կ'անուանենք անգործութիւնը որ անկարողութեան հետևանք

է . իմաստուն կը կոչենք այն մէկը որ իմաստութեան կչիռքին մէջ և ոչ աղուամազի մը նշանակութիւնն ունի. գիտնոյ յարգ կ'ընծայենք այն պատուախօս շաղակրատին որ լեզուին կապը կորուսած ըլլալով՝ զմեզ թմրութեամբ կ'ապշեցնէ ։ Բայց ամենէն աւելի աշխարհելի յիմար ըսուելի է այն անձնապարծ սնոտիասէրն որ իւր մտաց չափաւորութենէն մոլորեալ՝ ինքզինքը մեծ ոմն՝ նա մանաւանդ մարդկութեան գերագոյնը՝ կը համարի. ինքն ամեն փառաց արժանաւոր ժառանգ. իսկ զքեզ՝ և ոչ իսկ փոքր հայեացքի մը արժանի կը սեպէ ։

Եթէ կարելի ըլլար, բոլոր այս արտաքոյ կարգի գերակայութիւն ունեցող արարածք՝ բայց գլխաւորապէս ետքինը, ճէյնից գթասիրութեանը կը յանձնէի, որ իրենց հռչակաւոր անկելանոցին մասնաւոր խորշի մը մէջ ժողովէին, այսու պանծալի մակագրաւ՝ «Մարդկային հրէշք» ։

Տարօրինակ տեսարանը՝ որոյ ականատես եղած էի՝ զիս այսպիսի մտածութեանց մէջ ձգած էր. հետի ու մտախորհ Սև ․քաղաքէն կը հեռանայի՝ խոտորնակի դաշտի մը մէջէն՝ չիտակ ճամբուն երկայնութիւնը համառօտելով ։ Արևն 'ի զենիթ կը մերձենար՝ բուռն իր ջերմութեան սաստկութիւնը տարածելով. ունայն տեղ կ'աշխատէի հովանոցիս հովանեաւ գլուխս պատսպարել. այն ճառագայթից բուռն ջերմութենէն ուղեղս կ'եռայր և մթնոլորտին սաստիկ սպիտակ լոյսը ինձ կարմրորակ կը թուէր ։ Ո՜րչափ կ'ըղձայի Ցոմնանու դդմենւոյն զովարար հովանին. այլ 'ի զո՜ւր. հարկ էր այն ծառազուրկ դաշտին երկայնութիւնը մինչև ցծայրը քալէի և այն հրակէզ ճառագայթից սաստկութեանը համբերէի ։ Գլուխս կարծես ճոյթիլ

կ՚ուզէր․ մորթիս արտաշնչութիւնը կ՚առատանար, արիւնս կ՚նուար և քայլս գայթ 'ի գայթի կ՚երերար: Ինձ զարմանալի կ՚երևար՝ թէ ինչպէս մարդ կրնար յարատև բնակիլ այն երկիրը՝ որոյ արևն այնպիսի սպառիչ զօրութիւն ունէր․ ի՞նչպէս կարելի էր անոր սաստկութիւնը շարունակաբար կրել ու չյիմարիլ: Եւ ստոյգ որ մինչև ցայն օր 'ի Պոմպէյ դեռ ես զգալապէս սպակասամորի մը չէի դիպած:

Գրեթէ դաշտին երկու երրորդքն ըրած էի երբ յանկարծ տեսնեմ 'ի հանդիպոյ ոմն կը մերձենար․ իւր տարօրինակ քալուածքը և ըրած ձևերն ուշադրութիւնս գրաւեցին․ Փարսի մըն էր որ ջերմ խօսակցութեան զբաղած կ՚երևնար: Աչքը երկնից մէկ կողմը սևեռեալ՝ շարունակ խօսելու հետ էր, և բարձրաձայն աղաղակելով ձեռօք բազկօք հազարումէկ ձևեր կ՚ընէր: Մերթ մեղմիկ ձեռքերը տարածած՝ կարծես աղաչանաց խնդիր մը կ՚ուղղէր․ մերթ ձեռքերը սեղմելով կարծես բռնահարել կը սպառնար և կատաղաբար կ՚աղաղակէր․ և այլ երբեմն գետինը ծռելով այնպէս կ՚երևնար ինչպէս թէ քար փնտռէր՝ վերը երկինքը եղող աներևոյթ թշնամւոյ դէմ արձըկելու:

Կռահեցի որ կարևոր էր խոհեմութիւն բանեցնել․ այն արևակէզ դաշտին վրայ ես և ինքը միայն էինք․ անզէն հետևանքին՝ չիտակ ճամբէն դոյզն ինչ խոտորեցայ: Կը համարէի այնու Փարսիին մերձաւորութենէն հեռանալ․ այլ 'ի զուր: Փարսին զիս նշմարած էր, և իւր աներևոյթ թշնամիները թողլով՝ դէպ ինձ սկսաւ աճապարել: Արևուն կիզիչ սաստկութիւնը մոռնալով դադարեցայ, մնալով տեսնել Փարսիին ընելիքը: Այլ նա մերձենալով վսեմ ծանրութեամբ ծռեցաւ, անդորր կերպարանօք բարևեց, ա-

պա իւր լեզուաւ սկսաւ առ իս խօսիլ. և որպէս թէ ինձմէ իրաւունք խնդրէր՝ մերթ ընդ մերթ երկինքը կը ցուցընէր և առ սակաւ մի կը մնար ինչպէս թէ ինձմէն պատասխանի սպասէր։ Հուսկ ապա ծոցէն ստուար տետր մը հանելով, յորում շատ մը գրուածք նշմարեցի, գունաւոր թղթեայ զարդիկ մը առաւ, և գնտասղաւ մը կրծոցս վրայ հաստատելով ձեռքովը ուսիս զարկաւ երեք անգամ. և ապա վսեմ ժպտով հեռացաւ՝ գիս ձեռքովը ողջունելով։

Հետաքրքրաբար առ վայր մը անոր հեռանալուն նայեցայ և ապա ճամբաս շարունակեցի. այն գունաւոր զարդիկը կրծոցս վրայ թողլով միջանճաշին տունը հասայ. կը գուշակէի թէ իմաստը չքանչան մը կը նշանակէր և մեկնութեանը կը կարօտէի. և շատ չուշացայ հասու ըլլալ։ Հազիւ թէ սեղանակիցք տարօրինակ չքանչանը նշմարեցին՝ իսկոյն ծիծաղը փրցուցին։ Ամենուն ծանօթ էր այրն և իւր պատմութիւնը. ինչպէս շատերն՝ այսպէս գիս ալ ասպետութեան չքանչանաւ պատուած էր։ Անմեղ յիմար մին էր, զոր վարչութիւնը չէր 'ի դէպ դատած անելանելի արգելարան մը մտցնելու։

Փարսիիս պատմութիւնը երկայն էր, այլ ինձ համառօտիւ պատմեցին։ Ճոխ վաճառական մըն էր, որ բազմամեայ առևտրով շատ հարստութիւն դիզած էր։ Սակայն բարուք փառասէր՝ այլ և այլ ձեռնարկներու ձեռք զարկած էր. մինչև բաղդը վերջապէս զինքը թողլով ճախորդութենէ 'ի ճախորդութիւն գլորած էր. և հուսկ ուրեմն իւր մէկ հատիկ սփոփանք տղայն ալ կորսնցնելով՝ հարուածին ժուժել չէր կրցած. ողջոյն խելապատակը գրգռած էր։ Միտքը սկսեր էր լուսնին վրայ սևեռել. ողջոյն գիշերներ անոր առջին կեցած մտախորհ կը մնար։ Ցան-

կարծ առաւօտ մը արթըննալով մտաց խանգարման նշանները տուած էր։ Բոլոր տնեցիք ու դրացիք ժողովելով դէպ 'ի պատուհանը կը տանի, և հոն երկար խօսակցութեամբ կը հասկցունէ որ մինչև ցայն վայր կենաց հանգամանք զինքը բռնադատած էին իւր բուն անունը ծածկելու, այլ ժամանակը եկած էր որ աներկիւղ այն շքեղ անունը աշխարհիս ծանօթացնէր։ ինքը լուսնին մէջ մեծ և ամենաճոխ իշխան մըն էր, ու ժառանգական իրաւամբք իւր մեծանուն նախնեաց յաջորդած էր։ Սակայն ոխերիմ և հզօր թշնամեաց գիպած էր. որք բռնութիւնը և բարբարոսութիւնը ձեռք առնելով զինքը յաղթահարած էին և յաջողած էին գահընկէց ընելով լուսնէն հալածել ու վար յերկիրը գլորել. տիրելով իւր թագաւորութեանը և անբաւ գանձուց։

Սակայն այս ձախորդութեան առջին ինքը լքում չէր զգար. ամենայն ջան ու ճիգն կը թափէր միւսանգամ իւր թագաւորութիւնը ձեռք բերելու. ոչ միայն մեծամեծ իշխաններ յաջողած էր իրեն թիկունք ընել, այլ և հզօրագոյն փաստաբանք իրենց տաղանդը կը մաշեցնէին՝ որ իւր անբաւ հարստութեան գանձերը դատաստանի օրինօք ետ դարձնել տան։ Եւ որպէս զի իւր այս իրաւունքն աւելի ևս զօրացնէ, կըրցածին չափ կը ճգնէր իւր բարեկամաց թիւը աճեցնել. այսու նպատակաւ ամեն հանդիպողին լուսնի ասպետութեան շքանշանը կը բաշխէր։

Եւ այսպէս ես ալ այս նորակերպ ասպետութեան ցուցակն անցնելու բարեբաղդութիւնն ունեցայ։



## Թ.

## ՔԷ՛ՆԵՐԻԻ ԱՅՐՔ

*Յունուարի վերջին օրը։ — Երկաթուղւոյն կայարանը։ — Ջուն։ — Բնութեան տեսարանը։ — փոքր կայարանէն դուրս։ — Դադար յեկեղեցին։ — Բալանքինի մը մէջ։ — Յովազն ու Վագրը։ — Բարեպատեհ փրկութիւն մը։ — Այրից այցելութիւնը։*

Յունուարի վերջին օրը հանգստեան նուիրեալ է յանգղիացի դպրոցական եկեղեցականաց. որք իրենց կրօնական դաստիարակութեան յանձնեալ տղայք համախումբ ժողոված՝ հեռի 'ի քաղաքէն կ'առաջնորդեն, ողջոյն օրը դաշտօրէից մէջ զուարճացնելու։

Նոյն աւուր զբօսանաց մասնակցելու իրաւունք ունին նաև մանկանց ծնողք, ազգականք և բարեկամք. շատ է թէ հատուցանեն փոքր դրամ մի, որ նոյն աւուր ծախուց պիտի ծառայէ։

Հեռի 'ի Պոմպէյէ իբր երեսուն մղոն, 'ի Սալսէտ անտառախիտ ու մացառուտ կղզին, կան Քէներիի դարաւոր ու հռչակաւոր այրք. դէպ 'ի այն տեղին զոնեա դիտմամբ՝ ուղևորէր պիտի տղայոց խումբը. որոյ մասնակցելու հրաւէրքն ինձ ևս դիպաւ։ Այն այրք՝ իրենց հեռաւոր, մենաւոր ու վայրենի դիրք՝ գրեթէ անմատչելի են առանձնականաց. որով և այսպիսի առիթք սիրով կ'ընդգրկին. և ինձ յոյժ 'ի դէպ կու գար հրաւէրը։

Առաւօտեան եօթն ու կիսուն շոգեկառաց կայարանը ժողոված տղայոց զուարթ հուռայք 'ի հեռուստ

իսկ օդը կը թնդացընէին։ Հարիւրաւոր տղայք և աղջկունք խումբ խումբ, զոյգ զոյգ կեցած, զուարթ և անհամբեր՝ կառատորմին կը մնային։ Ձեր դպրոցի ձանձրութիւնը, չէր պատուհասից երկիւղը որ իրենց փոքր սիրտը կը յուզէր, այլ ողջոյն աւուր մը դաշտաց ու բլրոց զբօսանաց արձակուրդը։

Ուսուցիչ եկեղեցականք, տղայոց ծնողք և ազգականք, երիտասարդաց և օրիորդաց խումբք՝ զուարթացեալ՝ գրեթէ տղայոց անհամբերութեանը կը մասնակցէին։ Յանկարծ այն գրեթէ չորս հարիւր տղայոց կուրծքէն փրթած ահաւոր հուռայի մը շառաչը՝ վրայ հասնող կառատորմին աղմկին հետ կը խառնուի։

Կառաց դրանց բացուելուն ժամանակ չի թողուիր. տղայք զիրար կոխկռտելով՝ դռներէն պատուհաններէն մագլցելով կառաց մէջ վրայէ վրայ կը դիզուին. երկայն ժամանակ կարևոր է որ ուսուցիչ հսկողք իրենց ձայնը լսցնեն, խառնակութիւնը բարեկարգեն, և պարէնաբարձ ծառայից և ընկեր երաժշտաց տեղի տան։ Յետին հուռայ մըն ալ՝ և կառատորմը կը շարժի, կը սլանայ, ետևը թողլով հանդիսատես Հնդկաց ու Փարսից հետաքրքիր բազմութիւնը։

Քաղքէն անդին դաշտավայրաց միջէն կը սրանանք. մերթ մշակեալ արտօրէից քովէն կը քերենք, մերթ քոքոյի անտառաց զուգահեռաբար կ՚ընթանանք։ Աղքատ գիւղակի մը սպիտակ որմերն են որ առջևնիս կ՚ելլեն. անդին լայնատերև պանանի խմբից միջէն Հնդկի մը հիւղը կը նշմարենք։ Քիչ մը անդին՝ ընդարձակ դաշտին երեսը՝ ցիրուցան կը տեսնենք բնակութիւնք, խրճիթք, նորաշէն տունք։ Իմ ուշադրութիւնս խրճթաց նրբայթը կը գրաւէ, ուր անհոգ և սակաւապէտ մարդկութիւն մը անյարդար կեանք մը կը վարէ։ Այն խրճթաց քով գուցէ մեր գոմք պա-

լուռք են. պանանի կամ այլ արմաւենեաց տերևովք ծածք են՝ որ քանի մը ցցից վրայ կը հանգչին՝ գոգ- ցես բաց ամենուստեք։

Քանի որ դէպ 'ի ներսերը կը յառաջենք՝ տեղ տեղ վայրենի բնութիւնը իւր փայլը 'ի հեռուստ մեր աչաց առջին կը պարզէ. և ես կը զմայլիմ դիտելով այն այ- րեցած գօտւոյ բարգաւաճ բուսաբերութեան վսե- մութիւնը։ Սակայն մտանց մարդկային նզանց հետ- քը հազիւ երբեք կը նշմարուին։ Կարծես երկիրը՝ դաշտավայրք՝ անտերունչ լքեալ թողուած են։ Պատ- ճառն'որ կը հարցնեմ՝ այն ընդհանուր ամայութեան։

— Այս երկիրներս, պատասխանէ մերձաւորս, անմիջապէս անձրևաց եղանակէն ետքը անանելու է։ Բոլոր այդ խոպանացեալ, հրաշէզ դաշտավայրք՝ վա- րուցանով մշակեալ՝ ծաղկեալ բուրաստանք կը նմա- նին։ Հոս երկիրը վեց ամիս արօրին տակ կ'երկնէ, կը բողբոջէ, կը բարգաւաճէ և կը հասունցնէ. վեց ամիս ալ նմանապէս կիզող, ապառաժ արևու մը բռ- նութենէն կը հիւծի, կը ցամքի ու կը չորանայ, այդ տեսած անկենդան ամայութիւնը պատճառելով։ —

Մեր ճանապարհորդութիւնը երկու ժամ կը ձգի- փոքր և անմխիթար կայարանի մը առաջին՝ մեր կա- ռախումբը կը դադարի. կառաց թմրեցուցիչ շառաչին այն անզգալի տղայոց յանդուգն յարձակման աղ- մուկին կը յաջորդէ։ Որով ճամբով կառաց մէջ մտան՝ նովին ճամբով դուրս կը նետուին. ուր դուռ կամ անցք չեն գտներ՝ ցանգապատը կը մագլցեն և խուռն յարձակմամբ որձակը կը գահավիժին, այլ և այլ ուղ- ղութեամբ դաշտավայրին մէջէն դիմելով. մըրցանք մըն է թէ ով կանխաւ պիտի հասնի։

Նոյն դաշտայ ճանապարհը մեծքս իսկ կ'առնումք.

այլ այն գետինը որ կոխկրտեմք՝ հրկիզեալ, ցամաքեալ, չորացեալ է. ոչ այսչափ միայն, այլ և հըրային ջերմութեան սաստկութենէն պատառոտեալ, հերձոտեալ է. ճեղք լայն ու խոր։ Յուհայն հնձեալ ցորենոյ ցամաքեալ արմատները կը վկայեն թէ այն դաշտավայրք լաւագոյն եղանակի մը մշակեալ ըլլալու են, թէպէտ և համարիցիս յամաց հետէ մոռացեալ յանձրևաց։ Բայց և այնպէս այն լքուցիչ ցամաքութեան մէջէն գեղեցիկ է տեսնել մեծամեծ ծառոց կանաչազգեստ ճիւղերն, որ այն դաշտերէից վրայ ցիրուցան՝ անուշ ու զովարար հովանեաւ մը այն ընդհանուր ամայութիւնը կը մխիթարեն։ Մանաւանդ մանկօ ծաղկալից հսկայ ծառերն, որ ընդհուպ իրենց քաղցրահամ պտուղը կ'աւետեն։

Իբր վերջապահ կը նշմարեմ 'ի հեռուստ այն բազմաթիւ տղայոց և օրիորդաց խումբերը, որ ցիրուցան դաշտին վրայ՝ ամենայն ուղղութեամբ դէպ 'ի կէտ նպատակի կը շտապեն։ Հանդերձից ու հովանոցաց գոյնզգոյն ու շարժուն երևոյթը՝ այն անբնակ ընդարձակը վայելչապէս կ'ոգևորեն։ Արդէն հանդիպակաց բլրակ մի կ'երևի. անոր բոլորշի չէնքին սիւնազարդ գմբեթին ներքևը նախատոնակաց յառաջադէմ գունդ մը կը խռնի. այն գնդէն բազմաթիւ բազուկներ կ'երկընցան սպիտակ թաշկինակաց դրօշակներ պարզելով։ Ամենը դէպ 'ի հոն իրենց քայլը կ'առնուն. փութապէս ես իսկ այն գմբեթին հովանիին ներքևը կը պատսպարիմ։ Թուի թէ այս տեղիս ամօք յառաջ Աստուածածնայ նուիրական մատուռ մըն էր։ Այս բլրակէս անդին ընդարձակ դաշտավայրի մը վրայ կիսակործան եկեղեցւոյ մը քարաշէն որմունքն կան. հոն է որոշեալ մեր ընկերութեան դադարը։ Արդէն տղայոց խումբք այն անդուոյն հո-

վանքին ներքև կը հանգչին. այլք՝ սպասաւորաց չորս դին կ'աղմկեն, մինչդեռ անոնք նախաճաշը պատրաստելու զբաղեալ կան։ Անկէց անդին տեսարանը կանաչազարդ ծառոց խմբից մէջէն կը սահի, կը հեռանայ և մինչև 'ի ծով կը ձգի։ Զկան բնակութիւնք, եթէ ոչ հոս հոն մէկ քանի խրճիթք ողորմ երևութիւ։

Եկեղեցին՝ թէպէտ անդուան և կիսակործան՝ բայց և այնպէս խորանին վրայ ծածք մը յարմարցուցած է. և ո՛ գիտէ, գուցէ դեռ ևս ըստ դիպաց՝ Խորհուրդը մատուցանելու կը ծառայեցնեն. գոնեա ինձ այնպէս համարել կու տայ։ Կ'երևի թէ յառաջ տեղիս վանականաց առանձնարան մըն էր. վասն զի դեռ ևս եկեղեցւոյն կից դրանց ու կամարակապից մեծագործ քարաշէն մնացորդք կան, որ մեծ չինից գոյութիւնը կը մատնեն. բայց թէ ինչ պատճառաւ արդի կործանման վիճակի մէջ կը գտնուի՝ ոչ ոք կարող եղև ինձ ստոյգը զրուցել. հաւանական թուի թէ արտաքոյ կարգի բռնութեան մը հետևանք է։

Այլ ինձ յաւէտ քաղցրանայր այն զբօսալից տեսարանը դիտել՝ որ՝ եկեղեցւոյն դրանը առջև կեցած՝ աչացս առջին կը պարզէր։ Զիք արդարև մասնաւոր զարդ եթէ ոչ մարդկային ձեռաց տնկագործութեանց ձևաւոր խմբերն. ոյք ապա բնութեան ազատ խնամոց թողուած՝ չքեղ աճմամբ կը բարգաւաճին։ Դալարաւոր տունկք, որոց հովանւոյն ներքև ո՛ գիտէ որչափ ճգնազգեաց միանձանց բազմութիւնք հանգչած են։

Պարկեշտ նախաճաշին՝ տղայոց աղմկալից խաղք կը յաջորդեն. և մինչդեռ երիցագոյնք՝ փոքր խմբիկներու բաժնուած՝ ծառոց հովանին կը բնտռեն, ես բլրին ծայրը կ'առանձնանամ տեսարանը նկարելու։ Ընդարձակ դաշտավայրը ծառոց ու եկեղեցւոյն որմոց

և տակէն կ'երկննայ, կը հեռանայ, կը սահի, ու բացակայ կապտագոյն ջրի երիզի մը մէջ կ'ընկղմի։ Այն ջրային երիզէն անդին՝ երկնից կապուտին վրայ՝ մանուշակագոյն երանգով լերանց գօտի մը կը ցցուի։ Զորս բոլորս զովարար հողմիկ մը՝ ծառոց տերևները մեղմիկ մը շոյելով՝ արևուն կիզիչ սաստկութիւնը կ'ամոքէ։

Անհամբեր կը սպասեմ այն ժամուն որ դէպ 'ի Քէնէրիի այրերը պիտի ուղևորինք, զորոնք և ես անդէտս մեզ մերձակայ կը համարիմ. այլ ինձ 'ի զարմանս լուր կու գայ՝ թէ այն հռչակաւոր այրք դեռ ևս եօթը մղոն բացակայ կը գտնուին։ Ճանապարհի դժուարութիւնք իսկ միայն գոմշավար սայլից դիւրամատոյց են, և կամ հետի գնացողաց։ Սայլք իսկ մինչև որոշեալ տեղի մի կարող են յառաջել. անկէց անդին բլուրները կը սկսին, որոց վրայ տեղ տեղ մագլցի իսկ ելլելու է։ Այս անախորժ լուրը շատերը յետս կ'ընկրկէ. տիկնայք մանաւանդ լաւ ևս կը համարին ծառոց հովանիին ներքև հանգչիլ և երաժըշտական ներդաշնակութեամբ զբօսնուլ, քան թէ այնքան ճանապարհի նեղութեանց դիմագրաւ երթալ։ Արդէն իսկ տղայոց և օրիորդաց բազմութիւնը, որոց անօգուտ էր այն այրից հետաքրքրութիւնը, նոյն տեղին մնալու էին։

Սակաւ գնացողաց խմբիկը հինգ գիւղական սայլից վրայ կը բաժնուին։ Բայց ինձ, որ քան զաղմկին տաղտուկը յաւէտ ախորժելի էր առանձնութիւնը, յոյժ 'ի դէպ կու գար թալանքինի մը ներկայութիւնը. զոր անմիջապէս վարձելով կ'ընկողմանիմ, և չորս կիսամերկ Հնդկաց թիկունքն կ'ամբառնամ։ Յառաջադէմ քան զայլս ճամբայ կ'ելնամ, հրկիզեալ, անջրդի, ապա-

տառատեալ դաշտերը կը կտրենք, մինչև հուսկ ուրեմն սայլից ճամբան կը մտնեմք։ Միայնութիւն, ամայութիւն, լռութիւն. հազիւ երբեք հնդիկ մը կը հանդիպինք՝ որ պամպուկց խորձիւ մը գլուխը քնանաւորեալ՝ յանտառէն իւր հիւղակը կը փութայ։

Անհուն երկիրներ կը նշմարեմ չորս դիս՝ որ անխընամ, անմշակ, երեսի վրայ թողած կ'երևին։ Կարծես չկայ ձեռք որ այն մացառներուն չափ դնէ, այն դաշտերը մշակէ։ Ծառք վայրենի կը մեծնան, և անտառախիտ պամպուներու արմատները գետինը կը ծածկեն։ Քանի որ դէպ 'ի բլուրները կը յառաջենք՝ բնութիւնը աւելի վայրենի երևոյթ մը կը ստանայ։ Միտքս կը զարթնու երկրիս վերաբերեալ ընթերցմանցս քատորագրութիւններուն. քանի՛ քանի՛ անգամ ըղձացած էի այն տեղեաց ականատես ըլլալու. և այժմ յիրաւի այն տեղեաց վրայ կը գտնուէի. բայց մի և նոյն ատեն անախորժ մտածութիւն մը կու գար յիս. ի՜նչպէս անհանգուրժելի է ինձ մտածելն անգամ թէ այն տեղեաց վրայ միայնակ ու մոլորեալ գտնուիմ։

Իմ բեռնակիր բարիաներս՝ մերթ ընդ մերթ մէջերնին խօսք մը նետելով շարունակաբար և երագ քայլիւ կը քալեն. ճամբան՝ է տեղ որ դէպ 'ի դաշտ կը բացուի, է տեղ որ պամպուներուն մէջէն կը կտրէ, է ևս երբեմն որ քոքոյից անտառախտից մէջէն կ'անցնի։ Եւ մարդիկս ճամբուն տեղեակ՝ հեշտեաւ տեղ տեղ կտրելով կը համառօտեն զայն։

Տախտակեայ բալանքիներու մէջ ընկողմանեալ՝ մէկ կողմի փեղկիկները գոց կը բռնեմ արեգական ու փոշւոյ դէմ. փոշին ուրբ ու թանձր, որու մէջ մարդիկըս մինչև ցծունկ կ'ընկղմին։ Իրենց մկակերով քայլ որորանի շարժմունք մը կը տպաւորէ բալանքիներին, որ վրաս թմրութիւն մը կը բերէ, և զօր արեգին

խղդիչ ջերմութիւնը կը սաստկացնէ. այլ թմրութիւն որ ոչ է քուն և ոչ արթնութիւն։ Ցիրաւի՞ էր թէ ես այն ատեն Հնդկաց պատմական ու վայրենի դաշտա-րուն և անտառաց մէջ գտնուէի։ Մտածութիւններս հետզհետէ կը ստէին, և ցորչափ թմրութիւնը վրաս կը ծանրանայ՝ մշուշի մը մէջ կը թաղուէին։

Այլ յանկարծ ահաւոր ձայն մը կը լսուի և բալան-քինս ամուր մը ցնցումով որպէս թէ կը կործանի. սարսափած ու սրտատրոփ՝ վեր կը նետուիմ և ա-ռաջին մղմամբ գլուխս դէպ 'ի դուրս կը կարկառեմ, թէ վտանգ մը կայ տեսնեմ և ազատութեան ճար մը գտնեմ։ Սակայն մի և նոյն ատեն և առանց խոր-հրդածութեան ժամանակ ունենալու միւսանգամ գլուխս ներս կ'ամփոփեմ և բալանքինին միւս փեղ-կերն ալ կը փակեմ։ Ճշգիւ ժամանակն էր. վանդա-կակերպ փեղկին ճեղքերէն ուշադիր՝ յովազի մը ա-հաւոր գլուխը կը նշմարեմ որ ռնգունքն երկնցուցած՝ բալանքինին բոլորը հոտոտելով չուրջ կու գայ։ Կը զգամ թէ այն քառակուսի տուփին մէջ խնդրած ար-ու կար. և որս համեղ, նա մանաւանդ գուցէ համե-ղագոյն քան ինչ որ յամառեալ Հնդիկ մը կարող էր իրեն ընծայել։ Անդադար չուրջ կու գայ, կը մանչէր ու ճիրաններէն թաթովը փեղկը բանալ կը փորձէր։ Ստոյգ կրնայ հաւատալ ընթերցողը թէ այն ատեն ոչ տեղին, ոչ տեսարանը և ոչ դէպքը կարող էր զիս զուարթացնել։ Այս անակնկալ արկածը ինծ կ'երևար ինչպէս թէ դագաղս ըլլար. կը համարէի թէ վերջին ժամս զարկած էր ու պաղ քրտինք մը վրայէս կը հոսէր։ Ինծ օգնութիւն ուրկից հասնելու էր. անբը-նակ անտառաստանի մը մէջ էի և պահապաններուս ան-տառի մը եզերքը։ Այն մարդիկ որ զիս մինչև այն տեղ ուսերնուն վրայ վերցուցած բերած էին, ինչպէս

թէ մոգական գաւազանէ մը հարեալ՝ աներեւոյթ ե-ղած անհետացած էին. ո՞ւր էին արդեօք գնացած։ Բայց թէ և գնացած չըլլային, անզէն՝ ինչպէս էին՝ ի՞նչ օգնութիւն կարող էին մատուցանել ինձ այն ա-տեն և այն ահաւոր գազանին դէմ։ Այնպիսի ժամա-նակ բնութիւնը կը ստիպէ՝ որ անփոյթ ամենեւին ընկերոջը վտանգին՝ իւրաքանչիւր ոք իւր փրկութիւ-նը հոգայ։

Արեւը միջօրէին վրայէն չեշտակի կիզիչ ճառա-գայթներն այն անձուկ արկեղ վրայ կը զարնէր. Ջեր-մութիւնը, մոմռուքը, ծարաւը, ահը, զիս կը տագ-նապեցնէին. բայց և այնպէս փրկութեան յուսոյ թել մը սիրտս կը քաջալերէր. եթէ սայլից խմբիկը վը-րայ հասնէր փրկութիւնս ապահով էր։

Մինչդեռ ես մահու քրտամբք կը տագնապիմ, միշտ ուշադիր յովազին շարժմանց, յանկարծ այլ ա-հաւորագոյն աղաղակ մը տեղին կը թնդայ, և ան-միջապէս անտառին միջէն ահաւոր մեծութեամբ գա-զան մը ահեղ ոստմամբ բալանջինիս վրայէն անց-նելով յովազին վրայ կը գահավիժի։ Վիթխարի վագր մըն էր. առանց փախստեան ժամանակ տալու յո-վազին՝ բալանջինէն քանի մը քայլ անդին կ'ըմբռնէ։ Այնուհետեւ մահացու կռիւ մըն է կը սկսի մէջեր-նին. հարկ էր երկու հուժկու գազաններէն մին կյ-նար անկանգնելի։

Գազանային անպատմելի կատաղութեամբ մէկզը-մէկ կը խածատէին. մարմիննին պատառ պատառ կ'ըլլար. և սակայն կռիւը շուտով լմննալու չէր, ո-րովհետեւ երկու հակառակորդք ալ հաւասարապէս հզօր էին։ Մերթ գետինը փռուած փոշւոյ մէջ կը թաւալէին, և մերթ յոտս կանգնուն. իրարու ամուր պլլուած՝ ճիրանօք և ատամամբք մէկզմէկ կը վիրա-

ւորէին։ Բերաններին արիւնաթաթաւ, մարմիններին վիրալից. արիւնը իրենց վրայէն առատաբար հոսելով փոշւոյն հետ կը մածուէր։ Մորթերնուն գոյնն այլ չէր որոշուեր, այնչափ փոշին և արիւնը վրանին մածուած էր։

Իրենց կատաղութեան աղաղակներէն սիրտս, եթէ կարելի է ըսել թէ այն ատեն վրաս սիրտ կար, թունդ կ'ելլէր. վայրկեանէ վայրկեան կը մնայի որ կատաղութեամբ ասդին անդին թաւալելով ապաստանարանիս վրայ իյնան ջախջախեն ու զիս պատառ պատառ ընեն։ Սակայն յովազին փախչելու ճիգն չթողուց որ կռիւը բալանքինիս մերձենայ. քանի մը անգամ փորձ փորձեց վագրին ճիրաններէն փախչիլ երթալ, բայց յետինս միշտ դէմն առաւ ու չթողուց՝ մինչև որ իսպառ չյաղթանակեց։

Ինծ կ'երևար թէ կռիւը քսան վայրկեանէ 'ի վեր կը շարունակէր և դեռ ես անստոյգ էի թէ որ կողմը պիտի յաղթանակէ։ Բայց յանկարծ տեսնեմ յովազին վզին տակէն յորդ արիւն մը սկսաւ հոսել. կամաց կամաց սկսաւ տկարանալ. այլ թէպէտ մահու օրհասին մօտ՝ դեռ ևս ինքզինքը վագրին կատաղութեանը դէմ կը ջանար պաշտպանել։ Բայց հուսկ ուրեմն տկարացաւ, երկու ետևի ոտքն ամփոփեց, և վայրկեան մը ետքը տեսնեմ վագրը անոր փողն իր կատաղեալ բերնին մէջ առած կը սեղմէր։ Ա՛լ մահու դուռն էր, բայց և այնպէս օրհասական կատաղութեամբ աչքերէն կրակ կը ցատկեցնէր. մինչև հուսկ ապա վագրին ճիրաններուն մէջ անզգայ դիակ մը մնաց։

Յաղթող վագրն առ վայր մը իւր հակառակորդին դիակը գետինը դրաւ, և գոռոզ հայեցուածքով անոր նայելով երկու յաղթանդամ թաթերը դէպ անոր

գլուխը քշեց ու նստաւ, ինչպէս թէ սաստիկ խոնջութենէն շունչ առնել ուզէր։ Մտախոհ կերպիւ գլուխը հանգչեցուց մէկ թաթին վրայ. կարծես այն անշունչ անշարժ դիակէն շարժմունք մը կը սպասէր տեսնել՝ որ միւսանգամ վրան յարձակի ու պատառէ։

Կատաղութեան աղաղակներուն մահու լռութիւն մը տիրեց. լռութիւն՝ որ վրաս մահու քրտինք բերաւ։ Կը համարէի թէ այնուհետեւ կարգը ինծի գար պիտի եւ սիրտս ամուր մը կը բաբախէր։ Բայց բարեբաղդաբար ճակատագիրս կնքուած չէր՝ որ ոսկորներս գազանաբեկ՝ անապատին մէջ ցրուին։

Տեսնեմ վագրը յանկարծ այն հանգիստ վիճակէն գլուխը ցնցելով վեր վերցուց, աչքերը տնկեց եւ ռնգամիքը օդը հոտոտելով՝ կարծես վտանգի մը երկիւղը լրտեսել կ'ուզէր։ Յանկարծ կանգնեցաւ, բացաւ ահագին բերանը եւ յովտը մէջքն առնելով՝ ցնցեց ամուր մը կռնակը շողակեց, եւ դեռ ես աչք ու թեւ չըրած՝ պամպուկներու անտառին մէջէն անհետացաւ։

Ինծ երազ մը կը թուէր. մահու օրհասը հասած՝ մինչդեռ րոպէէ րոպէ գազանին ժանեաց կը մնայի՝ նա իր որսումը աղէկէս կ'անհետանար. կուրծքիս վըրայէն կարծես գերեզմանի մը ահաւոր քարը վերցուեցաւ. եւ անմիջապէս անդրադարձայ որ քիչ մը անդին աղաղակներ կը լսուէին. սայլից խմբերն էր որ վրայ կը հասնէր։ Կենաց յոյսը դարձաւ յիս եւ կուրծքս ամուր մը օդու բանալով՝ տատա շունչ մը առի։ Այնուհետեւ ամենայն վտանգէ ազատ էի. մանաւանդ որ ընկերութեանը մէջ պինեալ մարդիկ կային։ Ինծ մերձ գալով՝ գազցես բալանքինէն քաշկռտելով դուրս հանեցին. այնպէս ուժաթափ ըրած էր զիս երկիւղն որ ոտից վրայ կանգնիլ կարող չէի։

Ցայլի մը վրայ հանգչեցուցին զիս. ապա պատանիի ա-ռատաղեղ դաւաթիկ մը վրաս ուժ բերաւ ու կրած սարսափս թմրեցաւ։ Բալանքինի սպասաւորներն իսկ իրենց ապաւէն ծառերէն վար իջնելով՝ վերուցին Բա-լանքինը. բայց ասոնց խմբէն ալ հեռանալ յանձն չառին։

Այսպէս մեր փոքրիկ խումբը միայն՝ այն ան-բնակ ծառաստաններուն մէջէն անցնելով՝ վերջապէս սեւացեմ ու ժայռուտ բլրոց ոտքը հասաւ։ Ասկէ անդին սայլք յառաջել կարող չէին. հարկ եղև իջ-նել և հետի բլրոց կողերէն քալելով՝ դժուարին ճամ-բէ մը վեր ելնել, յառաջելով դէպ այրերը որ մեզի հանդիպակաց բլրի մը վրայ իբր բանտերու պատու-հանք կը նկարուէին։ Իբր ոչխարաց երամ՝ մէկմէկու ետևէ եռև չարուած՝ անձուկ պողոտայէ մը բլրոց վրայէն վեր ելնելով չորջ հու գանք, մինչ հուսկ ու-րեմն իբր մոգլցի կ'ելլենք այն ժայռին մէջ փորուած այրից բերանը։

Քէնտրիսի այրք թէ աւելի հին են քան զՆէֆիանդայի այրը, թէ աւելի մեծագործ և թէ միանգամայն ան-կէ աւելի աղէկ պահուած։ Նա գուցէ անոր համար աւելի աղէկ վիճակի մէջ կը գտնուին, որովհետև ոչ միայն հեռի են բնակութենէ, այլ և ճամբուն դժուարութիւնը այցելուաց բազմութիւնը հեռի կը բռնէ. անով ազատ կ'ըլլան մարդկային բանի ապա-կանութիւններէն։ Հանդերձ այսու՝ ժամանակի և օ-դոյ անպարախանութեան վնասներուն ենթակայ են։

Հոս կրնայ դուրցուիլ թէ ողջոյն բլուրը այրերու քաղաք մըն է. որովհետև բոլոր այն ժայռին չուրջը բազմաթիւ այրեր փորուած կան, ուր Դուռայի նախ-նիք հետևողք միանձնական կեանք մը անցնելու կը

քաշուէին։ Այս այրից ոմանք այնպէս խոր կը ձգին դէպ լերան ներսը, որ կ'ըսեն թէ ոչ երբեք մարդ կրցեր է անոնց ծայրը թափանցել։ Աւանդութեամբ իսկ կը զրուցուի, թէ գետնափոր ճամբայ մի կայ որ դէպ 'ի քաղաք մը կը հանէ. զոր ստուգելու համար սրտոտ Բորդուգալցի մը այրը մտաւ, և չուանի մը միջոցաւ՝ որու մէկ ծայրը ինքը ձեռքը բռնած էր միւսն իր ընկերներն այրէն դուրս կեցած՝ գնաց դէպ յառաջ. սակայն եօթը ժամ քալելէն յետոյ՝ չուանին և սրտին հատնելովը՝ ետ դարձաւ առանց բան մը ստուգած ըլլալու։

Այս այրք նշանաւոր են թէ իրենց թուովը, թէ գեղեցիկ դիրքովը, թէ զարմանալի փորուածներովը, և թէ Պուտայի կրօնից յայտնապէս վերաբերելովը։ Բարձր ու սևատես ժայռուտ բլրի մը երկու կողմը այլ և այլ բարձրութեամբ ցրուած են. և ինչպէս ըսինք, պուտական միանձնականաց իբր ճգնարան ծառայած են։ Շատերն իրենց մօտից կից մասնաւոր փոքր ջրամբարներ կամ ջրի ընդունարաններ ունին, որոց մէջ անձրևի ջուրը կը մզուի. որք և մեզ յոյժ պատեհ եկան՝ ծարաւնիս յագեցնելու, աւուր ջերմութեան և ճամբուն երկայնութենէն պապակեալ ըլլալով։

Այս այրից միջէն մեծագոյն մը նշմարեցինք որ ամենէն նշանաւորն էր. և էր արդարև պուտական տաճար մը։ Ասոր ճակատը՝ որ բուն ժայռին մէջ փորուած է՝ պարզ ու չիտակ է, առանց ամենևին զարդ մը ունենալու։ Մէջտեղը բարձր քառակուսի դուռ մը ունի, որու իւրաքանչիւր կողմը մէկմէկ պատուհան կայ. ասոնց վրան ալ չիտակ գծով հինգ քառակուսի պատուհանաց շարք մը կայ։ Այս ճակտիս երկու կողմը մէյմէկ ութանկիւն ձևով սիւն կայ, ո-

բոց միայն վրայ կան երեք առիւծք, նստած ու կըռնակնին մէկմէկու տուած. իսկ միւս սեան վրայ գաճաճներու խորհրդաւոր խմբիկ մը կայ։

Ճակտին ները, երկայն ու նեղ բակին մէջ, Պուտայի երկու հսկայ արձաններ կը տեսնուին. իսկ որմոց վրայ քանդակեալ պատկերներ, յորս նշմարեցի ոմանց դիմաց արուեստական գեղեցկութիւնը։

Մուտքը ընդարձակ դուռ մըն է, որու վրայ կիսալուսին պատուհան մը կը տեսնուի։ Այս դռնէս ներս մտնելով տաճարին ընդարձակ միջոցը կը գտնուիս, որ է գրեթէ քսանուհինգ մեդր երկայն, տասուերեք լայն ու տասնըհինգ բարձր։ Երկու կողմը երկու կարգ ութանկիւն ձեւով սիւներ կան, նեղ ու երկայն թեւով մը որմերէն զատուած։ Այս սիւներէն տասուերկուքը միայն՝ դռնէն սկսելով քանդակեալ զարդերով խարիսխներ ու խոյակներ ունին. միւսները չաւարտած կը թուին։

Տաճարին ծայրը՝ դրան հանդիպակաց՝ տեսակ մը մեծ խորան կայ կամ լայն խարսխով գմբեթաձեւ կոթող մը, հինգ մեդր բարձր. այս է տակոպան որ ամեն պուտական տաճարի մէջ անհրաժեշտ գտնուելու է։ Եւ դարձեալ այս գմբեթաձեւին գագաթը խոյակի մը նման յաւելուած մը կայ, որու վրայ սովոր էին դնել յարգութեան խորհրդական նշանը, որ ընդհանրապէս ոսկեզարդ մեծ հովանոց մըն էր։ Տաճարին այս ամեն մասունք նմանապէս ժայռին մէջ փորուած են։

Իսկ տաճարին առաստաղը կամարաձեւ է. և կ'ըսեն թէ յառաջ գերաններ կային վրան հաստատուած, ուսկից սովոր էին կանթեղներ ու ծաղիկներ կախել հանդիսաւոր օրերը. սակայն հիմայ հազիւ թէ մէկ քանի փոքր գերաններու հետքը կը նշմարուին։

Այս տաճարս վսեմ տպաւորութիւն մը կ՚ընէ այցելուին մտաց մէջ. մարդ կը զարմանայ մտածելով այն մեծագործ մարդոց համբերութեան ու մեծ մըտածութեան վրայ, որ այսպիսի հրաշալի շէնքեր ժայռի մի միջէն կրցեր է արտադրել. այնպիսի ժամանակ որ ճարտարապետութեան գործիներն դեռ եւս իրենց սկզբնական վիճակին մէջ կը գտնուէին։

Թուի թէ՝ անձրեւաց եղանակին՝ ջուրը անարգել և առատաբար մզուելով ներս կը թափանցէ, և այս լճանալով ջերմ եղանակին կը ցամքի։ Որովհետև գետինը չորցեալ ցեխի սև ու թանձր խաւ մը գըտանք հերձոտեալ, ուսկից անախորժ հոտ մը կը բուրէր։ Այրին մի միայն բնակիչ՝ ջղջկանց անհամար լեգէոններ գտանք, որ մեր մերձաւորութենէն սարսափած՝ սուր ու քամինելի ձայներով այն կէս մը մութ միջոցին մէջ կը թռչտէին։

Այս տաճարէս ելլելով շուրջ կու գանք դէպ՚ի հիւսիս՝ ուրիշ բազմութիւ այրից առջեւէն անցնելով. մինչև վերջապէս ժայռին վրայ փորուած երկայն բարակ սանդղի մը առջեւը կու գանք։ Հոս հարիւրաւոր այրից կամ սենեկաց տեսարանը կ՚ելլէ առջևնիս, որ այն ժայռերուն գետնափոր քաղաքի մը երևոյթը կու տան։ Որ կողմը աչքերնիս դարձնենք մութ դըռներ կամ սիւնազարդ անցքեր կը տեսնենք, որք լեռան դէպ՚ի ներսը կը մխին։

Այն տեղեաց վրայ խոր լռութիւն մը կը տիրէ ամենուստեք. լքեալ թողեալ քաղաք մը կը նմանի՝ առասպելական դարուց խորհրդաւոր հրաշալիք։ Շրջակայ բնակիչք խսկ կը համարին թէ այն այրք դևաց ապաստանարանք են. այս կարծիքը այնքան երկիւղ կ՚ազդէ ժողովրդեան որ ոչ ոք կը համարձակի անոնց

մերձենալու։ Այսպիսի ժողովրդական երկիւղալից կարծիք գուցէ անկէ առաջ եկած է որ այն լքեալ խղիկք բազմաթիւ վագերց ու գազանաց ապաստանարան եղած են. անանկ որ երբեմն ևս անզգոյշ խուզարկուաց հետաքրքրութեանը խիթալի. կրնան ըլլալ։

Սանդղին աստիճաններէն վեր ելնելով՝ ըլրին ժայռուտ գագաթը կ՚ելլենք. ընդարձակ ու գեղեցիկ տեսարան մը կը նկարուի առջևնիս։ Սակայն ամենէն առաջ կապկաց երամ մը կը դիմաւորէ զմեզ, որ չուտ մը սարսափած՝ թփէ թուփ, ծառէ ծառ ոստոստելով կը հեռանան կը փախչին։ Այն ուղղութեամբ աչքերնիս տանելով ընդարձակ քաղաքի մը հեռաւոր աշտարակները կը նշմարենք, որպէս թէ ընդարձակ ծովու մը ջրին միջէն կանգնուէին։ Այն ծովուն մէջ իսկ բազմաթիւ կղզիացեալ բլուրք ցիր ու ցան կը տեսնուին, մինչդեռ լերանց գօտիք աւելի անդին ցամաքին մէջ կը մխին։ Շուրջերնիս անտառք ու բլուրք ողջոյն տեսարանը կը զգեստաւորեն. բայց մեր ձախակողմը ըլրոց մէկմէկու կից խմբէ մը բարձր գոգ մը ձևանալով Վիհար մականուանեալ լիճը կը գոյանայ, որու ջրերը՝ կ՚ըսեն՝ Պոմպէյ կ՚իջնեն, բազմամարդ քաղաքը արբուցանելու։

Բլրէն իջնելով սայլերը փութացինք և միագունդ նոյն ճամբով մեր դարձը սկսանք. մէկ քանի օձից տեսիլը և հեռաւոր գազանաց մռնչիւնը մի միայն դէպք եղան մեր ճամբուն։ Մութը կոխեց, այլ գեղեցիկ լուսին մը հորիզոնէն սկսաւ բարձրանալ որ մեզ մինչև բուն բանակը առաջնորդեց, ուր գտանք ուրախութիւն, կաքաւ և ծիծաղուց աղաղակ։

Բայց երկաթուղւոյն ժամը մերձեցեր էր, և խոնջութիւնը տիրած էր տղայոց վրայ։ Փութացինք կառատունը, ուր՝ դարձեալ առաւօտեան հանդիսիւ՝ կառ-

*քերը լցան։ Երբ Պոմպէյի լապտերները տեսանք՝ բոլոր այն աղայոց բազմութիւնը կարծես վերջի քունը կը ննջէին. մահու լռութիւն մը տիրած էր կառքերուն մէջ։*

*Երկրորդ օրը ինձ իբր երազ կը թուէին նախընթաց աւուր պատահարք։*





## Պոմպէյ Քաղաքին Ժողովուրդը

Պոմպէյ՝ փոքր ու բազմամարդ կղզի մըն է քսան-ուերկու մղոն քառակուսի՝ տարածութեամբ։ Մի-ջոցին անձկութեանը պատճառաւ ժողովուրդը բըռ-նադատուած է տանց մէջ խռնած բնակելու։

Կղզիս՝ որ նախ Բորդուգալցոց իշխանութեաններ-քեւ էր՝ 1662ին Անգղիացւոց ձեռքն անցաւ։ Այն ատեն բնակչաց թիւն էր 10,000. յետոյ կամաց կա-մաց աճելով 1716 Թուականին եղաւ 16,000 հոգի. իսկ դար մը ետքը՝ 1816ին վարչութեան ըրած ազ-գահամարի մը համեմատ՝ 161,550 հոգի եղեր էր, այսպիսի համեմատութեամբ.

| | |
|---|---|
| Անգղիացի ժողովրդականք . . . . . . | 1,840 |
| » զինուորականք . . . . . . | 2,460 |
| Բնիկ քրիստոնեայք Բորդուգալցիք և Հայք . | 11,500 |
| Եբրայեցիք . . . . . . . . . . . . | 800 |
| Մահմետականք . . . . . . . . . . . | 28,000 |
| Հնդիկք . . . . . . . . . . . . . | 103,800 |
| Փարսիք . . . . . . . . . . . . . | 13,150 |
| | 161,550 |

Ըստ աշխարհահամարին որ եղև 'ի 1832 ամին՝ ժո-ղովրդեան թիւն էր 644,405. մինչդեռ 1864 տարւոյն՝ էր 816,562։ Այս մեծ տարբերութեանս պատճառն է որ Ամերիկայի պատերազմին ժամանակ 'ի Պոմ-պէյ մեծ գործունէութիւն մը բացուելով, Հնդկա-ստանի ամեն տեղէն բազմութիւն մը բաղդախնդրաց և գործաւորաց թափեցաւ հոն՝ 'ի խնդիր բաղդի և

աշխատութեան. ուստի և այն սակաւ ամք մեծ բարեբաղդութիւն ու ճոխութիւն բերին 'ի քաղաքն։ Բայց ապա ամերիկեան պատերազմին լմննալովը ու գործոց նուազելովը, միւսանգամ եկաւորք քաշուեցան և ցրուեցան։ Սակայն և այնպէս ցայսօր Պոմպէյ բազմամարդ է քան զԿալկաթա և զՄատրաս, և նաև բրիտանական կայսրութեան երկրորդ բազմամարդ քաղաքը կը համարուի։

Արդ 1816 թուոյն ազգահամարին նայելով՝ Հայք իսկ իրենց թուովը քրիստոնեայ ժողովրդեան նշանաւոր մաս մը կը կազմէին։ Ընդհակառակն այսօրուան օրս այնպէս նուազած են որ մասնաւոր թըւարկութեան մը տակ չեն իյնար։ Ցորչափ որ վաճառականութիւնը իրենց ձեռքն էր ճոխ ու բազմաթիւ էին, բայց երբ Անգղիացիք բազմանալով վաճառականութիւնը իրենց ձեռքը գրաւեցին, Հայք բռնադատեցան տեղի տալ և ուրիշ տեղուանք գաղթել 'ի խնդիր բաղդի։ Եւ այսպէս այսօրուան օրս հազիւ թէ քանի մը Հայ ընտանիք կան 'ի Պոմպէյ, որոց անհատից համագումար թիւը երեսունի չի հասնիր։

Փոքր եկեղեցի մի ունին, նուիրեալ Պետրոս առաքելոյն, զոր իրենց հարց բարեպաշտութիւնը և ազգասիրութեան նախանձը կանգներ են. որպէս զի հեռի 'ի հայրենեաց՝ չմոռանան իրենց ազգութիւնը ոչ հայրենական ծէսն և ոչ արարողութիւնքն։ Եւ որովհետև գաղթեալքն 'ի Պոմպէյ՝ շինողք եկեղեցւոյն՝ էին 'ի ժողովրդոց Նոր Ջուղայի, առաջնորդական իրաւասութիւնը կը վերաբերի Ամենափրկչի վանուց առաջնորդին. որոյ է իրաւունք միշտ անուանել տեղւոյս հովիւը։ Արդի վիճակաւոր քահանայն էր Տէր Յոհաննէս Մարկոսեան, որ ճգնազգեաց կեանք մը կը վարէր, միշտ անմեկին իւր անմխիթար բնակարանէն։ Ե-

կեղեցւոյն կից կան երկու տունք խանութներով հանգերձ, որոց մին՝ անզարդ սենեակ մը՝ կը ծառայէ Տէր Հօրը իբր բնակարան, իսկ միւսը՝ խանութներով հանդերձ 'ի վարձու տուեալ է . և եկամուտը կը ծառայէ իբր թոշակ քահանայի։

Որովհետև այն քանի մի Հայք՝ որ մնացեալ են դեռ ևս՝ իւրեանց լեզուն մոռացեր են, և անփոյթ իւրեանց ազգային ծիսից՝ չեն յաճախեր եկեղեցական պաշտամանց, 'ի բաց առեալ տարւոյն մէկ կամ երկու առթիւ, բնական է որ առաջնորդ քահանայն իսկ առանձնակեաց կեանք մը վարելու բռնադատի։ Սակայն այս վիճակաւոր քահանայից զոհն իսկ եռամեայ է. իրեք տարի մէկ՝ այլ ոմն կու գայ իւր տեղը, և ինքն ազատ է իւր հայրենիքը դառնալու։

Կան նմանապէս քանի մի քրիստոնեայ Հնդիկք Տէր Յոհաննիսին առաջնորդութեան ներքև, որ ըստ ասելոյ Պ. Թորոս Խահակեանի, որ այն ատեն 'ի Գոմպէյ գտնուելով արարողութեանց կատարման նախանձայոյզ էր, աւելի ջերմեռանդն են քան զբուն Հայս։ Սոքա ևս և հայերէն լեզուի փոքր տեղեկութիւն ունին, և 'ի սոսա գլխաւորն է Խաչիկ մականուանեալ ոմն՝ եկեղեցւոյն սպասաւոր. և 'ի կանանց Սանամ ոմն և այլ երեք այրի կանայք։

Ամեն կիւրակէ կանուխ յառաւօտուն անցաւորք եկեղեցւոյն դրան մօտէն քերելով՝ ներսը խորանին վառած ճրագները կը նշմարեն, միանգամայն և սաղմոսերգութեան ձայնը կը լսեն։ Քահանայն իւր մէկ տիրացու՝ ձախակողմն ունենալով անհրաժեշտ ժամակարգութիւնը կը կատարէ . սակայն խորհուրդը միայն քանի մը անգամ տարին կը մատուցանէ։ Եկեղեցին միշտ թափուր է, և միայն այն մէկ քանի Հնդիկք՝ զորս յիշեցինք՝ երբեմն երբեմն կը տեսնուին։ Փոքր մի

ևս և այս եկեղեցին պիտի խապառ լռէ. և ըստ ասելոյ Տէր Յոհաննու, գուցէ տասը տարիէն այլ ևս հարկ չըլլայ քահանայ մի պոհել այն կողմերն ուր իւր պաշտօնն գրեթէ անօգուտ է։ Արդարև այն ամենք ՚ի Հայոց որ դեռ ևս կը մնան, ոչ միայն լեզունին կորուսած են, այլ և ազգայնութեան հոգի իսկ չունին։

Եկեղեցւոյն ներսը ամենևին անզարդ է։ Խորանը որ ըստ հայկական արարողութեան կանգնած է՝ պատկեր մը ունի որ Տեառն մերոյ վերջին ընթրիքը կը ներկայացնէ. և է չափաւոր արհեստիւ շինած պատկեր։ Սեղանոյն երկու կողմը երկու մթին խորշեր կան. մին կը ծառայէ իբր զանգակատուն. միւսը իբր աւանդատուն։ Եկեղեցին ամենևին ճոխութիւն չունի և ոչ իսկ վայելուչ հանդերձեղէն։ Ճաշոցն և աւետարանը՝ որ միշտ սեղանին վրայ կը գտնուին՝ Վենետիկ տպագրուած են։

Խորանին տակը հետևեալ արձանագրութիւնը կը կարդացուի.

« Կառուցաւ սուրբ եկեղեցիս յանուն սրբազան առաքելոյն Պետրոսի, ՚ի հայրապետութեան Տեառն Ղուկասու սրբազան կաթողիկոսին ամենայն Հայոց, արդեամբք Համատանցի Պարոն Յակոբին, ՚ի յիշատակ ծնողացն իւրոց, հօրն՝ Պարոն Պետրոսին և մօրն՝ Ջանազան խաթունին. հիմնարկութեամբ սրբոյ աթոռոյն Էջմիածնի նուիրակ Յակոբոս արքեպիսկոպոսին.— Յամի Տեառն ՌՁԴՁ և յամսեանն սեպտեմբերի Լ. և Թր. ՑԺԴ »։

Իսկ աւանդատան դրան վրայ կայ հետեւեալ արձանագիրը.

«Նորոգեցաւ արտաքին կողմունքն սրբոյ եկեղեցւոյս հանդերձ շինուածովքն՝ արդեամբք Աղա Յակոբ Յարութիւն Թաղեանց, 'ի յիշատակ մօրն Թամար ազնիւ տիկնոջն և քեռն Աննա օրիորդին՝ 'ի Քրիստոս հանգուցելոց. ձեռամբ Նուիրակ Յակոբոս արքեպիսկոպոսին. — Յամի Տեառն 1801 Լ. Շամս 3։

Այսպէս այս եկեղեցւոյս ալ, զոր հայկական բարեպաշտութիւնը կանգներ է, նոյն վերջը կը սպառնայ՝ ինչ որ ունեցան այլ Հայ գաղթականութեանց կանգնած վանատեղիք ու եկեղեցիք։ Արդէն իսկ 'ի Պոմպէյ Հայու անունը հազիւ երբեք կը լսուի. և միայն խոնարհ փողոցի մը պատին վրայ Armenian Lane անունը դեռ ևս արձանագրեալ կը մնայ. նշան՝ թէ այն փողոցը ատօք յառաջ Հայոց բազմութիւնը կը բնակէր։ Փողոցը խոնարհ, մթին, նեղ և անպաճոյճ, ուսկից հազիւ երբեք կը տեսնես որ Հնդիկ մը անցնի։ Այսպէս անհետացեալ Հայք իրենց անձին նշան՝ միայն անուն մի կը թողուն. և չիք տարակոյս թէ օր մը երբ քաղաքը նոր շինութիւններով զարդարուի ու նորոգուի, տեղին կերպարանափոխ ըլլալով՝ նոյն փողոցին անունն ու հետքն ալ նոր շինուածոց հիման տակ թաղուին։

Պոմպէյի միւս բնակիչք տեսակ տեսակ ազգութիւններէ կը բաղկանան, անանկ որ՝ կ'ըսեն՝ աշխարհիս վրայ չկայ ուրիշ տեղ մը ուր տեսնուին այնքան մարդոց զանազան ցեղեր, ազգեր ու կրօնքներ ինչպէս հոս 'ի Պոմպէյ։ Եւ այս ամենայն ժողովուրդք, թէպէտ մերձակայ նահանգներէն գալով հոս կը ժողովին, բայց և այնպէս թէ կերպարանօք թէ սովորութեամբք, և թէ այլ ամենայն նշանօք՝ գլխովին կը զանազանին

մէկմէկէ։ Հոս 'ի Պոմպէյ ամեն քայլ առնելուդ քեզ կը դիմաւորեն Հնդիկք, Պանիանք, Մահրադդայք, Մահմետականք, Աֆղանք, Պարսիկք, Արաբացիք, Տաճիկք, Մալայացիք, Հապէշք, Հրեայք, Փարսիք կամ Նախնի Պարսիկ՝ և Բորդուգալցիք։ Եւ հուսկ ուրեմն իբր ասոնց ամենուն լրումն՝ կու գան զանազան գաղթականութիւնք Եւրոպիոյ, յորս յայտնապէս կը գերազանցէ Անգղիացին։

Պուտայի հետևողք, Ճէյնք, Պրահմինք, և Պադեայք կը բաղկացնեն ժողովրդեան մաս մը՝ որոնց կրօնքը կ'արգելու կենդանեաց միս ուտել. ասոնք ընդհանուր ժողովրդեան հարիւրին ութը կը բաղկացնեն։ Ասոնց ամենուն կրօնական սկզբունքներն պտուտականաց կընմանին։ Պատկերներ կը պաշտեն և կը հաւատան հոգեփոխութեան. անոր համար ալ ոչ երբեք կենդանի մը կը սպաննեն։ Իրենք զիրենք բոլորովին վաճառականութեան տուած են, ուստի և անբաւ հարստութիւն կը հաւաքեն։ Իրենց տաճարները բազմաթիւ են և մեծածախ, ոսկւով, գոհարներով և արձաններով զարդարած։

Ուղղափառ մականուանեալ Հնդիկքն՝ Պոմպէյի ընդհանուր ժողովրդեան երեք հինգերորդքն կը բաղկացնեն, և ըստ իրենց կրօնական սկզբանց երկու կը բաժնուին. մէկ մասը երկրպագութիւն կը մատուցանէ Վիշնու կամ պահպանիչ դից, միւսը Շիվա կամ ապականիչ դից, որք Հնդկային երրեակ դից երկրորդ և երրորդ դիք են։ Շիվայի հետևողք իրենց ճակատը հորիզոնական գծերով կը դրոշմեն, մինչդեռ Վիշնուի հետևողք ուղղահայեաց գծեր կը գծեն։ Եւ այս նշանները հարկ է որ ամեն Հնդիկ ամեն առտու դրոշմէ անհրաժեշտ իր ճակտին վրայ, որպէս զի միշտ դից շնորհքին մէջ գտնուի։ Լուքշմի է Վիշնու դից կինը,

որում Հնդիկք մեծ յարգութիւն կը մատուցանեն։ Պագեայք իրենց քուրմերը կը համարին 'ի գից սերեալ, անոր համար ալ մեծապէս կը յարգեն զիրենք։ Բաց ասկէ այս Հնդիկք կը պաշտեն զԿունփուտի, որ է փղագլուխ դիք։ Շիվային անձնապէս պաշտօն չեն մատուցաներ, հապա իր ջերմեռանդք գլխաւորապէս իւր Քալի կնկանը երկրպագութիւն ու պաշտօն կը մատուցանեն։

Պրահմիններէն ետքը ընիկ Հնդկաց մէջէն կարևորագոյն դասն են Պանիանք։ Ասոնց համար կը զրուցեն թէ անյագաբար միայն շահասիրութեան ու գանձ ժողովելու հետամուտ են. և թէպէտ անհուն գանձ ունենան՝ հանդերձ այսու փոքր դրամ մը ձեռք բերելու համար ամենայն միջոց կը բանեցնեն։ Կան շատք որ երկու կամ երեք միլիոն ռուփիի տէր են. և սակայն եթէ կէս ռուփիի շահ մըն ալ տեսնան՝ քաղաքին մէկ ծայրէն միւս ծայրը ոտքով վազելու անփոյթ չեն ըլլար։ Ի Սուրատ խօսք մը կայ որ կ'ըսէ, թէ երեք Հրեայ պէտք են մէկ Չինացի մը շինելու, երեք Չինացի ալ մէկ Պանիան մը։ Որովհետև իրենք զիրենք բոլորովին վաճառականութեան տուած են՝ Հնդկաստանի ամեն դին կը ճանապարհորդեն. կան որ միշտ վաճառականութեան հետամուտ՝ երկու երեք տարի իրենց ընտանիքէն հեռու կը մնան։ Այս ժողովուրդը՝ որոց շատք ճէյնք են՝ մեծապէս կը յարգեն կենդանեաց կեանքը. անանկ որ ինչ և իցէ չնչին որդ մըն ալ սպաննելէն կը զգուշանան. և անսովոր բան չէ 'ի Պոմպէյ տեսնել այապիսիներէն որ մրջիւնները սնուցանելու համար ճամբան ու պատերու վրայ շաքար կը ցանեն. թող այն հազարաւոր ազատ աղաւնիներն՝ որոց կերակուրը իրենք կը հոգան, և բազմաթիւ անկելանոցներն՝ ուր ինչպէս առանձին գլխով

ըսինք՝ ծնրացած, անպիտանցած, հիւանդ, պակասաւոր և անտէր կենդանիք կը ժողովեն ու կը խնամեն։

Մարվարիք կը համարին իբր Պանիանց մէկ տեսակ մը, որոնք միջին Հնդկաստանէն կու գան։ Ասոնք սեղանաւորք ու փոխատուք են. անանկ որ Պոմպէյի ժողովրդեան մեծ մաս մը միշտ ասոնց պարտապան են։

Այլ քաղաքին ստորնագոյն և աւելի բազմաթիւ մասը կը կոչուի Քուլի, որ են ձկնորսք կամ գործաւորք, և որք կրնան իբր կղզւոյս բուն բնիկք համարիլ։ Ասոնց բազմութիւնը ամեն օր քաղաքիս ամեն դին կը տեսնուին, մանաւանդ այն կողմերն ուր կը գտնուին բազմաթիւ գործարանք։ Իրենց բազմութեամբը և աղտեղի հանդերձներովը քաղաքին խորշելի երևոյթ մը կը տպաւորեն։

Մահրադայք ուրիշ դաս մը կը կազմեն ժողովրդեան, որք կը համարին իբր հնարագէտ, խելացի, արիասիրտ և գործունեայ։ Ասոնք՝ բաց 'ի Հնդկային դից խմբէն՝ ունին նաև իրենց առանձին ժողովրդական աստուածներն և դևերն. իրենց կրօնական զգացմանց մէջ եռանդնալից՝ ուխտատեղիները յաճախել շատ կը սիրեն։ Բայց վաճառականութեան ամենևին տաղանդ չունին. քիչ կան որ ինքզինքնին խանութպանութեան կամ առևտրոյ տան։ Քանի որ դեռ Անգղիացիք չէին տիրած տեղւոյս, ասոնք էին որ իրենք զիրենք կու տային զինուորութեան, քաղաքագիտութեան, հովուութեան և երկրագործութեան։ Բայց հիմա իրենց զբաղանք ըրած են օրէնսգիտութիւնը և գրագրութիւնը. իսկ իրենց մէջէն ռամիկք՝ ախոռապետք ու կառավարք կ'ըլլան։

Մահմէտականք՝ որք ժողովրդեան մէկ հինգերորդը կը կազմեն, իրենց կրօնական սկզբանցը համեմատ՝ երկու մեծ խումբ բաժնուած են, Սուննիք և

փայք։ Առաջինք կը համարին ուղղափառ մահմէտա-անք, որ Մահմետէն ետքը խալիֆայից պատմական աջորդութիւնը կ'ընդունին, Ապուպէքրով, Օմարով ու Դամասկոսի խալիֆաներով. մինչդեռ երկրորդներն Ալիին կը հետևին, և Հասան ու Հիւսէին անոր որ-ւոցը։ Շիայք աւելի բազմաթիւ են 'ի Պոմպէյ. որոց կը վերաբերին Պօրայք, որ են ամեն տեսակ նիւթի ստանդական վաճառականք. և 'ի Հնդիկս չկայ տուն որ իրենք ներկայացած չըլլան։ Ասոնց համար կը զուրցուի որ թէպէտ և մահմէտականք են, սակայն սովորութեամբ, կերպարանօք ու տաղանդով Հրէից կը նմանին։ Սուննիք կը բաղկանան յԱրաբացւոց, 'ի Տաճկաց և 'ի Հնդիկ մահմէտականաց Կոնկանի։ Ասոնց թիւն ըստ եղանակին կ'աճի ու կը նուազի. որովհետև Պոմպէյ գլխաւոր նաւահանգիստ ու ժողովատեղի կը համարի Մէքքէ գնացող ուխտաւորաց։

Այս ամենայն ժողովրդոց մէջէն՝ Փարսիք աւելի սակաւաթիւ են. սակայն աւելի գործունեայ են, և ցեղական աւելորդապաշտ խտրութիւններ չունենալով աւելի ալ ազատամիտ։ Եւրոպացի գաղթականաց և գլխաւորապէս Անգղիացւոց աւելի մերձակայ՝ հեշտաւ յաջողեր են անգղիական լեզուին ընտելանալ. անոր համար ալ բոլոր ժողովրդեան մէջէն ամենէն քաղաքակիրթ ու յառաջադէմ են։ Իրենց պատմութիւնը յայտնի է։ Եօթներորդ դարուն երբ մահմէտականք տիրեցին Պարսկաստանի, փոքր մաս մը կրակապաշտից, որոնք դժկամակ էին իրենց հայրենական կրօնը թողլու, հայրենիքնին թողին և տուին իրենք զիրենք կամաւոր աքսորանաց։ Նախ և առաջ ապաւինեցան յՕրմուզ՝ Պարսկական Ծոցը. ուր կը զրուցուի թէ նաւաշինութեան արհեստը սորվեցան, որ և յետոյ իրենց մեծապէս օգտակար եղաւ։ Քանի մը տա-

րի ետքը այն տեղին ալ Թողլով գաղԹեցին 'ի ծովեզերս Հնդկաց, 'ի Տիու, յափունս Քաղիվարի։ Սակայն հոս յաջողուԹիւն չգտնելով փոխադրուեցան 'ի Սանճան որ 'ի Կոզէրադ, ուր Ճատու Ռամա Հնդիկ Իշխանը զիրենք մեծ սիրով ընդունելով, Թոյլ տուաւ որ իւրեանց պաշտաման նուիրական հուրը վառեն։ Հոս հետզհետէ բազմանալով սկսան Կոզերադի միւս գլխաւոր քաղաքները ցրուիլ, այն աշխարհին բնակչաց հետ ամուսնուԹեամբ կապուիլ, 'ի վար արկանելով անոնց լեզուն ու սովորուԹիւնները։ Բայց իրենց արտաքոյ կարգի ցեղական յաջողուԹիւնը կարծես այն ատեն սկսած է՝ երբ Եւրոպացիք սկիզբն ըրին Հնդկաստանի կողմերը նաւարկել։ Փարսիք՝ չունենալով բնկաց նախապաշարմունքները օտարաց դէմ իբր Թարգման ու միջնորդ ծառայեցին բնիկ Հնդկաց ու Եւրոպացւոց մէջ. բայց աւելի իրենք զիրենք մօտ բռնեցին Անգղիացւոց, որով և սկսան զգալի կերպով օգտուիլ ու մեծ ճոխուԹեան տէր ըլլալ։ Երբ Պոմպէյ կղզին Անգղիացւոց ձեռքն անցաւ՝ միայն մէկ Փարսի մը կար հոն. սակայն երբ սկսաւ քաղաքը էական տեղ մը ըլլալ, Փարսիք՝ ամեն դիէն և գլխաւորաբար Սուրադէն՝ սկսան հոն դիմել. մանաւանդ անոնք որ նաւաշինուԹեան հետամուտ էին։ Այնուհետև սկսան իրենք զիրենք վաճառականուԹեան տալ, և այնպէս յառաջադիմեցին ու նշանաւոր եղան՝ որ Պոմպէյի վաճառականուԹեան մեծ մասը իրենց ձեռքն անցաւ և դեռ ևս այնպէս յառաջադէմ վիճակի մէջ կը շարունակեն։ Ասոնց նշանաւոր մարդիկներէն մէկն եղաւ Ճէմսէճի Ճիճիպոյ ոմն, որ իւր բարեգործական գործերովն արժանացաւ քանի մի տարի յառաջ՝ վարչուԹենէն ազնուականի տիտղոսը ստանալու. և այլ ոմն Գուստաճի Ճիհանկիր անունով նոյնպիսի արդեանցը համար ասպետ անուանեցաւ։

Փարսիք բազմածնունդ են, անոր համար ալ իրենց թիւն երթալով կը շատնայ։ Այս ժողովրդեանս ստորին դասերը հմուտ խանութպան են ու ճարտար մեքենագործ։ Եւ գլխաւորապէս ատաղձագործութեան արուեստին մէջ իրենց ճարտարութիւնը կը գերազանցէ։ Նշանաւոր են ասոնց ձեռագործ տուփերն ու կերպ կերպ հետաքրքրական առարկաներն որ ամեն ճանապարհորդք իբր տեղւոյն յիշատակ իրենց տունը կ՚առնեն կը տանին։

Պոմպէյի քրիստոնէից մեծագոյն մասը կազմողը Հնդկաբորդուգալցիք են. ոյք սերեալք են 'ի Նախնի Եւրոպացւոց, որք բնակելով 'ի Հնդիկս՝ ամուսնացան ընդ բնիկս երկրին։ Իրենց հագուստը եւրոպական ձեւով է. իսկ գլխարկնին երկայն գլանաձեւ. ոտքերնին գրեթէ առհասարակ բոպիկ։ Թուի թէ ոչ գործունեայ եւ ոչ յառաջադէմ ժողովուրդ մի է, եւ Եւրոպացւոց իբր գրագիր, խոհակեր ու դերձակ կը ծառայէ։

Հրեայք որ կը բնակին 'ի Պոմպէյ՝ գլխաւորապէս եկած են 'ի Միջագետաց։ Ասոնց մէջէն գլխաւոր ընտանիքն է Սասուն անուանեալն, որ մեծ վաճառականութեան տուն մը ըլլալով մեծ ճոխութեան ալ տէր է։ Այս ընտանիքէս Ալպէրտ Սասուն անունով մէկն իւր բարեգործութեանց համար 1871ին՝ վարչութենէն ասպետ անուանեցաւ։

Արդ բոլոր այս այլ եւ այլ ժողովուրդք՝ որ մի եւ նոյն քաղքին մէջ կը բնակին, որ մի եւ նոյն օդը կը ծծեն, որ իրարու դրացի ըլլալով՝ մէկմէկու հետ բարեկամութեամբ ըլլալու են, իրենց ցեղական նախապաշարմանցը, կրօնական սկզբանց ու բաժանմանցը պատճառաւ՝ զիրար մահուչափ կ՚ատեն։ Եւ թերեւս եթէ

վրանին զօրաւոր ու բարեկարգ ձեռք մը չհսկէր՝ խըռովութիւնը, սուրն ու կրակը անպակաս ըլլար մէջերնէն։ Ի 1872 ամին Պոմպէյի կառավարիչը մահմետականէ մը զարնուելով սպանուեցաւ։ Այս դէպքէս քիչ ետքը հանդիպեցաւ Սունիներուն Մօհուրում տօնախմբութիւնը, որ զվարչութիւնը մեծ վախի և զգուշութեան մէջ ձգեց՝ սպառնացեալ խառնակութիւններէ։ Երկու կողմի հակառակորդ մահմէտականաց մէջ մեծ ատելութիւն մը կար, և Շիայք այս կառավարչին սպանութիւնը առիթ կ՚ուզէին առնուլ իրենց ատելութիւնը 'ի գործ դնելու։ Խմբովին ոստիկանութեան երթալով ըսին. «Ասոնք են այն մարդիկն որ ձեր փոխարքայն սպանեցին. վայրկեան մը աչքերնիդ գոցեցէք ու մենք ատոնց արիւնը մեր ափովը կը խմենք, կեցած տեղերնին ալ ջրով կը լուանք»։ Այս բանս բաւական է միայն որ ցուցընէ թէ ինչ աստիճան ատելութիւն կայ այս երկու մահմէտական բաժանմանց մէջ։ Նոյն հանդիսին առթով ամենայն միջոց 'ի վար արկին թշնամութեամբ իրարու հանդիպելու. բայց ոստիկանութիւնն այնպէս իւր զգուշութիւնները բազմացուց՝ որ նոյն օրուան վտանգը թեթև անցաւ, միայն մէկ քանի հոգւոյ գլուխը պատռելով ու երկու հարիւր հոգւոյ չափ բանտարկուելով։

Արդ ինչպէս այս երկու բաժանմանց մէջ ատելութիւնը վառ է նոյնպէս է նաև միւս ցեղերու ժողովըրդոց մէջ։ Ի 1874՝ Մահմետականաց ու Փարսից մէջ ծագեցաւ ատելութեան կռիւը։ Որովհետև Մահմետականաց գերեզմանոցը Փարսից գլխաւոր տաճարին մերձ էր, Փարսիք՝ Մահմետականաց մեծ բազմութիւն մը տեսնելով որ դագաղի մը ետևէն կ՚երթային վախցան չըլլայ թէ իրենց տաճարին վրայ յարձկելու դիտաւորութիւն ունենան. այսու երկիւղիւ յուզեալ

սկսան Մահմետականաց վրայ քարեր արձակել։ Այս գործէս մեծ շփոթութիւն ծագեցաւ. Մահմետականք կատղած՝ վազեցին Փարսից վրայ, անոնց շատ մը տուները կործանեցին, և շատ մարդ ալ սպանեցին։

Այսպէս հզօր են կիրք և բաժանմունք այս բազմամարդ քաղաքիս ժողովրդոց մէջ. բայց միանգամայն այս անպատեհութիւնս մեծ նպաստ է անգղիական վարչութեան, որ գրեթէ առանց զինուորի և առանց հրացանի՝ եօթ հարիւր հազար մարդ կը կառավարէ անվտանգ։ Նաև այս ստոյգ է որ ժողովուրդը կրկնապէս կը շահի Անգղիոյ տիրապետութեամբ. վասն զի եթէ Անգղիացիք քաշուին ու երկիրն անտերունչ մնայ, ժողովուրդը իսկոյն սուր առած ինքզինքը պիտի ջարդէ. և ասկէ կը հետևի որ անհրաժեշտ կարևոր է օտար կառավարութեան մը պաշտպանութիւնը։

Բայց եթէ օր մը գայ որ քաղաքականութեամբ այս ամենայն ժողովուրդք իրարու մտքը հասկնան և մէկմէկու ըսեն՝ ամենքս եղբարք ենք, ամենքս մի և նոյն հայրենեաց ծնունդ, մի և նոյն օդը կը ծծենք, նոյն շահը նոյն օգուտը կը վայելենք. Թող տաճարը մեր կրօնական զգացումն ընդունի, բայց մեր քաղաքական կենաց չընդդիմանայ, չհակառակի. մեր հայրենական սէրը հաւասարապէս ըլլայ. այն օրը՝ կ'ըսեմ՞ որ Հնդիկը կարենայ սա խորհրդածութիւններն ընել ու յայտնել, Անգղիացւոյն և օտարին ուրիշ բան ընելու պիտի չմնայ եթէ ոչ իր գլխարկը գլուխը դնել և իր նաւերը ապաւինիլ. շատ է որ անոնց մէջ նետուելու ժամանակը բաւէ։ Սակայն առայժմ վախ չկայ. դար պէտք է գուցէ որ եւրոպական քաղաքականութիւնը Հնդկին մորթը թափանցէ։



*Համառօտ տեսութիւն Հնդկաստանի վաճառականութեան և ճարտարութեան վրայ։*

Հնդկաստան՝ Ասիոյ միւս ամեն երկիրներէն աւելի նշանաւորն է իւր ճոխ ու զանազան բերքերովը։ Ոչ միայն Ասիոյ բոլոր միւս քաղաքականացեալ երկիրներուն բերքերը միանգամայն կը գտնուին հոս, այլ նաև ուրիշ շատ մը զանազան տեսակ բերքեր որ միայն այս երկրիս յատուկ են. կարծես բնութիւնը մասնաւոր առանձնաշնորհութեամբ իւր աշխուժին թափը այս երկրիս վրայ տպաւորած է։ Գրեթէ բոլոր այն համեմք զորս մարդկային փափկասիրութիւնը ամենակարևոր ըրած է կենաց, ամեն ատեն այս երկրիս յատուկ բերք եղած են։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և հանդերձեղինաց երկու ամենակարևոր նիւթք, ինչպէս մետաքսն ու բամբակը, նախ և առաջ հոս սկսած են մշակուիլ, և դեռ ևս մշակութիւնը կը շարունակէ, թէպէտ և հիմա ուրիշ երկիրներ ալ տարածուած է։ Այսպիսի բերրի երկրի մը ճոխութիւնը յանյիշատակ ժամանակաց հետէ միշտ գրգիռ մը եղած է օտար ազգաց՝ հետը վաճառաշահութեան կապ մը հաստատելու։

Առաջին Արաբացիք կը համարին որ ծովու ալեաց դիմագրաւ դիմեր են այս կողմերս 'ի խնդիր հնդկային բերոց, փոխադրելով ու վաճառելով զանոնք արևմտեան վաճառանոցները։ Եւ ասոր զարմանալու չէ, որովհետև 'ի հնուց ծանօթ է թէ ինչպէս Արաբացիք ճարտար և յանդուգն նաւարկողք էին և հմուտ

վաճառականք։ Արաբիոյ Թերակղզին իւր բնական կազմութեամբը, իւր ներքին մեծ անապատովը և այն բարեբեր հողերու կտորներովն որ իւր երկայն ծովափանց վրայ կը ձգին, և դարձեալ իւր անձուկ ծոցերովն որովք մէկ կողմանէ կը բաժնուի յԱփրիկէէ, միւս կողմանէ 'ի Պարսկաստանէ և 'ի Հնդկաստանէ, բնականապէս պատճառ եղաւ Արաբացւոց ծովագնաց ժողովուրդ մ'ըլլալու։ Դարձեալ Փիւնիկեցիք, որ առաջին վաճառականք կը համարին 'ի Միջերկրականն, ազգակից ժողովուրդ մի էին Արաբացւոց, և Սուրբ Գրոց իսկ վկայութիւնք կը հաստատեն թէ այս երկու ժողովրդոց ձեռքն էին արևմտից և արևելից վաճառականութեան բանալիք. որք կարաւաններու միջոցաւ անապատը կտրելով Պարսկային ծոցէն և Սուէզէն սկսեալ մինչև ցՏիւրոս և ցՍիդոն, Հնդկաստանի և Չինաստանի բերքերը, համեմք, փղոսկր, ոսկի և ազնիւ կերպասք, կը փոխանակէին Եւրոպիոյ երկաթի, անագի, կապարի, պղնձի և արծաթի հետ։ Սակայն այս ալ ամենաստոյգ է որ վաճառականութեան մէկ մեծ մաս մը բուն Հնդկաց ձեռքն էր. Թէպէտ և ոչ ոք կարող է հաւաստիընել թէ այն Հնդիկք որ 'ի հնուց հաստատած էին իրենց բնակութիւնը Հնդկաստանի արևմտեան ծովափունքը՝ Տիւրացւոց հետ ազգականութիւն ունեցած չըլլան։ Մալապարի և Կուզերադի հնաւանդ ելուզակութենէն հնար է ապացուցանել թէ Հնդկաստան ոչ միայն ընդարձակ վաճառականութիւն մ'ունէր, հապա նաև կարող էր յանդուգն ելուզակաց խումբեր ծովու վրայ թափել որ իւրեանց ապրուստը ելուզակութեամբ հոգան։ Նմանապէս՝ թէ Հնդիկք 'ի հնուց հետէ յանդուգն նաւարկող էին՝ հաւաստի է այն սանսքրիդ անուններէն որ Արաբիոյ հարաւային ծովափանց վրայ կը լսուին, և նաև այն

հնդիկ գաղթականութիւններէն որ 'ի կանուխ ժամանակաց հետէ հաստատուեցան 'ի սահմանս հնդկային ովկիանոսին և անոր անձուկ ծովերուն, և մինչև ցՄատակասքար։ Երբ Նիպուհր Գերմանացի ճանապարհորդը 'ի 1762 Մօքա գնաց, հոն շատ մը Պանիաններ գտաւ, որոնք կը ստորագրէ իբր մեծ վաճառական և շատ արդարասէր։

Տարակոյս չկայ՝ թէ նաւարկութիւնը երբ յԵւրոպ տղայութեան վիճակի մէջ կը գտնուէր՝ արևելքը վերջի աստիճանի ծաղկած էր։ Յաբեթեան սերունդք բաւական կը համարէին Միջերկրականին ծովափանց քովէն քերելով ճանապարհորդել, անցնիլ 'ի Սպանիա և անկէ շրջելով մտնել մինչև բրիտանական կղզիները, ընդհակառակն դարերով յառաջ Արաբացիք, Հնդիկք և Չինացիք շատ աւելի վտանգաւոր ծովագնացութեամբ վաճառաշահութեան հետամուտ կ'ըլլային։ Աւանդութիւն մը կայ, և գուցէ ճշմարիտ ըլլայ, որ կ'ըսէ թէ հնդկային ովկիանոսին մէջէն Ադենէ ցափունս Կուզերատի եղած անցքը նաւավար մը գտած է ըստ դիպաց. ըստ որում իւր նաւը հարաւային քամիէ մը բռնուելով քշուեր է՝ 'ի դերև հանելով իւր բոլոր ջանքն որ զայն ետ դարձնէ։ Հնդկային ովկիանոսը եղանակաց կանոնաւորութեան առաւելութիւն մը ունի, որ չորս ամիս շարունակ քամին հարաւային արևմտեան կողմէն կը շնչէ, իսկ տարւոյն միւս մասը հիւսիսային արևելեան կողմէն. ասկէ կրնայ իրաւապէս ենթադրուիլ թէ այս մասնաւորութիւնը գրգիռ մ'եղած ըլլայ նաւարկօղաց երկայն ճանապարհորդութեանց ձեռք զարնելու. որովհետև յաջող քամի մը կրնար թէ երթի ծառայել և թէ դարձի։ Միջին դարուն ժամանակներն Արաբացիք, Եգիպտացիք և Պարսիկք՝ իրենց զինուորական զօրութեամբը

Հնդկաստանի վաճառականութեան տիրեցին. և թէպէտ կը յիշուի թէ Հնդկային Ովկիանոսին մէջէն Բորդոգալցւոց նախկին նաւագնացութեանց առաջնորդք Կուզէրաթի բնակիչներէն էին, 'ի վերայ այսր ամենայնի Բորդոգալցի մատենագիրք կը վկայեն թէ վեշտասներորդ դարուն վերջերը հարաւային Հնդկաստանի վաճառականութիւնը բոլորովին Մաւրիտանացւոց ձեռքն էր: Ըստ ասելոյ այլոց, այս վաճառականութիւնը գրեթէ բոլորովին նաւերով կամ կարաւաններով Եգիպտոսի Սուլդանին սահմաններուն մէջէն կ'անցնէր, որու ձեռքն էր Ասորեստան մինչև ցԵփրատ և Արաբիոյ մէկ մասը: Իր նաւահանգստից մէջ վաճառականներէն հարիւրին հինգը կ'առնէր. իսկ Միջերկրականին մէջ կրկինը կ'առնուր 'ի Վենետկեցւոց, 'ի Ճէնովացւոց և 'ի Գաղղալանից: Ասոնք էին իր գլխաւոր եկամուտք. և իրեն ու իր հպատակաց կործանումն եղաւ Հնդկային վաճառականութեան ընդհատութիւնը 'ի Բորդոգալցւոց, որոնք մահացու կռիւ մը բացին ընդդէմ Մաւրիտանացւոց, ու գոհ չեղան մինչև որ բոլոր վաճառականութիւնն իրենց ձեռք չառին: Սուլդանը զէնքի դիմեց ընդդէմ Բորդոգալլաց, ու Կարմիր ծովուն մէջ նաւատորմիղ մը կազմեց ու ղրկեց անոնց դէմ 'ի Հնդկային Ովկիանոս դէպ 'ի Կուզէրաթ: Այս նաւատորմը 'ի սկզբան յաջողութիւն ունեցաւ, բայց հուսկ յետոյ չարաչար յաղթուելով ջարդուեցաւ 'ի Բորդոգալլաց: Ապա Եգիպտոսի ըրած ճիգն՝ որ Հնդկաստանի վաճառականութեան մաս մը ձեռք բերէ, բոլորովին ունայն ելաւ՝ Տաճկաց Եգիպտոսի տիրելովն 'ի 1517, և այնուհետև արևելից Եւրոպայի հետ ըրած վաճառականութիւնը երեք երկայն դար Բարեյուսոյ Գլխուն ճամբովը շարունակեց. մինչև որ վերջերս Սուէզի

պարանոցին բացմամբը դարձեալ նոյն ճամբան սկըսաւ բռնել։

Պոմպէյի նաւահանգիստը հին ժամանակներն ապահով կայարան մը ըլլալով փոքր նաւուց, ոչ միայն փոթորկաց դէմ այլ և ծովային հինից, այլ և այլ նաւահանգիստք կը յիշուին իբր վաճառականութեան ապաւէն. ինչպէս Կալիան, որու չինուց մեծագործ աւերակները հիացմամբ կը յիշէ 1675ին այն կողմերը ճանապարհորդող մը։ Կալիանի յաջորդեց Դանա, որու համար Մարքօբօլօ իտալացի աշխարհագիրը ԺԳ դարու՝ այսպէս կ'ըսէ. «Դանա մեծ թագաւորութիւն մըն է որ դէպ 'ի արևմտեան կողմը կ'իյնայ, և է մեծ թէ՛ ըստ տարածութեան և թէ՛ ըստ ճոխութեան։ Ժողովուրդը կռապաշտ է, իրենց յատուկ մասնաւոր լեզու մը կը խօսին, և առանց մէկու մը հարկատու ըլլալու՝ իրենց յատուկ թագաւորն ունին։ Պղպեղը չի մշակուիր հոս, և ոչ այլ համեմք. սակայն մասնաւոր բերքը խունկ մըն է, այլ ոչ ճերմակ տեսակը՝ հապա սև։ Այս տեղս մեծ է վաճառականութիւնը, անոր համար ալ շատ նաւ և վաճառական կը գիմեն հոս. ուսկից զանազան տեսակ աղէկ կաշիներ կ'առնեն կը տանին, ինչպէս նաև տեսակ մը կտաւ և բամբակ։ Նմանապէս վաճառականք իրենց նաւերովը շատ տեսակ նիւթեր կը բերեն հոս, ինչպէս ոսկի, արծաթ, պղինձ և ուրիշ փնտռուած նիւթեր։ Թագաւորին հաւանութեամբը շատ մը ելուզակք իրենց նաւերովը ծովը կ'ելլեն նաւերն աւարառելու. որոնք թագաւորին հետ դաշնադրեալ են որ որչափ ձի ձեռքերնին իյնայ՝ իրեն ըլլան, իրենց պահելով մնացորդ աւարը։ Թագաւորն անոր համար այս բանս կ'ընէ, որովհետև իր երկիրը ձի չի բերեր. մինչդեռ դրսէն

բազմաթիւ ձիեր կը ղրկուին 'ի Հնդկաստան. և յիրաւի չկայ նաւ որ Հնդկաստան երթայ առանց հետը ձիեր տանելու. Թող ուրիշ շատ տեսակ վաճառքներ »: — Դանա, Մարքօբօլօին այցելութենէն քիչ մը ետքը, Մահմետականաց ձեռքն ինկաւ. և ուրիշ ճանապարհորդ մը որ չորեքտասաներորդ դարուն սկիզբներն այց ելաւ քաղաքիս՝ չորս կրօնաւորաց նահատակութիւնը կը յիշէ, որոնք կրօնասիրութենէ մղեալ՝ քաղքին դատաւորին առջևը վիճաբանեցին նախատելով այն դատաւորին և համախոհից ունեցած կրօնական կարծիքը: Ասոր վրայ դատաւորը կատղելով՝ անգութ տանջանքներով զիրենք սպաննել տուաւ: Սակայն ինքն ալ խուրանգթութեանը պատճառաւ երկրին թագաւորէն յաքսոր ղրկուեցաւ:

Երկու դար ետքը Բորդուգալցիք տիրեցին Դանային. և թէպէտ այն ատեն քաղաքը լի էր մզկիթներով, տաճարներով ու պարտէզներով, սակայն վաճառականութիւնը սկսած էր նուազիլ. և ծովահէնք թէպէտ դեռ ևս կը շարունակէին իրենց ծովային աւազակութիւնները, բայց ոչ ինչպէս առաջ: Ուրիշ ճանապարհորդ մըն ալ կ'ըսէ, թէ անհուն ընդարձակութեամբ քաղաքի մը մեծագործ աւերակները դեռ ևս կը տեսնուէին հոն և թէ դեռ ևս 'ի Դանա կային 5000 ներկարարք թաւշի: Դանայէն վաճառականութիւնն անցաւ 'ի Պասին, թէպէտ և Դանա դեռ ևս իւր կարևորութիւնը պահեց:

Սակայն հուսկ ուրեմն հարաւային Հնդկաստանի Եւրոպիոյ հետ ըրած վաճառականութիւնն ամփոփեցաւ 'ի Սուրատ, ուսկից փնտռուած նիւթերն էին գըլխաւորաբար լեղակի ներկը, պղպեղը, բօրակը, անթափ և գործուած մետաքս, բամբակեղէնք և այլ կերպ կերպ համեմունք, որոնք բոլորը Եւրոպա կ'ուղևո-

րէին։ Բաց ասկէ՝ առանձնականաց և գլխաւորապէս գաղթական Հայոց ձեռքն էր գոհարեղինաց վաճառականութիւնը, ուսկից վաճառողք մեծ շահ կ՚ընէին։ Սակայն չբանած բամբակի վաճառականութեան մեծ շարժումն կար, և որպէս զի նաւողչէքի ծախուց դիւրութիւն մը ըլլայ, եօթնևտասներորդ դարէն սկսեալ մասնաւոր մեքենաներ հնարելու հետամուտ եղան, որպէս զի բամբակը ճնշելով տարածոցը պզտիկցնեն։

Բայց վերջապէս բոլոր վաճառականութեան շարժմունքն ամփոփուեցաւ 'ի Պոմպէյ, որ իւր ընդարձակ նաւահանգստովը և նաւաշինութեան դիւրութիւններովը քան ուրիշ ամեն տեղերէ աւելի դիւրութիւն կը մատուցանէր մեծակառոյց նաւուց։ Սկզբանէ հետէ իր վաճառականութեան գլխաւոր նիւթն եղաւ բամբակը, որմէ մեծ մաս մը կը ղրկէր 'ի Չինաստան, առնելով անկէ փոխարէն՝ շաքար, հիւսած լաթեր և ուրիշ գործածներ։

Մինչև ց1813 Պոմպէյի բոլոր վաճառականութիւնը Արևելեան Հնդկաստանի ընկերութեան ձեռքն էր, որու դաշնադրութիւնն էր Անգղիական պետութեան հետ՝ որ Անգղիոյ բերքերն ու գործածներն, ինչպէս պղինձ, ոգեղէն ըմպելիք, դանակագործութեան ամեն նիւթ, բրդեղէնք և ինչ նիւթ որ պատշաճ էր Պոմպէյի վաճառանոցին, Անգղիայէն Հնդկաստան տանի իբր օգնութիւն անգղիական գործարանաց։ Իսկ Պոմպէյէն յԱնգղիա տարած բերքերն էին բամբակ, փղոսկր, պղպեղ, լաթեղէն, շաքար, բորակ և ըստ դիպաց մօքա քաֆէ։ Իսկ առանձին վաճառականք շատ քիչ կային 'ի Պոմպէյ, որովհետև ընկերութիւնը արգելք կը դնէր առանձնականաց վաճառականութեան։ Բայց 1813ին ընկերութեան բոլոր առանձնաշնորհութիւնք վերցուեցան և ընդհանուր վաճառականութիւնը ազատութիւն ստացաւ։

Այնուհետեւ բամբակի առուտուրը տեղւոյս գլխաւոր նիւթն եղաւ, և տարուէ տարի երթալով շատցաւ, մինչև Ամերիկոյ վերջի քաղաքական կռուին ժամանակ, հինգ տարուան միջոցի մէջ (1860–1865) 84 միլիոն օսթէռլինի բամբակ տարուեցաւ 'ի Պոմպէյէ: Եւ այսպէս մեծ հարստութիւն ժողովեցաւ 'ի Պոմպէյ, գլխաւորապէս անոնց քովը որոնք իրենց առևտրոյ նիւթ ըրած էին զբամբակը և լաթեղէնները. և այնուհետև ամենքն առհասարակ ամենայն հնարք սկսան մտածել նոյն հարստութիւնը օգտակար կերպով գործածելու: Ամենը առհասարակ, սկսեալ 'ի բարձրագոյն պաշտօնատեարց մինչև ցստորնագոյն գործակատարը, փոքր ժամանակի մէջ մեծ հարստութիւն դիզելու յուսով սեղանաւորութեան ընկերութիւններ սկսան հաստատել. Նոյն ժամանակը նաև շոգենաւուց ընկերութիւն մը կազմեցաւ 'ի Պոմպէյ, որպէս զի Պոմպէյի վաճառականք ազատին Անգլիացի շոգենաւուց տէրանց ձեռքէն: Եւ այսպէս ամեն մարդ այս ընկերութեան թղթերը փնտռելու հետամուտ կ'ըլլար. մանաւանդ որ ընկերութեան հիմնադիրք մեծ համբաւ ձգած էին իրենց ճարտարութեամբը և բամբակի առևտրով ըրած շահերովը, նա մանաւանդ որ Ամերիկոյ քաղաքական կռիւը դեռ եւս երկար ժամանակ տևելու կը յուսացնէր: Սեղանաւորութեան ընկերութիւնք երթալով կը բազմանային, որովհետև ամեն մարդ կուրօրէն ինքզինքը նոյն շահախնդրութեան կու տար՝ յուսով մեծ շահու:

Դժբաղդաբար այս շահախնդրութեան սաստկութիւնը շատ չերկնցաւ. 1865ին գարնան հեռագիր մը հասաւ աւետելով Ամերիկեան պատերազմին վերջը: Անմիջապէս բամբակին գինը գրեթէ կիսով չափ ինկաւ. այս անակնկալ դէպքէն բոլոր շահախնդիր ըն-

կերութիւնք մեծ հարուած մը առին. և այն անձինք որ իրենց չափէն դուրս շահախնդիր պայմանաց պարտաւորութեան տակ էին, անկարող եղան իրենց պարտաւորութիւնները հատուցանելու։

Նախ և առաջ Փարսից վաճառականութեան ընկերութիւն մը սնանկութեան օրինակը տուաւ իրեք միլիոնի չափ պարտք թողլով։ Այս դէպքը ողջոյն քաղաքը ահուդողով լեցուց, և ամենը յայտնի տեսան որ բազմաթիւ սեղանաւոր ընկերութեանց դրամագլուխը պարզ թղթադրամ էր։ Եւ այս անանկ հարուած մը եղաւ որ բոլոր շահախնդրութեան շէնքը 'ի հիմանց տապալեց, ու շատ մը հզօր տուներու կործանումն եղաւ։ Այն սեղանաւոր ընկերութեանց շատը մէջտեղէն վերցուեցան, և միայն մէկերկու, որ գիտցեր էին իրենց շահը 'ի կիր առնուլ, կանգուն մնացին։ Եւ յետ այս ամենայն ձախորդութեանց բնական կու գար հարցնել, թէ այն ութսուն միլիոն լիրա սդէրլին՝ որ հինգ տարուան միջոցի մէջ Պոմպէյ քաղաքը մտան՝ ի՞նչ եղան կամ ո՞ւր գնացին։ Բնական է որ նոր դասու մը ստորին վաճառականաց ձեռքն անցած ըլլան, փոքր վաճառականք որ յայտնի կերպով մէջտեղ չեն երևնար, և որոնք կամաց կամաց երկրին ներսերը ցրուած են զանոնք։

Սակայն այս ալ ստոյգ է որ այս ձախորդ ժամանակիս շահախնդրութեան աղիտից սարսափը, թէպէտ և հարուած մը եղաւ Պոմպէյի վաճառականաց, այլ ոչ յարատև շարունակեց։ Բամբակի առևտուրը չդադարեցաւ, այլ նա մանաւանդ տասը տարի ետքը յայտնի տեսնուեցաւ որ դուրս տարուածին չափը շատցեր էր։

Վերջի ատեններս նմանապէս սկսան 'ի Պոմպէյ բամբակի հիւսուածոց մեծ գործարաններ հաստա-

տել, հզօր կերպիւ մրցելով ընդդէմ այնց հիւսուածոց որ կը բերուէին յԱնգղիոյ։ Եւ արդ բազմաթիւ գործարանաց ծխնելոյգք քաղքիս չորս կողմը դէպ 'ի վեր ցցուած՝ ողջոյն օրը կը ծխեն՝ հազարաւոր բնակաց ապրուստը մատակարարելով։ Ամեն հասակի արք, կանայք, տղայք, աղջկունք՝ այն գործարանաց մէջ կը զբաղին, թէ՛ 'ի շահ անձանց և թէ գործարանաց տեարց. որովհետև օրական ոչինչ վարձքով կը գոհանան։ Չափաւոր մեծութեամբ գործարան մը մինչև հազար հոգի կը զբաղեցնէ. աշխատութեան ժամերն են առաւօտեան վեցէն մինչև երեկոյեան վեց, մէկ ժամ մը միայն հանգիստ շնորհելով կերակրոյ համար։ Այս գործաւորաց ամսական վարձքն է այսպէս.

| | | |
|---|---|---|
| Տղայոց և կամ աղջկանց. | Ռուփի | 5 |
| Կանանց. . . . . . . . . | » | 8 |
| Արանց . . . . . . . . . | » | 16 |

Եւ այսպէս հիմա Պոմպէյ Հնդկաստանի վաճառանոցներուն մէջ Մէնչեստրի հետ կը մրցի. և այս բաւական չէ, հապա նաև իւր հիւսուածքները Հնդկաստանէն ալ դուրս կը ղրկէ, վաճառականութեան ճիւղ մը կենդանացնելով որ քանի մը տարի առաջ բոլորովին ջնջուած էր։ Այս հիւսուածոց երեք քառորդը կը ղրկուին 'ի Չինաստան, և մնացածը յԱրաբիա և յԱփրիկէ։ Իսկ դուրս ղրկուած հիւսուածոց գինը կը հասնի մինչև 267, 227 լիրա սդէրլին։

Բամբակէն ետքը Պոմպէյի վաճառականութեան էական նիւթ մըն է ափիոնը. որմէ տարին հինգէն մինչև վեց միլիոն սդերլինի չափ դուրս կը տարուի։ Այս վաճառքը՝ Մալվա՝ միջին Հնդկաստանի գաւառէն կու գայ, ուր տեղ մասնաւոր մշակութիւն կ'ըլլուի, մասամբ մը տեղացւոց գործածութեանը համար, մա-

սամբ ալ 'ի Ռանճիուգանա և 'ի Կուզերադ փոխադրելու. և է ընտիր յոյժ։

Ափիոնէն ետքը կու գայ ցորենը, որ կը մշակուի գլխաւորաբար 'ի Նուրպատա ձորն և 'ի կեդրոնական գաւառս։

Իսկ միւս բերքերն որ դուրս կը ղրկուին այսպէս կը նշանակեմք.

Հնդկաստանի բերք

Քաֆէ.
Անթափ բամբակ.
Բամբակ հիւսած և ոլրած.

Գունաւոր նիւթեր.
Ընդեղէնք.
Կաշի և մորթք.
Իւղք.
Տեսակ տեսակ հունտեր.
Համեմունք.
Բուրդ՝ չքանած և հիւսուածներ
Շալեր.
Ուրիշ նիւթեր.

Ներս մտած նիւթերն են

Զգեստեղէններ.
Զէնքեր ու պատերազմի պաշարներ.
Շէնքի և ճարտարապետութեան նիւթեր.
Կահկարասիք.

Ճրագներ ու մոմեղէններ․
Ժամանակաչափ ու ժամացոյց․
Ածուխ․
Ապակի․
Խէժեր․
Դանակագործութեան նիւթեր․
Հրազէնք․
Կաշիներ ու մորթեր․
Գործիներ ու կազմածներ․
Փղոսկր և փղոսկրեայ գործածներ․
Գոհարեղէնք․
Ըմպելիք, ինչպէս գարեջուր, և այլն․
Ոգելից ըմպելիք․
Գինի․
Մեքենաներ
Բամբակ հիւսած և չբանած․
Լաթեղէններ․
Քիմիական նիւթեր․
Դեղորայք
Ներկիչ նիւթեր․

## Օտար քերքեր

Բամբակ հիւսած և ոլրած․
Չգործուած փղոսկր․
Գարէնք․
Մետաքս, չբանած․
Շաքար զտած և չզտած․
Ուրիշ նիւթեր․
Արծաթ․
Ոսկի․ և այլն։

*Ներս մտած նիւթերն են*

Բրտի և յախճապակեայ անօթներ.
Պաշարներ.
Երկաթուղւոյ նիւթեր.
Մետաքս, չբանած.
Լաթեղէններ.
Համեմք.
Շաքար զտած և չզտած.
Ջայ.
Ծխախոտ.
Հովանոցներ.
Բրդեղէն հիւսուածք.
Ուրիշ տեսակ նիւթեր.
Ոսկի.
Արծաթ.
Մետաղներ, ինչպէս Պղինձ,
- Երկաթ,
- Կապար,
- Սնդիկ,
- Պողպատ,
- Անագ,
- Ջինգ.

Իւղեր.
Իւղաներկ գոյներ.
Թուղթ և ստուարաթուղթ։

Այդ Պոմպէյի վաճառականութիւնը շատ ծաղկեալ վիճակի մէջ կը գտնուի թէ՛ նկատմամբ ներս բերուած նիւթոց և թէ՛ անոնց որ դուրս կը տարուին։ Տարուէ տարի միշտ յառաջադիմութիւն կը տեսնուի, որուն

ցոյցնի ապացոյց է ընդարձակ Նաւահանգըստին մէջ նոյնիսկ գտնուած բազմաթիւ ընկերութեանց շոգենաւք. յորոց գլխաւորագոյնքն են անգղիական Բէնինսիւլար Թղթաբեր ընկերութիւնը, Աւստրիոյ Լօյտը, Իտալիոյ Ռուպատինօն, և այլ Գաղղիոյ և Ամերիկոյ շոգենաւք։

Քաղաքիս արհեստաւորաց իսկ ճարտարութեան ամէն ընդարձակ ասպարէզ մը բաց կայ՝ և այլ և այլ միջոցք, իրենց գործածները Հնդկաստանի ներսերը ղրկելու։ Լաթեղինաց տպողներու բազմութիւն մը շարունակ զբաղած են բնիկ ժողովրդեան գործածած ծածկոց լաթերուն վրայ զարդեր դրոշմելու, որ շատ շահաւոր արհեստ մըն է։ Ոչ ինչ նուազ են և ներկարարք. այնպէս որ Պոմպէյի գործարանաց հիւսած լաթերուն մեծ մասը հոս քաղաքս կը ներկուին, զարդերով կը դրոշմուին, և այնպէս երկրիս ներքին վաճառանոցները կը ղրկուին։ Եւ որովհետև առհասարակ ժողովուրդս կերպ կերպ գոյներով և ոսկեթել զարդերով կը սիրէ զարդարուիլ, թէպէտ և գործածած սովոր զգեստք ամենապարզ են, բայց և այնպէս չեն պակսիր ոսկեզարդ բանուածոց արհեստաւորք, որոց գործը ամենաշահաւոր է։

Թղթի գործարանք իսկ կան, այլ աննշան, ու միայն տեղացւոց պիտոյից ծառայող՝ հասարակ թուղթ մը կը պատրաստեն։ Սակայն տպագրութեան կարևոր եղած թուղթը՝ որու պէտքը օր աւուր երթալով կը շատնայ՝ դեռ ևս դրսէն կու գայ, որովհետև դեռ մասնաւոր գործարան մը չկայ։

Կաշեգործութիւնն իսկ իւր գործաւորներն ունի, թէպէտ և կաշին պատրաստելու արհեստը յառաջացած չէ։ Հեղանիւթոց տիկ, ձիու սանձ և թամբ, կօշիկ, վահան, սնտուկ և ուրիշ տեսակ կահեր կը շինեն։

Բրտի արհեստը միայն հողէ հասարակ ամաններու շինութեանը կը դրաղի, որ աննշան գործածք են, և միայն աղքատ ժողովրդեան պիտոյից կը ծառայեն, ոյք բաւական միջոց չունին ազնձեայ ստամաններ գործածելու։ Ապիկելու արհեստը՝ որ իսկզբան մահմետականք մտուցին կամ ծաղկեցուցին՝ շատ ինկած է, թէպէտ և հիմա շատ ջանք կ'ընեն միւսանգամ ծաղկեցնելու։

Ոսկերչաց դասը բազմաթիւ է և յոյժ շահաւէտ գործ մի է ըրածնին. որովհետև մեծ գրգիռ մըն է արհեստին յառաջադիմութեան ամեն դասու ժողովրդեան փոյթը որ իրենց աղջկունքը, տղայք ու կանայք ոսկեայ և արծաթեայ զարդերով գոգցես վերէն 'ի վայր կը զարդարեն. անոր համար ալ ժողովուրդը իւր ճոխութեան և շահուց մեծ մաս մը այս զարդերու կը գործածեն։ Այսու նպատակաւ սովորութիւն է որ այն մետաղին քանակն որ այսպիսի զարդերու շինութեան պիտի գործածուի, արհեստաւորին ձեռքը կը դրուի. և արհեստաւորն այն մետաղը կշռելով իւր աշխատութեան փոխարէն իւրաքանչիւր դօլա չափին 8 աննայէ մինչև 2 կամ 3 ռուփի կ'առնու։ Իսկ ռամիկ և աղքատ ժողովուրդը հասարակ մետաղէ և ապակիէ զարդեր կը գործածէ։ Այս ոսկեայ և արծաթեայ զարդերուն գործուածքը ձեռքով է, և աղէկ շատ ընտիր ու ճոխ ձեռագործ։ Պոմպէյ քաղաքին մէջ 2875 ոսկերիչ կայ, որոնք շարունակ աշխատութիւն կը գտնեն։

Գոհարեղինաց վաճառականք են 303 թուով։ Ադամանդք առատութեամբ կը գտնուին, և աղէկ շատ գեղեցիկ. ասոնց շատը Հնդկաստանի այլ և այլ կողմերէ կու գան։ Ճոխք 'ի բնիկ Հնդկաց այս գոհարեղինաց համար շատ ստակ կը ծախեն. որովհետև վե-

բուստ 'ի վայր իրենք զիրենք կը զարդարեն մարգրիտներով, զմրուխտներով, ադամանդներով և այլ ազնիւ քարերով. անոր համար ալ այս գոհարեղինաց գնոյն շատ հմուտ են։

Ասկէ զատ կան նաև այլ շատ արհեստաւորք պղընձեայ անօթոց, կաւաց, երկթի և պղնձի գործուածոց, փղոսկրի և կրիայի պատեանի ձեռագործաց և կերպ կերպ զարդարուն տփոց։ Այս յետինս մասնաւորապէս՝ որ Պարսկաստանէն մտուցած են՝ փարսից ձեռքը համբերատար արհեստ մըն է, որք յոյժ գեղեցիկ ձեռագործներ կը շինեն, զորոնք Եւրոպացի օտարականաց սուղ սուղ կը վաճառեն իրենց երկիրը 'ի յիշատակ տանելու։ Նմանապէս սանդալ փայտով և եբենոսով տեսակ տեսակ ընտիր գործածներ կը շինեն, որ թէ աչքը կը շողոմեն և թէ տանը մեծ զարդ կ'ըլլան։



Ընդհանուր տեսութիւն կլիմային։ — Մեծագործութիւնք։ — փարսից տէրութիւնը։ — Հնդիկ ժողովուրդը և իր կրօնական շարժմունքը։ — Վիկտորիա տնկաբանական պարտէզը։ — Պոմպէյ ըստ մասին առողջութեան։ — Մաղձացաւի զոհ մը։ — Որչափ մարդաշատ է Պոմպէյ։

Մի միայն պատեհ ժամանակ 'ի Հնդկաստան ճանապարհորդելու՝ է ցուրտ եղանակը, որ կը սկսի Նոյեմբերէն և կը տևէ մինչև ցվերջ Մարտի։ Նոյն այս ժամանակս է նաև պատշաճագոյն և առողջագոյն եւրոպացի գաղթականաց 'ի Պոմպէյ բնակելու։ Անոր համար ալ քաղաքական կենաց մի միայն միջոցն այս է. յորում թէ՛ քաղաքապետը և թէ միւս պաշտօնատեարք, ինչպէս նաև ճոխք յեկաց և'ի պարապողաց, իրենց ամարանոցնիրը թողած՝ քաղաքս կ'իջնեն բնակելու և գործելու։

Այս եղանակիս է որ կը շնչէ հիւսիսային արևելեան քամին, ախորժելի ընելով Պոմպէյի կլիման։ Բայց այս ցուրտ համարուած եղանակիս շնչած հողմը խոնաւ է և թուլացուցիչ մանաւանդ քան թէ զօրացուցիչ. որու աւելի զգայուն կ'ըլլան անոնք որ չոր կլիմաներու տակ վարժած են բնակելու. բայց և այնպէս ամեն եկաց ամենախորժելի եղանակ մըն է այս։ Աւ հարկ է որ ամենաթեթև զգենուն ինչպէս սովոր են ընելու իրենց հայրենիքը ամենէն ջերմ ամիսները։ Ցորեկ ատեն և հովանիի մէջ ոչ երբեք նուազ գտած եմ ջերմութեան աստիճանը քան զ24 և 26 Ռէօմիւր։

Սակայն այս աղէկութիւնը կայ որ երեկոյեան ատեն ջերմութիւնը իջնելով անուշ ու զով քամի մը կը շընչէ. մթնոլորտը կը զովանայ և կը տևէ մինչև ցառաւօտ։ Այս երեկոյեան ժամանակն է որ ժողովուրդը կ'օգտեցնէ իւր զբօսանաց ու շրջագայութեանց։

Գիշերային զովութեամբ կ'անուշնայ նաև գիշերային քունը, եթէ չըլլան մժղանց լեգէոնք որ զայն անհանգիստ ընեն։ Ուստի և իբր նախապահեստ զգուշութիւն, չկայ տուն ուր մահճակալք իւրեանց պահպանիչ վարագոյրք չունենան։

Ցորեկուան ջերմութեան սաստկութիւնը՝ գլխոյ մասնաւոր պաշտպանութիւն կը պահանջէ։ Անոր համար ճարտարութիւնը հնարեր է տեսակ տեսակ ձևով սաղաւարտաձև գլխարկներ, լայն եզերքով. որք որչափ տգեղ նոյնչափ ալ օգտակար են գլուխը ընդդէմ արեգին կիզիչ բռնութեանը պաշտպանելու։ Բայց ասկէ՝ հովանոցն իսկ ամենակարևոր է. անոր համար ալ չկայ Եւրոպացի որ փողոցը ելլէ առանց ձեռքը հովանոցն ունենալու։ Եւ նոյն իսկ բնիկ ժողովուրդը սովորած է հովանոցով պտըտելու, բայց 'ի ռամկէն, որ անտարբերաբար բաց գլխով և բոպիկ ոտիւք կիզիչ արևուն մէջէն կը քալէ։

Սակայն ինչ որ ինձ գլխաւորապէս կը քաղցրանայ 'ի Պոմպէյ է այն յարատև ու չքեղ բուսականութիւնն որ ամեն ատեն այն կանաչ ու ծաղկեալ տեղւոյն դրախտանման երևոյթ մը կու տայ։ Չիք աւելի զբօսեցուցիչ բան քան շրջել 'ի Պոմպէյ, 'ի Մալապար Հիլ, 'ի Քօլապա և այլուր, 'ի ղնին այն բազմաթիւ մշտադալար ամարանոցաց, այն չքեղ պարտիզաց, կանաչազարդ վայրից ու ծաղկոցաց որ մարդկային ձեռքն ու ճաշակը կանգներ է ու յարատև ճը-

գամբք կ'ոռոգանէ։ Ուր հազարումէկ բոյսք, պտղաւէտ ծառք, ամեն եղանակի ծաղիկք՝ բարգաւաճ կ'աճեն յապշութիւն օտարականին։ Եւ այս անդադար ողջոյն տարին, թէպէտ և մթնոլորտ և օդք իրենց խոնաւութեան և այլայլութեան ժամանակն ունենան։

Եւ յիրաւի, աղէկ օդոյ եղանակը մինչև մարտի վերջերը կը տևէ։ Այնուհետև մթնոլորտը կը սկսի իւր անձրևային փոթորկալից պատրաստութիւններն. բայց անկէ առաջ սաստիկ տաքերը կը կոխեն որ ամենայն եկաց կ'աղդեն քաղաքէն հեռանալ և ուրիշ հեռագոյն տեղեր ապաւինիլ։ Շատք յեւրոպացի պաշտօնատարաց և 'ի պարապողաց այս եղանակս կ'օգտեցնեն դառնալով յԵւրոպ։ Իսկ այնք 'ի գաղթականաց որ երկար բնակութեամբ և կամ ծննդեամբ գրեթէ տեղացի դարձած են, մերձաւոր գիւղեր կամ քաղաքներ կը ցրուին, և կամ լեռներու վրայ քաշուած եօթը ամիս անզբաղ հանգստեամբ կ'անցունեն, մինչև նոյեմբեր միւս անգամ զիրենք 'ի Պոմպէյ կանչէ։

Յունիսի երկրորդ շաբաթը զարմանալի կանոնաւորութեամբ մօնսունը կամ անձրևային եղանակը կը սկսի, և անձրևը անընդհատ ամեն օր կ'իջնէ մինչև սեպտեմբերի վերջերը. անձրևք սաստկանան, որ հետի գնացողաց երթևեկը տաժանելի կ'ընեն. վասն զի կէս վայրկեան իսկ բաւական է փողոցը ահագին լիճ մը դարձնելու։ Այս եղանակս աւելի անտանելի ընողը խոնաւութիւնն է կ'ըսեն։ Բայց և այնպէս եղանակիս ականատեսք կը վկայեն թէ չէ բոլորովին զուրկ զբօսալի ըլլալէն. վասն զի անձրևը միշտ իրիկուան դէմ կը դադարի, թող տալով ժողովրդեան մէկ երկու ժամ դուրս շրջագայութեանց ելլելու։

Այս անձրեւք և սաստիկ ջերմութիւնք ճշդիւ իրենց որոշեալ ժամանակին կը դադարին, և եղանակք իրենց շրջանն ընելով ցուրտ անուանեալ, և գրօսալի ժամանակը կը բերեն. և այնուհետև հինգ ամիս յարատև ոչ այլ ինչ կը տեսնես բայց եթէ միակերպ կապարագոյն կապոյտ երկինք մը անամպ և անջուր ամենևին։ Մի և նոյն արևը անայլայլակ մէկ հորիզոնէն կը ծագէ և միւս հորիզոնը կ'ընկղմի։ Երկիրն որ 'ի սկզբան անձրեւաց առատ արբեցուցմամբ ամեն գին կանաչութեամբ ու ծաղկով զարդարուեր էր, արևուն միակերպ ու կիզիչ ջերմութենէն հետզհետէ կը ցամքի, կը հրկիզի, և ուր մշակին ճիգն անկարող է ջրելու, կը չորանայ ու կը հերձոտի։ Սակայն ծառք իւրեանց կանաչազարդ հանդերձը միշտ կը պահեն, և իրենց յարատև կենդանութեան կանաչութիւնն է որ այս երկրիս մշտնջենաւոր ամառուան կերպարանքը կու տայ։

Բնութեան գեղեցկութենէն դուրս՝ 'ի Պոմպէյ երկար դադարող օտարականին կարծես կամաց կամաց ամենայն ինչ հասարակ ու ռամիկ կը սկսին երևնալ։ Գուցէ բնածս վրիպակ ըլլայ, մինչդեռ այլք քան զիս արդարադատք իրաւապէս գուցէ հաստատեն թէ Պոմպէյ աշխարհիս ամենէն գեղեցիկ և նշանաւոր քաղաքներէն մէկն ըլլայ։ Յայտ է թէ Հնդկաց աշխարհին առաջին կարգի քաղաքն է, ըստ հասարակաց վկայութեան։ Եւ կան յիրաւի նորաշէն գեղեցիկ բնակարանք ասդիս անդին ցրուած, որ ընդհանրապէս արևելեան բնակարանաց կնիքը կը կրեն. սակայն բնիկ ժողովրդեան սեփականեալ քաղաքը՝ հին, մութ, տըգեղ և կարծես վատառողջ տուներու կոյտ մըն է, և կարծես նախախնամութիւն մը ըլլալու է՝ եթէ կարե-

լի է ըսել, քամիով արծարծեալ հրդեհ մը, որ այն երկայնաշար հնացեալ, աղտեղի և աննշան տանց մէկ-ուկէս մղոնի գիծը առնու լափէ, նորաշէն և տառ-ջագոյն քաղաքի մը ասպարէզ բանալով։

Ցայտ է թէ այս ըսածէս կ'որոշին Եւրոպացի գաղ-թականաց մեծագործութիւնք որ 'ի Ֆորդ՝ նախկին բերդը՝ կառուցած են, հեռի բնիկ ժողովրդեան քա-ղաքէն։ Բայց և ասոնք իրենց գոթացի ճարտարա-պետութեան միակերպ ոճովը աչք կը յոգնեցնեն. թող որ կարծես գոթացի ճարտարապետութիւնը անպատ-շաճ է հնդկային կլիմային։

Տեղւոյս մեծագործութեանց մէջէն հարկ է յիշել Կալէսի իշխանին յիշատակարան ձիաւոր արձանը, զոր Սասուն ճոխ Հրէայն կանգնել տուած է 'ի յիշա-տակ իշխանին այցելութեան 'ի Հնդիկս, և որու հա-մար ծախսած է 12,500 լիրա սդէրլին։ Արձանիս բար-ձրութիւնը, ոտքէն մինչև գագաթը, է գրեթէ տաս-նրեք անգղիական ոտք։ Կըրանիդ քարէ մեծ պա-տուանդանի մը վրայ կանգնած է, որու բարձրու-թիւնն ալ է տասնուչորս ու կէս ոտք։ Զիշխանը ներ-կայացուցած է զօրավարի զգեստով, գլուխը բաց, սաղաւարտը աջ ձեռքով վար բռնած 'ի նշան ողջու-նի։ Պատուանդանին երկու կողմը կան երկու թափ-ծու քանդակներ, որք կը ներկայացնեն ընդունելու-թեան օրուան տեսարաններ։

Զոյգ Կալէսի իշխանին յիշատակարանին կու գայ գուցէ Հնդկաց կայսրուհւոյն յիշատակարան արձա-նը, ողջոյն ճերմակ մարմարիոնէ։ Ցայսմ զկայսրու-հին ներկայացուցած է բարձր գահու մը վրայ բազ-մեալ գոթական աշտարակի մը ամպհովանւոյն ներքև։ Այս յիշատակարանիս կանգնողն եղած է Հնդիկ իշ-խան մը, որու համար ծախսած է 18,000 լիրա սդէր-լին։

Բաց 'ի վարչութեան գոթացի մեծակառոյց շէնքերէն, միւս Եւրոպացի գաղթականաց բնակարանք որ 'ի Ֆորդ' ընդհանրապէս արեւելեան ոճով տանց կոյտ են, որ գրեթէ բոլոր Փարսից ստացուածք են ։ Փարսիք իրենց գործունէութեամբը, խնայողութեամբը և աչալրջութեամբը, ոչինչ դրամագլխով կը սկսին, գետին կը ստանան, տուներ կը կանգնեն և ծանր գնով Եւրոպացւոց կը վարձեն։ Հիմա Պոմպէյի տեարք գրեթէ Փարսիք են։ Ողորմելի տուն մը 'ի Ֆորդ, ուր է բոլոր առևտրական և վարչական կեանքը, երկու կամ երեք սենեկօք, ամսական վարձք կը բերէ 120–160 ռուփի։ Ասոր համեմատութեամբ կան քիչ մը աւելի մեծ տուներ, և գլխաւորապէս արքունի փողոցին վրայ, որ ամիսը կը բերեն մինչև 1000 և աւելի ռուփի։

Սակայն բոլոր այս այլ և այլ շէնքերն և մեծագործութիւններն այնչափ տպաւորութիւն չեն ըներ նորեկին վրայ, որչափ այն անհամար ժողովրդեան բազմութիւնը որ գոյնզգոյն սողուններու նման կը զեռայ. և գլխաւորապէս բնիկ ժողովրդեան քաղաքին մէջ, ուր տեղւոյն անձկութեանը պատճառաւ վրայէ վրայ խռնուած կը բնակին։ Ուրիշ մէկ մասնաւորութիւն մըն ալ որ մարդուս վրայ տպաւորութիւն կ'ընէ, է անոնց թաղական բաժանմունքները։ Դասակարգութեան խտրութիւնը ատելութեան չափ արմատացած է մէջերնին, որոյ հետևանք է որ միշտ իրարմէ որիշ բնակին. թէպէտ և առևտրական կենաց մէջ հաղորդակից են մէկմէկու։

Այս ժողովրդեանս վրայ տեսնուած գործունէութիւնը, իրենց զգեստին մասնաւորութիւնը, իրենց շարժուածքը, իրենց վաճառականական ձեռնարկք,

և այն փոյթը որով քաղաքականութեան վիճաբանութեանց կը մասնակցին, հետևանք կը համարին անգղիական քաղաքակիրթ վարչութեան՝ որ կրցեր է իրենց վրայ անանկ զօրաւոր կենդանութիւն մը տպաւորել։

Կրօնական շարժմունքն իսկ ուրիշ գլխաւոր տպաւորութիւն մը կ'ընէ օտարականին վրայ, որու ամեն քայլ առնելուն, ամեն փողոց խոտորելուն մէյմէկ երկրպագութեան վայր իրեն ընդ առաջ կ'ելլէ։ Հոս դից փառապարդ տաճար մըն է կանաչ ու կարմիր ներկեալ, իր յատուկ դից պատկերներովն, անիմաստ և այլանդակ արձաններովն ու զարդերովը, և անհատնում երկրպագուաց բազմութեամբը։ Երկու քայլ անդին մահմէտականին մզկիթը կը կանգնի, ուր լուրջ ջերմեռանդից խումբք կը յաճախեն 'ի լրումն օրինական արարողութեանց։ Քանի մը քայլ անդին կրակապաշտ Փարսիին մշտաբաց տաճարն է, ուսկից անշիջանելի հրոյ մշկաբոյրը ողջոյն փողոցը կը լնու։ Եւ 'ի պսակ ամենայնի՝ այս ամենայն կրօնից սրբավայրից միջոցին մէջ ցրուած կը տեսնես քրիստոնէական աղօթատեղեաց բազմութիւնը, որոց ճակտին կենաց քառաթև փայտը կարծես իւր ծոցը կը հրաւիրէ այլադենից խումբերը։

Բայց աւելի նշանաւոր է երկու դասուց ժողովրդեան կրօնական աղօթասիրութիւնը. և այս գլխաւորապէս կը դիտուի մերձ 'ի ճեմելի դաշտորէս ծովեղերաց, ուր բազմութիւնը խուռն կը դիմէ մասնաւորապէս արևմտից ժամանակ։ Մահմետականն ու Փարսին գլխաւորաբար այս աղօթասիրութեան ցոյցը կու տան հասարակաց առջին։ Փարսին գրեթէ աւուր ամեն ժամանակ կը տեսնես որ բազմութեամբ ցրուած այն ընդարձակ տեղւոյն վրայ, աղօթագիրքը

ձնուքը, մերթ ծունր և մերթ կանգուն բարձր ձայնիւ իւր աղօթքը կը մատուցանէ ելլող կամ մեռնող արեգին հանդէպ։ Բայց գլխաւորապէս արեւմտից ժամանակ է որ այն զբօսալի ծովափին վրայ ամեն վիճակի, ամեն սեռի և ամեն հասակի Փարսին կը զեռայ. Նոյն այն ժամանակ որ արեգը հորիզոնը խոնարհելով ծածկուելու կը հանդերձի գիշերուան տեղիք տալով։ Ի՛նչ պատկառանաց ուրախութիւն այն դիմաց վրայ, ի՛նչ լուրկ ծափահարութիւնք, ո՛րչափ երկրպագութիւնք, ո՛րչափ ողջոյնք և աղօթք կը մատուցուին այն լուսոյ արքային, այն կենսատու սկզբան՝ որ իւր ջերմութեամբը բոլոր բնութեան կեանք կը շնորհէ։

Շատք ևս այն բազմութենէն՝ քան զբազումս ջերմեռանդք իրենց սրտին թափը չզսպելով՝ տեղատեալ ծովուն թաց աւազուտին վրայէն յառաջ կը խաղան ծովաջրոյն մերձ. գոգցես համարելով թէ որչափ մերձագոյն մատչին խոնարհող լուսաստեղ, նոյնքան արդիւնաւոր կ'ըլլան իրենց աղօթք։ Հոն այն խոնաւ աւազուտին վրայ և մերձ 'ի ջուրն իրենց երկրպագութիւնքը կ'ընեն, աղօթքնին կը մատուցանեն, ջրէն լի ափով կ'առնուն և երեսնին ու ճակատնին կը մերձեցնեն, և յետս ընդ կրունկն չեն դառնար մինչև լուսատու ջահը իւր երեսը իսպառ չծածկէ։

Բայց մենք ասկէ անդին դարձնենք աչքերնիս, 'ի Վիկտորիա տնկաբանական հասարակաց պարտէզը, որ Պոմպէյի ուրիշ շքեղ զբօսավայր մըն է, և որոյ կանգնումը ոչինչ աւելի կը հաշուէ քան քսան ամ։ Տեղւոյս գեղեցկութիւնը վայելելու համար հարկ է կամ առաւօտանց կանուխ այցելել և կամ ցորեկուան չորրորդ ժամէն ետքը։

Մտից մերձ, 'ի ձախակողմն, մեծ շէնք մը՝ ընդար-

ձակ թանգարան մըն է, ուր այցելուին տեսութեան կը պարզին երկրին ամեն տեսակ բերոց և ճարտարութեանց ցոյցք, բայց գլխաւորապէս բուսաբանականն ու հանքաբանականը։ Այս բերոց մէջէն գլխաւոր տեղին կը գրաւէ ամեն տեղւոյ և ամեն գաւառի բամբակի ցոյցը հանդերձ կերպ կերպ հնտեղինօք։ Ասկէ դուրս նշանաւոր են բնիկ ճարտարաց ձեռագործք, և գլխաւորապէս փայտեղէն փորուածք, բրտի անօթք, և տարազք զգեստուց այլ և այլ ժողովրդոց Հնդկաց։

Բրածոյ կենդանեաց մնացորդք իսկ չեն պակասիր. և ես մասնաւորապէս նշմարեցի ծովային կենդանւոյ մը հսկայ կմախքը, որոյ երկայնութիւնն է յիսունեւեօթը անգղիական ոտք, և ամենէն ուռած տեղին՝ քսանուիրեք ոտք բոլորչի։

Թանգարանէն ելնելով այցելուն՝ ժողովրդեան բազմութեան հետ կը մոլորի այն անտառակերպ բուրաստանին բազմաթիւ շաւիղներուն մէջ, և կամ հրակայ ծառոց հովանիին ներքև նստարանաց վրայ կը հանգչի 'ի զնին։ Ի՞նչ զբօսանք կը զգայ անզբաղ միտքը 'ի տես այնքան ծառոց վայելչազգեստ կանաչութեան. որ կիզիչ արևու մը տակ իրենց բուն կարևոր աճեցուցիչ տարրը գտնելով՝ կ'աճին բարգաւաճ և իրենց արդիւնքներովը ամեն ատեն մարդկային փափկասիրութիւնը կը յագեցնեն։ Ծանրաքայլ յառաջելով կ'ընթեռնում՝ այն հասարակածին յատուկ ծառոց անուններն, որ առանձին առանձին դրոշմած է իւրաքանչիւրին վրայ։ Գրեթէ մեծագոյն մասը պտղատու են և արմաւենեաց ազգը ճոխաբար կը ներկայացնեն։

Անդր քան զծառս այցելուին աչքը կը հանգչի այն կանաչազգեստ մարգագետնից վրայ՝ զորս յառաւօ-

տէ ցերեկոյ ուշադիր մշակը իր ճակտին քրտամբը կ՚ոռոգանէ։ Աշխատաւորաց բազմութիւն մը ամեն դին ցրուած է այն ծաղկալից վայրքը խնամելու։ Յունուար ամիսն է, և սակայն ամեն ազգի և ամեն եղանակի ծաղիկ կը տեսնուի այն որիշ որիշ հողէ անկողնոց վրայ, որոց չորս դին կը բոլորէ դալարին։ Այլ անկարելի է բառ գտնել բացատրելու այն անուշաբոյրն որով լցուած է ողջոյն մթնոլորտը։

Բիւր կերպիւ ջանացած է մարդկային ճարտարութիւնն այն վայրը զբօսալի ընելու. լայն կանաչազարդ ծաղկալից պողոտայք, հովանաւոր միջոցք, փոքր բարձրաւանդակք, փոքր լիճք, ընտիր ծառերով անտառախիտք, հազարումէկ խաղեր այցելուին միտքը գեղեցկութեամբ կը յափշտակեն ու վայրը անպատմելի կերպիւ կը քաղցրացնեն։ Բազմութիւնը խուռն կ՚ընթանայ այս տեղիս, և գլխաւորաբար գաղթական Եւրոպացին, որ առ վայր մը այս հովանաւոր ու ծաղկալից միջոցին մէջ աւուր նեղացուցիչ ջերմութեան տագնապը կը մոռանայ. որոյ աչքին գուցէ աւելի շողշողարար զբօսանք մը կը տպաւորէ այն այլ և այլ հնդիկ դասուց բազմութեան գոյնզգոյն զգեստներն, որ կանաչազարդ վայրին մէջ ցրուած շարժուն ծաղիկներու երևոյթ կը բերեն։

Պարտիզիս մէկ փոքր մասը, արևելեան վերջին ծայրը, սեփականեալ է վայրի գազանաց փակարանի։ Հնդկաց բազմութիւն մը շարունակ բոլորած է այն գառագեղց չորս դին, ուր բանտարկեալ կը պահին անհատք ոմանք այն վայրի գազաններէն, որ քանի մը մղոն անդին՝ ազատ բնութեան մէջ այնքան աղետալի են նոյն իսկ մարդուն։ Առիւծ, վագր, յովազ, արջեր, գայլեր, բորենիներ՝ գլխաւոր գազաններն են որ միշտ ռամկին հետաքրքրութիւնն իրենց կը քա-

չեն։ Սակայն քանի մը քայլ անդին է որ ժողովուրդն աւելի միակուռ խռնած է մեծ երկաթապատ վանդակի մը առջին, ուր կապկաց բազմութիւն մը կերպ կերպ միմոսական խաղերով զինքը կը զուարճացնեն։ Եւ սակայն աչք մը տալով այն խառնիճաղանճին բազմութեանը, որոց մորթը սև կամ մութ գոյնին ամեն աստիճանի նրանգ կը բովանդակէ, մտածութիւն մը կու գայ միտքս, թէ և անվայել. անշուշտ, կ'ըսեմ, յԵւրոպա կենդանաբանականպարտիզի մը դառագեղց շարունակութիւն մը շատ հետաքրքրական ըլլալու է այս այլ և այլ տեսակաց նախատիպքը հաւաքելու։

Տեղւոյս խնամատարութեանը համար տարեկան եղած ծախքն է 10,000 ռուփի։ Այսչափ ծախքով կը պահուին քանըհինգ պարտիզպան, տասուերեք աշխատաւոր կանայք, ութ տղայ և ուրիշ քանուինը աշխատաւոր։ իսկ տեղւոյն ծախուած բերքերէն եղած ստակը 8,000 ռուփիէն աւելի է։

Ի Պոմպէյ երկու գլխաւոր թատրոնք կան, որոց համար մասնաւոր թատերգակ ընկերութիւնք կու գան յԱնգղիոյ։ Բաց ասկէ կան նաև մասնաւոր սըրահք երաժշտական հանդիսից և պարուց, ինչպէս նաև այլ և այլ քլիւպք։

Երկու օրական լրագիրք կը հրատարակուին անգղիարէն լեզուաւ յորոց մին է Պոմպէյ կազէդ, միւսը Թայմզ օվ Ինտիա։

Բաց 'ի այլ և այլ առևտրոց՝ քաղաքս գլխաւոր վաճառատեղի է արաբացի ձիոց, որ կը բերուին տաճկի Արաբիայէն։ Բայց Պարսկաստանէն ևս շատ ձի կը բերեն վաճառանոցս։ Հեծնելու ձիերուն գինը կը տարբերի 300 ռուփիէն մինչև 1000 ռուփի։ իսկ լծելու ձիոց գինն է 350 ռուփիէն մինչև 900ի ռուփի։

Այսանկ մեծ ու խառնած քաղաքի մը համար, ուր ամենազգի հնդիկ մարդոց բազմութիւնը դիզուած կը բնակի, բնական է հարցնել թէ առողջաբանական նկատմամբ ի՛նչ վիճակի մէջ կը գտնուի։ Մաքրութիւնը առողջութեան պայմաններէն մէկն ըլլալով՝ կարծես բնական կու գայ հետեւցնել թէ հիւանդութիւնք անպակաս ըլլալու են քաղքէս։ Այլ և այլ ամաց հաշիւները նայելով տարեկան մեռելոց գումարը կ'ելլէ իբրև 30,000 մարդ։ Յամին 1878 մեռելոց թիւը հասաւ 33,233, որ ամենէն բարձր թիւը կը համարին։

Գլխաւոր հիւանդութիւններէն մէկն է մաղձացաւը, որ տարին տասուերկու ամիս անպակաս է ընիկ ժողովրդեան մէջէն։ Սակայն հիւանդութիւնս եւրոպացի գաղթականաց շատ քիչ կը դպչի. անշուշտ իրենց զգուշաւոր ապրուստին պատճառաւ։ Բայց այս յետիններուս ալ եթէ երբեք հպի, ազդեցութիւնը գրեթէ անմիջապէս մահացու կ'ըլլայ։

Ինչպէս դիպաւ իսկ մի անգամ ևեթ ցորչափ հոն դեգերեցի։ Եւ այս դիպաւ քաղաքին կառավարչին տիկնոջը, զոր գոգցես քանի մը ժամու մէջ տարաւ։ Եւ որ ձախորդն էր՝ քաղաքապետին բացակայութեան ժամանակն եղաւ, որ 'ի պարտուց պաշտաման ստիպեալ՝ աշխարհիններսերը կը ճանապարհորդէր, այնպիսի տեղ՝ ուր ոչ հեռագիր կը բանէր և ոչ երկաթուղի կը քալէր։

Դեռ ևս կը յիշեմ այն աղետալի դէպքը. բօթալի լուրը կայծակի պէս տարածուեցաւ քաղաքը, բոլոր եւրոպացի գաղթականաց սիրտն ահաբեկելով։ Հարկ եղաւ մեռելոյն դիակը զմռսել, երբ կարգ արկղի մէջ ամրապինդ փակել և մեծ զգուշութեամբ պահել մինչև ցգալուստ քաղաքապետին։ Որ երբ օր ետքը տխուր լուրն առնելով փութաց յուղարկաւորութիւնը հրամայելու։

Ողջոյն քաղաքը ոտքի վրայ էր․ ժողովուրդը փողոցաց և անցից վրայ կը դիզուէր այն տխուր յուղարկաւորութեան ականատես ըլլալու։ Եւրոպացի գաղթականաց ընտրելագոյն մասը ներկայ էր հանդիսին․ ամենուն երեսը ցաւակցութեան տխրութիւնը կը կարդացուէր․ կարծես ընտանիքի մը մէջէն անձ մը պակսեր էր՝ բոլոր ընկերները սգի մէջ ձգելով։

Հարկ էր հանգուցելոյն դիակը հեռու հասարակաց գերեզմանոցը տանիլ, որ քաղաքէն երկու ժամ բացակայ է 'ի Սիւրի ըսուած տեղը, մերձ 'ի ծով և բլրի մը ոտքը։ Այս գերեզմանոցս երկու բաժնուած է․ մին նորաղանդից, միւսն ուղղափառաց ։ Քրիստոնէից չորրորդ գերեզմանոցն է 'ի Պոմպէյ․ միւս երեքը քաղաքին մէջ գտնուելով և արդէն լցուած ըլլալով, հարկ եղեր է այս հեռու տեղ չորրորդը կանգնել։

Միջօրէէն ետքը զինուորականաց բազմութիւնը քաղաքապետին տունը կը ժողովէր, ուր կարգաւ շարուած էին նաև յուղարկաւորաց կառքերը․ և ահա որոշեալ ժամուն յուղարկաւորութեան թափօրը ճամբայ կ'ելլէր։ Ձիաւոր զինուորականաց խումբ մը դագաղակիր կառաց առջևէն ու ետևէն կ'երթար․ որոցմէ ետքը ծանրաքայլ կը հոլովէր կառաց բազմութիւնը։ Ուսկից որ թափօրը կ'անցնէր՝ տխուր լռութիւն մը կը տիրէր․ ամենուն երեսը ցաւակցութեան նշանք կը տեսնուէին։

Գերեզմանոցին դուռն որ թափօրը հասաւ՝ մտից առջևը դադարեցաւ․ ամենը կառքերէն իջան, և չորս աստիճանաւոր զինուորականք դագաղը կառքէն վար իջեցնելով ուսերնին վերուցին ու ծանրաքայլ գերեզմանոցը մտուցին՝ յառաջելով մինչև փոսը։ Հոն բոլոր յուղարկաւորք չորս դին պատեցին, և երեք

անզղխացի եկեղեցականք փոսին վրայ համառօտ աղօթք մը կարդալով՝ դագաղը մէջը իջեցուցին, և անմիջապէս մեռելաթաղք հողով ծածկեցին։

Տխուր հանդիսին ներկայ էր նոյն իսկ քաղաքապետն. առ որ երեք եկեղեցականք դառնալով՝ լռելեայն ցաւակցութեամբ ձեռք սեղմեցին ու մեկնեցան։ Անոնց հետևեցան նաև յուղարկաւորք, յորս կային ևս և բազում փարսի մեծուհի տիկնայք. և քիչ մը ետքը տեղին միւսանգամ իր լռութեան կերպարանքը զգեցաւ։

Երկրորդ օրը լրագիրը թաղման ստորագրութիւնն ընելով իր խօսքն այսպէս կը լմնցնէր. — «Այսպէս կատարեցաւ թաղման հանդէսը. այնպիսի սրտաշարժ ու գեղեցիկ արարողութեամբ որ քան զամենայն արարողութիւնս գեղեցկագոյնն է»։ — Ես որովհետև ես բայց 'ի լռիկ թափօրէն և երեք եկեղեցականաց ներկայութենէն ուրիշ արարողութիւն մը չտեսայ, համարեցայ թէ տեղացի այլադենից արարողութիւնները կը հասկնար։

Երեք օր ետքը նոյնպէս մաղձացաւով կը մեռնէր նաև նոյն քաղաքապետին եղբօրորդին իսկ։

Արդ եթէ ոք 'ի Պոմպէյ այլ և այլ չիրմաց տապանագիրները հետաքրքրելով կարդայ, չի կրնար սիրտը ներքին երկիւղի մը զգացմունքէն պահել։ Գրեթէ առհասարակ այն չիրմաց ներքև յաւիտենական քունը ննջողք երիտասարդ հասակին մէջ աշխարհքը թողած են. շատ սակաւաթիւ են անոնք որ յիսնամեայ հասակը հասնելու կարողացեր են։ Այսպէս մարդածախ է աշխարհս և մահագոյժ Եւրոպացւոց. մանաւանդ անոնց որ ցուրտ կլիմայից ծնունդ են։

Անոր համար ամենայն Եւրոպացի մեծ փոյթ ունի,

որ քիչ ժամանակի մէջ խնայութեամբ և աչալրջութեամբ տքնելով դրամ հաւաքէ, և ըստ կարի փութով այն երկրէն հեռանայ։ Այս պատճառաւ նաև վարչութեան պաշտօնատարաց և զինուորականաց թոշակը բարձր է, և իրենց ծառայութեան ժամանակն իսկ նուազ քան անոնց որ յԵւրոպ կը ծառայեն։

Սակայն այս ալ գիտելի է, որ բաց 'ի վարչութեան պաշտօնէից՝ ուրիշ Եւրոպացւոց ու բաղդախնդրաց շատ դժուարին է այն կողմերը գործ գտնել։ Նոյն իսկ վարչութեան Եւրոպացի պաշտօնատարք, սակաւաթիւք են, և մեծ պաշտպանութեան պէտք ունին վարչութեան գործոց մէջ մտնելու։ Ուստի և կը դիտուի որ աւելի գործ փնտռող Եւրոպացի մարդ կայ 'ի Պոմպէյ, քան թէ բուն զբաղելու գործ։ Որով շատ երիտասարդք որ շահու ակնկալութեամբ գնացած են այն կողմերը՝ իրենց յոյսը ունայն ելած տեսնելով, դանէ դուռ կը պտըտին կամ օգնութիւն խնդրելու և կամ ունայն տեղ գործ բնտռելու։

Գլխաւոր պատճառն է որ տեղացիք՝ սակաւապիտոյք ըլլալով թէ կերակրոյ, թէ հանդերձի և թէ ուրիշ ծախուց նկատմամբ, ոչինչ վարձքով կը գոհանան։ Ուստի և ամեն գործատեարք, վաճառականք և վարչութիւնն իսկ, իրենց շահաւորագոյնը փնտռելով, լաւ ևս կը համարին բուն բնիկներէն առնուլ իրենց ծառայութեան մէջ, քան թէ Եւրոպացի գործածել՝ որոնց պահանջը աւելի ծանր է և փոյթը նուազ։

## ԺԱ

Ի ԴԱՐՁԻՆ։ Իմ զգացմունքս։ — Ճամբորդ ընկերք. — Հանդէպ Ատենի։ — Ատենի թերակղզւոյն երևոյթը։ — Ատենի քաղաքը։ — Հոյակապ ջրամբարքն։ — Երբ Անգղիացիք տիրեցին Ատենի։ — Ի պարանոցն Սուեզի։ — Ի Բորդ Սայիտ։ — Դէպ յԱղեքսանդրիա։

Որ ոք չէ ճանապարհորդեալ 'ի Հնդիկս չի կրնար երևակայել որչափ քաղցրութիւն ունի այն երկիրն, և որչափ խոր կ'արմատանայ մարդուն 'սրտին մէջ անոր յիշատակը։ Կլիման, երկինքը, բնութիւնը, մարդկութիւնը, ամենայն ինչ նոր է, ամենայն ինչ յատուկ կնիք մ'ունի, և մասնաւոր և ախորժելի տպաւորութիւն մը կ'ազդէ սրտին ու մտաց վրայ։ Անզբաղութիւնն իսկ վրայ գալով՝ ճանապարհորդը կը յափըշտակուի, և գոգցես անցեալը մոռացեալ ներկայիւ միայն կ'ապրի։ Ժամանակը աննշմարելապէս կ'անցնի. աւուրք, եօթնեակք, և ամիսք զիրար կը յաջորդեն, և ինքը երջանիկ անփութութեան մը մէջ կ'օրօրի։

Բայց և այնպէս հուսկ ուրեմն կը լուսանայ այն օրն երբ այս ամենայն նորութիւն՝ ինչպէս ըսեմ՝ կ'ունականայ. այն ատեն մարդուն սիրտը և միտքը բոլորովին առ իւր հայրենիս կը վերադառնայ. իւր երկրին և իւր տան յիշատակք կարօտագին կը զարթնուն, և այնուհետև ոչինչ 'ի ներկայից՝ որչափ և քաղցր և նոր՝ կարող է իւր սրտին կարօտը լեցնել։ Նա մանաւանդ, ըսեմ, ամենայն ինչ կարծես հասարակ ու ռամիկ կերպարանք մը կ'առնու, և պանդխտութեան անմխիթարութիւնը վրան ծանրանալով՝ ինքզինքը

քաղաքականութեան կենաց կեդրոնէն շատ հեռացեալ կը գտնէ, և օտար ու խորթ երկրի մը մէջ։ Զանձրոյթը ու լքումը սրտին կը տիրեն, և այնուհետև ոչ այլ ինչ կ'անձկայ եթէ ոչ դարձին 'ի հայրենիս։ Եւ եթէ բռնադատեալ 'ի գործոյ անկարանայ ըստ իւր ըղձին փութապէս այն երկրէն հեռանալու, այնուհետև տեղին իւր աչաց առջին աքսորանաց վայր կ'ըլլայ։

Այսպէս էին իմ զգացմունք յետ երից ամսոց որ 'ի Պոմպէյ կը գտնուէի. և սակայն ինձ բռնադատեալ էր երկարել կացս մինչև Ապրիլի առաջին օրերը։ Բայց և այն յետին աւուրք ինձ ճշմարիտ քաւարան կը թըւէին, և սիրտս երկիւղիւ տոչորեալ կը վարանէր որ չըլլայ թէ կացս երկարելով ինձ անհնարին ըլլար փոթորկաց եղանակէն յառաջ մեկնիլ այն երկրէն։ Տխրութեամբ զգածեալ՝ ստէպ ծովեզր կ'ելլէի և աչքս ընդարձակ ծովուն վրայ ձգելով՝ չէի կրնար արցունք մը զսպել մտածելով այն հազարաւոր մղոնք որ զիս հեռաւոր միայնարանէս կ'անջատէին։

Երբ լուսացաւ այն օրն որ ամենայն արգելք հարթեց և ինձ դիւր եղաւ մեկնելու, ո՜հ, ո՜րչափ ուրախութիւն զգացի, ո՜րչափ մխիթարութիւն, երբ Աւստրիոյ հիւպատոսը ինձ աւետեց երկուց շոգենաւուց նոյն եօթնեկին մէջ մի զմիոյ կնի մեկնիլը։ Իսկոյն առաջինն ընտրեցի ընդդէմ իւր խորհրդին որ կը խրատէր զիս երկրորդով մեկնիլ, ուր բազում ընկերութիւն ըլլալու էր։ Բայց ինձ ախորժելի ևս էր միայնութիւնը, և լաւ ևս համարեցայ կանխել չորս օր քան յապաղել այլ ևս այն երկիրն որոյ գեղեցկութիւնն ալ սիրտս չէր հրապուրեր այնքան որքան հեռաւոր հայրենեաց ըղձալի յիշատակը։

Եւ սակայն այժմ՝ որ անդորրաբար հանգչած եմ 'ի

ծերացեալն Եւրոպ և անցեալը կը խորհրդածեմ, եթէ սրտիս մէջ վառ իղձ մի կայ տեղափոխութեան, է՛թէ հնար էր՝ միւսանգամ դառնալ 'ի Հնդիկս որոյ յիշատակն անջնջելի է սրտէս ու մտքէս։ Այսպէս միանգամայն քաղցր ու դառն է այն երկիրն։

Արդ Ապրիլի երրորդ աւուր ցորեկը զիս շտապաձգեց 'ի մակոյկ որ ինձ 'ի Լոյտի շոգենաւ պիտի առաջնորդէր. այնքան էր ուրախութիւնս և սրտիս այլայլութիւնը, որ ամենայն պատշաճութիւն մոռացեալ՝ հազիւ 'ի բացուստ կարող եղայ ողջունել այն սակաւք որոց հետ հինգ ամիս կենակցած էի։ Սիրտս կը տրոփէր քանի որ ցամաքէն կը հեռանայի և երկիւղիւ կը վարանէի չըլլայ թէ շոգենաւը մեկնած գտնեմ։ Ի՛նչպէս քաղցրութիւն զգաց սիրտս երբ ոտքս կոխեցի այն շարժական կամրջին վրայ որոյ միւս կողմը դէպ 'ի դէմ երթալու տեղիս կը հայէր։ Այնուհետև չունէի տարակոյս թէ աքսորանաց համարեա վայրս ստուգապէս թողլու էի։ Եւ սակայն աչքս այն քաղաքին վրայ դարձնելով՝ կարծես անոր որմունք, անոր շէնքերը, անոր աշտարակները սպառնալից կ'ըսէին, թէ պիտի գար օր՝ որ ըղձամ պիտի անցած օրերէն մէկը տեսնել, ըղձամ պիտի այն աւազուտին գետինը միւսանգամ կոխել, այլ պիտի չկարենամ, և միայն անցելոյն յիշատակը երբեմն երբեմն երազներս պիտի զուարթացնէ։

Շոգենաւին վրայ աթոռս կը զետեղեմ, կը բազմիմ և քաղաքին նայելով անհամբերաբար կը սպասեմ ժամուն որ նաւուն խարիսխը վեր առնուն։ Ի բացուստ երկու մակոյկ դէպ 'ի մեզ կը մերձենան. ճանապարհորդակիցք են որ ինձ նման կը շտապեն երկրէն հեռանալու։

Արեւը կը խոնարհի. քաղաքին լապտերք մշուշի
մէջէն կը սկսին փողփողել, և հաւսկ ուրեմն շղթայի
շշնջիւնը խարսխին վեր առնուիլը կ'աւետէ: Նոյ
նաւը հեզիկ հեզիկ իւր ընթացքը կ'առնու և քիչ ք
ետքը այն մեծ քաղաքին միայն սև գիծը եանենիս կ
թողունք: Մի և նոյն առեն սպասաւորը զճանապար
հորդակիցքս ճաշի կը հրաւիրէ:

Հոն գիրար կը թուենք. ծերունի նաւապետը, ի
երկրորդը, և այլ երկու տեղակալք նաւապետի. ե
և չորս անգղիացի ճանապարհորդք: Ի դիւրութի
մեզ՝ ողջոյն շոգենաւը՝ հանդիստ խղիկներով: Մաք
մութիւնը՝ որ ամենակարեւոր է ճանապարհորդու
թիւնը զբօսալի ընելու՝ շուա մը կը մտնէ մէջերնիս,
այնուհետև՝ ցորչափ ճամբան տևէ՝ ամենքս գոզցե
մէկ ընտանեաց անձինք ըլլանք պիտի:

Մեր շոգենաւը՝ 'ի խնայութիւն ծախուց ածխոյ՝ ա
ժամն ութ մղոն կը քալէ. նաւապետին այսպիսի
պատուէր: Այլ թէպէտ ընթացքնիս ծանր՝ մեզ չ
փոյթ. ընթերցմամբ ու խօսակցութեամբ ժամանակ
կ'անցնի: Օդն անդորր, ծովը խաղաղ, ուստեք նեղու
թիւն չունիմք, և այդ շատ է:

Անփորձ և հանգիստ՝ մետասաններորդ օրը կը լու
սանայ, և մեք երեկոյեան դէմ սկսիմք Արաբիոյ ծ
վերջը տեսնել. շրջան մի ևս և Ադենի նաւահանգիս
տը խարիսխ կը ձգեմք:

Նաւին շրջապատին յեց՝ լուիկ կը դիտեմք. այն հր
րաբղխային երկրին կերպարանքը. ամայի, հրկիզեա
անջրդի, անպտուղ բլրոց շղթայ մի է որ ծովափ
վրայ կը ցցուին: Բայց յանկարծ անսովոր աղաղա
կաց շփոթ մը զմեզ կը սթափէ. նաւակաց բազմու
թիւն մը մեր նաւը պատած են. անոնց մէջէն տեղաց

սեւամորթ Սոմալից խառնիճաղանճ մի ամեն գիէն մագլցելով նաւը կը լեցուին 'ի խնդիր ճանապարհորդաց։ Մեր նուազութիւնը տեսնելով յուսաբեկ կը մնան. բայց և այնպէս մեզ կը բոլորեն և գոգցես կը ստիպեն ցամաքը առաջնորդելու։ Աղտեղի հանդերձիւք Հրեայք խառնիճաղանճին միջէն ճամբայ կը բանան, և իրենց քրձոց բովանդակածը մեր առջևը տարածելով՝ մեզ կը յորդորեն այլ և այլ մեծութեամբ ու գեղեցկութեամբ ջայլամի փետուրներ ըստանալու. այլ ակնկալութիւննին ունայն կ'ելլէ, և լքեալ կը մեկնին։ Սևամորթ Սոմալք իսկ անոնց կը հետևին՝ թողլով մեզ մեր անդորրութիւնը։

Սակայն սևամորթ Սոմալ տղայոց խմբիկ մը մեր նուազութենէ չլքանելով՝ 'ի ստորև իրենց նաւակաց մէջ կանգուն կը դադարին. և ձևով և բանիւ պաղատագին մեզ կը յորդորեն որ գոնեա փոքր դրամիկ մը ծովը նետենք։ Եւ մեք՝ հաճելով զանոնք գոհացընել՝ հայցուածքնին կը կատարեմք և ամենափոքր դըրամիկ մը ջուրը կը ձգեմք. իսկոյն խմբին մէջէն մին ջուրը կ'ընկղմի և քանի մի րոպէ յետոյ երեսը կ'ելլէ՝ դրամիկը ձեռքին մէջ բռնած ցուցընելով։ Միոյն կը յաջորդէ ուրիշ մը. և այսպէս հետզհետէ ամենը իւրեանց մասը կ'ունենան, 'ի մեր զարմանս, որ կը զբօնունք տեսնելով այն տղայոց ճարտարութիւնը, որ անվրիպելի կերպիւ ինչ և իցէ ոչինչ նիւթ ծովուն խորէն վեր կը բերեն։

Սակայն այս իրենց ծովասոյզութիւնը առանց վտանգի չէ. երբեմն աղետալի հետևանք ալ կ'ունենայ. որովհետև այն ջրերը գոգցես բոյն են շանաձկանց և անզգոյշ լուղորդաց մեծապէս վտանգաւոր. կ'ըսեն թէ չեն սակաւ այն դէպք որ ողջոյն տղայ մի կամ կիսով չափ մարդ մի այն կատաղի գազանաց զոհ ըլլայ։ Նաև

կը տեսնուին իսկ տղայք որոց մէկ սրունքը չանաձակը տարած է։

Բոլոր այս Սոմալք՝ առհասարակ մեծ ու փոքր՝ բարեկազմ, աշխոյժ ու սրամիտ երեւոյթ մը ունին։ Աչքանաւոր դիտելի բան իրենց ատամանց սպիտակութիւնը և անարատութիւնն է. մասնաւոր խնամք ունին զանոնք սպիտակ ու մաքուր պահելու, և այսու նպատակաւ ձեռքերնին միշտ դեղնորակ փայտ մը կը կրեն, որու միսուաք անունը կու տան, որով և չարունակ կը շփեն։

Ադէն՝ Երջանիկ Արաբիոյ ծայրը կը գտնուի, Ափրիկէի Ադէլ քաղաքին հանդէպ, Կարմիր ծովուն մտից առջեւն ու Հնդկային Ովկիանոսին վրայ։ Թերակղզի մըն է, շրջապատեալ ծովով 'ի ծովէ, ու պարանոցով մը յարեալ ցամաքին։ Նաւահանգստին կողմէն դիտելով Ադէնի կերպարանքը՝ հրաբղխային հնացորդաց անմխիթար երեւոյթ մը ունի. ցած ու ժայռուտ բլրոց շղթայ մի է կարծես, սեւատես, ամայի, արեւակէզ, անբեր ամենեւին, որ նախկին հրաբղխի մը հերձոտելէն ու պատառոտելէն ձեւացած են։ Այն հիւրատեաց հողուն վրայէն կարծես բնութիւնն իսկ կը խորշի. ոչ բուսականութիւն կը տեսնես, ոչ ծառ, ոչ թփիկ որ անոր վայրի կերպարանքը ամոքէ։ Նոյն իսկ չարժուն կեանքը կարծես անկէ տեղի կու տայ. զի և ոչ թռչնիկ մը կը տեսնես, 'ի բաց առեալ ծովային թռչուններն, որ այն կատարաց վրայէն սաւառնելով՝ անոնց տխուր կերպարանքը զուարթացընէ։ Եւ եթէ չահասիրութիւնը չձգէր, անշուշտ մարդըս ալ իբր անիծեալ երկրէ մը անկէ կը խուսէր[1]։

1 Այսպիսի է ահա այն տպաւորութիւնն որ այն երկրին վայրի երեւոյթը կ'ընէ առջի անգամուն ճանապարհորդ-

Սրդ այն տխուր ու վայրի տեսարանը քիչ մը զուարթացնողն է տանց շարք մը սպիտակ որմունքներով որ այն աւազուտ սև ժայռուտից ոտքը կը կանգնին, արաբացի ճարտարապետութեամբ ու փայլուն տեսքով: Ոմանք իբր պանդոկ կը ծառայեն, ուր կը բնակին եւրոպացի պաշտօնատարք ու վաճառականք. այլք գործատունք են, կամ սրճանոցք, և կամ խանութք Հրէից ու Փարսից ձեռքը, ուր հնար է գտնել Աֆրիկէի և Ասիոյ ճարտարութեանց ամեն տեսակ հետաքրքրական առարկայ:

Այն Եւրոպացի ճանապարհորդք որ այլ և այլ տեղերէ գալով աստէ կ'անցնին միւսանգամ Եւրոպա դառնալու, հոս հասնելով փոյթ կը տանին ոչ միայն ընտիր քաֆէ գնելու, այլ նաև ջայլամի գեղեցիկ փետուրներ, Աֆրիկէի զէնքեր, Մադագասկարի սըփռոցներ, հալուէ, սատափ, գազանաց մորթեր, ինչպէս առիւծու, յովազի, ընձառիւծի, և այլ տեսակ Աֆրիկէի և Ասիոյ ձեռագործներ:

Ես լեհացի Հրէի մը խանութը մտնելով շատ մը տեսած գազանաց մորթերէն՝ մեծահասակ առիւծի մը և գեղեցիկ յովազի մը մորթերն անարժան չհամարեցայ ստանալու 'ի յիշատակ:

Շոգենաւուց ու ճանապարհորդաց բազմութիւնը

դի վրայ: Եւ սակայն բուսաբանք կը պնդեն թէ այն անջրդի երկիրը իննըսուն տեսակ բոյս կը բովանդակէ. թէպէտ մեծաւ մասամբ վտիտացեալ և ցամաքեալ, յորոց ևս վաթսունը փշուտ են: Նոյն իսկ կենդանաբանութիւնը կ'ըսէ՝ իւր ներկայացուցիչքն ունի. ինչպէս սակաւ թռչունք և սակաւ միջատք: Տասնըչորսի չափ տեսակ թիթեռք կը գըտնուին, կ'ըսեն, յորոց ոմանք գիշերային. և մարախի ջոկք իսկ մինչև այն արևակէզ հողերը կը հասնին. թող մըջիւնը, կարիճը, ընտանի ճանճը և անհանդուրժելի մժեղը:

Օձք և մողէզք իսկ կը գտնուին, ինչպէս նաև չագալք. բորենիք, մուկն, և կապկանց տեսակք:

այս անմխիթար տեղիս ալ կը ջանայ զբօսալի ընելու ։ Մասնաւոր սրճանոցք կան որ կը ծառայեն իբր ժողովարան ճանապարհորդաց, ուր գլխաւորապէս գերմանացի երաժիշտ օրիորդաց ընկերութիւնք՝ եւրոպական երաժշտութիւնը կը հնչեցնեն ։

Սակայն բուն Ադէն քաղաքը տեսնելու համար այս նաւահանգստիս ծովափին վրայ կենալու չէ, հարկ է դէպ 'ի ներս երթալ, որ հետի մէկ ու կէս ժամու ճամբայ է ։

Մեր շոգենաւը մէկ ու կէս օր այն նաւահանգիստը դադարելու էր. այս ինձ պատեհ էր հետաքրքրութիւնս յագեցնելու ։ Առաւօտանց կանուխկեկ այն ծովեզերաց աւազուտին վրայէն քալս դէպ 'ի հանդիպակաց բարձրաւանդակ մի կ'ուղղեմ, որոյ միւս կողմը գոգցես երեսուն հազար մարդոց քաղաք մը կ'աւետեն ։ Աջակողմս՝ բոլոր ճամբուն երկայնութեամբը՝ սև, հրկիզեալ, առապար, ցամաքեալ հրաբղխային բլրոց կողերը կը կանգնին. ձախակողմս ընդարձակ, վճիտ, մութ կապոյտ ծովը. զով հողմիկ մը ծովուն երեսէն շնչելով այն խղդուկ ջերմութիւնը կ'ամոքէ ։

Ճամբան շարունակելով ստէպ ստէպ ընիկ սևամորթից խմբիկներու կը հանդիպիմ, որ դէպ 'ի Սդիմըր փօյնդ կը դիմեն. անշուշտ կամ 'ի խնդիր գործոյ և կամ ինչ և իցէ շահու ։ Արք, կանայք ու տղայք խառն մէջերնին զուարթ խօսակցելով՝ քովէս կ'անցնին, ինձ կը նային, կը ժպտին, մէջերնին խօսք մը կը նետեն ու կ'երթան ։

Գոգցես կէս ժամ քալելէն յետոյ աննշան հիւղերու կոյտի մը կը մերձենամ. Մալա կոչուած փոքր գիւղակն է աւազուտին վրայ շինած, ոչ շատ հեռի 'ի մաքսատանէն ։ Անկէ աւելի լքուցիչ տեսարան չի

կրնար ըլլալ. այն խրճիթք տախտակներով, յարդով ու տերևներով շրջապատեալ միջոցներ են, որոց շինութեանը համար ամենևին արհեստաւորի պէտք չէ եղած, ինչպէս նաև չկայ պէտք ոչ դրան և ոչ պատուհանի։ Եւ սակայն այս խրճթաց ոմանք վերէն բաց բակ մըն ալ ունին, որմէ անդին է բուն բնակարանը։ Անկէ քիչ մը անդին մաքսատան հանդէպ ու ծովափէն ոչ հեռի՝ խարիսխ կը ձգեն այն նաւք որ մերձակայ ծովեզերքներէն տեսակ տեսակ բերքեր կը բերեն։ Այլ ես հետաքրքրութենէ մղեալ ծովեզերեայ ճամբէն կը խոտորիմ և այն գիւղակին կամ թէ լաւագոյն ըսեմ փլատակաց կոյտին գլխաւոր փողոցը կը մտնեմ։ Տղայք ոմանք՝ գոգցես զարհուրած՝ կը փախչին և ներկայութեանս ազդը կու տան։ Իսկոյն ամէն խրճիթէն գլուխներ դուրս կ'երկըննան. սիրտ ընողները դուրս կ'ելլեն, և քանի որ ճամբաս յառաջ կը տանիմ, ետեւէն բազմութիւնը կը դիզուի, աղաղակները կը սաստկանան, որոց արձագանգ կ'ըլլան շանց հաչիւնը։ Մեծաւ մասամբ կանայք ու տղայք են. երևի թէ արք առհասարակ գործոյ գնացած են։ Զկարենալով հասկնալ բազմութեան դիզուելուն նպատակը, թէպէտ սպառնական կերպարանք մը չեն ցոյց տար, բայց և այնպէս քայլս կ'երագեմ, մինչև փողոցին միւս ծայրէն դուրս արձակը կ'ելլամ. բազմութիւնը կը դադարի, այլ սևամորթ տղայոց խմբիկ մը դեռ ևս ետևէս կու գայ, մինչև գիւղակէն բաւական կը հեռանամ։

Թէ որչափ սակաւապիտութեամբ ու խեղճաբար ապրելու է այն ռամիկը՝ Աստուած գիտէ. այն ապառաժ, անբեր երկրին վրայ, ուր ոչ ցօղ կ'իջնէ, ոչ կանաչ կը բուսնի, ոչ մշակութեան հետք կը տեսնուի, և ամպք իսկ հազիւ երեք կամ չորս տարի մէյմը իրենց ջուրը կը թափեն, ոչ այլ ապրանաց միջոց կը

*Թիայ անշուշտ եթէ ոչ ձկնորսութեան վտիտ արդիւնքը։*

*Ասկէ անդին ճամբան կը սկսի բարձրանալ ու ծովեզերքէն խոտորելով դէպ 'ի հարաւային արեւելեան կողմը կ'ուղղի. անուշ դարուվեր մըն է որու շինութեանը մարդկային ճարտարութիւնն իսկ բաւական մաս մը ունի։ Այս դարուվերս վերջապէս ժայռին ոտքը կը հասնի. նոյն այն կէտին վրայ ժայռը երկուքի բաժնած է արուեստաբար, ճամբայ բանալով ժայռից մէջէն միւս կողմը իջնալու։ Այս անցքը կրնայ զուրցուիլ Աթէնի դուռն կամ բանալին։ Նոյն այս տեղս սիփայից զօրանիստ մի կայ եւրոպացի յիսնապետի մը առաջնորդութեան յանձնուած։ Հոն հրացանաւոր զինուոր մի այն հզօր բերդին թնդանօթից առջեւէն շաբունակ վեր վար կը շրջի։ Հարկ է ամեն ճանապարհորդ որ բերդին դռնէն կ'անցնի՝ պահապանին հետազօտիչ հայեցուածքին քովէն քերէ, և միւս դըռնէն ելլէ, ու ժայռից միջէն դարուվարին ճամբան առնու։ — Այս բերդին և անցքին դուռը անհրաժեշտ երեկոյեան ժամը իննին կը գոցուի։*

*Դռնէն անդին ճանապարհորդը երկու ժայռերը միացնող կամրջէ մը կ'անցնի և լերան խորը փորուած ճամբու մը մէջէն կը քալէ, մինչև միւս ծայրը հասնելով աչացը առջին ընդարձակ դաշտավայր մը կը պարզի որ անհուն ամփիթէատրոն մը կը նմանի, որ այլ և այլ ձորերէ կը ձևանայ, ամենընոյնպէս ամայի, նոյնպէս ցամաքեալ, անջրդի, աւազուտ, անբեր, անմխիթար, հեռի 'ի ծովէ զոր ժայռից միւս կողմը թողի։ Սակայն այն ընդարձակ դաշտավայրին կեդրոնը իբր մխիթարիչ՝ Աթէն քաղաքին սպիտակատես շէնքերը կը կանգնին 'ի հանդիպոյ։ Հետզհետէ որ կը*

յառաջեմ ընկաց երթևեկը չորս դիս կը բազմանայ, ընդ որս ևս և ուղտուց և իշոց շարք:

Ճանապարհս յառաջ կը վարեմ և հուսկ ուրեմն չէնից կը մերձենամ. յորոց ոմանք վարչութեան վերաբերելով վայելուչ երևոյթ մը ունին: Քայլ մի ևս և փողոց մի կը խոտորիմ. Սոսկալ սևամորթ պատանի մի ինձ ընդառաջ կը փութայ և խօսքն անգղիարէն ուղղելով կը հրաւիրէ քաղաքը շրջեցնելու: Առ 'ի չգոյէ լաւագունի կը հետևիմ սրամիտ սևամորթին և շուտ մը այն արաբաշէն քաղաքին փողոցները կը մոլորինք: Տունք փոքր և միայարկ են, քարաշէն և հողաշէն, այլ տանիք տափարակ: Արք և կանայք փողոցը տանց առջևը գետինը նստած կը խօսակցին. շատք անտարբերաբար նորեկիս կը նային ու մէջերնին խօսք նետելով կը ժպտին: Թուի թէ վարժ են սպիտակամորթ տեսնելու, անոր համար ալ հետաքրքրութիւն չեն ցուցներ: Շատին ձեռքը միսուակ փայտը կայ, որով ակռանին կը շփեն:

Վաճառանոցին հրապարակը կ'ելլեմ՝ որ գրեթէ քաղաքին կեդրոնն է, այլ ամենևին անշուք. նմանապէս վաճառանոցին ներսը ամենևին անպաճոյճ է. և բերոց սակաւութիւնը տեղւոյն աղքատութիւնը կարծես կ'ուզէ նշանակել: Բայց ամենէն աւելի աչքի զարնողը ջրոյ պակասութիւնն է. հրապարակին մէջ ուղտուց և յաւանակաց խումբեր տիկերով բեռնաւորած կը տեսնեմ, և հետաքրքիր հարցմանս առաջնորդըս կը պատասխանէ, թէ առ հասարակ ջուրը հարկ է երկրին ներսերէն կենդանեաց կռնակը բեռնաւորեալ բերել: Թող որ քաղաքին կարևոր պաշարք իսկ ուղտուց կռնակը բեռնաւորած Եմէնէն կը բերուին:

Փողոցէ փողոց անցնելով վերջապէս քաղաքէն դուրս արձակը կ'ելլեմ, դէպ 'ի հիւսիսի հարաւային

կողմը. Հոն առաջին բանն որ տեսութեանս կըներկայանայ՝ է շատ մը թուփք որ մասնաւոր փայտեայ արկեղաց մէջ ամփոփած են։ Այն վայրը մասնաւոր պարտիզի մը երեւոյթն ունի, առանձին երկաթեայ վանդակապատիւ շրջապատեալ, որոյ թիկունք Շէմ-Շէմ ժայռք անկիւն մի կը ձեւացընեն. այս ժայռից անկիւնը քաղաքին հրաշալիք մըն է որու հարկ է ամենայն ճանապարհորդ այցելէ։ Մերձենալով անոր մըտից՝ անգղիարէն արձանագրութիւն մի կ'ընթեռնում, որոյ իմաստն է՝ թէ խստիւ արգելեալ է այն թփոց տերևներուն իսկ դպչելու։ Եւ շատ իմաստութեամբ դըրուած է պատուէրդ, և մեծ զգուշութեամբ իսկ անոնց վրայ հսկողութիւն կ'ըլլուի. ապա թէ ոչ՝ այն խառնիճաղանճ բազմութիւնն որ ջրոյ համար այն տեղ կը յաճախէ, անշուշտ մէկ ժամու միջոցի մէջ և ոչ տերև մի կը թողուր այն նկնահասակ, ծիւրեալ ու սակաւատերև թփոց վրայ. որ աւելի բուսականութեան վիժածք կրնան զուր ցուիլ. և սակայն իրենց ներկայութիւնն այն ցամաքեալ, ապառաժ, հրկիզեալ տեղւոյն ժպիտ մը կը տպաւորեն։

Այս տեղիս, այս պարտէզը, այս զբօսալի վայրն՝ է Ատէն քաղաքին հրաշալիքը. հոս են այն հռչակաւոր մեծ ջրամբարք որ մեծագործութեան յիշատակարան են։ Որովհետև հրաբղխային երկիրս է ամենևին անջըրդի, ուր և երկնից օրհնութիւնն իսկ հազիւ երբեք երեք կամ չորս տարի մէկ մը, և երբեմն իսկ հինգ կամ վեց տարի մէկ մը այց կ'ելլէ, վարչութիւնը ժողովըրդեան կարօտութիւնը խնամելով, այն ժայռից գոգին ոստոստ գուբերն ու խորշերն որմնապատ ըրած՝ մասնաւոր ընդարձակ ընդունարաններ շինած է, յորս կ'ամբարի այն սակաւադէպ անձրևաց ջուրն, որ ճշմա-

րիտ օրհնութիւն մըն է բնիկ ժողովրդեան։ Եւ սակայն այն եռամեայ կամ քառամեայ անձրևը ստէպ հազիւ մէկ կամ երկու ժամ կ'իջնէ, և այն իսկ ոչ այնքան առատութեամբ որ ջրամբարք լցուին. ստէպ ջուրը հազիւ մէկ կամ երկու մեդր կը բարձրանայ անոնց մէջ. որ ապա չորութեան եղանակը յաջորդելով կը սպառի և ջրամբարք կը ցամաքին։ Բայց կ'ըլլայ նաև որ անձրևաց եղանակին կարծես երկնից սահանք կը բացուին, տևելով մէկ, և ևս երկու օր, և այն ատեն երկնից թափած ջրին չափը չկայ. ժայռից վրայէն հեղեղք կ'իջնան, ամեն դին գետ ու քարավազ ձևացընելով։

Այն ատթիւ կրնայ զուրցուիլ թէ ողջոյն քաղաքը ջրասոյզ կ'ըլլայ. որովհետև տունք մեծաւ մասամբ հողաշէն են, և ծածքերնին տափարակ. անձրևին ջուրը դիւրաւ ամեն դիէն տունը կը թափանցէ ինչպէս թէ փողոցն ըլլար։ Անկէ որմունք իրենց ամրութիւնը կորսնցընելով, ստէպ ստէպ տխուր ու խորին աղմուկ մը կամ թնդիւն մը կը լսուի, որ ուրիշ բան չէ՝ բայց եթէ պատեր, տուներ կամ տանց մաս մը որ կը կործանին։

Այն ատեն ընկայ տաժանելի և տագնապի գործ կը բացուի. և ամենքն 'ի բռնադատութենէ ստիպեալ՝ հարկ է որ ժրութեամբ փութան ծածկելու և ապահովցընելու իրենց փափուկ ապրանքն. որ են քաֆէ, այլ և այլ խէժք, խունկ, զմուռս, ռետին, հալուէ, մեխակ, պղպեղ, համեմք, դեղորայք, հնտեղէնք, և այլն։ Սովորաբար բոլոր այս ապրանք բաց օդու մէջ կը պահուին, նաև ծովեզերքին մօտ, մինչև որ նաւերը բեռնաւորեն տանին։

Բայց երբ անձրևը դադարի ամենքն իրենց տագնապը կը մոռնան, և սրտերնին ուրախութեան կը

բացուի. ամենուն բերանը իրենց ջրամբարքն են։ Առժամանակեայ վշտերնին մոռնալով՝ ընթացքնին դէպ 'ի այն բարերար ընդունարաններն կ'առնուն, որոնք՝ եթէ անձրեւը յորդ իջած ըլլայ՝ մինչեւ բերանը կը լցուին։ Այն ջուրը սկզբան պղտոր է, բայց կամաց կամաց կը զտուի կը մաքրուի։ Ի տեսիլ այնքան լաւ եւ անոյշ ջրոյ՝ ամենուն սիրտն ու երեսը կը զուարթանայ. եւ շատ իրաւամբ, որովհետեւ շատ քիչ կը հանդիպի որ այնքան ջուր ունենն։ Վարչութիւնը, որու ստացուածք կը համարի, այն անհուն ջուրն աճուրդի կը հանէ, որմէ մինչեւ հարիւր հազար ֆրանգ կը շահի. այն ստակը կ'անցունէ քաղաքին տեսչութեան, որ 'ի կիր կ'առնու 'ի շինութիւն հասարակաց շինից, հիւանդանոցաց, ճամբաներու, եւ ուրիշ բարեկարգական գործոց։

Սակայն անպատեհութիւն մի եւս ունի այս ջուրս. որչափ զտուի միշտ անախորժ համ մը կ'ունենայ. մինչեւ օտարք լաւագոյն կը համարին գործիքով թորեալ ջուրը խմել քան զայս։ Բաց ասկէ, ջրամբարքս այս յատկութիւնն ալ ունին որ անհուն մժղանց բոյն կ'ըլլան. որոց եթէ տզզալը անհանդուրժելի է, որչափ եւս առաւել խայթը։

Այս հռչակաւոր ջրամբարաց կանգնումը ամենահին է. ժողովրդական աւանդութիւն մի կայ որ Սողոմոնին կ'ընծայէ անոնց շինութիւնը։ Անգղիացիք նոյն ջրամբարներն մեծ վարպետութեամբ նորոգեցին։ Թուով ինը հատ են, ժայռին դէպ 'ի վեր վրայէ վրայ յարմարցուած, ու բոլորը կաւով ծեփած։ Երբ վերինը անձրեւի ջրով կը լցուի, ջուրը կը զեղու ու վար հոսելով յաջորդը կը լեցընէ, եւ այսպէս հետզհետէ ամենը կը լցուին։ Այս կերպով է որ այն ժայռերուն վրայ ինջած ջրերը կը ժողովին։ Ժայռին ամենէն խորը զե-

տեղեալ ջրամբարը գրեթէ երկու միլիոն հարիւրոր-դալիտր կրնայ բովանդակել։

Այսպիսիք են ջրամբարքս անձրեւէն յետոյ. սակայն եւ անոնց ցամաքութեան ժամանակը դիպայ, ոմանց յատակը մնացած սակաւ ջուրը կանաչ լօռ մը կապած էր։ Եւ սակայն այն սինլքոր բազմութիւնը տիկերը եւ անօթները անխտիր անկէ լեցընելով զուարթութեամբ կ'առնուր կը տանէր։ Եւ ի՛նչ աշխատութեամբ հարկ է ժողովեն այն սակաւ ջուրը. մասնաւոր երկրթէ սանդուղք ձգած է վերէն 'ի վար շատ մեգր խորու-թեամբ. այն սանդուղներուն վրայէն՝ հարկ է բեռնաւ-որած իջնեն ելլեն։ Այն ամփոփ միջոցին մէջ ջրկրաց աղաղակներուն արձագանգը ժայռէ 'ի ժայռ անդրա-դառնալով կարծես մեծամեծ բանակներու անցու-դարձ կ'ըլլայ։

Շրջակայ ամայութենէ ու ցամաքութենէն ետքը տեղիս շատ զբօսալի կ'երեւնայ, իւր պարապաշէն կա-մուրջներովը, սանդուղներովը, անձուկ ճամբաներո-վը. որոց մէջ արուեստիւ շարեալ են այն հիւծեալ, վտիտ տունկերն որ դժկամակ ու բռնի կեանք մը կը վարեն։

Այսոքիկ են Ատէն քաղաքին մի միայն հրաշալիք կամ մեծագործութիւնք։ Իսկ ընդհանուր քաղաքին վրայ տիրած բարեկարգութենէն կ'իմացուի որ քա-ղաքակիրթ ձեռք մըն է անոր վարչութիւնը վարողը։

Հետաքրքիր՝ գիտնալու ու տեսնելու Եւրոպացի գաղթականութիւնն յԱտէն, առաջնորդ պատանիէս կը հարցընեմ տեղեկանալ անոնց թիւը եւ բնակու-թեան վայրը։ Բայց նա կամ միտքս չի հասկնար եւ կամ չուզելով առաջնորդել կը պատճառէ թէ բաց 'ի զին-ւորականաց այլ Եւրոպացի չկայ։

Բայց որ ստոյգն է, 'ի բուն. Ատէն չկան եթէ ոչ սա-

կաւ Եւրոպացի վաճառականք, որոնք Հրապարակին մօտ առ և տրոյ խանութներ ունին։ Ասոնցմէ 'ի զատ կայ նաև վեղարաւոր Եղբարց առաքելութեան եկեղեցի մի հանդերձ մենաստանիւ, և նոյն իսկ Նորաղանդք իրենց եկեղեցին ունին։

Այլ 'ի Թերակղզիս գտնուող եւրոպացւոց մեծագոյն մասը կը բնակին 'ի Սդիմըր փօյնդ, տեղւոյս ամենէն զով կողմն ըլլալով։ Հոս է նաև կառավարչին բնակարանը, որ միշտ զօրավար մըն է, որովհետև Ադէն զինուորական նաւահանգիստ համարեալ է։ Օտար տէրութեանց հիւպատք իսկ հոս կը բնակին, ինչպէս նաև այլ և այլ ընկերութեանց գործակատարք. և հոս դարձեալ կը գտնուին պանդոկք, հեռագրատունք, զօրանոցին մաս մը, վեղարաւոր միանձանց մատուռ մի, Բարւոյ Հովուի Քերց փոքր վանատեղի մի, և նոր աղանդից եկեղեցի մի։

Ի բուն Ադէն քաղաք եթէ ճանապարհորդը քաղքին կեդրոնը կեցած աչքերը դէպ 'ի վեր երկինքը վերցնէ, որ կողմէն ալ հայեացքը շրջեցնէ ու դիտէ այն շրջափակ անմատչելի երևցած ժայռից գագաթները, ուրիշ բան չի տեսներ եթէ ոչ բազմաթիւ բերդեր որ մէկմէկու հետ բոլորչի ճամբով մը շաղկապեալ են։ Ժայռից մէջէն փորուած ճամբաներ կը տեսնէ, և կամուրջներ որ ժայռ ժայռի հետ կը կապեն։ Եւ այն ժայռից բարձրագունին վրայ՝ 1776 ոտք բարձր՝ հսկող պահապան մը կանգուն կը տեսնուի, որ նման անգեղ հեռաւոր հորիզոնը կը հոտոտէ. միշտ կազմ միշտ պատրաստ ազդը տալու այն հարիւրաւոր Թընդանօթից, որ ժայռից գագաթանց վրայէն ողջոյն այն ծովուն կը տիրեն։

Աշխարհիս այս ամայի անկիւնը, որ մարդուս բնակութեան անպատեհ ըլլալու ամենայն մանաւորու-

թիւնն ունի, ՚ի սկզբանէ հետէ բազմաթիւ դիպաց առ-պարէզ եղած է։ Հոս շատ մը ազգեր՚ իրարու յաջոր-գած են, և դեռ ևս շատք այնք են որ ցայսօր հոն կը գտնուին։ Արաբացիք, Սոմալք, Հապէշք, Վասվա-հիլք, Եբրայեցիք, Հնդիկք, Փարսիք և Հնդկա-բոր-տուկէզք, առ հասարակ այս Թերակղզւոյս վրայ տա-րածուած կը բնակին։ Արաբացիք, Սոմալք և Հնդկաց մեծագոյն մասը մահմէտական կրօնքը կը պաշտեն։

Տեղւոյս վարչութիւնը Պոմպէյի Նախագահութեան ենթակայ է. անկէ է որ կու գան պաշտօնատարք և զինուորք, ևս և ծախուց կարևոր դրամք։

Անգղիական վարչութեան արդիւնաւոր հետևանքն այս եղաւ, որ Ադէն միւսանգամ ստացաւ իւր վա-ճառականական էական դիրքն ու համբաւը. և որ լա-ւագոյն կարելի է համարել, վաճառականութեան կամ փոխանակութեան առարկայք ինչ որ յառաջ էին գը-րեթէ նոյն մնացած են։ Գաղթականք հոս բան մը չեն յառաջ բերեր. հապա իբր պարզ ամբարանոց մի վա-ճառուց կը ծառայեցնեն զԱդէն։ Հոս ամենայն ինչ կը վաճառի. ափ մի հող, գաւաթ մի ջուր, խոտոյ տերև մի. միով բանիւ ամենայն ինչ բաց ՚ի արևուն լուսէն ու ջերմութենէն, զոր բարեբաղդաբար Նախախնա-մութիւնը վաճառականութեան ենթակայ ըրած չէ։

Անգղիացիք ՚ի 1839 տիրեցին Ադէն Թերակղզւոյն. որովհետև անոր ծովափը անգղիականնաւ մը նաւա-բեկած էր զոր Արաբացիք աւարած էին։ Անգղիական վարչութիւնը այս անիրաւութիւնս առիթ առնելով հատուցում պահանջած էր, և իւր բողոքը ունկնդիր չգտնելով՝ դիմեց զօրքով գնտակակոծեց ու տիրեց տեղւոյն։ Լահաճի սուլտանը՝ որու ստացուածք էր՝ ջանաց նորէն ձեռք բերել. բայց իւր ամենայն ջանքն ունայն ելլելով՝ վերջապէս 1843ին խաղաղութիւն ը-

րաւ, դաշնադրելով Անգղիացւոց հետ բարեկամութիւն ու վաճառականական յարաբերութիւն։

« Երբ Անգղիացիք տիրեցին Թերակղզւոյն, Ադէն քաղաքին բնակիչք 600 հոգւոյ չափ հազիւ կային, որոց 250 Հրեայ, 50 ալ Պանիան։ Վաճառաշահութիւնն իսկ՝ որով տեղին 'ի հնուց հետէ միշտ հռչակաւոր եղած էր՝ գրեթէ իսպառ ոչնչացած էր. որովհետեւ Տաճկաց ու Լուսիտանիացւոց պատերազմներովը տեղին ոչ միայն աւերածով լցուած անշքացած էր, այլ նաեւ կարեւորութիւնն իսկ ջնջուած էր։ Բայց և այնպէս երկայն ջրմըղի մը աւերակք, մեծ ջրամբարք, և Շէմ-Շէմի բարձունքը տանող տասուերկու ոտք լայնութեամբ մեծ ճամբու մը մնացորդք, յայտնի կը վկայէին տեղւոյն անցեալ շքեղութիւնն ու կարեւորութիւնը, զոր հնար էր միւսանգամ վերանորոգել։ Ուստի և Անգղիացւոց ժրութեամբ ու գործունէութեամբ՝ Ադէն հետզհետէ մեծցաւ, բազմացաւ ու զօրացաւ. այնպէս որ զարդիս Բրիտանական կայսրութեան ամենէն կարեւոր կայաններէն մէկն եղած է։ Հոն, 'ի Սղիմըր քօյեղ նաւակայան՝ կը ժողովին այն ամենայն շոգենաւք որ 'ի Հնդիկս, 'ի Չինաստան, յԱւստրալիա, և յայլ տեղիս կ'ուղևորին։ Իր դիրքը և իր հզօր բերդերովը Կարմիր ծովուն մտից կը տիրէ։ Պահապան զօրքը 1000 հոգիէ կը բաղկանայ. իսկ ընիկ ժողովրդեան թիւը երեսուն հազարի կը հասնի։

ՅԱդէնէ շոգենաւնիս խարիսխն առնելով՝ 'ի Պապէլ-Մանտէպէ, Արտասուաց դրանէ, զմեզ 'ի Կարմիր ծովը կը մղէ։ Գուցէ հասարակածին ջերմութեանց կիրթք՝ ոչ ևս կը զգամք այն խղդիչ անհանդուրժելի ջերմութիւնն որ Եւրոպէն գալով այս ծովուս մէջ ըզգացի։ Նա մանաւանդ աւելի զով կը գտնեմք անոր

վրայէն շնչած օդը։ Միայն շոգենաւնուս ծանր ընթացքն է որ քիչ մը անհամբերութիւնս կը զկծեցնէ։ Բայց հուսկ ուրեմն տասնօրեայ ճանապարհորդութենէ ետքը կը հասնիմք 'ի Սուէզ։ Հոն ինձ կը հասնէր ծովագնացութեանս չափին լրումը, և հարկ էր ցամաքէն երկաթուղեաւ յԱղեքսանդրիա իջնել։ Սակայն ընկերութեան սակաւութիւնը այնպիսի մտերմութիւն ձգած էր մեր և նաւապետաց մէջ, որ չուզեցին թողուլ զիս մեկնիլ. այլ ստիպեցին Սուէզի պարանոցին մէջէն իջնել մինչև ցՆորդ Սայիտ, ուստի ուղևորելու էր շոգենաւը դէպ 'ի Թրիեստ։

Ի Սուէզ օր մի դադարեցանք, Տարով կարգադիր պատուիրին որ մեզի ակնարկէ պարանոցին անցքը մտնելու ժամը։ Յետ այն աննշան ծովափը իջնելու 'ի խնդիր ժամավաճառութեան, երեկոյեան ժամը հինգին կը մտնենք այն նեղ անցքը՝ ուսկից յառաջացեր էր քան զմեզ Գաղղիացի պատերազմական շոգենաւ մի։ Ջրանցքին երկուստեք անմխիթար աւազուտք. միայն մէկ երկու աղքատին խրճիթ կը տեսնեմք, ուկից Փէլլահ տղայք և աղջկունք փութալով շոգենաւին ետևէն կ'ընթանան պաքշիշ, պաքշիշ կանչելով։ Պտուղք, հաց, և դրամ նաւէն ցամաքը կը նետուին, զորոնք այն տղայք ժողովելով դեռ ևս չեն գոհանար, այլ անձանձիր շոգենաւին ետևէն կը շարունակեն ընթանալ նոյն ձայնը արտաբերելով։

Ջրանցքս կամ պարանոցս, որում 'ի բազմաց կ'անձկայի ականատես ըլլալու, անձուկ է յոյժ, և հարկ է որ շոգենաւք մի զմիոյ կնի կարգաւ քալեն. տեղ տեղ իսկ շատ է միջին գծէն մեդրիւ չափ խոտորիլ որ նաւը աւազին մէջ խրի։ Ուրիշ զգուշութիւն մըն ալ կայ ընելիք. երկուստեք գոգցես շարժուն աւազուտք ըլլալով հարկ է որ շոգենաւք ծանր ծանր ընթանան, որպէս զի

կարելի եղածին չափ երկու կողմէն աւազք անշարժ մնան և չսահին դէպ 'ի վար 'ի ջրանցքը: Գիշերը նմանապէս քալելը արգելեալ է. որ կէտին վրայ օրը տարաժամի հարկ է նաւը դադարի, պարանները երկընցընէ և ամուր մը ցամաքին վրայ պրկէ, որովհետև խարիսխ ձգելը արգելեալ է. արևուն ծագելովը դարձեալ իւր ընթացքը յառաջ կը վարէ:

Սապէս և մեք այս կարգադրութեանս ստիպուեցանք հետևելու, յետ երկու ժամ քալելէն: Օրը երեկոյացեալ էր և անապատի գիշեր մը իւր հովանին կամաց կամաց մեր վրայ կը տարածէր. անբնակ անմարդի կէտի մը վրայ ինկած էինք, ու խորին լռութիւն մի մեր չորս դին կը տիրէր. հեռի որչափ աչք կը զօրէր՝ աւազուտք էին մեր աջ դին, աւազուտք էին մեր ձախ դին: Առ 'ի չգոյէ զբաղմանց կարթ ձգեցինք 'ի փորձ այն ջրանցքին ջրոց ուր կ'ըսեն թէ ձկանց առատութիւն կայ. և փորձը յաջողեց՝ հզօր կարթասղան նահատակ մատչելով խոշոր ձուկ մի որ երկրորդ աւուր ճաշը յարդարեց: Գիշերը յառաջացեր էր և ես դեռևս նաւակամրջին վրայ բազմեալ Լիբիոյ երկնից աստղերը կը դիտէի և այն ընդարձակ աւազուտք որ միայն գազանաց ասպարէզ են: Ո՜րչափ կը փափագէի տեսնել անապատին ամեհի առիւծը որ սովալլուկ մեր ապաստանարանին մուտքը որոնէր. ուշադիր ունկն կըմատուցանէի այն խորին լռութեանը մէջէն ու կ'երևակայէի լսել անոր մռնչիւնը. սակայն ոչ առիւծ և ոչ այլ ամեհի գազան մերձեցաւ անհանգիստ ընել մեր կայանքը: Եւ այսպէս անդորրաբար գիշերն անցաւ և լուսացաւ օրը յորում նաւուն պարանքն լուծուելով յառաջ վարեցինք մեր ընթացքը:

Կը փութայինք անհամբերաբար այն ամայութենէն ելլել, և անփորձ ջրանցքին պատահարաց՝ կը յուսա-

յինք նոյն գիշերն 'ի Բորդ Սայիտ ժամանել. սակայն փորձ նաւապետաց սիրտը ամեն քայլին կը տրոփէր. արդեօք առաջիկայ ճամբան մինչև ցվերջ ազատ պիտի գտնեմն։ Եւ ահա յանակնկալս, յետ երկուց ժամուց ընթացքէն, դադարելու պատուէրը կը հասնէր ողջոյն գծին վրայ գտնուող շոգենաւուց։ Գաղղիացի պատերազմական շոգենաւը մեր առջևէն լայն աւազանի մը մէջ կը դադարէր. անոր ձախ դին և գրեթէ կից մեզ իսկ պարանակապ կանգ կ'առնէինք. և այլ շոգենաւք որ մեր ետևէն կու գային ետևէ ետև ջրանցքին վրայ անշարժ կը շարուէին։

Այս բռնի դադարին պատճառն անգղիական բեռնաւորեալ շոգենաւ մի էր, որ ջրանցքին մէկ կողմը ցամաքին վրայ նստած անցքը կը խափանէր։ Արդէն աշխատելու հետ էին որ ջրի վրայ քաշեն. բայց այնպէս խրած էր աւազին մէջ որ ձգող շոգենաւուց ամենայն ճիգն ունայն կը հանէր. հարկ էր վերջին փորձըն փորձել, որ էր անոր բեռը թեթևցընել. և դժբաղդաբար այս գործն երկարատև ըլլալու էր։ Բայց չկար այլ ճար եթէ ոչ համբերել, և ով սովոր էր համբերելու լռութեամբ կը տանէր. բայց ծովագնացից անհամբերութիւնն՝ որ իրենց ազատ ընթացքին մէջ խափան չեն սիրեր՝ օրհնութեանց նորակերպ պսակ մը կ'արտասանէր այն դժբաղդ շոգենաւին և անոր վարիչներուն 'ի պատիւ։

Օրը երեկոյացաւ և գիշերը միւսանգամ ծածկեց զմեզ, և անհամբերութիւնը սկսաւ սրտերնիս նեղել. կը յուսայինք երկրորդ օրն արձակման ազդը լսել. բայց առաւօտուն լքումը տիրեց մեզի երբ նաւապետը ազդեց թէ և ոչ նոյն օրը յառաջելու յոյս կար։ Ի՞նչ ընելու էինք այն անբնակ անապատին մէջ և կիզող արեգին տակ. որ կողմը դարձնէինք աչքերնիս՝

*անապատ աւազուտ մը կը տեսնէինք, աւազ նուրբ ու դեղնորակ, որ թեթեւ հովիկ մը շոգենաւին վրայ կը թափէր։ Ողջոյն մթնոլորտն իսկ կարծես այն նուրբ աւազով յագեալ էր, ջերմ դեղնորակ գոլորշի մը կը նմանէր որ հորիզոնին վրայէն բարձրանալով՝ երկնից կապուտին ջերմ, դեղնագոյն, կարմիր երանգ մը կը տպաւորէր։ Մեր նաւէն քիչ մը անդին աւազուտին վրայ տեղ տեղ փայտեայ խաչեր տնկուած էր, նշան թէ այն աւազին տակ հանգուցելոյ Քրիստոնէի մը ոսկորք կը հանգչէին։ Ի հեռուստ Լիբիոյ լերանց մութ մանուշակագոյն շղթայն այն ամայութեան տխրութիւնը կարծես քիչ մը կ'ամոքէր։ Սակայն ճանճից բազմութիւնն անպատմելի էր. կարծես բըռ-նաւոր Փարաւոնին պատուհասը դեռ եւս կը տեւէր։*

*Եթէ մխիթարանք մի կար մեզի այն վայրի տեղւոյն մէջ պատերազմական նաւուն զինուորական կրթութիւններն ու երաժշտութիւնն էին, որ օրը քանի մի անգամ՝ մեր կենաց միակերպութիւնը կը կտրէին։ Մի անգամ՝ ես փորձեցինք ցամաքն իջնելու ու մերձակայ կոյարանին պաշտօնարան երթալու։ Անոր բոլորը փոքր պարտիզիկ մը ձեւացուցած էր, որուն դուռը բաց գտնելով եւ անպահապան՝ համարձակեցանք մտնելու շուրջ գալու։ Ո՜ն՝ որ 'ի հանդիպոյ կու գար՝ քերեց քովերնէս խոժոռ հայեցուածքով։ Առանց ուշ դնելու շարունակեցինք յառաջել. բայց սպառնալից ձայն մը ականջս խայթեց.*

*— Աֆիսդուս, կ'ըսէր յունարէն, նա փանէ դա... դօս։*

*Այս բաւական կ'ըլլար ինձ հասկցնելու թէ արեւելից դռներն հասած էինք. զգաստ ընկերացս դառնալով փութացուցի անդէն հեռանալու, ու միւս անգամ դարձանք 'ի շոգենաւ։*

Լուսացաւ հուսկ ուրեմն մեր բանի կայարանին երրորդ օրը, և ահա 'ի ցնծութիւն մեր ամենեցուն՝ եկաւ յառաջելու ազդը. խրածնաւը բեռնազերծ եղած՝ վերջապէս շարժեր էր՝ ետևէն եկողներուն անցք բանալով։ Ուրախութեամբ պարանները լուծուեցան և ջրանցքին մէջէն սկսանք յառաջել. մեր ետևէն տասնըմէկ շոգենաւաց դրօշակք կը տեսնուէին, որոց մեծագոյն մասը Անգղիացի էին։ Այն ուղղագիծ ջրանցքին երկու կողմէն միակերպ նոյն անլմննալի աւազուտից ամայութիւնն էր։ Երբեմն երբեմն միայն, ցորչափ յառաջ կը մատչէինք, մէկ քանի ուղտ, մէկ քանի ֆէլլահ կը տեսնէինք, որմէ կը գուշակէինք թէ մերձակայ բնակութեանց տեղի մի ըլլալու էր։ Քիչ մը անդին՝ հեռուները՝ լճերու ջրին քով տեսակ տեսակ թռչնոց և անհուն կռունկներու լէգէոններ։

Երևակայութեամբ կը մտածենք թէ երկու աշխարհաց մէջէն կը քալենք. մեր աջ դին ունինք զԱսիա, մեր ձախ դին զԱփրիկէ, որու անմահ բրգանց գագաթները կը գուշակենք 'ի հեռուստ։ Ո՛րչափ պատմական յիշատակօք սրտերնիս կը բաբախէ։ Սակայն մեր անփորձ ընթացքը վերջապէս այն նեղ ջրանցքէն զմեզ արձակը կը հանէ 'ի Լեղի անուանեալ Լճերը։ Ընդարձակ ծովակք են զոգցես, ուր թոյլ է ամենեցուն ընթացքը երագել։ Շոգւոյ ուժը կը սաստկանայ, ընթացքը կ'երագէ և ամէնը կը ճգնին յառաջադէմ նահատակ առաջին հասնիլ միւս ջրանցքին մտից առջև։ Գաղղիական շոգենաւը՝ քան զմեզ ծանրաքայլ՝ միշտ մեր ընթացքը կը խափանէ, մինչև առաջին ինքը լիճը կտրելով ջրանցքը կը մտնէ, և մենք կը հետևինք իրեն։

Ընթացքնիս դարձեալ աւազուտից մէջէն կը շարունակի, մինչև կ'ելլենք միւսանգամ արձակը 'ի լիճն

Դիմսաճ։ Մեր ձախակողմը, գոգցես իբր օվասիս յանապատի, կը ներկայանայ Իսմայիլիա 'ի հեռուստ. անոր չորս կողմը և 'ի հեռուստ որչափ աչք կը զօրէ՝ անհուն աւազոց և աւազուտ բլրոց ասպարէզ։ Այլ մեզ հարկ է այս լճիս մէջ առ վայր մի դադարիլ, մինչև 'ի հանդիպոյ ջրանցքին մէջէն եկող շոգենաւք արձակը ելնին և անցքը ազատ թողուն։

Հուսկ ուրեմն ժամը կը հասնի և մենք կը մտնեմք ջրանցքին վերջին մասը որ զմեզ 'ի Բորդ Սայիտ պիտի հանէ։ Տեղացի նաւակք պտուղներով բեռնաւորեալ կը մերձենան շոգենաւին։ Ֆէլլահք մագլցելով վեր կը դիմեն ընտիր նարինջներ մատուցանելով, որ յոյժ 'ի դէպ կու գան իրենց քաղցրութեամբը մեր ջերմին տապը զովացնելու։ Նաւապետք մատնանիշ ընելով աննշան Քանդարան՝ մեզի կը ցուցընեն. սակայն մեր կրծոց մէջէն ցնծութեան ձայն մը կը փրթի երբ երեկոյեան դէմ Բորդ Սայիտի հանդէպ խարիսխ կը ձգենք։

Հոս հարկ էր ինձ հրաժարիլ ընկերութենէն ու շոգենաւը թողլով, այլով միջոցաւ գնալ յԱղեքսանդրիա։

Բորդ Սայիտ աննշան տեղի մի է. սակայն քիչ ժամանակի մէջ ըրած յառաջադիմութենէն գուշակել կու տայ իւր ապագայ յաջողութիւնը։ Ֆէլլահներու քաղաքը, որ ծովափէն մղոնի մը չափ հեռի է, հնացեալ հողաշէն ու փայտաշէն տուներու կոյտ մըն է։ Փողոցներն աղտեղի, գարշահոտ ջրերը անոնց մէջ տեղը լճացած. Թափառական շանց բազմութիւնն ամեն դին. ճանճերու լէգէոնները անպատմելի։ Սակայն բուն ծովափին մօտ նոր քաղաք մի կը սկսի կանգնիլ, որ թուի թէ մեծաւ մասամբ Յունաց ձեռքն է։

Հետզհետէ հաւանական է որ վաճառականութեան կեդրոն մը ըլլայ, որովհետեւ առ հասարակ ամեն ազգի վաճառականական շոգենաւուց ժամատեղի է։ Գըլխաւոր փողոցք փոքր վաճառականութեան խանութներու շարք են, ուր արեւելեան քաղաքաց ամեն տեսակ ճարտարութեան նիւթեր կը գտնուին։ Ժողովըրդեան ու խանութպանաց մեծագոյն մասը Յոյն կը թըւի։ Սրճանոցաց բազմութիւն մը ամեն դին ցրուած է, անոր համար ալ անկարգութիւնք անպակաս են, կ'ըսեն։ Ընդհանրապէս կը զուրցուի թէ մեծ զգուշութիւն պէտք է քաղաքս բնակելու, որովհետեւ շատ սրիկայք, գողք, մարդասպանք եւ կախաղանէ փախչողք հոս կ'ապաւինին։

Քաղաքէս գաղափար մը ունենալու կէս ժամ՝ իսկ շատ է. ես 'ի բռնադատութենէ ստիպեալ գիշեր մը անցուցի, ու երկրորդ օրը ռուսական շոգենաւով մը դէպ 'ի յԱղեքսանդրիա ուղեւորեցայ։

Ի Բորդ Սայիտէ յԱղեքսանդրիա ութեւտասն ժամու ճանապարհ է։ Ծովը անդորր, գիշերը պարզ, շատ զբօսալի էր այն ծովափանց հեռուէն քերել։ Սակայն նաւերնիս խառնիճաղանճով հոծ էր. ութ հարիւր ոխնլքոր ռամիկ Ռուս ուխտաւորք մեզի ուղեկից էին դէպ յԵրուսաղէմ՝ դիմելով. նաւուն մեծագոյն մասը գրաւած՝ երթեեկն անհնարին կ'ընէին, եւ իրենց աղաղակաւն ու շփոթիւը բոլոր վայրը կը լեցընէին։

Առաւօտը լուսացաւ եւ արեգը հորիզոնը պատռելով իւր ոսկեփայլ ճառագայթները սփռեց ընդհանուր Միջերկրականին երեսը, որու հեզատեսիլ ջրերն աւերելով ետեւնիս կը ձգէինք։ Միջօրէին մօտ՝ Աղեքսանդրիոյ աւազուտից ափունքը սկսան առջեւնիս նկարել։ Ի հեռուստ այն ծովափք ամայի, անկենդան եւ

մարդկային ձգունքներէն լքեալ կը թուին, սակայն անոնց տխուր ամայութեան երեւոյթը ցիրուցան երկայնաքուն արմաւեններայ ցանցառահեր գագաթները կ'ամոքեն։ Այն ափանց գորշագոյն կարմրատես աւազուտից վրայէն, ուր գոգցես յարատեւ Հրակէզ արեւն ամեն բուսականութեան կանաչութիւնը կը սպառէ, ասդիս անդին շէնք մը, աշտարակ մը, բերդի մը սպիտակ որմունք, եւ շատ մը Հողմաղացք կը կանգնին. կարծես անՀետացած մարդկութեան մը շիրիմք են կամ լքեալ մնացորդք։ ԱՀ դիս փոխարքայի մը կիսաւեր արքունիքը ինձ մատնանիշ կ'ընեն, անՀետացած փառաւորութեան մը լքեալ մնացորդն, Հողմոց եւ օդոց անբարեխառնութեանց ձեռքը մատնուած մինչեւ չմընայ քար քարի վրայ որ չքայքայի։

ՀետզՀետէ որ դէպ'ի նաւաՀանգիստ կը յառաջենք՝ Հեռաւոր քաղաքին շէնքերը կը մերձենան, ծովուն վրայ կենսական շարժման մընշանները կը սկսին տեսնուիլ, նաւուց բազմաթիւ կայմք իբր խառնախուռ Հորիզոնին միջոցը կը պատեն, շոգենաւուց ծուխը երկինքը կը մթնցնէ, եւ բազմաթիւ մակոյկք ջրին երեսն ամենայն ուղղութեամբ կոՀակաբեկ կ'ընեն։

Շոգենաւին կամրջին վրայ նաւուղիղն ուշադիր՝ իւր Հրամանները կը կրկնապատկէ, նաւը ծանր ծանր կը յառաջէ մինչեւ Հուսկ ուրեմն իւր ակնարկելովը խարիսխը կ'արձըկի. մեր դիտեալ նպատակին Հասած էինք։

Այլ ինչպէս կարելի է բացատրել այն Բաբիլոնի խառնակութիւնն որ անմիջապէս միջոցը պատեց։ Արտաքուստ 'ի ստորեւ բազմաթիւ խնդրակք որպէս թէ յարձակմամբ նաւն առին։ Ի ներքուստ ութ Հարիւր խառնիճաղանճ սինլքորք մտից ու ելից միջոցները գրաւեցին. աՀաւոր աղաղակաց խառնաձայնու-

թիւնը մինչև երկինքը կը բարձրանար. ձեռք, ոտք, բերանք, ամենայն ինչ շարժման մէջ էին. ոչ նաւէն վար նաւակներն իջնալ հնար էր, ոչ դրսէններս մըտնել կարելի էր։

Շուարեալ, տարտամ, կանգուն, նաւուն կողին յեց՝ այն բազմաթիւ նաւակաց մէջէն անհամբերաբար բարեկամացս ներկայութիւնը կը լրտեսեմ. այլ որ կողմն աչքս դարձնեմ անհնարին է այն խառնակութեան մէջէն բան մը որոշել։ Եւ ինչպէս կարելի էր ուժեք այն մոլից առջևը խտայեալ բազմութիւնը ճեղքել ու ներս գալ։

Ինչպէս արևու ճառագայթ մը որ յանկարծ ճեղքի մը միջէն մուտք գտնելով սենեկին խաւարը կը փարատէ, սապէս և ես տարտամութենէս սթափեցայ զինուորականի մը ներկայութիւնը տեսնելով որ այն խառնիճաղանճ բազմութիւնը կը ճեղքէր ու ետևէն եկողներուն ճամբայ կը բանար։ Ռէիզեան Կարապետ և Արթին Պէյերն էին, Աղեքսանդրիոյ համազգային Ատենին դատաւորք, որ այլ ենթակայ պաշտօնէիւք ու բարեկամօք կու գային զիս իրենց տունը առանձնական տանելու։ Զուարթութեան լոյս մը ծագեց սրտիս վրայ. վեցամսեայ պանդխտութեան միայնութիւնս կը մերկանար, և այնու հետև մտերիմ սիրելեաց մէջ կը գտնուէի, 'ի դիւրութիւն և 'ի հանգիստ։

~~~~~~~~~~
~~~~~~~~~~